**As'phodel**, *s.* օղին չիրիշ օրու։

**Asphyxia, -xy** էսֆիք'սիէ, էս-ֆիք'սի, *s.* շնչհեղձութիւն

**Aspirant** էսփայ'րէնթ, *s.* թեկնածու, հետամուտ։ =*a.* հետամուտ; 2. հագագային (գիր)։

**Aspirate** էս'փիրէյթ, *s.* հագագային՝ թաւ գիր։ =*va.* թաւ հնչել։ =*vn.* հագագէն հնչուիլ։ =*a.* կոկորդաձայն։ **-tion** էսփիրէյ'շըն, *s.* կոկորդէ հնչելը; 2. թաւութիւն; 3. թուիչք սրտի, ըղձանք, տենչանք։

**Aspirator** էսփիրէյ'թըր, *s.* ծծող գործի քմ. ը., ծծիչ։

**Aspire** էսփայ'ր(ը), *vn.* [to] ցանտենչալ; 2. ելնել, բարձրանալ; 3. ջանալ։ **-pirer** էսփայր'ըր, *s.* ցանկալ, կացող, տենչացող; փառասէր։

**Asquint** էսքուինթ', *ad.* ծուռ, շիլ; աչքին ծայրով։

**Ass** էս, *s.* էշ, իշուկ; 2. ապուշ։

**Assafœt'ida**, *s.* մաղթ։

**Assail** էսսէյլ'(ը), *va.* յարձակիլ, վրան լինալ, կոխել; 2. չարախօսել։ **-able** էսսէյ'լէպլ, *a.* յարձակելի; հերքելի; ուրանալի։ **-ant, -er** էսսէյ'լընթ, էսսէյ'լըր, *s.* յարձակող, զարնող; 2. հերքող։

**Assasin** էսսէս'ին, *s.* նենգախօշոշ, արիւնարբու։

**Assault** էսսօլթ', *s.* յարձակում, արշաւանք; 2. նախատինք, հարուած։ =*va.* յարձակիլ, արշաւել; 2. աղմկել։ **-able** էսսօլթ'էպլ, *a.* յարձակելի։ **-er** էսսօլ'թըր, *s.* յարձակող; 2. աղմկող։

**Assay** էսսէ'յ(ը), *s.* փորձ այյար ը; 2. քննութիւն, փորձ (կշռոց); 3. փորձելի մետաղ։ =*va.* քննել, փորձել (մետաղները)։ =*vn.* ջանալ, աշխատիլ։ -office. փորձարան այյարխանէ։ [փորձ այյարճը։

**Assayer** էսսէ'յըր, *s.* մետաղա-

**Assemble** էսսէ'մպլ, *va.* գումարել, ժողվել։ =*vn.* հաւաքուիլ, ժողվուիլ։ **-lage** էսսէմ'պլէյճ, *s.* գումարում; 2. հաւաքում; 3. ամբոխ։

**Assembly** էսսէմ'պլի, *s.* ատեան, ժողով, կաճառ, ակումբ։ -room. դահլիճ, սրահ, ժողովասրահ։ To hold, meet an—. ժողով գումարել։

**Assent** էսսէնթ', *s.* [to] հաւանութիւն։ =*vn.* հաւանիլ, հաճիլ։ **-ation** էսսէնթէյ'շըն, *s.* կեղծ հաւանութիւն, շողոքորթութիւն։ **-ator** էսսէնթէյ'թըր, *s.* շողոքորթ։ **-er** էսսէն'թըր, *s.* հաւանող։

***Assert** էսսըրթ', *va.* պնդել, հաստատել; 2. պաշտպանել։ It is—ed that. կըսուի թէ, կհաստատեն թէ։ **-ion** էսսըր'շըն, *s.* հաստատութիւն, պնդելը; պաշտպանութիւն։ **-ive** էսսըր'թիվ, *a.* հաստատական։ **-or** էսսըր'թըր, *s.* հաստատող, պաշտպան։ **-ory** էսսըր'թըրի, *a.* հաստատող

**Assess** էսսէս'(ը), *va.* տուրք՝ հարկ դնել; 2. (գին) որոշել; 3. գնահատել։ **-able** էսսէս'էպլ, *a.* գնահատելի։ **-ment** էսսէս'մէնթ, *s.* հարկադրութիւն; 2. հարկ, բաժ; **-or** էսսէս'ըր, *s.* դատաւորակից, ատենակից; 2. բաժապան, հարկադիր։ [վճ.

**Assets** էս'սէթս, *pl.* պահանջք

**Asseverate** էսսէվը'րէյթ, *va.* (հանդիսապէս) հաստատել, երդնուլ։ **-tion** էսսէվըրէյ'շըն, *s.* հաստատելը, յայտարարութիւն։

**Assiduity** էսիտիու'թի, *s.* յարատեւութիւն, անդուլ՝ անդադար ջանք; 2. ցանկորդութիւն։

**Assiduous** էսիտ'իուըս, *s.* յարատեւող, մշտաջան։ **-ness** էսիտիուըս'նէս, *s.* յարատեւելը։

**Assign** էսսայն'(ը), *va.* որոշել, նշանակել, սահմանել; 2. փոխանցել, դարձնել էր. =*s.* փոխանցեալ

անձն ։ -able էսայն'էպլ, *a.* սահմանելի, փոխանցելի։ -ation էսսիկնէյ'շըն, *s.* սահմանում, (օրրային) ժամադրութիւն։ -ee էսայնի', փոխանցեալ (անձ)։ -er, -or էսայն'ըր, *s.* որոշող, սահմանող; 2. փոխանցող։ -ment էսայն'մընթ, *s.* որոշելը, թողում; 2. փոխանցում փէրաղ; 3. նշանակագիր, վճարագիր ճէվալէ էր

Assignat էսինեա', *s.* թղթադրամ (1789ի) Գղ.

Assimilate էսիմ'իլէյթ, *va.* [to] նմանցնել; 2. փոխարկել, իւրաշըրջել։ =*vn.* նմանիլ. փոխուիլ։ -tion էսսիմիլէյ'շըն, *s.* նմանութիւն; 2. իւրաշըրջում, փոխարկում (կերակրոյ)։ -tive էսսիմիլէյ'թիվ, *a.* փոխարկող, իւրաշըրջող,

Assist էսսիսթ', *va.* օգնել։ =*vn.* օգնական ըլլալ; 2. ներկայ լինել՝ գտնուիլ։ -ance էսսիսթ'ընս, *s.* օգնութիւն, նպաստ։ -ant էսսիս'թընթ, *a.* օգնական, օժանդակ։

Assize էսսայ'զ(ը), *s.* նիստ, ժողով. 2. գնահատում նարխ; 3. *pl.* նստաշրջան դատ; 4. տեղ և ժամանակ նստի դատ; =*va.* չափ՝ գին՝ կշիռ սահմանել։ Court of–. ոճրադատ դարպաս, ատեան; 2. եղեռնադատ ատեան։ -zer էսսայ'զըր, *s.* գնահատող նարխմը։

Associate էսօ'շիէյթ, *va.* ընկեր՝ կցորդ ընել, ընկեր առնուլ; 2. խառնել, միաւորել։ =*vn.* ընկերակցիլ; 2. ընկերանալ։ =*a.* կցորդ, (պաշտօնով) կից։ =*s.* ընկեր։

Association էսսօշիէյ'շըն, *s.* ընկերակցութիւն, ընկերութիւն; 2. միաբանութիւն; 3. կապակցութ. 4. զուգորդութիւն ւէ. -al էսսօշիէյ'շընըլ, *a.* ընկերակցութեան։ -alism էսսօշիէյ'շընիզմ, *s.* զուգորդականութիւն ւէ.

Assonance էս'օնընս, *s.* նոյնաձայնութիւն բն. -nant էս'օնընթ, *a.* նմանաձայն (վանկ)։

Assort էսսորթ', *va.* դասակարգել; 2. (խանութ) շտկել; 3. (ամէն պիտոյք) տալ։ -ment էսօրթ'մընթ, *s.* դասակարգութիւն; 2. մըթերք, հաւաք; 3. կարգ, ձեռքբացըմ

Assuage էսսուէյճ'(ը), *va.* կակղցնել, մեղմել. թեթեւցնել, չափաւորել։ -ment էսսուէյճ'մընթ, *s.* մեղմացում, թեթեւութիւն; 2. ըմփոփանք։ -ger էսսուէյ'ճըր, *s.* ամոքիչ։

Assuasive էսսուէյ'սիվ, *a.* թեթեւցնող, ամոքիչ։

Assuetude էս'սուիթիուտ, *s.* սովորոյթ, ունակութիւն։

Assume էսսիում'(ը), *va.* առնուլ; 2. ստանձնել, վրան առնել; 3. ենթադրել; 4. առնուլ ձեւացընել։ =*vn.* գոռոզանալ, ձեւեր առնուլ։ -mer, -ming էս'սիումըր, էս'սիումինկ, *s.* ամբարտաւան։

Assump'sit էսըմ'սիթ, *s.* գրաւոր խոստմունք էր. 2. պահանջ վընասուց էր.

Assumption էսըմ'շըն, *s.* ստանձնում; 2. ենթադրութիւն; 3. փոքրագոյն նախադասութիւն տր; 4. վերափոխում Ս. Կուսին։ -tive էսըմփ'թիվ, *a.* ենթադրելի։

Assure էշուր'(ը), *va.* [of] հաւաստել, ապահովել. վստահեցնել; 2. ապահովագրել։

Assurance էշուր'ընս, *s.* վստահութիւն, ապահովութիւն; 2. հաւաստիք; 3. անվեհերութիւն, համարձակութիւն; 4. ապահովագրութիւն սիկուրթա։

Assured էշուր'տ, *a.* վստահ, ապահով։ -ly էշուր'էտլի, *ad.* վստահաբար։ -ness էշուր'էտնէս, *s.* վստահութիւն։

Assurgent էսըր'ճընթ, *a.* խոտորնակի վեր ելնող բս.

**Assyrian** էսսի՛րիըն, *a.* Ասորեստանեայց, ասորական, ասորեստանի։ [յուն բնդ.

**Astat'ic** էսթէյ՛թիք, *a.* անկա-

**As'ter** էսթըր, *s.* աստեղածաղիկ բաք չիչէկի։ [նիշ (*)։

**As'terisk** է՛սթէրիսք, *s.* աստղա-

**As'terism** է՛սթըրիզմ, *s.* համաստեղութ. աստ; 2. եռաստղ (*⁎*) դրշ

**Astern** էսթը՛րն, *ad.* յետակողմը, նաւուն ետեւը։ To go—. ետ ետ երթալ։ To tow—. ետեւէն քաշել։

**Asteroid** է՛սթըրոյդ, *s.* աստեղատիպք, աստեղակերպք։

**Asthen'ic**, *a.* անզօր, տկար։

**Asthma** է՛սմա, էզ՛մա, *s.* ծանրաշնչութիւն ղըգ նէֆէս։

**Astonish** էսթա՛նիշ(դ), *va.* [at] ապշեցնել, հիացնել, զարմացնել։ -ing -՛իշին, *a.* հիանալի։ -ment էսթա՛նիշմընթ, հիացում, զարմանք։

**Astound** էսթաունդ՛, *va.* հիացընել, զարմացնել, զահնդել։

**Astraddle** էսթրէ՛դլ, *ad.* աշտանակեալ, ձիու հեծած (ոտքերը երկու կողմէն կախելով)։

**As'tragal** էս՛թրէկըլ, *s.* կոճակ, անրակ(սեան) ճ; 2. խաղիրան, գաղ. կոնի ֆէլէն, ֆիբրէ։ -oid էս՛թրէկէլօյդ, *a.* կոճանման, ոլոքային։

**Astral** էս՛թրըլ, *a.* աստեղային։

**Astray** էսթրէյ՛, *ad.* ծուռ, զարտուղի։ To go—. մոլորիլ։ To lead—. գլխէ հանել։

**Astrict, Astringe** էսթրիքթ՛, էսթրինճ՛, *va.* սեղմել, պնդել։ -ringency էսթրին՛ճընսի, *s.* պնդութիւն։ -gent էսթրին՛ճընթ, *a.* պնդեցնող։ =*s.* պորտմիչ դեղ, պնդացուցիչ գայգ վէրէն։ *Opp.* Laxative.

**Astrolabe** էս՛թրըլէյպ, *s.* աստեղադիտակ։ -latry էսթրա՛լըթրի, *s.* աստեղապաշտութիւն։ -loger էսթրա՛լըճըր, *s.* աղթարմոլ, քուդեայ, -logy էսթրա՛լըճի, *s.* աստեղահմայութիւն, քաղդէութիւն։ Judicial astrology. մոգութիւն։

**Astronomy** էսթրա՛նըմի, *s.* աստեղագիտութիւն։ -mer էսթրա՛նըմըր, *s.* աստեղագէտ։ -mic, -mical էսթրընա՛միք, -նա՛միքըլ, *a.* աստեղագիտական։

**Astute** էսթիուտ՛, *a.* խորագէտ, ճարտար։ -ly էսթիութ՛լի, *ad.* -ness էսթիութ՛նէս, *s.* -ութիւն։

**Asunder** էսը՛նդըր, *ad.* ուրոյն, իրարմէ զատ։ To come—. զատուիլ, փրթիլ։ To cut—. երկուքի կիսել։

**Asylum** էսայ՛լըմ, *pl.* -lums—լըմզ, -la —լը. ապաստանարան, ապաւէն; 2. դարմանոց, յիմարանոց։

**Asymmetry** է՛սիմէթրի, *s.* անհամեմատութիւն։ [գիպագիծ էրէ.

**Asymptote** էս՛իմթօթ, *s.* անհան-

**At** էթ, *pr.* ի, առ; . . . ով; 2. վրայ; 3. մերձ, մօտ; 4. շարժում ցցնող բայէ վերջ դէպ ի։ At home. ի տան, տունը։ At one o'clock. ժամը մէկին։ At the table. սեղանին վրայ։ To run, go at a thing. բանի մը վրայ վազել, յարձակիլ։ To be put at a thing. բանով մը զբաղիլ։

**Atavism** էթ՛էվիզմ, *s.* առհաւութիւն բժ.

**Ate** էյթ, *pret. of* Eat. կերաւ։

**Atelier** էթ՛լիէյ, *s.* արուեստանոց; 2. աշխատանոց, (կաղմա)տուն, (հիւս)նոց։ [ուածութիւն։

**Atheism** է՛թհիիզմ, *s.* անաստ-

**Athenæum** էթհինի՛ըմ, *s.* գիտական կաճառ, աթենէոն։

**Athirst** էթհըրսթ՛, *a.* ծարաւ։

**Athlete** էթհ՛լիթ. *s.* ըմբիշ, ախոյեան։ -letic էթհլէթ՛իք, *a.* ըմբշական; զօրաւոր։ [կողմէն միւսը։

**Athwart** էթհուօրթ՛, *pr.* մէկ

**Atilt** էթիլթ՛, *ad.* խոտորնակի; 2. մէկ ծայրը վեր։

Atlantic էթլէն'թիք, *a.* Ատլանտեան (ովկիանոս)։

Atlantes էթլէն'թիզ, *pl.* (քանդակեալ) մարդապատկեր ճ.

Atlas էթ'լէս, *s.* հաւաքածոյ (աշխարհացոյցներու, տախտակներու, ձեւերու), ատլաս; 2. կերպաս մը արդյազ; 3. նախայիսեան(վզի)մէջ.

Atmosphere էթ'մըսֆիր, *s.* մթնոլորտ, համատարած օդ։

Atolle էթօլ', *s.* մատանաձեւ կղզի բառային։

Atom էթ'ըմ, *s.* հիւլէ, շամանդաղ։ -ic, -ical էթ'ըմիք, էթ'ըմիքըլ, *a.* հիւլէական։ -ism էթ'ըմիզմ, *s.* հիւլէականութիւն ՓԻլ. -ize էթ'ըմայզ, *va.* (հեղուկը) փրփուրներու՝ շթիկներու վերածել։

Atone էթօն'(ը), *vn.* [for] քաւութիւն ընել Ա.Գ. =*an.* հաշտեցնել, 2. գոհացնել։ -ment էթօն'մընթ, *s.* քաւել; հաշտութիւն; 2. հատուցում; քաւութիւն Ա.Գ. -nable -'նէպըլ, *a.* քաւելի։ [քաւչարար։

Atoner էթօ'նըր, *s.* հաշտարար,

Atony էթ'ընի, *a.* տկարութիւն; 2. թուլութիւն Բժ. -nic էթ'ընիք, *a.* անոյժ Բժ; 2. անձայն, անշեշտ+.

Atop էթափ', *ad.* կատարը, վրան։

Atrabila'rian, -rious էթրէպիլէյ'րիըն, -լէյ'րիըս, *s.* մելամաղձոտ։ -biliar, -lious էթրէպիլ'եըր, -պիլ'եըս, *a.* մխոնդանոտ Բժ.

Atramen'tal, -tous էթրէմէն'թըլ, -մէն'թըս, *a.* մելանային, սեւ։

*Atrocious էթրօ'շըս, *a.* չարաչար (տանջանք), անհնարին(յանցանք); 2. ամբարիշտ, գազանային։ -ly էթրօ'շըսլի, *ad.* վայրագնաբար, չարաչար։ -ness, -rocity էթրօ'շըսնէս, էթրա'սիթի, *s.* դժնդակութիւն, սաստկութիւն; 2. (ոճկալի) անգըթութիւն։

Atrophy էթրօ'ֆի, *s.* ոսնութիւն, սաստիկ նիհարութիւն, ներդեւում, հիւծում։

Attach էթէչ'(ը), *va.* [to] կապել, կցել, միացնել; 2. գրաւել; առնուլ; 3. յանկուցանել; 4. սեւեռել (աչքերը); 5. շահիլ։ =*va.* կապուիլ, յարիլ։ -able էթթէչ'էպըլ, *a.* յարելի; գրաւելի։ -ment էթթէչ'մընթ, *s.* սէր, յարում; 2. (սրտի, սիրոյ) յօդ, կապ; 3. յաւելական մաս Քր+; 4. գրաւում, կալանք (ընչից) հաճզ; 5. գրաւագիր Եր. [նական) կցորդ։

Attaché էթթաշէյ', *s.* (դեսպա-

*Attack էթթէք'(ը), *va.* վրան իյնալ, յարձակիլ, զարնել; 2. դէմ խօսիլ՝ գրել; 3. փաղաղել ը. =*s.* յարձակում, հարուած; 4. խօսք նետելը։

*Attain էթթէյն'(ը), *vn.* [to] հասնիլ, ժամանել։ =*va.* ստանալ, շահիլ; 2. հաւատարիլ։ -able էթթէյն'էպըլ, *a.* հասանելի; տիրանալի (սխալ է բառաժամալի բարգմանեցը)։ -ment էթթէյն'մընթ, *s.* հասնիլը, ժամանում; 2. ստացում; 3. տաղանդ, հմտութիւն։ -ability, -ableness էթթէյնէպիլ'իթի, էթթէյն'էպըլնէս, *s.* -իութիւն։

Attainder, Attainture էթթէյն'տըր, էթթէյն'չըր, *s.* (ոճրով մը) ամբաստանութիւն; 2. վատահամբաւութիւն; 3. արատաւորում (վարկի)։

Attaint էթթէյնթ', *vn.* արատաւորել, վատահամբաւել, մրոտել (անուն); 2. աւրել (արիւնը)։ =*s.* բիծ, արատ; 2. (երդուելոց դէմ) ամբաստանութիւն; 3. ոտնակեղ (ձիու)։ -ment էթթէյն'մընթ, *s.* վատահամբաւելը; 2. արատում։

Attemper էթթէմ'փըր (ը), *va.* մեղմել, կակղցնել; 2. բարեխառնել; 3. յարմարցնել, բարեփոխել։

*Attempt էթթէմփթ', *va.* փորձել;

2. ձեռնարկել; 3. յարձակիլ: =vn. ջանալ; 2. յարձակիլ, դաւել: =s. փորձ, ձեռնարկ, ճիգ, ջանք; 2. դաւաճանութիւն: -able, a. փորձելի; հնարաւոր:

*Attend էթթէնտ՛, va. [to] ըսպասել, մնալ; 2. ընկերակցիլ; միանալ; 3. ծառայել, խնամել: =vn. ուշադիր ըլլալ, հետեւիլ, ցանկորդել; 2. միտ դնել, լսել; 3. սպասել, ջանալ: -ance էթթէնտ՛ընս, s. ծառայութիւն, խնամք, սպաս; 2. ճըշդապահութիւն, յարատեւութիւն; 3. հետեւորդք, կցորդք: -ant էթթէնտ՛ընթ, a. հետեւող, ներկայ; 2. ընկերակից, կցորդ; 3. կախեալ, հպատակ էր. =s. հետեւորդ, կցորդք (ծառայ, ընկեր, բարեկամ); 2. օգնական:

Attent էթթէնթ՛, a. ուշադիր: -ion էթթէնշ՛ըն, s. ուշադրութիւն, մտադրութիւն; 2. պատուասիրութիւն, խնամք, հոգ:

Attentive էթթէնթ՛իվ, a. մտադիր, ուշադիր; քաղաքավար: -ly, ad. -կերպով: ness, -ութիւն s.

Attenuate էթթէն՛իուէյթ, va. նիհարցնել, անօսրացնել; 2. անգայտացնել: =vn. նրբանալ, բարակնալ; 2. նուաղիլ: -nuant էթթէն՛իուէնթ, a. նիհարցնող: =s. անօսրիչ դեղ: -tion էթթէնիուէյ՛շըն, s. նուաղում, թեթեւում, անօսրում (հեղուկի); փոշիացում:

Attest էթթէսթ՛, va. վկայել, հաստատել, յայտնել; 2. վկայութեան կոչել: -ation էթթէսթէյ՛շըն, s. վկայութիւն թուղթ; 2. վկայական: -ator էթթէսթէյ՛թըր, s. վկայ:

Attic էթ՛թիք, a. ատտիկեան: =s. վերի յարկ; 2. ձեղնայարկ: -wit, salt. նուրբ՝ քաղաքավարի կատակ: -style. վայելուչ ոճ: -ism էթթի՛սիզմ, s. ատտիկեան փափկութիւն, նրբութիւն:

Attire էթթայր՛(ր), va. հագցընել, պճնել: =s. զգեստ; 2. զարդ, պաճոյճ; 3. (այծեմանի) կոտոշ:

*Attitude էթ՛թիթիուտ, s. կեցուածք, դիրք: -tudinize -՛թիուտինայզ, vn. դիրք՝ կացք տալ, կեցնել:

Attol'lent էթ՛թոլ՛լէնթ, a. բարձրացնող, վերամբարձ (դնդեր):

*Attorney էթթըր՛նի, (pl. -neys -նիզ) s. փոխանորդ, գործակալ վէքիլ էր.; 2. փաստաբան, դատախազ էր. Letter, warrant, or Power of-. փոխանորդագիր վէքեալէթնամէ: -general. ընդհանուր դատախազ: -ship -՛նիշիփ, s. փոխանորդութ.

Attorn'ment էթթըրն՛մէնթ, s. տիրաճանաչութ. (հողագործի) էր.

Attract էթթրէքթ՛, va. իրենքաշել, ձգել, յանկուցանել: -able -թ՛էպլ, a. ձգելի; գրաւելի: -ile -ք՛թիլ, a. քաշիչ, գրաւիչ: -bility -էպիլ՛իթի, s. ձգելիութիւն:

Attraction էթթրէք՛շըն, s. ձգողութիւն, քաշողութիւն ընդ; 2. հրապուրանք, քաշում:

Attract'ive էթթրէք՛թիվ, a. քաշողական; յանկուցիչ: -ly, ad. -ness, -tivity էթթրէքթ՛իվիթի, s. ձգողականութիւն:

Attractor. Attrahent էթթրէք-թ՛ըր, էթ՛թրէհընթ, a. ձգիչ; գրաւիչ:

Attribute էթթրիպ՛իութ, va. վերագրել, ընծայել, տալ; 2. համարել =s. հանգամանք, ստորոգելիք; 2. ստորոգելի ար; +. -table էթթրիպ՛իութէպլ, a. վերագրելի. -tion էթթրիպիու՛շըն, s. վերագրում; 2. հանգամանք, յատկութիւն: -tive էթթրիպ՛իութիվ, a. տուիչ, վերագրող; 2. ստորոգական. =s. ստորոգեալ +.

Attrite էթթրայթ՛, a. մաշած: -ness, -tion -՛նէս, էթթրի՛շըն, s. (շփմամբ) մաշում:

Attune էթթիւ-ն՛(ը), *va.* ներդաշնակել, համաձայնեցնել։

Auburn օ՛ըպըրն, *a.* շագանակագոյն գունմրայ։

Auction օ՛ըքշըն, *s.* աճուրդ մէզայ։ -ary-՛ըրի, *a.* աճուրդի։ -eer օքշընիր՛, *s.* մունետիկ; միջնորդ տեղեկայ։ =*va.* աճուրդով ծախել։

Audacious օ՛ըտէյշըս, *a.* յանդուգն, ժպիրհ; 2. համարձակ։ -ly -՛լի, *ad.* յանդգնաբար, լրբօրէն։ *-ness, Audacity -՛նէս, օըտէ-ս՛իթի, *s.* խիզախում, յանդգնութիւն; 2. ժպրհութիւն։

Audible օ՛ըտիպըլ, *a.* լսելի։ -ness, -bility օ՛ըտիպիլիթի, *s.* լսելիութիւն։ -dibly օ՛ըտիպլի, *ad.* լսելի կերպով։

Audience օ՛ըտիէնս, *s.* ունկնդրութիւն, լսումն; 2. ունկնդիրք։ -chamber, hall. դահլիճ, ունկնդրութեան սրահ. -room. հիւրասենեակ; ներսուրան։ -diphone օ՛ըտի-ֆօն, *s.* խլաձայն գ.

Audit օ՛տիթ, *s.* հաշուեքննութ. =*va.* հաշիւը քննել և վաւերել։

Au'ditor օ՛ըտիթըր, *s.* ունկնդիր, լսող; 2. հաշուեքննիչ մուհասեպէճի։ -ship-՛շիբ, *s.* հաշուեքննչութիւն։ -tory օտիթը՛րի, *a.* լսողական =*s.* ունկնդիրք; 2. լսարան, սրահ։ -tress օտիթ՛րէս, *s.* ունկնդիր կին։ -torium օըտիթօ՛րիըմ, *s.* թատերասրահ, նուագասրահ, լսարան։

Auger օ՛ճըր, *s.* գայլիկոն պիւօշիւ պուրղու; հողագչիր գ.

Aught օ՛ըթ, *s.* բան մը; ոչինչ։

Augite օ՛ճայթ, *s.* հրանոտ հնք.

Augment օ՛ըկմէնթ՛, *va.* մեծցընել, աճեցնել; 2. աւելցնել։ =*vn.* մեծնալ, աճիլ, երկննալ։ =*s.* աճում, յաւելում, զարգացում; 2. յաւելական (գիր)։ -able-՛էպըլ, *a.* յաւելլի։ -ation -էյ՛շըն, *s.* աճում, յաւելում; յաւելուած։ -ative, օկմէնթ՛էթիվ, *a.* յաւելական։

Augur օ՛կըր, *s.* հաւահմայ Հ; գուշակ, բաղդասաց։ =*an.* գուշակել; 2. կուահել; 3. հմայել։ -al, -ial օ՛կըրըլ, օ՛կըրիըլ, *a.* հաւահարցի։ -ing, -ation, -ship -՛րին, օկըրէյ՛շըն, *s.* հաւահմայութիւն։

Au'gury օ՛կըրի, *s.* հաւահարց; 2. հմայք, գուշակութիւն.

August օ՛ըկըսթ, *s.* Օգոստոս ամիս։ =օկըսթ՛, *a.* մեծափառ, վեհ, օգոստափառ։ Augustan age. ոսկեդար։ -ine, -inian օ՛կըսթին, օկըս-թին՛իըն, *a.* օգոստինեան (կրօնաւոր) որ եւ Austin friars. -ness օ՛կըսթ-նէս, *s.* վեհափառութիւն։

Auk օ՛ըք, *s.* թեւատ թռ.

Aulic օ՛ըլիք, *a.* գերագոյն (ատենի), արքունի։ =*s.* բանամրցութիւն (աստուածաբանի)։ [քոյր։

Aunt անթ՛, *s.* հօրաքոյր, մօրա-

Aura օ՛ըրէ, *s.* աղոխ (շոգի) ևայլ.

Aural օ՛ըրէլ, *a.* օդի; աղոխի; 2. լսելեաց։ -rist օ՛ըրիսթ, *s.* ականջաբոյժ։ [նման։

Au'rated օ՛ըրէյթէտ, *a.* ոսկւոյ

Aureola, -le օ՛ըրիօլէ, օ՛րիօլ, *s.* ճաճանչ, լուսապսակ (գլխի) նկ.

Au'ricle օ՛րիքլ, *s.* արտաքին ականջ; 2. սրտի խորշ, բլթակ; -cular -՛քիւլըր, *a.* ականջալուր; 2. ականջային; բլթակային։ [չիչէկի։

Auric'ula, *s.* արջականջ չուհա

Auric'ulate, -riform օըրիքի՛-ւլէյթ, օ՛ըրիֆօրմ, *a.* ականջաձեւ։

Auriferous օրիֆ՛ըրըս, *a.* ոսկեբեր

Au'rochs օրօքս՛, *s.* ցլավայրի։

Aurora օ՛ըրօրէ, *s.* արշալոյս, աղօթրան, լուսադէմ; 2. հրանունկ խասէֆի ֆիւրէնի ծղ. -borealis. -պօրիէյ՛լիս, հիւսիսայգ։

Ausculta'tion օըսքըլթէյ՛շըն,

s. (ձայնընկալ կամ կրծաղէտ գործիքով) ականջուամ ըծ.

**Auspicate** va. նաւակատիք ընել, ջբանալ։

**Auspice** [pl.-pices] s. հմայք, գուշակութիւն; 2. պաշտպանութիւն, հովանի։ -cial a. հմայութեան։

**Auspicious** a. բարեգուշակ, բարեբաստիկ։ -ly ad.-կերպով, -օրէն։

**Austere** a. խիստ, խըստապահանջ; 2. խոժոռ; 3. կոշտ; 4. կծու, բարկ։ -ness, -r'ity s. խստութիւն; դաժանութիւն։ -ly, ad.

**Aus'tral** a. հարաւային

*Authentic,-al a. վաւերական, հարազատ։ -ly, ad. -կերպով։

**Authen'ticate** va. վաւերացնել, վաւերել։ -'tion, -tic'ity s. վաւերականութիւն, ստուգութ.։

**Author** s. հեղինակ, մատենագիր; 2. դրիչ, պատճառ։ -ess s. հեղինակուհի։ -ship s. հեղինակութիւն։ -itative a. իշխանական, վճռական։ -itatively, ad. տիրաբար, իշխանաբար։

**Authority** s. հեղինակութիւն; 2. իշխանութիւն; 3. pl. վարիչ, իշխող, պետ; 4. կշիռ, վարկ, ազդեցութիւն; 5. վկայութիւն, վկայ; 6. հաւաքածոյ վըճռոց եւ օրինաց դատ.

**Au'thorize** va. արտօնել, թոյլատրել; 2. հաստատել, վաւերացնել; 3. օրինաւոր ընել։ -zation s. հրաման, հաստատութիւն, իշխանութիւն։

**Autobiography** s. ինքնակենսագրութիւն։ -pher s. իր վարքը գրող, ինքնակենսագիր։

**Autoch'thon** s. բընաշխարհիկ, բնիկ։ [նակալութիւն։

**Autocracy** s. ինք-

**Au'tocrat** s. ինքնակալ (Ռուսաց); 2. ինքնիշխան։ -ratrix s. ինքնակալուհի։ -racy, s. -ութիւն։

**Auto-da-fe** s. հրադատութիւն (հաւատաքննութեան)

**Autograph** s. ինքնագիր; բնագիր։ -phy s. նմանագրութիւն; 2. ինքնագիր։

**Automaton** s. ինքնաշարժ մեքենայ։ -tic, -al; -mobile a. ինքնաշարժիկ; ինքնաշարժ (կառք); ինքնաբերական։ [բնութիւն։

**Auton'omy** s. ինքնօ-

**Autopsy** s. (անձնական) քննութիւն; 2. դիազննութ.։

**Autumn** s. աշուն, աշունք. -al a. աշնան, աշնային։

**Auxiliar,-ry** a. օգնող, նպաստող։ -ry s. օգնական, ձեռնտու; 2. pl. նիզակակից, օժանդակ գունդ։ -verb. էական՝ օժանդակ բայ։

**Avail** va. շահեցնել, օգնել; 2. զարգացնել։ =vn. շահաւոր՝ օգտակար ըլլալ; 2. (նպատակին) ծառայել։ =s. առաւելութիւն, օգուտ, շահ։ Of no—. ոչինչ, չնչին։ To —one's self. օգտուիլ։

**Avail'able** a. շահաւոր, արժէքաւոր; 2. վաւերական։ -ness, -bil'ity s. շահաւորութիւն, օգտակարութիւն։ -bly ad. յաջող՝ շահաւէտ կերպով։

**Avalanche** s. ձեան հիւս, ուսին։

Avant էվա՛նթ, -courier -քուրիր, յառաջընթաց, կարապետ։ -guard -կարտ, յառաջապահ (գունդ) չարգաճը։ [թիւն, կծծութիւն։

Avarice էվ՛էրիս, s. ագահու-

*Avaricious էվէրի՛շըս a. ագահ, կծծի։ -ly, ad. ագահութեամբ։ -ness, s. -ութիւն։

Avast էվէսթ՛, int. կեցի՛ր' նա.

Avatar էվէթա՛ր, s. մարմնառութիւն (Հնդիկ չաստուածոց)։

Avaunt էվա՛նթ, int. կորի՛ր։

Ave-Maria էյվիմէյ՛րայա, Ողջոյն քեզ Մարիամ (աղօթք) ռդ.

Avenaceous էվինէյ՛շըս, a. վարսակային, վարսակեայ։ -nage է՛վինէյճ, s. վարսակատուրք։

Avenge էվէնճ՛(դ), va. վրէժխնդիր լլալ, վրէժ առնուլ։

Aveng'er էվէն՛ճըր, s. ոխակալ, վրէժխնդիր։

Avens է՛յվընզ, s. մարեմխոտ։

Avenue էվ՛ընիու, s. մուտք, արահետ; 2. ծառուղի; պողոտա։

Aver էվըր՛(դ), va. հաստատել, պնդել։ -ment -՛մընթ, s. հաստատութիւն; 3. վկայութիւն եւ.

Average էվ՛ըրէյճ, -րիճ a. միջին։ =s. միջին (հաշիւ, քանակ, գին); 2. նաւուղչէք (վաճառաց); 3. դեան. վնաս (ապրանաց) նա. =va. միջինի վերածել, իրարու վրայ հաշուել։=vn. միջին (քանակ) ունենալ։

Averse էվըրս՛, a. [to, from] քաշուող, խորշող, անյօժար; 2. արգելիչ, հակառակ։ To be-. դըժկամակիլ, հակառակիլ։ -ness, s. խորշում։

Aversion էվըր՛շըն, s. [to, from] հակակրութիւն. խորշում, ատելութիւն, զզուանք։

Aversely էվըրս՛լի, ad. հակակրութեամբ, զզուանքով։

Avert էվըրթ՛, va. մէկդի դարձընել, հեռացնել; 2. խոտորցնել, ետ կեցնել։ =vn. խոտորիլ։ -er, s.

Aviary էյ՛վիէրի, s. թռչնարան, աղաւնետուն։ [թիւն, տենչ։

Avidity էվի՛դիթի, s. անյագու-

Avocation էվօքէյ՛շըն, s. կոչում, գործ, զբաղում։ [վերակոչար Ծո.

Av'ocet, -tte էվ՛օսէթ, s. ոլոր,

*Avoid էվօյդ՛, va. զգուշանալ, խոյս տալ; 2. միջոց գտնել; 3. պարպել, դատարկել; 4. (փաստերը) ջրել, հերքել. ջնջել։ =vn. քաշուիլ, հեռանալ; 2. դատարկանալ։ -able -՛էպլ, a. խուսափելի, զգուշանալի։ -ance -՛դընս, s. զգուշութիւն; 2. զլացում, խորշում; 3. ջրելը, ոչնչացնելը։ -er -՛ըր, s. խուսափող; 2. (նաւ.) յափշտակող։ -less -՛լէս, a. անխուսափելի։

Avoirdupois էվըրդիուբօյզ՛, s. շուկայի հասարակ կշիռ. որուն քաշը 142 տրամ, կամ 453.60 կրամ է. See Pound.

Avouch էվաուչ՛(դ), va. յայտարարել; հաստատել, պնդել։ -able -՛էպլ. a. հաստատելի։ -er, s.

Avow էվաու՛(դ), va. դաւանիլ, խոստովանիլ, ճանչնալ; 2. հաստատել, ընդունիլ եւ. -able -՛էպլ, a. ընդունելի, խոստովանելի։ -al -՛ըլ, s. յայտարարութիւն, խոստովանութիւն։ -edly -էդլի, a. յայտնապէս, բացէ ի բաց։ -er -՛ըր, s. յայտարարող; խոստովանող։

*Avowee էվաուի՛, s. դատի գործակալ (ի պաշտօնէ), իրաւայր; 2. մատակարար (կալուածոց) եւն. [եւ.

Avowery էվաու՛րի, s. գրաւում

Avulsion էվըլ՛շըն, s. խլում; անջատում; 2. պատառ, կտոր; 3. ջրատումն երկրի եւ. [ըեղբօր։

Avuncular էվըն՛քիուլըր, a. հօ-

Await էուէյթ՛, va. սպասել, ակընկալել, նայիլ։

Awake էօուէյք'. (Awoke, Awaked էօուօք', էօուէյքտ'), va. արթընցնել; 2. գրգռել (գործի) մղել, ոգեւորել =vn. արթննալ; 2. ըսթափիլ։ =a. արթուն ։ To be–. Wide–, broad–. արթուն, աչքը բաց

*Awaken էօուէյք'ն(տ), an. արթըննալ; արթնցնել։ –ing –նէն, s. արթնութիւն։

Award էէօուօրտ'. va. վճռել, դատապարտել; 2. սահմանել, յանձնել տուր. =vn. որոշել, վճիռ տալ։ =s. վճիռ, որոշում (իրաւարարաց); 2. որոշմնագիր։ –er–ըր, s. վճռող; 2. դատաւոր –ed–էտ, s. որոշուած; շնորհուած, տրուած։ [զեկ. գէտ։

Aware էօուէր', a. արթուն; իրա-

Away էօուէյ', ad. հեռու, բացակայ; 2. մէկդի, շարունակ, անընդհատ։ =int. կորի՛ր; օ'ն։ Far–. խիստ հեռու ։ To come–. ետ դառնալ։ To do–with. վերցնել, ջնջել։ To drive–. վարել, քշել։ To fire–. հատցնել, սպառել։ To go–. երթալ, մեկնիլ։ To make–with. վատնել; 2. մեռցնել ։

*Awe ***, օ, (***տ), s. ահ. երկիւղ; 2. յարգանք։ =va. ահաբեկել, վախցնել։ –struck. a. ահաբեկ. To fill, strike with–. ահաբեկել, վախցնել։

Awful օ'ֆուլ, a. ահարկու, ահեղ; 2. փառահեղ։ –ly –լի, ad. ահաւոր՝ սոսկալի կերպով; պատկառանօք։ –ness –նէս, s. ահարկութիւն, պատկառանք ։

Aweather էօուէտ'հըր ad. հովին առջև բռնա՛ն–. Opp. Alee:

Aweigh էօուէյ'. ad. (խարիսխը) կախուած։

Awhile էհուայլ', ad. քիչ մը, ժամանակ մը, վայր մը։

*Awkward օըք'ուըրտ. a. անճարակ, ապիկար, անխելք, կոպիտ, անվայել։ –ly –լի, ad.–կերպով։ –ness –նէս, s. ապիկարութիւն։

Awl օ'ըլ, s. հերիւն պիզ։

Awn օ'ըն, s. քիստ, մօրուք (հասկի) գըլլըգ։ –less, a.

Awning օըն'էն, s. վրանակ pkճpk; աւյագ։ [ցաւ։

Awoke p. of Awake. արթըն-

Awry էրայ', aa. թիւր, ծուռ։

Ax, Axe էքս, s. կացին։

Axial էք'սիէլ, a. առանցքի։

Axil,–la էքսիլ', –լէ, s. անութ գօյթուգ։ –lar –լըր, a. անթային։

*Axiom էքս'իըմ, s. (յայտնի) ճշմարտութիւն; առած

Axis էքս'իս, s. առանցք, լիսեռըն; 2. սռնակ (վզի); 3. առեղ (բուսոց)։ pl. Axes էք'սիզ։

Axle էքս'լ, -tree. սռնակ, սեռն sքևկիք; 2. առանցք։

Axunge էքս'ընճ, s. խոզի ճարպ։

Ay. Aye այ, ad. հա՛, այո; միշտ, շարունակ։ =s. այո (քուէի)։

Aye-Aye այ'այ, s. մկնաձեռնի է.

Azalea էզէյ'լէէ, s. վառծաղիկ, ծեփիկ ։ [գագաթնահիւ։

Azimuth է'զիմըթ, s. ազիմութ,

Azoic էյզօ'յիք, a. անկենդան։

Azote էզօտ, s. բորակածին։ –tous –'տըս, a. բորակային (թթու)։

Azure էժ'ըր, էյ'ժըր, a. կապոյտ, երկնագոյն։ =s. կապուտակ, լաջուարթ; (կապոյտ) կամար երկնից։

Azymous էզ'իմըս, a. անխմոր։

Azygous էզ'իկըս, a. կոճատ, անզոյգ (գնդեր) մըտ.

# B

Baa պա, *s.* մայիւն (ոչխարի) = *vn.* մայել, բառաչել, պապաչել։

Babble պէպ'պլ(ը), *vn.* շաղակրատել, շատախօսել; 2. կարկաջել։ =*va.* կարդալ, արտասանել։

Bab'ble,-ment պէպ'պլ, -'մէնթ, *s.* շատախօսութ; 2. ոչնչաբանութ։

Babbler պէպ'պլըր, *s.* շատղրոյց։

Babe պէյպ, *s.* մանկիկ, տղեկ։

Babel պէյ'պլ, *s.* խառնակութիւն, բաբելոն։

Baboon պէպու'-ն, *s.* շաղբալու, շանագլուխ (կապիկ)։

Baby պէյ'պի, *s.* մանկիկ, երախայ, չաղա; 2. պաճուճապատանք, բուբրիկ գուգլա, պէպէֆ։ —house պաճուճապատնոց։ —farm. երախանոց։ —jump'er. ջահրակ։ —hood —'հուտ, *s.* երախայութիւն։ —ish պէյ'պիշ, *a.* մանկական։

Bac, Back պէք *s.* գետանաւ; 2. տաշտ, գուռ ք.

Baccalaureate պէքքէլօր'րիէյթ, *s.* պսակաւորութիւն։ —Sermon. հրաժեշտի քարոզ (ուղղեալ առ ընթացաւարտս) հմմ.

Baccarat պէքքէրա', *s.* թղթախաղ մը, բակրուկ։

Baccate պէ'քէյթ, *a.* մուտ (պըտուղ), հատապտուղի նման, թինային։

Bacchanal,-ian պէք'քէնէլ, —պէքէնէյ'լիէն, *pl.* բագոսական; շըռայտ։ =*s.* բագոսանուէր; շռայտ։

Baccanals, -lia պէք'էնէլզ —նէյ'լիէ, *s.* խորհրդատօնք, շռայտանք, բագոսապար։

Baccant պէքքէնթ', *s.* քուրմ բագոսեան, գինեբբու։

Baccante' պէքէնթէ', *s.* քրմուհի բագոսեան, լկտուհի։ [տական։

Bac'chic, -al պէք'իք, *a.* բագո-

Bacciferous պէքսիֆ'ըրըս, *a.* հատաբեր։ —form, *s.* մրգաձեւ։

Bacciv'orous պէքսիվ'օրըս, *a.* հատակեր։

Bachelor պէչ'ըլըր, *s.* ամուրի, աղապ; 2. պսակաւոր; 3. ասպետ։ —of Arts (B. A.) պսակաւոր արուեստից։ —of Divinity (B. D.) պսակաւոր Աստուածաբանութեան։ -'s -button —պըթ'ն, խառնածաղիկ, տերեփուկ րիւպիէ չիչէյի։ —ship —շիփ, *s.* ամուրիութիւն։

Bacillus պէսիլ'լըս, *s.* պասիլ, բակեղ, ցպակ։ The cholera—.

Back պէք, կռնակ, ետեւ; 2. ետեւի կողմ թէրս, սրգա։ =*va.* հեծնել; 2. թիկունք ըլլալ, օգնել; 3. յետս մղել; 4. (տոմսակը) առըստորագրել; 5. փոխանցել, ճիրօ ընել։ =*vn.* ետ ետ երթալ։ =*ad.* ետ, դարձեալ, վերստին։ To—out, —down. դըրժել; հեռանալ։ To—an anchor. մեծին վրայ փոքր խարիսխ մ'ալ նետել։ To fall—. ետ քաշուիլ։ To fall—upon. վստահիլ։ To order—երթալ գալու հրաման տալ։ To—up. ուժ տալ, կռնակ տալ։

Back' պէք', *a.* [բարդութեանց մէջ] ետեւի։ -bone. ողնայար; 2. քաջութիւն, ազնուութիւն։ -door. փախստի ճամբայ։ -gammon. տապլի, նարտախաղ թավլու։ -ground.

հեռանկար; երես՝ յառաջ նկարի։ -handed. ձեռքերը ետին; անուղղակի։ -house. ներքնատեննակ։-log. կոճղ քիւրիւք. -piece, -plate. Թիկնապրահ ։ -side. ետեւ, յետոյք ։ -slide va. հաւասարը ուրանալ ։ -slider. հաւատուրաց։ -stays. երեքկղի առասանք կայմից։ -sword. սուսեր; ճոկան։ -woodsman. անտառաբնակ գաղթական Ա.Ն.

Backbite պէք'պայթ, *an.* բամբասել, միսը ծամել (մէկու մը)։

Back'er պէք'ըր, *a.* զօրավիգ։

Back'ing պէք'ին, *s.* քաշալեբում; 2.համեստում (ձիոյ); 3. գրքին կողք շինելը։ [ետ կաշի սըրբ.

Backs պէքս, *pl.* կռնակի զօրա-

Back'ward, -wards պէք'ուըրտ, -'ուըրծ, *ad.* դէպ ի ետ։

Backward պէք'ուըրտ, *a.* դանդաղ, յամր։-ly-լի, *ad.* ականայ։ -ness -նէս, *s.* դանդաղութիւն։ -a'tion -էյ'շըն, *s.* յետաձգում։

Bactery պէք'թըրի, *s.* մանրէկ, ցպիկ, բակտերիա, մանրէաբոյս։ -teriology -րի-ալ'ըճի, *s.* մանրէաբանութիւն, բակտերաբանութիւն։ -logist պէքթիրիէլ'ըճիսթ, *s.* բակտերաբան, մանրէաբան ։

Bacon պէյ'քն, *s.* խոզի ապուխտ։

Bad պէտ, *a.* (*com.* Worse ուըրս, *sup.* Worst ուըրսթ) յոռի, վատ, գէշ; հիւանդ.-ly -'լի, *aa.* յոռի, գէշ կերպով, չարաչար։ -ness-'նէս, *s.* չարութիւն, գէշութիւն. -mark յուենիշ։

Bad, Bade *See* Bid.

Badge պէճ, *s.* շքանշան։

Badger պէճ'ըր, *s.* խշղար, եղընգարջ պօրսուգ; 2. ցորենավաճառ։ =*va.* նեղել, ձանձրացնել ։

Badigeon պէտիճ'ըն, *s.* ջըրաներկ, բուռ պասճաճ։

Badinage պէտինաժ', *s.* կատականք, ծաղրաբանութիւն։ [F]

Baffle պէֆ'ֆլ(դ), *va.* ծաղրել; 2. պատրել, խաբել; 3. ամչցնել ։ -er պէֆլ'ըր, *s.* խաբուսիկ, խաբող, փոփոխական։

Bag պէկ (դ), *s.* տոպրակ, մախաղ, պայուսակ։=*va.* պարկին մէջ դնել; 2. ուռճել։ =*vn.* ուռենալ ։ -man. մախաղակիր; 2. շրջագայիր վճ. -pipe. տկճոր, տիկ բուղուռ։

Bagatelle պէկ'էթէլ, *s.* ոչինչ բան, մնոտիք։

Baggage պէկ'էյճ, *s.* սպաք, հանդերձանք; 2. բեռ, ուղեգոյք, աղխ բըրբը;լկռդած կին։ [(կոտաւ)

Bag'ging պէկ'կին, *s.* պարկնոց

Bagnio պէն'եօ, *s.* բաղնիք; 2. լոգարան; 3. բոզանոց [It.]

Bail պէյլ(դ), *s.* երաշխաւորութիւն; 2. երաշխագիր; 3. բըռնատեղ (սանի)։ =*va.* (*out*) բանտէն արձակել. -bond. երաշխագիր. -able պէյլէ'պլ, *a.* երաշխաւորելի ։ -ee պէյլի', *s.* աւանդապահ. -'or, -er պէյ'լըր, *s.* աւանդատու ։ -ment պէյլ'մընթ, *s.* աւանդին աղատուիլը։

Bailiff պէյ'լիֆ, *s.*հարկահաւաք, գիւղապետ, տանուտէր, պալի մըխբար, քեախեա; 2. բարապան մուհ զիր, չավուշ -court. գիւղական ժողով իիքիեար մէճլիսի ։

Bailiwick պէյ'լիուիք, *s.* պայլիութ., գիւղախումբ, շրջանակ։

Bait պէյթ, *s.* խայծ, կեր եամ; 2. հրապոյր; 3. հանգիստ, զովութիւն։ =*va.* կեր՝ խայծ տալ; 2. (ճամբուն վրայ) կեր տալ ։ =*vn.* (ճամբան) զովանալու համար հանգչիլ,

Baize պէյզ, *s.* բրդէ պաստառ։

Bake պէյք(դ), *va.* եփել (փուռը); 2. Թրծել։ =*vn.* եփուիլ; 2. փուռ վառել։ -house. փուռ։

Bak'er պէյ'քըր, *s.* հացագործ; փռապան; 2. Թիթեղէ փուռ ։

**Ba'kery** պէյ՛քըրի, *s.* հացագործի խանութ; 2. փուռ։ -'s dozen, 13 հատ։ [(հաց)։

**Ba'king** պէյ՛քինկ, *s.* փուռ մը

**Balance** պէլ՛ընս(զ), *s.* կշիռք; 2. հաշուեկշիռ վճ; 3. մնացորդ (հաշիւի); 4. հաւասարակշռութիւն; 5. ճօճանակ (ժամացուցի); 6. կշիռ համաստ։ =*va.* հաւասարակշռել, հաւասարել; 2. քննել, կշռել; 3. (հաշիւը) գոցել, ճշդել; 4. ծածանիլ (պար)։ =*vn.* հաւասարիլ; 2. տատանիլ, օրօրիլ։ -sheet. փորձակշիռ վճ.

**Bal'ancer** պէլ՛ընսըր, *s.* կշռող։

**Balcony** պէլ՛քընի, *s.* պատշգամ։

**Bald** պօլ՛տ, *a.* ճաղատ; 2. անզարդ, անպաճոյճ։ -head, -pate. ճաղատագլուխ։ -ly –՛լի, *ad.* պարզօրէն։ -ness–՛նէս, *s.* կնտութիւն։

**Baldachin** պօլ՛տէքին, *s.* ամպհովանի; 2. սրահակակալ։

**Balderdash** պօլ՛տըրտէշ, *s.* ոչընչաբանութիւն։

**Baldrick** պօլ՛տրիք, *s.* թրկապ։

**Bale** պէյլ(զ), *s.* հակ պաշեա; 2. թշուառութիւն, աղէտ։ =*va.* բեռ՝ հակ կապել; 2. ջուրը պարպել։ Baling press. բեռնապիրկ մեքենայ։ -ful –ֆուլ, *a.* թշուառ, տխուր; 2. ժանտ։ [(հովանոցի պալէնա։

**Baleen** պէլին՛, *s.* կիտոսկր; 2.

**Balister** պէլիս՛թըր, *s.* բաղիստր, բալիսն, նետակալ։ [ձողանշան։

**Balize** պէլիզ՛, *s.* (ծովու մէջ)

**Balk** պօք, պօ՛լք(ս), *s.* անհերկ մաս, հողագօտի; 2. գերան; 3. արգելք; 4. վրիպում։ =*va.* անհերկ թողուլ; 2. խաբել, պատրել։ =*vn.* յանկարծ կենալ։ -er պօ՛քըր, *s.* խաբող; 2. ազդարար ձկնորս։

**Ball** պօ՛լ(զ), *s.* գնտակ, կծիկ; 2. գունդ, գնդակ, ափուճ; 3. պարահանդէս։ =*va.* գունդ շինել։ -cartridge. ռումբ։ -valve –՛վէլվ, կափոյր։

**Ballad** պէլ՛լէտ, *s.* գեղօն։

**Ballast** պէլ՛լէսթ, *s.* աւազուխիճ

**Ballet** պէլ՛է, *s.* թատերապար։

**Ballistics** պէլիս՛թիքս, *sing.* ձըգաբանութիւն։

**Balloon** պէլլուն՛, *s.* օդապարիկ; 2. ապակի փամփուշտ.-ist–նիսթ, *s.* օդաչու։ -ing –՛նինկ, *s.* գնդաց բարձրացում ասպարէզ։

**Ballot** պէլ՛ըթ, *s.* [for] գնդակ, քուէ; 2. քուէարկութիւն (գնդակաւ, տոմսակաւ); 3. գումար քուէից։ =*vn.* քուէարկել։ -box. քուէատուփ։

**Balm** պամ, *s.* բալասան, թրբնջուկ; 2. օծանելիք; ապեղանի։ =*va.* օծանել; 2. մեղմել, ամոքել։

**Balmy** պա՛մի, *a.* բալասանային, բալասանաբեր։

**Balsam** պօլ՛սէմ, *s.* բալսամոն; 2. հիմածաղիկ։ -ic, -ical, -ous պօլսէմ՛իք, պօլ՛սըմըս, *a.* բալասանային։ -iferous –մի՛ֆըրըս, *a.* բալասանաբեր։ -ine պէլսէմին՛, *s.* հինածաղիկ։

**Baluster** պէլ՛ըսթըր, *s.* վանդակաձող, սիւնակ բազրիք։

**Bal'ustrade** պէլ՛ըսթրէյտ, *s.* վանդակապատ բազրիք։

**Bam** պէմ, *s.* խաբէութիւն։

**Bamboo** պէմպու՛, *s.* հնդկեղէգ։ -zle պէմպու՛զլ, *va.* խաբխբել, ջուրը դնել։

**Ban** պէն, *s.* ծանուցում, հրովարտակ; 2. նզով.ք։ =*va.* նզովել; 2. խորշիլ։ [թուղ մկով։

**Banana** պէնա՛նէ, *s.* ադամաթուզ։

**Band** պէնտ, *s.* կապ, կապանք; 2. փողպատ; 3. երիզ, շղթայ; 4. յարաբերութիւն; 5. խումբ, գունդ։ =*va.* կապել; 2. միացնել։ =*vn.* դաշնակցիլ։

**Bandage** պէն՛տէյճ(զ), *s.* վիրա-

կապ ։ =va. (մէրքը) փաթթել։
Bandana պէնտէյ՛նա, s. (մետաքս) թաշկինակ ։
Band'box պէնտ՛պաքս, s. խաւաքարտէ տուփ, քարտատուփ։
Bandeau պէն՛տօ, s. ապարօշ, վարսակալ ։
Ban'derole, -rol. Ban'nerol պէն՛տըրօլ, —՛ըրօլ, s. դրօշիկ։
Bandit պէն՛տիթ, s. (pl. -dit'ti), աւազակ; 2. թափառաշրջիկ, եղուզակ [It]։ [s. երիզ ծ.
Band'let,-elet պէնտ՛լէթ, —՛ըլէթ
Bandog պէն՛տոկ, s. գամփռ շ.
Bandoleer պէնտըլիր՛, s. փոկ (հրացանի); 2. վառօթամանն։
Bandy պէնտի(ը), va. (գնտակ) արձակել ; հոս հոն նետել ; 2. փոխփոխել։=s. ճօկան; 2. ճօկանախաղ։ =a. կոր, ծուռ։ —legged. կորասրունք։ [աւեր։
Bane պէյն, s. թոյն; 2. աղէտ,
Bane'ful պէյն՛ֆուլ, a. վնասակար, թունաւոր։ -ly —լի, ad. —ness, s. Bane-wort. ատրոպ բոյս.
Bang պէնկ(ը), va. զարնել ; 2. ծեծել. նետել։=s.հարուած, ափոց։
Banian պէն՛եէն, s. հնդիկ վաճառական; 2.տնական հանդերձ;3. հնդկաթուղ ծո . —days. պահոց օր։
*Banish պէն՛իշ(ը),va. [from, to] աքսորել,վտարել։ —ment —մէնթ, s. տարագրում, աքսոր, վտար։ —er —ըր, s. տարագրող ։
Banister պէն՛իսթըր, s. սանդղամատ, վանդակամատ։
Bank պէնք(ը), s. թումբ; 2. դարատափ, բլուր; 3. գետափ; 4. աւազակոյտ; 5. դրամատուն։ =va. թումբ շինել, թումբով ամրացնել; 2. (կրակը) ծածկել ։ =vn. պանքան դրամ դնել։ —bill, —note. դրամատոմս, պանքնոտ։ -stock, -securities. բաժնեթուղթ պանգայի։ Saving—.
խնայողութեան տուն։
Banker պէնք՛ըր, s. սեղանաւոր։
Banking պէնք՛ինկ, s. սեղանաւորութիւն։ [նել; 2. զեղչել։
Bankable պէնք՛էպլ, a. ընդուն-
Bank'rupt պէնք՛րըբթ, s. սնանկ։ a. սնանկացած։ =va. սնանկացնել, կործանել։ -cy —՛սի, s. սնանկութ։
Banner պէն՛նըր, s. դրօշ։ -et —էթ, s. հրամանատար ասպետ։
Bannock պէն՛նըք, s. շօթ։
Banns պէնզ, pl. ամուսնութեան ծանուցում։
Banquet պէնք՛ուէթ,s. կոչունք, հարկիք , խնճոյք ։ =va. կոչունք տալ, հարկել։ =vn. խնճոյք ընել ։ -et պէնքէթ՛, s. հողաբլուր ։ -er պէնք՛ուէթըր, s. հարկող։
Ban'shee,-shie պէն՛շի, s.համբարու, փչող (իռլանտական)։
*Banter պէն՛թըր (ը), s. սրախօսութիւն, կատակ։ =va. քաշկռտել, կատակել։ -ling պէնթ՛լինկ, s. մանկիկ, տղեկ, մանչուկ։
Banyan պէն՛եըն, s. հնդկեղեգ։
Baobab պէյօ՛պէպ, s. վարազածառ, յաղթենի։
Baptism պէբ՛թիզմ. s. մկրտութիւն։ -al; -tistic, -tical —մ՛ըլ, —թիս՛թիք, —թ՛իքըլ, a. մկրտութեան
Baptist պէբ՛թիսթ, s. (Յովհաննէս) մկրտիչ ; մկրտական Յր. Anaկրկնակնունք Յր. -ery —րի, s. մկրտարան, աւազան։ [կրտել։
Baptize պէբ՛թայզ(ը), va. մը-
Bar պար(ը), s. ձող. քծուար; 2. թումբ, արգել; 3. աւազակոյտ(գետի բերանի), խրուտ; 4. ատեանի անջրպետ տախ; 5. ատեան, դատարան; 6. նիգ կէք; 7. (անջատող) գիծ էր; 8. փաստաբանք, փաստաբանութիւն։ 9. ըմպելարան, գինետուն; վաճառասեղան։ =va. նիգ դնել; գոցել ; 2.խափանել ; 3. գիծ

քաշել։ To be called to the—. փաստաբան լինել։-berry. կոծոխուր գաւսրն բօզլուղու ։-iron. երկաթի ձող չըպուգ տէմիրի։ -keeper, -tender. գինեպան, -maid. գինեվաճառ կին, կապելուհի։-room. գինետուն։ -shot. երկգլխի գունտ։

**Barb** պարպ, *s.* մօրուք; թել, քիստ; 2. մազմզուք (բուսոց); 3. կարթ, ժանիք; 4. ձիու զրահ հձ; 5. պէրպէրիկ (ձի, աղաւնի)։ =*va.* (կարթը) նետել 2. մազմզել; 3. ձին զինել։

**Barbacan, -bican** պար'պէքէն, *s.* որմածակ (բերդի); պատնիշակ։

**Barbarian** պարպէյ'րիէն, *s.* բարբարոս, վայրենի; 2. վայրագ, անգութ։ =*a.* բարբարիկ, դուժ; 2. անգութ։ [բարբարիկ։

**Barbaric** պարպէր'իք, *a.* օտար;

**Bar'barism** պար'պէրիզմ, *s.* բարբարոսութիւն; 2. խժաբանութիւն։

**Barbarity** պարպէր'իթի, վայրագութիւն, վայրենութիւն։

**Bar'barize** պար'պէրայզ, *vn.* վայրենանալ; 2. խժաբանել։=*va.* վայրենացնել։

**Bar'barous** պար'պէրըս, *a.* բարբարոս; անգութ։ **-ly**, *ad.* **-ness**, *s.*

**Barbate, -d** պար'պէյթ, -'թէտ, *a.* ժանեւոր, մօրուանի, քստաւոր։

**Barbecue** պարպէքէու'(տ), *s.* ողջախորով (եզ); 2. խորովհանդէս։= *va.* գլխովին խորովել։

**Barbel** պար'պլ, *s.* մօրուաձուկ չայ բէֆիրի; 2. ձիու մօրուք ախտ.

**Barber** պար'պըր, *s.* սափրիչ։ = *va.* սափրել, ածիլել։

**Barberry** պար'պէրրի, *s.* ծորենի։

**Barbet** պարպէթ', *s.* թաւարծի։

**Barbette** պարպէթ', *s.* անպատուար մարտկոց, հողամարտկոց զէն.

**Bard** պարտ, *s.* (կեղտոց) բանաստեղծ, բարդ։ **-ic** -'իք, *a.* բարդից։

**Bare** պէէր(տ), *a.* [of] մերկ, անծածկոյթ, հոլանի; 2. (գլուխը) բաց; աղքատ, կարօտ; 3. անպաճոյճ. պարզ։ =*va.* հոլանել, մերկացնել, բանալ։ -back. մերկ։ -faced ֆէյստ, բացերես; անպատրուակ; լկտի։ —foot. բոպիկ ։ —headed. գլխաբաց։ —legged. մերկասրունք ։ **—ly** —'լի, *ad.* պարզապէս; 2. մերկ, խեղճուկ։ **—ness** —'նէս, *s.* մերկութիւն։

**Bargain** պար'կէյն(տ), *s.* [for] սակարկութիւն; 2. պայման; 3. շահադիտութիւն, առուտուր։ =*vn.* սակարկել; 2. յարմարիլ, համաձայնիլ։ To strike a—. սակարկել։

**Bargainee** պարկէյնի', *s.* գնող։ **—ner** —'կէյնըր, *s.* վաճառող։ **—nor** —նօր', *s.* պայմանադիր զօնղրաբճը։

**Barge** պարճ, *s.* զբօսանաւ; վաճառաբարձ նաւ։ **—man, —ee** պարճի', *s.* մակուկավար մաունաճը։

**Barilla** պէրիլ'լէ, *s.* թանթունիկ բ; 2. նատրօն սօտա։

**Baritone**, *See* Baryton.

**Barium** պէյ'րիըմ. *s.* կշռուն տ.

**Bark** պարք(տ), *s.* կեղեւ (ծառոց); 2. հաչիւն։ =*va.* կեղեւը հանել, կեղեւել; 2. կեղեւով պատել։ =*vn.* հաչել; պոռալ, լռտալ։ Peruvian—. քինայի կեղեւ։

**Bark, Barque** պարք, *s.* մակոյկ, նաւակ; 2. եռակայմ նաւ։

**Barker** պարք'ըր, *s.* հաչող։

**Barky** պարք'ի, *a.* կեղեւուտ։

**Barley** պար'լի, *s.* գարի։ -break. խաղ մը -corn, գարեհատ; 2. երկայնութեան չափ մը ։ -sugar. գարեշաքար։ -water. գարեջուր, գարիի ջուր։

**Barm** պարմ', *s.* փրփուր, խմոր։

**Barmy** պարմ'ի, *a.* խմորուտ։

**Barn** պարն, *s.* շտեմարան, յարդանոց, մարագ։

**Barnacle** պար'նէքլ, *s.* բադբեր

(խեցի) է; 2. կարմրաստղ; 3. *pl.* կոճեր նաւորմիս եաւկաշաւար։

Barometer պէրօմ՛էթըր, *s.* ծանրաչափ գ. -tric, -trical -թ՛րիք, -թ՛րիքըլ, *a.* ծանրաչափական։

Baron պէր՛ըն, *s.* պարոն; 2. Երիկ էր. -of beef. եզան կողիկները։ -age -նէյճ, *s.* պարոնութիւն։ -ess -նէս, *s.* պարոնուհի։ -ial -ն՛իէլ, *a.* պարոնական։ [րոն։

Baronet պէր՛ընէթ, *s.* դերպա-

Barony պէր՛ընի, *s.* պարոնութ։

Bar'oscope, *s.* ծանրացոյց։

Barouche պէրուշ՛, *s.* կառք մը։

Barrack պէր՛րէք, *s.* զօրանոց, խուղ գրչյա։ [րնոց։

Bar'racoon պէր՛րէքուն, *s.* գե-

Bar rator պէր՛րէթըր, *s.* վիճկէզ; 2. խարդախ նաւապետ։

Bar'ratry պէր՛րէթրի, *s.* նաւապետի խարդախութիւն։

Barrel պէր՛րըլ(թ), *s.* տակառ; 2. տակառաչափ ($31^1/_2$ կալոն կամ $88^1/_5$ հոխայ); 3. փող (հրացանի, փետուրի)։ =*va.* (*up*) տակառը դնել, տակառակել Double-. երկփող (հրացան)։ -organ. երգեհոնիկ։

Barren պէր՛ըն, *a.* [of] ամուլ, անծին; 2. անպտուղ, անբեր. =*s.* անապատ, լեռնադաշտ -ness, ամլութիւն, անբերութիւն։ -ly. *ad.*

Barricade,-do պէրրիքէյտ՛, պէրիքէյ՛տօ, *s.* շերտափակ, ընդդիմարգել։ =*va.* պատնիշել, ամրափակել։

Barrier պէր՛րիէր, *s.* արգել, պատուար; 2. բերդաքաղաք; 3. խափան, խոչ, սահման։

Barring -out պօր՛-, *s.* ապստամբութիւն (աշակերտաց) հոմ.

Barrister պէր՛-, *s.* փաստաբան։

Barrow պէր՛րօ. *s.* ձեռքի կառք, յարնակ; 2. արու խոզ; 3. հողակոյտ (գերեզ.) Hand-. պատգարակ

Barter պօր՛թըր, *s.* փոխանակութիւն բռանքա։ =*an.* փոխանակել։

Bartizan պօր՛-, աշտարակիկ։

Bar'tram պէրթ՛րէմ, *s.* ապակեխոտ, կռուկինչ։ [(հող) գ.

Baryta պէրայ՛թէ, *s.* կշռուհիկ

Bary'tes պէրայ՛թիզ, *s.* ծանրաքար (քար)։

Baryton պէր՛իթօն, *a.* վառ, վառ ձայն, առնաձայն, ծանր ձայն. 2. ծանրոլոր (բառ) [յուն. քերակ.] =*s.* վառաձայն, վառերգակ։

Barytum պէրայ՛-, *s.* կշռուն։

Basal պէյ՛սըլ, *a.* խարսխային։

Basalt պէսօլթ՛, *s.* երկաթաքար; 2. սեւակուճ, պղպջդ։ -ic, *a.* բասալտային։ [գիտուհի F.

Bas-bleu պաբլը՛, պաբլու՛, գրա-

*Base պէյս(թ), *a.* նուաստ, ցած, աննշան; 2. ստորին, գետնաքարշ, վարնոց; 3. գռեհիկ, անօպայ; 4. բամբ, առնական, հաստ (ձայն), պասօ; 5. անհարազատ (որդի)։ =*s.* խարիսխ, հիմ, հիմ; 2. պատուանդան ։; 3. հասարակ, ազգազմ նիւթ գ; 4. բամբ ձայն պասօ; 5. նախաներկ; 6. ստորոտ, ոտք. =*va.* [upon,on] հաստատել, հիմնել։ -born. ցածազգի; 2. պոռնկորդի։ -plate. նիստ մեքենայի։ -less պէյս՛լէս, *a.* անհիմն։ -ly պէյս՛լի, *ad.* նուաստաբար; ապօրէն կերպով։ -ment պէյս՛մընթ, *s.* գետնայարկ։ -ness պէյս՛նէս, *s.* ցածութիւն, վատութ։

Bashful պէշ՛ֆուլ, *a.* ամչկոտ։ -ly պէշ՛ֆուլլի, *ad.* ամօթխածօրէն։ -*ness պէշ՛ֆուլնէս, *s.* ամչկոտութ։

Basic պէյ՛սիք, *a.* ազգազմային, հասարակ գ; հիմնական։ [մել։

Basify պէյ՛սիֆայ, *va.* ազգազ-

Basil պէզ՛իլ, *s.* շեղատայր, շեղեր; 2. շահասպրամ, ռահան; 3. սեկ, կաշի։ =*va.* շեղատարել։

Basilar, -y պէզ՛իլըր, պէզ՛իլըրի, *a.* հիմնական, խարսխային գ.

**Basilic,-ca** պէզիլ՛իք, —լ՛իքէ, *s.* ատենասրահ, դատարան; 2. մայր եկեղեցի, աթոռանիստ ժամ։

**Basilic,-al** պէզիլ՛իքըլ, *a.* մայր եկեղեցւոյ; 2. արքայերակի մէջ.

**Basil'icon,** *s.* արքայաճարպ։

**Basilisk** պէզ՛իլիսք, *s.* օձարքայիկ; 2. ծառամողէզ; 3. հրետանի։

**Basin** պէյ՛սն, *s.* կոնք, տաշտ, շանիճ, պուտնարդ; 2. ջրակայան, լճակ; 3. ծոց, գոգ կըլֆ; 4. աւազան (գետոյ); 5. լեռնամէջ հովիտ, լեռնադաշտ; 6. նժար։

**Basis** պէյ՛սիս, *s.* (*pl.* Bases պէյ՛սիզ) խարիսխ, հիմ։

**Basist** պէյ՛սիսթ, *s.* բամբերգ։

**Bask** պէսք(թ), *vn.* (արեւը) պառկիլ, տաքնալ։ =*va.* տաքցնել։

**Basket** պէս՛քէթ. *s.* կողով, սակառ։ —fish. աստղաձուկ։ —hilt. խեցեդաստակ (սուր)։ —woman. պտղավաճառ կին, —վաճառուհի։

**Bason** պէյս՛ն, *See* **Basin:**

**Basque** պէսք, *s.* զգեստի ծայր։

**Bas-relief, Bass-,Basso-rélievo** պարրիլիֆ՛, պէս՛—, պէս՛սօ րելիէ՛վօ, *s.* հարթաքանդակ, խորաքանդակ ազ զարդարմա։

**Bass** պէս, *s.* ծովագայլ ձկնիկ ձկ.; 2. կանկղի, թմբի օճառաման; = պէյս. բամբ ձայն, խորաձայն, բամբաձայն։ -viol պէսվայ՛ըլ, թաւջութակ, ջութ։

**Basset'** պէս՛— պէսսէթ՛, *s.* քարտախաղ մը։ =*vn.* (լեռը) նորէն ելնել էրէ. [բերդ։

**Basso** պէս՛սօ, *s.* բամբ; բամբ-

**Bassoon** —սուն՛, *s.* թաւափող։

**Bast** պէսթ, *s.* թմփիի կեղեւ; 2. խսիր, մալուխ։

**Bastard** պէս՛թըրտ, *a.* անհարազատ, պիտակ; 2. սուտ, խարդախեալ։ =*s.* պոռնկորդի; 2. վարնոց շաքար։ -ize պէս՛թըրտայզ, *va.* անհարազատութիւնը հաստատել։ -y պէս՛թըրտի, *s.* անհարազատութիւն։

**Baste** պէյ՛սթ, *va.* ծեծել; 2. (իւղ) ցանել, սրսկել, ձիթել։ = *vn.* հարեւանցի կարել, կթթել։

**Bastile** պէս՛թիլ, *s.* ամրոց։

**Bastinade,-do** պէսթինէյտ՛,-՛տօ *va.* բրածեծ ընել, ոտքերը ծեծել։ =*s.* ծեծ, ոտից ֆալաղա։ [կոց։

**Bastion** պէսթ՛իըն, *s.* մարտ-

**Bat** պէթ, *s.* տափան, գաւազան, բիր; 2. աղիւսի կտոր, ագուռ; 3. թերթաքար էրէ; 4. չղջիկ եարասաք; 6. բամպակի կծիկ։ [2. խումբ։

**Batch** պէչ, *s.* փուռ մը (հաց);

**Bate** պէյթ, *s.* կռիւ։ =*va.* նըւազեցնել։

**Bateau** պէթօ՛, *pl.* Bateaux պէթօզ՛, *s.* նաւ, կուր, թեթեւ նաւ։ —bridge. նաւակներէ շինուած ծըփուն կամուրջ, նաւակամուրջ։

**Bath** պաթհ, պէթհ, *s.* բաղնիք, լոգարան, բաղնետուն; 2. լուացում, լոգանք, բաղնիք; 3. աւազան, լոգարան գուռնա, թէֆնէ, սաւանօ; 4. 18 հոխանոց չափ մը, մար Ա. 5. սուզարան ‡. 6. մարեմանօթ, ջրեփոց; 7. *pl.* պաթհզ. ջերմուկք, բաղնիք գաբլըճա։ Steam, sand, ash—. շոգելոգանք; աւազի՝ մոխրի մէջ թաղուիլը։ —brick. (մետաղաց) յղկաքար, քիւ մուֆօֆ բաշը։ Order of—. կարգ՝ պատուանշան Բաղանեաց Ան. Knight of—. Բաղանեաց ասպետ՝ շքակիր։

**Bathe** պէյթհ(թ), պէյթհ, *va.* լոգացնել, լուալ, ջուրը խոթել։ 2. թաթաւել, թրջել, ողողել։ =*s.* բաղնիք, լոգանք։ =*vn.* լոգանալ, ծով՝ ջուր մտնել։ 2. թաթխուիլ, թաթաւիլ։ 3. համակիլ։ -er պէյթհ՛ըր, պէյթհ՛ըր, *s.* լոգացող, ջուր՝ ծով մտնող, բաղնեւոր։ Bathing -tub. լոգարան, տաշտ սաւանօ։

**Bathos** պէյ'թհօս, s. ուռուցիկ՝ փքացեալ խօսքեր եւ.

**Bating** պէյթ'ին, ad. բաց ի։

**Bat'let** պէթ'լէթ, s. (լուացքի) տոփան, թիակ բօգան։

**Baton,-toon** պաթօն', պէթուն', s. ցուպ, գաւազան; 2. գօտի (պիտակներ) էն. [տաղգիք է.

**Batrachian** պէթրէյ'քիէն, s. գորտ-

**Battalia** պէթթէյլ'իէ, s. ճակատում բանակի; բանակ։

**Battalion** պէթթէլ'իըն, s. գումարտակ բանակի։

**Battel** պէթ'թըլ, s. դատամարտութիւն, սոսինն հետ ոգորիլ եւ.

**Batten** պէթ'ն(ը), va. գիրցնել; 2. (երկիրը) պարարտացնել; 3. տախտակել, կաւարել: =vn. գիրնալ, յափրանալ: =s. նուրբ տախտակ, կաւար; 2. զոյգ հեծանք: -ing պէթ'ին, s. կաւար յարա, շիշէ բախրա։

**Batter** պէթ'թըր(ը), va. ջարդել; 2. ռմբակոծել; 3. մաշեցնել; 4. կամարի ձեւ տալ ։ =s. գմբեթարդում; 2. ջանգուած, խմոր։ -ing ram. հոյ, մանգղիոն ։ -pudding. կարկանդակ։ -er պէթ'ըրըր, s. ջարդող։ [թ'աթըր, s. ճօկանահար։

**Bat'ter, Bat'ster** պէթ'ըր, պէ-

**Bat'tery** պէթ'թըրի, s. հարուած, բաղխումն; 2. բախոց, մարտկոց; 3. հրետանի; 4. (ելեքտրական) մարտկոց; 5. ծեծկուռուք, կռփում եւ.

**Bat'ting** պէթ'ին, s. բամպակէ վերմակ շիղթ։

***Battle** պէթ'թըլ(ը), s. կռիւ, մարտ, պատերազմ: =vn. մաքառիլ, կռուիլ: -array. ճակատամարտ: -ax, -axe. տապար կէն. -door, -field, -ground. պատերազմի դաշտը: -ship. մարտանաւ, զրահաւոր: Pitched-. ճակատ: Drawn-. հետեւանքն անորոշ պատերազմ: To-the watch. շահատակել ։

**Battlement** պէթ'լմէնթ, s. ամկուռ՝ կեռիք պարսպի, որմածակ։

**Bat'tue** պէթ'թու, s. մացառները ջարդելը (երէները դուրս հանելու համար)։ [կէսբէննի։

**Bau'bee, Baw'bee** պօ'պի, s.

**Bauble, Bawble** պօպ'պլ, s. յիմարութեան գաւազան, մարեակ; 2. բոժոժ, ուլունք; 3. խաղալիկ։

**Bauxite. Beauxite** պօք'սայթ, բարեքար: **Bavin** պէվ'ին, s. չերտ։

**Bawd** պօտ, s. բոզարած (կին)։

**Bawdy** պօ'տի, a. լկտի, բոզ։

**Bawl** պօ'լ(ը), vn. պոռալ, կանչել, ճչել: =s. ճիչ, աղաղակ: -er պօ'լըր, s. ճչող, պոռացող։

**Bay** պէյ, a. (շառատ) ձի sorn.: Dark-. աշխետ եաղըզ: =s. դոգ, խորշ (ծովու); 2. որմածակ ։; 3. խոտանոց; 4. pl. դափնի, բրաբիոն: =an. հաչել: -berry. դափնեպտուղ: -rum, -water. դափնօղի: -salt. ծովու աղ: -tree. սարգենի skéfik։

**Bayadere** պայատէր', s. հնդիկ կաքաւուհի, հնդկայթուհի, բայատէր։

**Bayard** պէյ'ըրտ, s. (շառատ) ձի։

**Bayonet** պէյ'ընէթ, s. սուին։

**Bazaar,-zar** պըզար', պէզէր', s. շուկայ; 2. վաճառահանդէս։

**Bdellium** տէլ'իըմ, s. քարախունկ խէժ։

**Be-**, պի *prefix*, անուանց եւ ածականաց սկիզբը դրուելով զանոնք կբայացնէ ըսել, . . . եւ նշանակութեան: *Be*dew, ցօղել; *Be*dim, նսեմել. *Be*fit, յարմարել։

**Be** պի *vn.* & *aux.* (*Ind.* Am, art, is, *pl.* Are; *past.* Was, *pl.* Were; *pp.* Been) լինել, ըլլալ; գտնուիլ: Let be. միայնակ թողուլ; 2. չդպչիլ: There is, are կայ: As it were. իբրեւ թէ: So be it. եղիցի; դիցուք թէ: To be at, To be about, To be

up to, To be after. ընել, ըլլալ։

**Beach** պիչ, *s.* (աւազուտ) ափ, ծովեզր։ =*va.* (նաւը) խրել։

**Beacon** պի'քն(ը), *s.* (փարոսի) նշան; 2. ձողանշան (ի ծովու) ն—. =*va.* նշան տալ, ազդարարել։

**Bead** պիտ, *s.* համրիչի հատ։ 2. ուլունք, հիլուն պօլիանուր 3. *pl.* վարդարան, համրիչ բեւսյլին; աղօթք; 4. կաթիլ, շիթ։ –proof. փրփրուտ զօրաւոր (ոգի)։ –roll. ցուցակ(աղօթելի անձանց) պղ. -house. աղքատանոց։ Beadsman պիտզ'մըն, աղօթարար; միջնորդ. –ing պիյ'տին, *s.* հատաձեւ անրակ ճ.

**Beadle** պի'տլ, *s.* նուիրակ դատ; 2. բարապան; 3. ժամկոչ։ –ship, *s.* –ութիւն։

**Beagle** պի'կլ, *s.* բարակ թազը։

**Beak** պիք, *s.* կտուց; 2. լեզու (երկրի); 3. ցռուկ (նաւու)։ –ed պիքտ, *a.* կտցաւոր։ –er պիյք'ըր, *s.* գաւաթ, խոշոր ըմպանակ։

**Beam** պիյմ(ը), *s.* գերան, հեծան; 2. լծակ (կշռոց); 3. քեղի (կառաց) օգ; 4. ձող (խարսխի); 5. ճառագայթ, շառաւիղ։ =*vn.* ճառագայթել, ցոլանալ, փայլել։ =*va.* ցոլացնել, (ճառագայթ) արձակել։ -bird. ճանճքաղ թ—. -tree. ալիզենի։ –less պիյմ'լէս, *a.* մթին; 2. տխուր, աղօտ, նսեմ։

**Beamy** պիյ'մի, *a.* լուսաճաճանչ, շողշողուն, պայծառ; 2. ստուար, մեծղի; 3. կոտոշաւոր։

**Bean** պիին, *s.* բակլա; 2. լուբիա։ Common–. ոլոռ։ -fly. ոլոռնաճանճ։

**Bear** պէէր, *va.* (Bore, Born *or* Borne) կրել; 2. ծնանիլ; 3. համբերել, ժուժել; 4. ընդունիլ; 5. ընծայել, պտղաբերել; 6. վարել, կատարել; 7. արժեթղթոց արժէքը կտրել։ =*vn.* պտղաբերել; 2. կռիել, ծանրանալ; 3. յարմարիլ, վերաբերիլ։ To–away, up. հովին երթալ; քաշուիլ։ To–back. ետ երթալ։ To–date. թիւ կրել։ To–down upon. մղել, վարել։ To–down. ճնշել, ճզմել։ To–a hand. օգնել. փութալ ն—. To–off. հեռանալ, քաշուիլ։ To–on. օգնել, մղել; յառաջանալ։ To–one's self վարուիլ։ To–out. համբերել, հաստատել։ To–palm. յաղթական լինել։ To–through. առաջնորդել, ուղղել։ To–up. պաշտպանել։ To –upon, To–with. կրել, համբերել։

**Bear** պէէր, *s.* արջ; 2. վայրենի, կոպիտ; 3. վայրախաղաց (սակարանի) *opp.* Bull. Great, Little–. մեծ, փոքր Արջ համաս. -baiting. արջամարտութիւն, որս։ -bind. արջակապ, գեղձ վայրի։ -garden. արջատան; խռովայոյզ ժողով։-grease. օծանոյշ բօմատա։ –'s foot. ականդ, արջամագիլ։ -skin. արջենի։ -ward արջապահ այլըն։ [կրելի։

**Bearable** պէէ'րէպլ *a.* տանելի;

**Beard** պիյրտ, *s.* մօրուք; քիստ, փուշ (հասկի)։ =*va.* մօրուքը փետտել՝ քաշել; 2. արհամարհել։ –ed պիյրտ'էտ, *a.* մօրուսաւոր։ –less պիրտլէս, *a.* անմօրուս; նորատի։

**Bearer** պէէ'րըր, *s.* բերող, կրող; (թուղթ) ներկայացնող; 2. դիակիր։

**Bearing** պէէ'րին, *s.* վարմունք, ընթացք; 2. դիրք, վերաբերութ., յարաբերութիւն; 3. ծնանիլը, արտադրութիւն; 4. նեցուկ ճ; 5. վահանաբարձք ն+.;6.արմ,բարձիկ մ+.

**Bearish** պէէ'րիշ, *a.* արջի պէս, կոշտ, կոպիտ, բիրտ։

*__Beast__ պիիստ, *s.* չորքոտանի, անասուն, գազան; 2. անասնական, տմարդի։ A–of burden. գրաստ։ –liness պիյստ'լինէս, *s.* անբանու–

թիւն, անամօթութիւն; 2. պղծութիւն։ -ly պէյոտ՛լէ, ad. անամօթաբէն, գազանօրէն։

*Beat պիիտ, va. (Beat,-en) զարնել, ծեծել; 2. մանրել, փշրել, կոտրել; 3. յաղթել, տփել; 4. թմբուկ զարնել։ =vn. զարնել, բաբախել; 2. յուզել, խռովել; 3. հովին դէմ նաւարկել։ =s. հարուած, բաղխիւն; 2. (երակի) զարկ; 3. ժամանակ չափ եր; շրջան, պտոյտ; 4. սովորական ճանբայ։ =a. յոգնած։ To-about. խօսք նետել; հիւ գալ; փնտռել։ To-in. մանրել; ներս հրել։ To-into. գժուարաւ ուսանիլ։ To-time. չափ բռնել եր. To-up. յարձակիլ. վրան իյնալ։ To-up for. զօրք ժողվել։ To be-out. չարաչար յոգնիլ։

Beaten պէյտ՛ն, a. ուրուած, մաշած, ծեծուած; 2. հարթուած; 3. յաղթուած (խաղի մէջ)։

Beat'er պէյտ՛ըր, s. զարնող, (տափանօ)հար; 2. տափան, թակ։

Beatific.-al պիիտիֆ՛իք, պիիտի՛ֆիքըլ, a. երանաւէտ. երանական, -ally պիիտիֆ՛իքըլլի. ad. երանութեամբ։ -ation պիիտիֆիքէյ՛շըն, s. երանացում Ս.Գ.

Beatify պիիտ՛իֆայ(տ), va. երանացնել; 2. երջանկացնել; 3. երանելեաց կարգը դասել (զոք) ոգ.

Beat'ing պէյտ՛ին, s. հարուած, ծեծ, ապտակ; 2. (երակի) զարկ; 3. հովին դէմ նաւարկութիւն։

Beatitude պիիտ՛իթիուտ, s. երջանկութիւն, երանաւէտ կեանք։ 2.pl.(ինն) երանութիւնք (Յիսուսի)

Beau պօ. (pl. Fr. Beaux, Eng. Beaus պօզ), վայելչազգեստ շիք; 2. պճնասէր, հօլպըա; 3. սապետ, տարփաւոր (տիկնանց)։ -ideal -այտի՛ըլ, գեղատիպար։ -jolais -ժօլէ, Պուրկոնեան ընտիր գինի։ -mond -մօնտ, բարձր ընկերութիւն։ -ish պօ՛իշ, a. հագուած, շքուած։

*Beauteous պիու-՛տիըս, a. գեղանի։ -ness, s. գեղ, շնորհ։ -ly.

Beautiful պիու-՛տիֆուլ, a. գեղեցիկ, վայելուչ; 2. պատուական, ընտիր։ -ly պիու-՛տիֆուլլի. ad. վայելչապէս։ -ness պիու-՛տիֆուլնէս, s. գեղեցկութիւն, վայելչութիւն։

Beautify պիու-՛տիֆայ va. գեղեցկացնել. զարդարել։ =vn. գեղեցկանալ, պճնուիլ։ -tifier պիու-՛տիֆայըր. s. գեղեցկացնող։

Beauty պիու-՛տի, s. գեղ, գեղեցկութիւն; 2. շնորհք, հրապոյր; 3. գեղուհի, գեղանոյշ։ -spot. կեղծ պիսակ, գեղանիշ պէնն։

Beaver պի՛վըր, s. կուղբ, շնձրի գուճօթք; 2. կղբենի (փեղոյր); 3. սուրի մը գաւրօr; 4. (երեսի) պահպանակ։

Bebeerine. Bebirine. Bibirine պէ՛պիրին, s. բեբիրին, -րիտ ք.

Becafico', s. թզակերպ Բ.

Becalm պիքա՛մ, va. հանդարտեցնել, իջեցնել, խաղաղցնել։

Became' pp. of To Become.

Because պիքօզ՛, con. քանզի, որովհետեւ; 2. համար, վասնզի։

Bechance պիչէնս՛, va. պատահիլ

Becharm պիչարմ՛, va. դիւթել։

Beck պէք, s. (ձեռքով, գլխով) նշան, երերում։

Beck, Beckon պէք՛ն(տ), an. նշան ընել, ակնարկել; 2. հրամայել։

Become պիքըմ՛, vn. (Became, Become) ըլլալ, դառնալ։ =va. յարմարիլ. պատշաճիլ։

Becoming պիքըմ՛ին, a. վայելուչ, յարմար։ -ness պիքը՛մինկնէս, s. վայելչութիւն։ -ly պիքը՛մինկլի, ad. -կերպով։

Bed պէտ, s. անկողին, մահիճ, քնարան; 2. ամուսնութիւն; 3. ա-

ճանբայ, միջոց; 6. լուր, տեղեկութիւն։ -tor քըմմիու-նիքէյ'թըր, s. հաղորդող, լրատու։ -tory -թըրի, a. յայտարար, նշանակող։

Communicative -թիվ, a. հաղորդասէր; Թուլլբերան։ -ness, s.

Communion քըմմիու'նիըն, s. յարաբերութիւն; 2. հաւատակցութիւն, ուխտ, յարանուանութիւն; 3. Սուրբ Հաղորդութիւն։ -cup. սկիհ։ -service. պաշտօն Հաղորդութ.

Commutable քըմմիու'թէպլ, a. փոփոխական, նուազելի։ -tability քըմմիու'թէպիլիթի, s. փոփոխականութ

Commutation քամմիութէյշըն, s. փոփոխում; փոխանակութիւն; 2. ամոքում; 3. անցուդարձի կրաւադնում։ -tive քըմմիու'թէթիվ, a. փոխանակական։ -tor քամ'միութէյթըր, s. փոխարկիչ (գործի) ելեկ.

Commute քըմմիութ', va. [to, for] փոխանակել, փոխել; 2. ամոքել; 3. նուազ վճարել։ =vn. մեկանց վճարելու կարգադրել։ -mutual քըմմիու'չուըլ, a. փոփոխակի։

Compact քամ'փէքթ, s. ուխտ, դաշն, պայման։ =քըմփէքթ', a. պինդ, հաստատ; 2. կուռ, խիտ, հոծ; 3. ամփոփ, համառօտ։ =քըմփէքթ', vn. պնդել, հաստատել, միացնել, կազմել։ -edly, -ly քըմփէքթ'էտլի, քըմփէքթ'լի, ad. սերտ՝ ամփոփ կերպով. վայելչահիւս։ -ness քըմփէքթ'նէս, s. պնդութիւն, սերտութիւն։

Companion քըմփէն'եըն, s. ընկեր, կենակից, կենցաղակից; 2. ամոլ, կողակից, ընկերակից, (պաշտօնա)կից։ -in arms. զինակից. -hatch. խուցի առաջք զամարա գաբուար աղզը։ -ladder. պաշտօնէից սանդուխ ն-. զամարա խաւեղենի։ -way. նաւախցիկի սանդուխ։

Compan'ionable քըմփէն'եընէպլ, a. ընկերական, դիւրահամբոյր. -ness քըմփէն'եընէպլնէս, s. -ութ։ -ly քըմփէնեընէպլի, ad. -կերպով, սիրով։

Compan'ionship, s. ընկերութիւն, ընկերակցութիւն, ուխտ։

Company քըմ'փէնի, s. ընկերութիւն, հաւաքում, ուխտ; 2. հիւր; 3. ընկերութիւն, տուն վճ; 4. դասակ, զօրախումբ; 5. նաւազք.= vn. ուղեկցիլ, ընկերիլ, ընկերակցիլ, ընկերանալ։ To keep—. չզատուիլ, ընկերանալ; 2. խօսակցիլ, մտերմանալ։ Chartered—. բաժանորդական՝ անանուն ընկերութիւն։

Comparable քամ'փէրէպլ, բաղդատելի։ -rably, ad. բաղդատաբար

Comparative քըմփէր'էթիվ, a. համեմատական, բաղդատական։

Compare քըմփէր'(ր), va. [to *in respect to quality,* with *in respect by way of illustration*] համեմատել, բաղդատել; 2. նմանցնել։ = vn. բաղդատուիլ, հաւասարիլ։

Compar'er -րըր, s. բաղդատող։

Compar'ison քըմփէր'իսըն, -ր'իզն, s. համեմատութիւն, բաղդատում; 2. նմանութիւն. քր; 3. ատրճանուորում +.

Compart քըմփարթ', va. բաժնել։ -ition քամփարթի'շըն, s. բաժանում։ -ment քըմփարթ'մէնթ, s. աչք, խորշ, բաժանում։

Compass քըմ'փըս(ս), s. շրջան, շրջապատ; 2. սահման, պարփակեալ միջոց; 3. տարածութիւն, ծաւալ; 4. կողմնացոյց։ =va. շրջիլ, բոլորել; 2. պարփակել; 3. պաշարել; 4. հասնիլ, կարենալ; 5. ստանալ; 6. խորհիլ։ Mariner's—. կողմնացոյց բուսուլա։ To fetch a—. երկայն շրջան մը ընել։ -able քըմ'փըսէպլ, a. պարփակելի; 2. կարենալի; 3. խորհելի։ -ing քըմ'փըսին, a. Թիւր, կոր. ծուռ։ [կին բերկել։

Compasses քըմ'փըսէզ, pl. կար-

Compassion քըմփէշ'ըն, s. կարեկցութիւն, արգահատանք, գութ։

Compassionate քըմփէշ'ընէյթ, va. արգահատել; 2. գթալ. =a. գթած, վշտակից։ -ly քըմփէշ'ընէյթլի, ad. կարեկցաբար։ -ness քըմփէշ'ընէյթնէս, s. վշտակցութիւն։

Compatible քըմփէթ'իպլ, s.[with] վայելուչ, յարմար, յանկ։ -bility քըմփէթ'իպիլիթի, s. յարմարութիւն։ -tibly քըմփէթ'իպլի, ad. պատշաճօրէն

Compatriot քըմփէյթ'րիըթ, s. հայրենակից։ [ընկեր։

Compeer քըմփիյր', s. հաւասար,

Compel քըմփէլ'(դ), va. [to] ստիպել, արգիլել; 2. յափշտակել, բռնի առնուլ։ -lable, a. բռնադատելի։

Compella'tion քամփէլլէյ'շըն, s. կոչում, տիտղոս էջգայ։ -tive քըմ-, s. (ուղղասական) տիտղոս։ [դատիչ։

Compeller քըմփէլ'լըր, s. բռնա-

Compend, -ium քամ'փէնտ, քըմփէն'տիըմ, s. համառօտութիւն։

Compendious քըմփէնտի'ըս, a. համառօտ, ամփոփ. -ly, ad. համառօտիւ։ -ness, a. -ութիւն։

Compensate քամ'փէնսէյթ, քըմփէն'սէյթ, va. [for] փոխարինել; հակակշռել։ -tion քըմփէն'սէյշըն, s. փոխարինում, փոխարինութիւն; 2. փոխարէն; 3. (վարկով) հատուցում։ -tive, -tory քըմփէն'սէյթիվ. քըմփէն'սէյթըրի, a. փոխարինական։

Compete քըմփիյթ', vn. մրցիլ։

Competence, -cy քամ'փիթէնս, -սի, s. յարմարութիւն, կարողութիւն; 2. բաւականութիւն; 3. ձեռընհասութիւն; 4. իրաւունք։

Competent քամ'փիթէնթ, a. [to] ձեռնհաս, կարող, բաւական; 2. յարմար, պատշաճ։ -ly -'փիթէնթլի, ad. ըստ պատշաճի, բաւականապէս։

Competition քամփիթիշ'ըն, s. [for] մրցում, մրցակցութիւն; 2. նախանձութիւն, հակառակութիւն։ -tive քըմփէթ'իթիվ, a. Examination—. մրցում։ -tor քըմփէթ'իթըր, s. մրցակից, ղուգախնդիր; հակառակորդ։

Compilation քըմփայլէյ'շըն, s. ծաղկաքաղ, հաւաքածոյ, գրաքաղ։

Compile քըմփայլ'(դ), va. ծաղկաքաղ՝ գրաքաղ ընել, հաւաքել։

Compiler քըմփայլ'ըր, s. մատենաքաղ, հաւաքող, խմբագրող։

Complacence, -cy քըմփլէյս'ընս, -ընսի, s. գոհունակութիւն, հաճութիւն; 2. կամահաճութիւն, քաղցրութ։ Self—. անձնահաճութ.

Complacent քըմփլէյ'սընթ, a. հաճոյական, կամահաճոյ; 2. կամակատար, քաղցր։ -ly, ad. -կերպով։

Complain քըմփլէյն'(դ), vn. [of] տրտունջել; 2. գանգատիլ, ամբաստանել; 3. ողբալ, հեծել։ -er, -ant քըմփլէյն'ըր, քըմփլէյն'ընթ, a. տրտնջող, գանգատող, տրտրացող; 2 դատախազ միւսսահ։

Complaint քըմփլէյնթ', s. գանգատ, տրտունջ; 2. ցաւ, վիշտ, հիւանդութ; 3. ամբաստանութ. էր

Complai'sance քամ-, s. կամահաճոյ փոյթ, քաղաքավարութիւն։

Complaisant քամ'փլէյզէնթ, a. կամահաճոյ, քաղաքավար։ -ly, ad. գոհունակութեամբ։ [հարթել։

Complanate քամ'փլէնէյթ, va.

Complement քամ'փլիմէնթ, s. լրումն; լրացուցիչ (մաս); Arithmetical—. թուաբանական լրում։ -al, -ary քամփլիմէնթըլ, քամփլիմէնթըրի, a. ամբողջարար, լրացուցիչ։

*Complete քըմփլիյթ', a. կատարեալ, ամբողջ, անթերի; 2. լրացած, լման։ =*va. կատարել, լրացնել, ամբողջացնել։ -ly քըմփլիյթ'լի, ad. կատարելապէս, լիուլի։ -ness քըմփլիյթ'նէս, s. կատարելութիւն, լրութիւն։

**Completion** քըմբլի՛շըն, *s.* լրացում, կատարում; 2. իրականացում։ -tive քըմբլի՛թիվ, *a.* լրացուցիչ։

**Complex** քամ՛բլեքս, *a.* բաղադրեալ, բազմայօդ, խառն։ =*s.* ժողով, հաւաքում։ -edness, -ness, -ity քամբլեքս՛էտնէս, քըմ՛բլեքսնէս, քըմբլեք՛սիթի, *s.* խառնուածք, բաղադրութիւն, բազմամասնութիւն։

**Complexion** քըմբլեք՛շըն, *a.* խառնուած, կազմուած, բնութիւն; 2. երեսի գոյն, մոյն; 3. դէմք, կերպարանք։ -al, -ary քամբլեք՛շընըլ, քամբլեք՛շընըրի, *a.* երեսի գոյնի, խառնուածքի։ -ed քամբլեք՛շընտ, *a.* Dark-. թխաթոյր, թխամորթ։ Fair, light-. խարտեաշահեր, քումոյթ։

**Complexly** քամ՛բլեքսլի, *ad.* խառն, բաղադրութեամբ։

**Complexure** քըմբլեք՛շըր, *s.* բազմախառնութ., կնճռոտութիւն։

**Compliable** քըմ-, *a.* հաւանելի։

**Compliance** քըմբլայ՛ընս, *s.* [with] հաճութ., հաւանութ. յօժարութ.

**Compliant** քամբլայ՛ընթ, *a.* կակուղ, ճկուն; 2. դիւրանուաց, հնազանդ, հլու։ -ly, *ad.*

**Complicate** քամբ՛լիքէյթ, [with] *va.* խառնակել, պճռքել, խառնել, խառնշտկել; 2. հիւսել։ =*a.* խառնակ, շփոթ, կնճռոտ; 2. հիւսուած, մանուածոյ։ -ly. *ad.* -ness, -licacy, -lication քամբ՛լիքէյթնէս, քամբ՛լիքէյսի, քամբ՛լիքէյշըն, *s.* մանուած, խառնակում, կնճռոտութ.; 2. հիւսուած, կնճիռ։

**Complicity** քըմբլի՛սիթի, *s.* կամակցութիւն, մեղսակցութիւն։

**Complier** -լայ՛ըր, *a.* դիւրանուաց։

*__Compliment__ քամ՛բլիմէնթ, *s.* մաղթանք, խնդակցութ. բարեմաղթութիւն; 2. մեծարանք, յարգանք; 3. բարեւ։ =*va.* խնդակցիլ; պատուասիրել, գովել; 3. շողոքորթել։

**Compliment'al, t'ary** -մէն՛թըլ, -թըրի *a.* պատուասիրական, քաղաքավար։

**Compline, -lin** քամ՛բլին, *s.* հանգստեան ժամերգութիւն, եկեղեց։

**Complutensian** -բլու-թէն՛շըն, բազմալեզուեան Աստուածաշնչի։

**Comply** քըմբլայ՛, *vn.* [with] հաճիլ, հաւանիլ, հետեւիլ։

**Component** քըմբօ՛նընթ, *a.* կազմիչ, յօդիչ, բաղադրական։

**Comport** քըմբօրթ՛, *va.* յարմարել, համաձայնիլ։ =*vn.* կենցաղել, վարուիլ։ -able քըմբօրթ՛էպըլ, *a.* յարմար, վայելուչ։

**Compose** քըմբօ՛զ, *va.* կազմել, բաղադրել, յօդել; 2. շարադրել, հեղինակել, յօրինել; 3. յարդարել, շտկել; 4. հանդարտեցնել, խաղաղցնել; 5. շարել, գրաշարել տպ. Composing-stick. գրաշարոց տպ.

**Composed** քըմբօ՛զտ, *a.* հանդարտ, խաղաղ։ -ly քըմբօզ՛էտլի, *ad.* հանդարտիկ։ -ness քըմբօզ՛էտնէս, *s.* հանդարտութիւն։

**Composer** քըմբօ՛զըր, երգահան, նուագայօրդար։ [բաղադրեալ։

**Composite** քըմբա՛զիթ, *a.* խառն,

**Compositae** քըմբա՛զիթի, *s.* բարդածաղկունք, -ծաղկեայք, բարդք

**Composition** քըմբօզի՛շըն, *s.* կազմութիւն, յօրինուած; 2. շարադրութիւն; յօրինում; 3. շարակարգութիւն ն; 4. շարած տպ; 5. իրաւախոհութիւն, համաձայնում։ — of forces. բաղադրութիւն զօրութեանց ֆզ.

**Compositive** քըմբա՛զիթիվ, *a.* բաղադրական։ -tor -բա՛զիթըր, *s.* կազմող, կարգադրող; 2. գրաշար։

**Compost** քամ՛բօսթ, *s.* պարարտութիւն, աղբ(ախուղբ)։ =*va.* պարարել, աղբել (արտերը)։

**Composure** քըմբօժ՛ըր, *s.* յօրինում, շարադրութիւն; 2. հան-

գարտուԹիւն, անդորրուԹիւն։

Compound քըմփաունտ՛, *va.*[for, with] յօդել, բաղադրել; 2. իրաւախոհ լինել։ =*va.* համաձայնիլ, իրաւախոհ ըլլալ։ To—a felony. գողօնն առնելով գողին ներել։

Compound քամ՛փաունտ, *adj.* բաղադրեալ, խառն, բազմամասն, բարդ ի բարդ։=*s.* բաղադրուԹիւն; 2. շրջափակ, բակ աrուա, hավլր. —word. բարդ՝ բաղադրեալ բառ։ —er քըմփաունտ՛ըր, *s.* բաղադրիչ; 2. հաշտեցնող; 3. վկայեալ։

Comprador քօմփրէտօր՛, *s.* բնիկ գործակատար ի Չին ևն.

Comprehend քամփրիհէնտ՛, *va.* պարփակել, բովանդակել; 2. իմանալ, վերահասու ըլլալ։

Comprehensible քամփրիհէնս՛ի-պըլ, *a.* պարփակելի, իմանալի։ —ness, —bility քամփրիհէնսիպըլ՛նէս, քամփրիհէնսիպիլ՛իթի, *s.* իմանալիուԹիւն; 2. իմացականուԹիւն։

Comprehension քամփրիհէն՛շըն, *s.* ընդարձակուԹիւն; 2. տարողուԹիւն; 3. համառօտուԹիւն; 4. իմացում, ըմբռնում։

Comprehen'sive —սիվ, *a.* ընդարձակ, լայնածաւալ։ —ly, *ad.*

Compress քըմփրէս՛, *va.* սեղմել, գրկել; 2. համառօտել, խճողել։ = քամ՛փրէս, *s.* վէրքի բարձիկ, կոխան։

Compressible քըմփրէս՛իպըլ, *a.* ճնշական։ —ness, —bility քըմփրէս՛իպըլնէս, քօմփրէսիպիլ՛իթի, *s.* ճնշականուԹիւն, ճնշելիուԹիւն։

Compression, —ressure քըմփրէշ՛ըն, —փրէշ՛ըր, *s.* ճնշում։ [կան։

Compressive —րէս՛իվ, *a.* ճնշա-

Compressor —րէս՛ըր, *s.* ճնշիչ։

Comprise քըմփրայզ՛(զ), *va.* պարունակել, բովանդակել։ —isal քըմփրայզ՛ըլ, *s.* բովանդակուԹիւն։

Compromise քամ՛փրօմայզ(զ), *s.* իրաւախոհուԹիւն, համաձայնում; 2. գործը իրաւարարաց յանձնելը =*va.* իրաւախոհուԹեամբ լմնցնել; 2. վտանգել։

Compromit քամ՛փրօմիթ, *s.* խոստանալ, գրաւ դնել; 2. վտանգել, վտանգի ենԹարկել։

Comptroller քանթ՛րօլլըր, *s.* համարատու, քննող, հակակշռող։

Compulsative, —satory, —sory քըմփըլսէյ՛թիվ, քըմփըլ՛սէյթըրի, քըմփըլ՛սըրի, *a.* բռնի, ստիպողական, հարկեցուցիչ։

*Compulsion քըմփըլ՛շըն, *s.* ըստիպում, բռնադատուԹիւն։

Compulsive քըմփըլ՛սիվ, *a.* պարտաւորիչ, բռնի, ակամայ։ —ly, —sorily քըմփըլ՛սիվլի, քըմփըլ՛սըրիլի, *ad.* բռնուԹեամբ, բռնի։

*Compunction քըմփընք՛շըն, *s.* զիղջ, ապաշաւ; 2. տրտմուԹիւն։

Compunctious քըմփընք՛շըս, *a.* ցաւագին, զղջական, տրտում։

Compurgation քամփըրկէյ՛շըն, *s.* այլոց երդումներով անմեղուԹիւնը հաստատելը։ —tor քամփըրկէյ՛թըր, *s.* վկայ։ [հաշուելի։

Computable քըմփիութ՛էպըլ, *s.*

Computation քամ՛—, *s.* հաշիւ։

Compute քըմփիութ՛, *va.* հաշուել, հաշիւ ընել; 2. Թուել։

Comrade քամ՛րէյտ, *s.* ընկեր։

Comtism քօնթ՛իզմ, *s.* դրական փիլիսոփայուԹիւն (ըստ Օ. Քօնդի)։

Con քան, *abbr. of* Contra. հակա Pro and con. Թերն ու դէմը։

Con քան(զ), *va.* վերծանել, որոճալ, ուսանիլ։ [նել։

Conation քընէյ՛շըն, *s.* ճիգ ընել

Conative քօ՛նէթիվ, *a.* ջանքի։

Concamerate քընքէմ՛ըրէյթ, *va.* կամար ձգել։ —tion, *s.* կամար ևն.

Concatenate քընքէթ՛ընէյթ, *va.* շղԹայել, կապել։ —tion քընքէթը-

նէյ'շըն, s. շղթայում, յեռում, կապ։

Concavation քանքէվէյ'շըն, s. գոգելը, գոգաւորում; գոգաձեւում։

Concave քան'քէյվ, a. գոգաւոր, գոգ, խորամէջ։ =s. փոս, գոգ, կամար։ =va. գոգել, փորել, փոսել։ Concavo-concave քընքէյվօ-քան'քէյվ, երկգոգաւոր։ Concavo-convex քընքէյվօ-քան'վէքս, գոգկորընթարդ, կորընթագոգ։ -ness քան'քէյվ'նէս, s. գոգաւորութիւն, խորութիւն։

Concavity քընքէվ'իթի, s. գոգաձեւ մաս՝ կողմ, գոգած; խոռոչ։

Concav'ous քըն-, a. գոգաւոր։

*Conceal քընսիյլ'(զ), va. ծածկել, պահել։ -able քընսիյլ'էպլ, a. ծածկելի։ -er -սիյլ'ըր, s. պահող։ -ment քընսիյլ'մէնթ, s. պահելը; 2. թաքստոց; 3. գաղտնիք։

Concede քընսիյտ', va. [to] զիջանիլ, թոյլ տալ; 2. շնորհել, տալ։ vn. զիջողութիւն ընել, շնորհք ընել։

Conceit քընսիյթ', s. խորհուրդ, երեւակայութիւն, յղացում (մըտաց); 2. անճաշակ իմաստք; 3. կարծիք, գաղափար; 4. ինքնահաւանութիւն, ձնապարծութիւն։ =an. խորհիլ, երեւակայել, դատել։

Conceited քընսիյթ'էտ, a. [of] անձնասէր, ինքնահաւան։ -ly, ad.

Conceivable քընսիյվ'էպլ, a. հասկընալի, ըմբռնելի, երեւակայելի։ -ness քընսիյվէպ'ըլնէս, s. -ութիւն։ -vably քընսիյ'վէպլի, ad. իմանալի կերպով։

Conceive -սիյվ', va. [of] յղանալ, ծոցւորիլ; 2. երկնել, խորհիլ; նկարել ի մտի, երեւակայել։ =vn. յղի ըլլալ; 2. միտք՝ խորհուրդ ունենալ։

Conceiver -սիյվ'ըր, s. երկնող։

Concent', s. ներդաշնակութիւն։

Concenter, -tre քընսէն'թըր(զ), vn. կեդրոնանալ, ամփոփուիլ; =va. կեդրոնացնել, համախմբել։

Concentrate քըն'սէնթրէյթ, va. կեդրոնաւորել, հաւաքել։ -tion քընսէնթրէյ'շըն, s. կեդրոնացում; 2. ամփոփում; 3. համախմբում; 4. զօրացում ք. -tive քընսէնթ'րէյթիվ, a. ամփոփիչ։

Concentric քընսէնթ'րիք, a. համակեդրոն։ -ally, ad.

Concentricity քանսէնթ'րիսիթի, s. համակեդրոնութիւն։

Concept քան'սէփթ, s. մտքի տեսիլ, պատկեր քիլ։

Conception քընսէփ'շըն, s. յղութիւն, յղացում; 2. ծնունդ մտաց, խորհուրդ, յղութիւն; 3. ըմբըռնում, հասողութիւն։ -tive քընսէփ'թիվ, a. իմացական, իմացողական; 2. յղանալի։

Concern քընսըրն'(զ), va. [at, for, in] վերաբերիլ, պատկանիլ; 2. հետաքրքրիլ, հոգածու լինիլ; 3. նեղել, վշտացնել։ =s. գործ, բան, զբաղում; 2. հոգածութ, փոյթ; 3. կարեւորութիւն; 4. հիմնարկութ, տուն վճ. -edly -'էտլի, ad. խնամօք, հոգածութեամբ; 2. վշտագին։

Concerning քընսըրն'ին, pr. նըկատմամբ, վրայ, մասին, համար։

Concernment քընսըրն'մէնթ, s. գործ, հոգածութիւն; 2. կարեւորութիւն; 3. միջամտութիւն; 4. անձկութիւն, տագնապ։

Concert քընսըրթ', va. (միասին) խորհիլ, կարգադրել, յարմարցնել։ =vn. յարմարիլ, համաձայն գործել; 2. խորհրդակցիլ; 3. ներդաշնակել= քան'սըրթ, s. միաբանութիւն, համաձայնութիւն; 2. ներդաշնակութիւն; 3. նուագահանդէս, կացուրդ։ -pitch. ձայնացոյց, ձայնաչափ գ. [նադաշնակ սամօնիք։ [It.]

Concertina քանսըր'թինէ, s. ձեռ-

Concerto քըն'սէրթօ, s. գեղեցկայարմար նուագ։

Concession քընսէշ'ըն, s. հաւանութիւն, արտօնութիւն; 2. զիջում, շնորհ; 3. զիջողութիւն; 4. շնորհեալ՝ արտօնեալ իր. -ist քանսէշ'ընիսթ, s. արտօնող, թոյլատրող։

Concessive քընսէս'իվ, a. հաւանութեան; 2. արտօնութեան։

Conch քանք, s. ծովային խեցի, կոնք; 2. խորան սրբութեան եկ.

Concha քանք'ը, s. ականջակոնք։

Conch'oid, s. կոնքակերպ երկ.

Conchology քընքալ'ըճի, s. խեցեբանութիւն։ -gical քանքօլաճ'իքըլ, a. խեցեբանական։

Conciliate քընսիլ'իէյթ, va. հաշտեցնել; 2. գրաւել, շահիլ։ -tion քանսիլիէյ'շըն, s. միաբանութիւն; հաշտութիւն։ -tor քանսիլիէյ'թըր, s. հաշտարար, համոզկեր։

Concise քընսայս', a. հակիրճ, կարճառօտ, կուռ, սեղմ. -ly -լի, ad. ի հակիրճ։ -ness քընսայս'նէս, s. համառօտութիւն։

Concision քընսիժ'ըն, s. կտրուածք, հատում; 2. թլփատութ.

Conclave քան'քլէյվ, s. պապընտիր ժողով, փակարան; 2. գաղտնի ժողով։

Conclude քընքլուտ', va. աւարտել, լմնցնել; 2. վերջնապէս հաստատել, կնքել։ =vn. լմննալ; 2. որոշել։

Conclusion քընքլու'ժըն, s. կատարում, վերջ, կնիք, վերջաւորութիւն, աւարտ; 2. վերջնական որոշում; 3. հետեւութիւն, եզրակացութիւն; 4. վախճան (ճառի), կնիք բանին; 5. պահանջ։

Conclusive քընքլու'սիվ, a. վերջին, որոշիչ, եզրակացուցիչ, վըճռական. -ly, ad. վճռաբար։

Concoct քընքաքթ', va. հալել, մարսել; 2. հասունցնել; 3. հնարել, նիւթել։ -er քընքաքթ'ըր, s. հալիչ, մարսեցուցիչ։

Concoction քընքաք'շըն, s. մարսողութիւն, մարսում; 2. հասուննալը; 3. երկնում, յղացում։ -tive քընքաք'թիվ, a. մարսիչ, հասունցնող։

Concomitance, -tancy քընքամ'իթէնս, -թէնսի, s. զուգընթացութիւն, համընթացութիւն։

Concomitant քընքամ'իթէնթ, s. զուգընթաց, համընթաց։ =s. ընկեր, ընթացակից։ -ly, s. ի միասին։

Concord քան'քօրտ, s. միաբանութիւն, յարմարութիւն, ներդաշնակութիւն; 2. համաձայնութիւն +; 3. դաշնաձայնութիւն եր; 4. ուխտ, դաշն։

Concordance քընքօրտ'ընս, s. համաձայնութիւն, միաբանութ.; 2. համաբարբառ (Ս. Գրոց)։

Concordant քընքօրտ'ընթ, s. համաձայն, միաբան; 2 ներդաշնակ։ -ly, ad. համաձայնութեամբ։

Concordat -'տէթ, s. դաշանց թուղթ (պապի՝ թագաւորի մը հետ)

Concorporate քընքօր'փըրէյթ, vn. խառնել, միացնել։

Concours քոն'քուր, s. գործակցութիւն, աջակցութիւն, զուգընթացութիւն; 2. ժողով, ամբոխ։

Concrement քան'քրիմէնթ, s. թանձրացում; 2. մածում։

Concrescence քանքրէս'էնս, s. աճում; 2. մածուած։

Concrescive քանքրէս'իվ, a. միասին աճեցող, զարգացող։

Concrete քան'քրիյթ, a. թանձրացեալ (անուն, թիւ), ոչ-վերացեալ. =s. ձոյլ՝ թանձր մարմին; 2. զանգուած, մածիկ ; 3. թանձրացեալ եզր տր. =քընքրիյթ', an. թանձրացնել, խտացնել; 2. թանձրանալ։ -ly, ad. -ness, s. թանձրացում։

Concretion քընքրի'շըն, s. թանձրացում, մակարդում; 2. թանձրանիւթ, կցուած (քարերու)։

Concretional քընքրիշ'ընըլ, *a.* մա-

Concretive քընքրի'թիվ *a.* [կարդի թանձրացնող, թանձրացուցիչ։

Concubinage քանքիու'պինէյճ, *s.* անպսակ կենակցութիւն, հարճեւորութիւն։

Concubinal,-nary քընքիու'պինըլ, քանքիու'պինըրի, *a.* հարճեւորի։

Concubine քանք'իուպայն, *s.* ապօրինաւոր կին, հարճ օտալըք։

Concupiscence քընքիու'փիսընս, *s.* ցանկութիւն, տռփանք։

Concupiscent քանքիու'փիսընթ, *a.* ցանկասէր, վավաշոտ, տռփոտ։

Concur քընքըր'(դ), *vn.* [with *a punishment,* in *a measure,* to *an effect;* on] համաձայնիլ, զուգընթանալ; 2. միաբանակցիլ, համամիտ ըլլալ։

Concurrance քընքըր'րընս, *s.* զուգընթացութիւն, միաբանութ; 2. գաղափարակցութիւն, գործակցութիւն; 3. հաւասար իրաւունք։

Concurrent քընքըր'րընթ, *a.* զուգընթաց, գործակից; 2. ընկեր, կցորդ; 3. հաւասար։ =*s.* յարակից պատճառ։ -ly, *ad.* ի միասին։

Concussion քընքըշ'ըն, *s.* ցընցում, ընդհարում; 2. հարուած։

Concussive քընքըս'սիվ, *a.* ցնցող։

Condemn' քընտէմ', *va.*(-demned -տէմտ, -demning տէմ'նինկ), to *a punishment* for *a crime* դատապարտել, պախարակել, ելերել; 2. անգործութեան դատապարտել։ -able քանտէմ'նէպլ, *a.* դատապարտելի, մեղադրելի։ -ation քանտէմնէյ'շըն, *s.* դատապարտութիւն; 2. դատակնիք։ -atory քընտէմ'նէյթըրի, *a.* դատապարտիչ։

Condemner քընտէմ'նըր, *s.* դատապարտիչ, մեղադրող։ [խտանալի։

Condensable քընտէն'սէպլ, *a.*

Condensate քընտէն'սէյթ, *vn.* խտացնել; 2. խտանալ, հոծիլ։

Condensation քանտէնսէյ'շըն, *s.* խտացում։ -tive քընտէն'սէյթիվ, *a.* խտացուցիչ, խտական։

Condense քընտէնս'(դ), *va.* խըտացնել, սեղմել; 2. խճողել, ամփոփել։ =*vn.* խտանալ։ [տացուցիչ։

Condenser քընտէն'սըր, *s.* խը-

Condescend քանտիսէնտ', *vn.*[to] զիջանիլ, խոնարհիլ; 2. բարեհաճիլ։ -ingly -տ'ինկլի, խոնարհութեամբ։

Condescension քանտիսէն'շըն, *s.* խոնարհութ; 2. շնորհ, քաղցրութ.

Condign քընտայն', *a.* արդար (պատիժ), արժանաւոր։ -ly քընտայն'լի, *ad.* արժանապէս։ -ness, *s.* արժանիք, յարմարութիւն։

Cond'iment քանտ'իմընթ, *s.* համեմունք, թացան *kimkf* գարքըղը։

Condisciple քանտիսայ'փլ, *s.* դասակից, աշակերտակից, դասընկեր։

Condition քընտիշ'ըն, *s.* վիճակ, կացութիւն; որպիսութիւն, հանգամանք; 2. յատկութիւն, պայման; պայմանադրութիւն, դաշն, հիմ; 3. տարր։ =*vn.* պայման դնել։ In-. գէր, լեցուն։ Out of-. տկարակազմ, յոյր։ An express-. որոշ պայման։ On-of . . . *or* that . . . պայմանաւ որ . . . ; միայն թէ . . .։

Conditional քընտի'շընըլ, *a.* թէական, պայմանաւոր, պայմանական։ -ity քընտիշընէլ'իթի, *s.* պայմանականութիւն։ -ly քընտիշ'ընըլլի, *ad.* պայմանաւ որ, պայմանաւ։

Conditioned քընտի'շընտ, *a.* պայմանեալ։ Well-. բարեկազմ, ընտիր։ Ill-. գէշ յոռի կերպով։

Conditory -'տիթըրի, *s.* դարան։

Condole քընտօլ', *vn.* ցաւակցիլ։ -ment,-nce քընտօլ'մընթ, քընտօլ'ընս, *s.* ցաւակցութիւն, վշտակցութիւն; -ler քօնտօլ'ըր, *s.* վշտակից։

Condone քընտօն', *va.* (ամնա-

նոյն) ներել: -nation քանտօնէյ՛շըն, s. ներում, ներելը:

Condor քան՛տըր, s. վարազաչաւ:

Conduce քընտիւ՛ս(տ), vn. [to] պատճառել, ածել, առաջնորդել; 2. նպաստել:

Conducible, -dusive քընտիւ՛սիպլ, քընտիւ՛սիվ, a. առաջնորդող, ածող: -ness, -bility քընտիւ՛սիպլնէս, քընտիւսիվ՛նէս, քընտիւսիպիլ՛իթի, s. պիտանութիւն, օգտակարութիւն; 2. պատճառ:

*Conduct քընտաքթ՛, va. առաջնորդել, տանել; 2. վարել, քշել; 3. ուղղել: =vn. գործել: =քան՛տըքթ, s. առաջնորդութիւն, ուղղելը, վարելը; 2. վարչութիւն, հրամանատարութիւն; 3. առաջնորդ, վարիչ; 4. ընթացք, վարք:

Conductible քընտըքթ՛իպլ, a. հաղորդական, վարելի: -tibil'ity քանտըքթիպիլ՛իթի, s. հաղորդականութիւն; 2. վարչութիւն:

Conduction քընտըք՛շըն, s. անցք, ջերմանց, անցումն ջերմութեան կամ ելեկտրականութեան հաղորդարար մարմնոց մէջ ևն.

Conductive քընտաք՛թիվ, a. հաղորդիչ: -tivity քանտըքթիվ՛իթի, s. հաղորդարարութիւն:

Conductor քընտըքթ՛ըր, s. վարիչ, ուղղիչ, առաջնորդ; 2. կառուղիղ; տոմսաքաշխ; 3. հաղորդիչ (ձող) ևն. -tress քընտըքթ՛րէս, a. վարիչ կին

Conduit քան՛-, քըն՛տիթ, s. ագուգայ, ցնցուղ, փողրակ

Conduplicate քընտիւ՛փլիքէյթ, a. ծալուած, կրկնուած ևն.

Condyle քան՛տիլ, s. որոթ. յօդուածոց կլոր ծայրը: *See* Cotyle.

Condyloid -լօյտ, a. կռանաձև:

Con'dylope, -lopod քան՛տիլօփ, քանտիլ՛օփօտ, s. յօդոտանիք:

Cone քօ՛ն, s. բուրգ, կոն; 2. կոնաձև պտուղ, խողակ ևն.

Confab, -ulation քան՛ֆէպ, քըն-ֆէպ՛իւ-լէյշըն s. ընտանի խօսակցութ

Confabulate քընֆէպիւ՛լէյթ, vn. շաղակրատել:

Confect, -ion, -ionary քան՛-ֆէքթ, քընֆէք՛շըն, քընֆէք՛շըների, s. քաղցրաւենի, բանդակ: [գործ:

Confec'tioner քըն-, s. շաքարա-

Confederacy, -tion քընֆէտ՛ըրէյսի, քընֆէտ՛ըրէյշըն, s. դաշնակցութիւն, նիզակակցութ; 2. դաշնակիցք; 3. դաւադրութիւն ևր.

Confederate քընֆէտ՛ըրէյթ, a. դաշնակից: =vn. դաշնակցիլ, դաշնակից ըլլալ: -tive, a. -կցական:

Confer քընֆըր՛(ր), va. [on, upon, with] տալ, շնորհել, ընծայել: =vn. խօսակցիլ, խորհրդակցիլ; 2. բաղդատել: -able, a. շնորհելի, տալի:

Conference քան՛ֆըրընս, s. խորհուրդ, բանակցութիւն; 2. (դեսպանա)ժողով; 3. համաժողով; 4. խօսակցութիւն, տեսութիւն:

Conferva քընֆըր՛վէ, s. (*pl.* -væ -վի) ջրամամուռ, մամռատունկ:

*Confess քընֆէս՛(ս), va. խոստովանիլ; 2. վկայել, յայտնել; 3. դաւանիլ (դ՛Քրիստոս); 4. խոստովանանք ըլլալ՝ ընել: -edly քընֆէս՛-սէտլի, ad. խոստովանաբար; անվէճ:

Confession քընֆէշ՛ըն, s. խոստովանութիւն; 2. խոստովանանք; 3. դաւանագիր, դաւանութիւն: -al -շ՛ընէլ, s. խոստովանանքի խցիկ, խոստովանոց, տուփ: -ary քընֆէշ՛ընէրի, a. (ականջալուր) խոստովանանքի: [որոշ, բացայայտ:

Confest քընֆէսթ՛, a. յայտնի,

Confessor քընֆէս՛ըր, s. խոստովանող; 2. (զՔրիստոս) դաւանող; 3. խոստովանահայր:

Confidant: -dante քանֆիտէնթ՛, քընֆիտէնթ՛, s. մտերիմ; մտերմուհի:

**Confide** քընֆա՛յտ, *vn.* [in, to] հաւատալ, վստահիլ։ =*va.* ձեռքը յանձնել, աւանդել։

**Confidence** քա՛նֆիտընս, *s.* վստահութիւն, հաւատալը; 2. յանձնապաստանութիւն, անձին վստահութիւն; 3. յոյս, քաջութիւն։ In—. մտերմաբար, գաղտնի կերպով։ To inspire with—. վստահացընել։ -man. այլոց վստահութիւնն չարաչար գործածող; նենգաւոր։

**Confident** քա՛նֆիտընթ, *a.* մտերիմ, սրտակից։ –ial քա՛նֆիտէ՛նշըլ, *a.* մտերմական; գաղտնի կերպով։ –ly քա՛նֆիտէ՛նշըլլի, *ad.* վստահաբար

**Configure** քընֆի՛կիուր(ը), *va.* ձեւակերպել, կերպարանել, ձեւ տալ։ –ation քանֆիկիուրէ՛յշըն, *s.* արտաքին ձեւ, կերպարանք; 2. կերպաւորութիւն աստ. [մանելի։

**Confinable** քընֆա՛յնէպլ, *s.* սահ-

**Confine** քա՛նֆայն, *s.* սահմանագլուխ, սահման; ծայր։ =քընֆա՛յն, [on, with] *va.* սահմանել, որոշել; 2. ամփոփել; 3. ճնշել; 4. բանտել, փակել, արգիլել։ =*vn.* սահմանակից ըլլալ, եզերել։ To be confined. ծննդական լինել։ To be confined in the bowels. փորը պինդ ըլլալ։ –ment -մընթ, *s.* բանտարգելութիւն; 2. տունը արգելուիլ մնալ; 3. տղացկանութիւն։

**Confiner** քընֆա՛յնըր, *s.* բանտարկող; =քա՛նֆայնըր, *s.* եզերաբնակ, դրացի, սահմանակից։

**Confirm** քընֆըրմ՛(ը), *va.* հաստատել, հաւաստել; 2. վաւերացընել; 3. դրոշմ տալ եկ. –able քընֆըր՛մըպլ, *a.* հաստատելի։

**Confirmation** քանֆըրմէ՛յշըն, *s.* հաստատութիւն, հաստատում; 2. վաւերացում; 3. կնիք, դրոշմ եկ. –tive -մ՛էթիվ, *a.* հաստատող։ -tory -թըրի, *a.* հաստատական; 2. դրոշմի։

**Confiscable** քանֆիսգ՛էպլ, *a.* գրաւելի։

**Confiscate** քա՛ն-, քընֆիս՛գէյթ, *va.* յարքունիս գրաւել։ =*a.* գրաւեալ յարքունիս։ –tion քանֆիսգէ՛յշըն, *s.* գրաւում։ –tor -թըր, *s.* գրաւող։ –tory -թըրի, *a.* գրաւման։

**Conflagration** քանֆլէկրէ՛յշըն, *s.* ընդհանուր հրկիզում, հրայրեացք։

**Conflict** քա՛նֆլիքթ, *s.* ընդհարում, բաղխիւն; կռիւ, մարտ, պայքար; վէճ, տագնապ։ =քընֆլիքթ՛, *vn.* ընդհարիլ, բաղխիլ; 2. մաքառիլ, մարտնչիլ։ –ing, –ive քընֆլիք՛թինկ, քընֆլիք՛թիվ, *a.* մաքառող, մարտնչող։

**Confluence** քա՛նֆլուընս, *s.* գետախառնունք, խառնըրդք, կցուած; 2. խուռն բազմութիւն, ամբոխ։

**Confluent** քա՛նֆլուընթ, *s.* միախառն, համահոսան (գետ); 2. կից (կողման, ըլթակ) եւ. =*s.* օժանդակ գետ, վտակ; 2. կցուած։

**Conflux** քա՛նֆլըքս, *s.* կցուած; 2. ամբոխ, խառնիճաղանճ։

**Conform** քընֆօրմ՛(ը), *vn.* [to, with] նմանիլ, յարմարիլ; համակերպիլ, զիջանիլ։ =*va.* կերպարանել, նմանցնել; 2. ձեւ տալ, յարմարցնել

**Conformable** քընֆօրմ՛էպլ, *s.* [to, with] նմանատիպ, համաձայն, համատիպ; 2. հլու, հնազանդ; 3. պատշաճ, յարմար (կերպով); 4. զուգակազմ երկ. –ness, –mability, *s.* -ութիւն։ –mably, *ad.* համեմատ։

**Conformate** քընֆօր՛մէյթ, *a.* նըմանակերպ։ –tion քանֆօրմէ՛յշըն, *s.* [to] կազմութիւն, յարմարութիւն, ձեւ; 2. նմանութիւն։

**Conformist** քընֆօր՛միսթ, *s.* դաւանակից, հաւատակից (Անգլիական եկեղեցւոյ)։

**Conformity** քընֆօր՛միթի, *s.* [to, with] նմանութ. համաձայնութ. հա-

մագոյն հնչում; 2. դաւանակցութ.

Confound քընֆաունտ՛, *va.* իրար խառնել, խառնակել, շփոթել; 2. աւերել, ապականել; 3. շուարեցընել, ամչցնել, շփոթցնել:

Confounded քընֆաունտ՛էտ, *a.* խառն, շփոթ, շուարած; 2. ահագին, անիծեալ: -ly քընֆաունտ՛էտլի, *ad.* սոսկալի կերպով, կատաղաբար; 2. մեծապէս: -ness, *s.* շփոթութ. -er քանֆաունտ՛ըր, *s.* շփոթող, աւերող

Confraternity քանֆրէթըր՛նիթի, *s.* եղբայրակցութիւն:

Confrere քան՛ֆրէյր, *s.* եղբայրակից, պաշտօնակից:

Confrication քանֆրիքէյ՛շըն, *s.* համաշփում, շփում:

Confront քընֆրընթ՛ *va.* [with] դէմադէմ բերել, երեսել; 2. ճակատիլ, հակառակիլ; 3. բաղդատել: -ation քանֆրընթէյ՛շըն, *s.* դէմադէմ բերելը, երեսելը; 2. բաղդատութ:

*Confuse քընֆիուզ՛(զ), *va.* խառնակել, շփոթել; 2. խանգարել, խռովել, տագնապել:

Confused քընֆիուզտ՛, *a.* շփոթ, խառնափնդոր; 2. աղօտ, մթին; 3. ամօթապարտ: -ly -զ՛էտլի, *a.* խառնիխուռն, շփոթ կերպով: -ness քանֆիու՛զէտնէս, *s.* շփոթութիւն, խառնակութիւն; 2. աղօտութիւն:

Confusion քընֆիու՛ժըն, *s.* խառնակութիւն, շփոթութիւն; 2. աղմուկ, խուճապ, խռովութիւն; 3. ամօթ, կորանք:

Confut'able քընֆիութ՛էպլ, *a.* [հերքելի:

Confut'ant -ֆիութ՛ընթ, *s.* ջրող:

*Confute քընֆիութ՛, *va.* կարկեցընել, լռեցնել; 2. ջրել, հերքել: -tation քանֆիութէյ՛շըն, *s.* եղծ, հերքում:

Conge' քան՛ճի, քօն՛ժէ, *s.* (մեկնելու) հրաման; 2. հրաժեշտ; 3. արձակուրդ; 4. խոնարհութիւն, ողջոյն; 5. խորոփիկ զէհ ճ. =*vn.* (Conge'ed քանճիտ, քօնժէյտ, -géing), հրաժեշտ առնուլ: Congé d'elire քօնժէյտիլիր՛, *s.* հրովարտակ եպիսկոպոսական ընտրութեան: [F.]

Congeal քընճիյլ՛(զ), *va.* սառեցընել; 2. պակուցանել: =*vn.* սառիլ, փայտ կտրիլ, սառոյց բռնել: -able քընճիյլ՛էպլ, *a.* սառելի: -ment քընճիյլ՛մէնթ, սառում, սառած

Congelation քանճիլէյ՛շըն, *s.* սառուցում, սառում; 2. պաղած, դոնդող; 3. պաղլորակք (զարդ) ճ.

Congener քան՛ճինըր, *s.* համազգի. համատոհմ:

Congenial քընճին՛իյըլ, *a.* [to, with] համաբուն; 2. համամիտ; 3. համազգի: -ity, -ness քանճինիէլ՛իթի, քանճինիէլ՛նէս, *s.* ազգակցութիւն:

Congenital, -genite քանճէն՛իթըլ, քանճէն՛իթ, *a.* համածին, ծնընդակից; 2. ի ծնէ, ընդաբոյս:

Conger, -eel քանկ՛ըր, քանկ՛ըրիյլ, *s.* օձաձուկ ծովու, կրոն:

Congeries քընճի՛րիիզ, *pl.* դէզ:

Congest քընճէսթ՛, *va.* դիզել, կուտել, խռնել: -ion քընճէս՛չըն, *s.* կուտակում, համախռնում; 2. արեան հաւաք բժ. -ive քընճէսթ՛իվ, *a.* արիւնակոյտի: [*s.* սառում:

Conglaciation քընկլէյշիէյ՛շըն,

Conglobate քընկլօ՛պէյթ, *a.* գընդաձեւ: -tion քանկլօպէյ՛շըն, *s.* գընդաձեւելը; 2. բոլորակ: [կել:

Conglobe քընկլօպ՛, *va.* գնդա-

Conglomerate քընկլամ՛ըրէյթ, *a.* համախմբեալ, դիզուած; 2. բարդ (տերեւ, ծաղիկ); շեղջաղօդ (.քար), հանաղանգ երկ. =*s.* համախմբութ. =*va.* գնդաձեւ կուտել: -tion քանկլամըրէյ՛շըն *s.* հաւաքում, կուտակում

Conglutinant քանկլիու՛թինընթ, *a.* մածիչ, փակցնող, մածուցիկ:

Conglutinate քընկլիու՛թինէյթ,

*va.* մածել, փակցնել, սոսնձել։ =*vn.* կցել, յօդել։ =*a.* իրար փակած ։ –tion քօնկլիւթինէյ՛շըն, *s.* մածում, փակցնելը։ –tive քօնկլիւթինէյ՛թիվ, *a.* մածուցիչ, մածուցիկ։

Con′go, Con′gou, *s.* սեւ չայ (վերնոց)։ [*s.* ուրախակից։

Congratulant քընկրէթ՛իուլընթ,

*Congratulate քընկրէթ՛իուլէյթ, [on, upon, with] *va.* շնորհաւորել, խնդակցիլ։ -tion քընկրէթիուլէյ՛շըն. *s.* շնորհաւորութիւն, աչքի լոյս։ –tor -լէյ՛թըր, *s.* խնդակցող։ –tory -լէյ՛-թըրի, *a.* շնորհաւորական։

Congregate քօն՛կրիկէյթ , *an.* հաւքել, ժողվել ; 2. հաւաքուիլ։ –tion քըն՛կրիկէյ՛շըն, *s.* հաւաքում, ժողով ; 2. եղբայրութիւն, ուխտ։

Congregational -կրիկէյ՛շընըլ, *a.* ժողովոյ, միաբանութեան ; 2. ժողովականաց Յր. -church. ժողովական եկեղեցի։ –ism -իզմ, *s.* ժողովականութիւն Յր. –ist քօնկրիկէ՛-շընըլիսթ, *s.* ժողովական , Անկախ (բողոքական)։

Congress քօն՛կրէս, *s.* հաւաքում, ժողով ; 2. վեհաժողով ; 3. ծերակոյտ եւ երեսփոխանք Ամ; 4. (գիտական) համաժողով։ -man. ծերակոյտի անդամ, ծերակուտական։ –ional քօնկրէշ՛ընըլ, *a.* վեհաժողովի, ծերակոյտի։ –ive քօնկրէ՛սիվ, *a.* հաւաքող, համդիպող ։

Congruence քօն՛կրուընս, *a.* յարմարութ., վայելչութ., նմանութ.։

Con′gruent, -gruous քօն՛կրու-ընթ , քօն՛կրուըս, *a.* նմանակերպ, համաձայն; 2. համաձայն, յարմար։ –ly քօն՛կրուըսլի, *ad.* –կերպով ։

Congruity քընկրու՛իթի, *s.* պատշաճութ. նմանութ. համդիպութ։

Conic, –al քան՛իք, քան՛իքըլ, *a.* կոնաձեւ, կոնական ։ –ally քան՛իքըլլի, *ad.* կոնի ձեւով։ –alness քան՛իքըլնէս, *s.* կոնաձեւութիւն։

Conics քան՛իքս, *s.* Sing. կոնագիծք; *pl.* կոնական հատուածք որ եւ Conic Sections. [Նալբեր Բն.

Coniferous քօնիֆ՛ըրըս, *a.* կո-

Con′iform -ֆօրմ, *a.* կոնաձեւ։

Conia, Conine քօ՛նիէ , քօ՛նին, *s.* խնդամոլիտ (թոյն) Դ.

Conjecturable քընճէք՛չըրէպլ, *s.* գուշակելի, կարծելի։

Conjectural քընճէք՛չըրըլ, *a.* կշռադատական, կարծիական։ –ly, *ad.* կարծեօք, ի կարծ։

Conjecture քընճէք՛չըր, *s.* վարկած, կռահում, կարծիք։ =*va.* կարծել, կարծիքով դատել , կռահել։ –turer քընճէք՛չըրըր, *s.* կռահող։

Conjoin քընճօյն՛(դ), *va.* միաւորել, յօդել, զօդել ; 2. ամուսնացնել։ =*vn.* միանալ, դաշնակցիլ։ =*a.* կից, յարակայ, զուգակից։ –ly, *ad.* ի միասին, միանգամայն։

Conjugal, –jugial քան՛ճուկըլ, –՛ճուկիըլ, *a.* ամուսնական ։ –ity քանճուկէլ՛իթի, *s.* ամուսնական վիճակ։ –ly քանճու՛կըլլի, *an.* ամուսնօրէն, իբր այր ու կին։

Conjugate քան՛ճուկէյթ , *va.* (բայը) լծորդել , խոնարհել։ =*a.* լծորդ (բառ), զուգակից։

Conjugation քանճուկէյ՛շըն, *s.* խոնարհում Ք; 2. լծորդութիւն Ք.

Conjunct քընճընք՛թ՛, *a.* կից , զոյգ ։ –ion քընճընք՛շըն, *s.* կցորդութիւն; 2. միաւորութիւն; 3. համդիպութիւն ասղ ; 4. շաղկապ Ք.

Conjunctiva քընճընքթ՛այվէ , *s.* ակնաղօթ, զօդական աչաց մբդ.

Conjunctive քընճընք՛թիվ, *a.* կից, յօդեալ ; 2. միաւորիչ ; 3. ըստորադասական Ք. –ly, *ad.*

Conjunctly քընճընքթ՛լի, *ad.* ի միասին, միաբան։

Conjuncture քընճընք՛չըր, *s.* պա-

բագայ, համգամանք; 2. կապակցութիւն, միաւորութ; 3. պատահակցութիւն։

Conjuration քանճիուրէյ՛շըն, s. երդմնեցուցչութիւն, երդմնեցում; 2. կախարդական խօսքեր, թովչութ

Conjure քընճու՛ր(ր), va. [up] երդմնցնել, կոչել; 2. պաղատիլ։ =քը՛նճըր, va. դիւթել, թովել, կախարդել։ =vn. կախարդութ. ընել։

Conjurer քը՛նճիուրըր, s. ձեռնածու։=քընճըր՛ըր, վհուկ, կախարդ

Connascence, -cy քըննէս՛սէնս, քըննէս՛ընսի, s. համածնութիւն, համածին; 2. ի միասին աճում։ -as'cent քըննէս՛էնթ, a. համարտադրեալ։

Connate քան՛նէյթ, a. համածին, բնածին; 2. համաբոյս (տերեւ)։

Connatural քըննէչ՛ըրէլ, a. համաբուն, ընդաբոյս, բնական։ -ity -չըրէլ՛իթի, s. համաբնութիւն։

Connect քըննէքթ՛, va. [-ed with] կապել, կցել, միացնել։=vn. կապուիլ միանալ։ -edly քըննէք՛թէտլի, ad. կապակցութեամբ, կարգաւ։

*Connection, Connexion քըննէք՛շըն, s. կապակցութիւն, յարաբերութիւն, յարակցութիւն; 2. յարակից իր; 3. ազգական(ութիւն) Close-. սերտ յարաբերութիւն։ In this-. այսու ամենայնիւ։

Connective քըննէքթ՛իվ, a. շարակցական; 2. զօրեղ։ =s. շաղկապ ք. -ly, ad. ի միասին, միահաղոյն։

Connector քըննէքթ՛ըր, s. զօդիչ

Connivance քըննայվ՛էնս, s. աչք խփելը, անտեսութիւն։

Connive քըննայվ՛(ր), vn. աչք գոցել, անտեսել, չտեսնելէն գալ։

Connivent քըննայվ՛ընթ, n. աչք գոցող; 2. զանցառու; 3. թերաքամ, շարպայար (կոնակ) մրթ. [խփող։

Conniver քըննայվ՛ըր, a. աչք

Connoisseur քաննիսը՛ր, հմուտ, գիտակ; 2. քննադատ արուեստագէտ։ -ship, s. հմտութ. (արուեստագիտի)։

Connotative քըննօթ՛էթիվ, a. ակնարկական, նշանակիչ; 2. տրամաբանական թր. [ցցնել, ակնարկել։

Connote-նօթ՛, va. նշաններ տալ,

Connubial -նիու՛պիէլ, a. ամուսնական, հարսանեկան։ [թիւն։

Connumeration, s. թուակցու-

Conoid քօ՛նոյտ, s. կոնակերպ։

*Conquer քան՛քըր(ր), va. յաղթել, տիրել, նուաճել; 2. ժառանգել։ =vn. յաղթական ըլլալ։ -able քան՛քըրէպլ, a. նուաճելի։

Conqueror քան՛քըրըր, s. նուաճող, աշխարհակալ, յաղթական։

Conquest քան՛քուէսթ, s. նուաճում, յաղթութիւն, աշխարհակալութիւն, տիրապետութիւն։

Consanguinous քընսէնկուին՛իըս, a. արենակից։ -nity քընսէն-կուին՛իթի, s. համարիւնութիւն։

Conscience քան՛շընս, s. խիղճ; խղճմտանք; 2. արդարութիւն, գըթութիւն; 3. գիտակցութիւն։ -liberty. խղճի ազատութիւն։-proof. անխիղճ։ -smitten, -struck: խղճահար։-less քան՛շընսլէս, a. անխիղճ, անգիտակից։-ly -լի, ad. գիտակցբար

Conscientious քանշիէն՛շըս, a. խղճահար, երկիւղած։ -ly քանշիէն՛շըսլի, ad. խղճի մտօք։ -ness քանշիէն՛շըսնէս, s. խղճահարութ.։

Conscionable քան՛շընէպլ, a. բարեխիղճ, արդար։

Conscious քան՛շըս, a. [of] գիտակից, գիտակ; 2. ինքնագէտ; 3. իրազեկ, հմուտ; 4. զգացող։ -ly քան՛շըսլի, ad. գիտակցութեամբ, ճանաչմամբ։ -ness քան՛շըսնէս, s. գիտակցութիւն, ճանաչում։

Conscript քան՛սքրիփթ, a. ար-

ձանագրեալ։ —Fathers. Հարք առաքելականք Հ․ =s. դեռընտիր, նորաղէն (զինուոր, նաւաստի) գուրա ասկէրի։ —tion քօնսքրիբ՛շըն, s. վիճակաւ զինուորագրութիւն գուրա չէքմէք; 2. արձանագրութիւն։

Consecrate քօն՛սիքրէյթ, va. նուիրել, նուիրագործել, սրբագործել; 2. օրհնել, օծել, ձօնել։ =a. նուիրեալ, ընծայեալ, օրհնեալ։

Consecration քօնսիքրէյ՛շըն, s. նուիրագործութիւն, (անձնա)նուիրում; 2. աստուածացում; 4. սրբագործում; —tor քօնսիքրէյ՛թըր, s. օծող, նուիրող։

Consecution քօն՛սիքիուշըն, s. յաջորդութիւն; 2. յառաջատութիւն։ —tive քընսէք՛իութիվ, a. յաջորդական, անընդհատ։ —tivly, ad. հետզհետէ, շարունակաբար։

*Consent քընսէնթ՛, s. [to] հաւանութիւն, հաճութ․, համաձայնութիւն, (գաղափարա)կցութիւն։ vn. հաւանիլ, հաճիլ, յանձն առնուլ։

Consentaneous քօնսէնթէյ՛նիըս, a. համաձայն, համեմատ։ —ly քօնսէնթէյ՛նիըսլի, ad. համաձայն, միաբան։ —ness քօնսէնթէյ՛նիըսնէս, s. -ութիւն։ [հաճ, հաւան։

Consentient քընսէն՛շընթ, a.

*Consequence քօն՛սիքուէնս, s. հետեւութիւն, հետեւանք; 2. հետեւորդ դէբ; 3. կապակցութիւն (պատճառի եւ արդեանց)։ In—. ուստի։ In—of. հետեւաբար, ըստ այնմ։ Of—. կարեւոր, ազդեցիկ, հոյակապ։

Consequent քօն՛սիքուէնթ, a. [to, on, upon] հետեւական, հետեւող, ծագեալ։ =s. հետեւութիւն; 2. հետեւորդ դէբ; 3. երկրորդ եզր. (համեմատութեան) ի. —ly քօն՛սիքուէնթլի, ad. հետեւաբար, ուրեմն։

Consequential քօնսիքուէն՛շըլ, a. հետեւական, ապացուցական; 2. մեծութիւն ծախող, պարծուկ։ —ly քօնսիքուէն՛շըլլի, ad. ուղիղ հետեւութեամբ, տրամաբանօրէն; 2. հետեւաբար; 3. ըստ կարգի; 4. փառաւոր կերպով, փառաւորապէս։

Conservable քընսըրվ՛էպըլ, a. պահելի։ [հելը։

Conser′vancy քընսըր՛վէնսի, պա-

Conservant քընսըրվ՛էնթ, a. պահող, պահպանող։

Conservation քընսըրվէյ՛շըն, s. պահպանութիւն, պահ։

Conservatism քօնսըրվ՛էթիզմ, s. պահպանողականութիւն։ —tive քընսըր՛վէթիվ, a. պահպանողական։

Conservator քօնսըրվ՛էյթըր, s. պահող, պահպանող(ական)։

Conserv′atory -թըրի, a. պահող։ =s. շտեմարան; 2. ջերոց (բուսոց) ղիմօնլուղ; 3. պահող (փտութենէ); 4. երաժշտանոց; 5. արուեստանոց, վարժոց։

Conserve քընսըրվ՛(զ), va. պահպանել; 2. անեղծ՝ անվթար պահել։ =s. քօն՛սըրվ, s. քաղցրաւենի րէչէլ։ —of roses. վարդ մուրապպա, վարդի անուշ կիւլ բաբըլըր։

Consider քընսիտ՛ըր(զ), va. դիտել, զննել, նկատել; 2. մտածել, քննել; 3. կշռել; 4, համարել, սեպել; 5. պատուել, ակնածել, մեծարել։ =vn. քննել, խորհիլ։

Considerable քընսիտ՛ըրէպըլ, a. երեւելի, նշանաւոր, կարեւոր, ականաւոր։ —ness, s. -ութիւն, արժանիք։ —derably քընսիտըրէպ՛լի, ad. կարի, յոյժ, մեծապէս։

Considerate քընսիտ՛ըրէյթ, a. խոհեմ, խոհուն; 2. խղճահար, գըթոտ։ —ly, ad. խոհեմութեամբ։ —ness քընսիտ՛ըրէյթնէս, s. խոհեմութ

Consideration քընսիտըրէյշ՛ըն, s. նկատողութիւն, մտածողութիւն;

Consequential քօնսիքուէն՛շըլ,

2. յարգանք, ակնածութիւն; 3. կարեւորութիւն; 4. շարժառիթ, նկատում; 5. փոխարէն եր.

*Consign քընսայն՛(տ), va. [to] յանձնել, աւանդ դնել; 2. աւանդել, հաւատալ; 3. յանձնարարութ. ընել; 4. ապրանք ղրկել, ապսպրել ﬔ.

Consig′natory -նէտըրի, s. միատեղ ստորագրող, համաստորագիր։

Consignee քոնսինի՛, s. յանձնառու, յանձնակատար զօմիսիօնճը։

Consigner, -ner քընսայն՛ըր, s. ապրանք ղրկող, առաքիչ։

Consignement քընսայն՛մընտ, s. աւանդում, ուղարկում; 2. ղրկուած՝ վաճառելի ապրանք։

Consist քընսիսթ՛, vn. կայանալ, գոյ լինել; 2. [of] բաղկանալ; 3. մնալ; մնայուն լինել; 4. [with] միաբանիլ, յարմարիլ։ To—in. յօրինուիլ, կազմուիլ; պարունակել։ To—of. բաղկացեալ լինել, շինուիլ։ To—together. համագոյ լինել։

Consistence, -cy քընսիս՛թընս, քընսիս՛թընսի, s. պնդութիւն, սերտութիւն; 2. հաստատութիւն, տեւողութիւն; 3. միաւորում; 4. յարմարութիւն, համաձայնութ.։

Consistent քընսիսթ՛ընթ, a. միաբան, համաձայն, հաստատուն, սերտ -ly, ad. ըստ, հետեւաբար։

Consistory քընսիս՛թըրի, s. ժողով, խորհուրդ; 2. եկեղեցական ատեան, կոնսիստորիա։ -torial -թօ՛րիըլ, a. ժողովոյ, ժողովական։

Consociate քընսօ՛շիէյթ, an. ընկեր՝ կցորդ ըլլալ; 2. ընկերութիւն կազմել։ -tion քընսօշիէյ՛շըն, s. ընկերակցութիւն, պաշտօնակցութ.; 2. միութ. (մերձակայ եկեղեցեաց)։

Consolable քըն՛-, մխիթարելի։

Consolation քոնսօլէյ՛շըն, s. մըխիթարութիւն, սփոփանք; 2. մխիթարական։ -tory քընսոլ՛էյթըրի, a. մխիթարական, սփոփանաց։

Console քընսօլ՛, va. մխիթարել, սփոփել, թեթեւցնել։ =քոն՛սօլ, s. դնոց, սոոլ, կահակալ։ [բիչ։

Consoler քըն՛սօլըր, s. մխիթարիչ։

Consol′idant, a. հաստատող։

Consolidate քընսոլ՛իտէյթ, va. հաստատել, պնդացնել, միաւորել, միացնել։ =vn. պնդանալ, հաստատուիլ։ =քոնսոլ՛իտէյթ, a. հաստատուն։ -tion քընսոլիտէյշըն, s. հաստատում; 2. հաստատագործում (տէրութեան պարտուց)։ -tive քընսոլ՛իտէյթիվ, a. միացնող; բուժիչ։

Consols քընսոլզ՛, քոն՛սըլզ, pl. հաստատուն պարտք տէրութեան; 2. պարտաթուղթ, արժէթուղթ զօնսօլս։

Consommé քօնսօմէ՛, s. ուժեղ արգանակ, ուժարգանակ։ [F.]

*Consonance, -cy քոն՛սընէնս, քոն՛սընէնսի, s. զուգաձայնութիւն եր; 2. համաձայնութիւն։

Consonant քոն՛սընէնթ, a. [to, with] նմանաձայն, նոյնաձայն եր; 2. համաձայն, համեմատ։ =s. բաղաձայն տառ։ -al քոն՛սընէնթըլ, a. բաղաձայնի։ -ly քոն՛սընէնթլի, ad. համաձայն։ [ձայն։

Consonous քոն՛սընըս, a. միա-

Consort քոն՛սորթ, s. ընկեր, ամուսին։ =vn. [with] ընկերակցիլ։ Queen—. իշխող թագուհւոյ կին։

Conspectus քընսբէք՛թըս, s. համառօտութիւն, քաղուածոյք։

*Conspicuous քընսբիք՛իուըս, a. ակներեւ, գերազանց, երեւելի։ -ly, ad. յայտնապէս։ -ness, s.

Conspiracy քընսբիր՛էսի, s. դաւադրութ., մեքենայութիւն։ -tor -բայր՛էթըր, s. դաւադիր, յեղկի։

Conspire քընսբայր՛(տ), an. դաւակցիլ, դաւաճանել; 2. միաբանիլ, նպաստել։

**Conspiring** քընսփայ՛րինկ, *a.* ընթացակից։

**Constable** քը՛նսթէպլ, *s.* ախոռապետ, գունդապետ, գունդապալ։ -ship քը՛նսթէպլշիփ, *s.* ախոռապետութիւն։ -ulary քընսթէպ՛իուլէրի, *a.* ոստիկանի, նուիրակի։

**Constancy** քա՛նսթընսի, *s.* հաստատութիւն; 2. հաստատամտութիւն; 3. յարատեւութիւն։

*__Constant__ քա՛նսթընթ, *a.* [to] կայուն, անշարժ, հաստատուն; 2. անփոփոխ, յարատեւ։ -ly, *ad.* հանապազ; 2. անդրդուելի։

**Constellation** քանսթէլլէ՛յշըն, համաստեղութիւն։

**Consternation** քանսթըրնէ՛յշըն, *s.* սարսափ, արհաւիրք, ահ։

**Constipate** քա՛նսթիփէյթ, *va.* գոցել, անցքը խնուլ; 2. (փորը) պնդացնել։ -tion, *s.* հոծութիւն, խճողում; 2. պնդութիւն գալպզ։

**Constituent** քանսթիթ՛իուընթ, *a.* բաղկացուցիչ, կազմիչ, յօդիչ, տարրական։ =*s.* քուէատու, ընտրող

**Constitute** քա՛նսթիթիութ *va.* [by] հաստատել, հիմնել, սահմանել, կարգել, ընտրել։ -tion քանսթիթիու՛շըն, *s.* կազմակերպութիւն, յօրինում, կազմութիւն հաստատութիւն; 2. սահմանադրութիւն, օրէնք, կանոնագրութիւն։ -tional քանսթիթիու՛շընըլ, *a.* սահմանադրական 2. օրինաւոր; 3. ըստ սահմանադրութեան; 4. ընդաբոյս, ի բնէ։ =*s.* պտոյտ, մարմնամարզ։ -ity քանսթիթիուշընէ՛լիթի, *s.* սահմանադրականութիւն։ -ly քանսթիթիուշընըլլի, *a.* սահմանադրապէս։

**Constitutive** քանսթիթիու՛թիվ, *a.* էական, կազմական; հաստատող։

**Constrain** քընսթրէյ՛ն(զ), *va.* բռնադատել, ստիպել, հարկադրել։ -able, *a.* բռնադատելի։ -edly քընսթրէյ՛նէտլի, *ad.* բռնի։ -er քընսթրէյ՛նըր, *s.* բռնոն, ստիպող։

**Constraint** քընսթրէյ՛նթ, *s.* բռնութիւն, ստիպում, հարկ; նեղիչ։

**Constrict** քընսթրի՛քթ, *va.* սեղմել, պրկել, պնդացնել։ -ed քընսթրի՛քթէտ, *a.* սեղմ, ամփոփ, պիրկ։

**Constriction** քընսթրի՛քշըն, *s.* սեղմում, պրկում, պնդում։ -tive քընսթրի՛քթիվ, *a.* պրկող։ -tor քընսթրի՛քթըր, *s.* սեղմիչ, պնդացնող; 2. վարազօձ։

**Constringe** քընսթրի՛նճ(ճ), *va.* սեղմել, ճնշել, պնդել։ -nt քընսթրի՛նճընթ, *a.* պնդեցնող, կծկիչ։

**Construct** քընսթրը՛քթ, *va.* կազմել, կերտել, կանգնել, շինել; կարգադրել։ =*a.* շինուած, կերտուած։ -er -թ՛ըր, *s.* կանգնող, կերտող։

**Construction** քընսթրը՛քշըն, *s.* շինելը, կառուցում, յօրինում; 2. կազմուածք, յօրինուածք; 3. դասաւորութիւն (անուանց) +; 4. իմաստ, հասկացողութիւն; 5. մեկնութիւն; 6. գծագրութիւն, գծելը (ձեւերու) -of an equation. երկրաչափական ձեւերով ներկայացուած ալճեպրայական հաւասարութիւն։ -al քանսթրըքշ՛ընըլ, *a.* կազմական։ -ist -նիսթ, *s.* լուծիչ, մեկնիչ։

**Constructive** քընսթրը՛քթիվ, *a.* կազմիչ, շինիչ; 2. մեկնական։ -ly, *ad.* -ness քընսթրըքթիվնէս, *s.* շինուածաւորութիւն։

**Construe** քա՛նսթրու(զ), *va.* մեկնել, լուծել, թարգմանել։

**Constuprate** քա՛նսթիուփրէյթ, *va.* լլկել, աւրել -tion քանսթիուփրէյ՛շըն, *s.* կուսապղծութիւն։

**Consubstantial** քանսըպսթէ՛նշըլ, *a.* համագոյ, խակակից, գոյակից, էակից։ -ity քանսըպսթէնշիէ՛լիթի, *s.* համագոյութիւն, խակակցութիւն, միաբանութիւն։

**Consubstantiate** քանսըպսթէն՛շիէյթ, *va.* համագոյ լինիլ։ **-tion** -շիէյ՛շըն, *s.* գոյակցութիւն, իսկական ներկայութիւն մարմնոյ Տեառն ի հաց և ի գինի։

**Consuetude** քօն՛սուիթիուտ, *s.* սովորոյթ, սովորութ.։ **-tudinary** քօնսուիթիուտի՛նէրի, *a.* սովորական; հին, վաղնջական գաsիrն։

**Consul** քան՛սըլ, *s.* հիւպատոս։ **-ar, -ary** քան՛սիուլըր, քան՛սիուլէրի, *a.* -ական։ **-ship**, *s.* -ութիւն։ **-ate** քան՛սիուլէյթ, *s.* հիւպատոսարան։

**Consult** քօնսըլթ՛, *va.* խորհրդակցիլ, խորհուրդ հարցնել; 2. դիտել, քննել; 3. հետազօտել (գրքեր); 4. նայիլ (սաղեր)։ =*vn.* խորհուրդ ընել, խորհրդակցիլ, խորհրդածել։ **-tion** քանսըլթէյ՛շըն, *s.* խորհուրդ; 2. խորհրդակցութիւն (բժշկաց)։

**Consulter** քօնսըլթ՛ըր, *s.* խորհրդատու; 2. խորհուրդ հարցնող։

**Consumable** քօնսիու՛մէպլ, *a.* սպառելի, մաշելի։

***Consume** քօնսիում՛(զ), *va.* ջնջել, վատնել, սպառել։ =*vn.* հալիլ, մաշիլ, փճանալ։

**Consummate** քան՛սըմմէյթ, քօնսըմ՛մէյթ, *va.* կատարել, լմնցնել։ = քօն-, *a.* կատարեալ, անթերի։ **-ly** քանսըմ՛մէյթլի, *ad.* կատարելապէս։

**Consummation** քանսըմմէյ՛շըն, *s.* կատարում, լրում, վախճան։

**Consumption** քօնսըմփ՛շըն, *s.* սպառում, վատնում; 2. հալումաշ, թոքախտ, հիւծախտ վէրէմ։

**Consumptive** -թիվ, *a.* սպառիչ; 2. ծիւրական, թոքախտաւոր։ **-ly**, *ad.* հալումաշ։ **-ness** քօնսըմփ՛թիվնէս, *s.* թոքախտաւորթ.

**Contact** քան՛թէքթ, *s.* շօշափում, հպում; 2. հաղորդակցութիւն։

**Contagion** քօնթէյ՛ճըն, *s.* տարափոխութիւն, փոխանցում (ախտի); 2. տարափոխիկ ախտ; 3. վարակում։

***Contagious** քօնթէյ՛ճըս, *a.* տարափոխիկ, փոխանցիկ; 2. հաղորդական։ **-ly**, *ad.* **-ness**, *s.*

**Contain** քօնթէյն՛(զ), *va.* բովանդակել, պարունակել; 2. արգիլել, զսպել։ =*vn.* ժուժկալօրէն ապրիլ։ **-able**, *a.* պարփակելի։ **-er** քօնթէյն՛ըր, *s.* պարունակող։

**Contam'inable**, *a.* պղծելի։

**Contaminate** քօնթէմ՛ինէյթ, *va.* ապականել, պղծել։ =*a.* պղծեալ, աղտեղի։ **-tion** քօնթէմինէյ՛շըն, *s.* պղծութիւն։

***Contemn** քօնթէմ՛, *va.* (-temned -թէմդ, Contemning -թէմինկ), արհամարհել, անգոսնել, բանի տեղ չդնել։

**Contemper** *etc. See* Temper.

***Contemplate** քան՛թէմփլէյթ, քօնթէմ՛-, *va.* նկատել, զննել, հոգեպիշ նայիլ; 2. խորհիլ, խոկալ։ **-tion** քանթէմփլէյ՛շըն, *s.* նկատում, խոկում, հայեցողութիւն։ To have in—. խորհիլ, մտածել։

**Contemplative** քօնթէմ՛փլէյթիվ *a.* հայեցող, տեսական, ուսումնասէր։ **-ly**, *ad.* **-ness**, *s.*

**Contemplator** քան՛թէմփլէյթըր, նկատող, հայեցող, ուսումնական։

**Contemporaneous** քօնթէմփօրէյ՛նիըս, *a.* ժամանակակից, արդի; 2. այժմու։ **-ly**, *ad.* **-ness**, *s.*

**Contemporary** քանթէմ՛փօրէրի, *a.* ժամանակակից; հիմակուան։

**Comtempt** քօնթէմփթ՛, *s.* արհամարհանք, անարգանք; 2. անհնազանդութիւն էր.

***Contemptible** քանթէմփ՛թիպլ, *a.* անարգ, արհամարհելի։ **-ness**, *s.* նուաստութիւն։ **-tibly** քանթէմփ՛թիպլի, *ad.* անարգաբար, նուաստաբար։

Contemptuous քօնթէմփթ'իուըս a. անարգական; 2. խիստ: -ly, ad.

Contend քընթէնտ', vn. մաքառիլ, հակառակիլ; 2. վիճիլ, մրցիլ: -er, s. մրցակից, ախոյեան:

Content քընթէնթ', a. գոհ, հաճ, հաւան: =va. գոհ ընել, գոհացընել; 2. հաճեցնել: =քընթէնթ', քօն'թէնթ, s. հաճութիւն, հաւանութիւն, գոհութիւն; 2. pl. պարունակութիւն, բովանդակութիւն; 3. տարողութիւն, ծաւալ: Table of contents. ցանկ նիւթոց:

Contented քընթէնթ'էտ, a. գոհունակ: -ly, ad. -ness, s.

Contention քընթէն'շըն, s. ճիգ, փոյթ; 2. վէճ, կռիւ, հակառակութ

Contentious քընթէն'շըս, a. կըռուարար, վիճասէր; 2. վէճի՝ կռուի տակ: -ly, ad. կռուով: -ness քընթէն'շըսնէս, s. կռուարարութիւն:

Content'ment քընթէնթ'մէնթ, գոհացում, հաւանութիւն; գոհունակութիւն:

Conterminate, -minal, -minous քընթըր'մինէյթ, քընթըր'մինըլ, քընթըր'մինըս, սահմանակից:

Contest քընթէսթ', va. վիճել, կռուիլ, տանալ, ժխտել, վիճաբանել: =vn. վէճ ընել, վիճաբանիլ: =քօն'թէսթ, s. վէճ, կռիւ; 2. մրցում, մրցամարտ, պայքար, ըմբշամարտ; 3. բանամրցում; 4. հակառակութիւն; 5. ըննահարութիւն: -able քընթէսթըպլ, a. վիճելի: -ant քընթէսթ'ընթ, s. վիճող; մրցակից, հակառակորդ, գոտեմարտ

Contestation քօնթէսթէյ'շըն, s. հակառակութիւն; 2. մրցում:

Context քօն'թէքսթ, s. բնագիր, բնաբան: -ture քընթէքս'չըր, s. հիւսք հիւսուածք; 2. դրեւակերպ; 3. կապակցութիւն, կապ:

*Contignation քօնթիկնէ'շըն, s. հեծանաշարք; 2. յարկ գար:

Contiguous քընթիկ'իուըս, a. մերձաւոր, կից, յարակից: -ly, ad. -ness, -tiguity քընթիկ'իուիթի, քընթիկիու'իթի, s. -ութիւն:

Continence, -cy քօն'թինընս, քօն'թինընսի, s. պարկեշտութիւն, ժուժկալութիւն:

Continent քօն'թինէնթ, a. ժուժկալ, պարկեշտ: =s. ցամաք, ցամաք երկիր; 2. Եւրոպա (կամ ցամաք): Western—. արեւմտեան կիսագունտ To travel on the—. Անգլիայէն Եւրոպա անցնիլ՝ ճամբորդել: -ly, ad. ժուժկալօրէն:

Continental քօնթինէնթ'էլ a. ցամաքային; 2. եւրոպական (ըստ Անգլիոյ):

Contingence, -cy քընթին'- s. պատահականութ; 2. պատահար:

Contingent քընթին'ճընթ, a. պատահական; 2. դիպուածական: -ly, ad. պատահաբար: =s. պատահականը, պատահար; 2. մաս, բաժին զին. [բունակելի:

Continuable քընթին'-, a. շա-

*Continual քընթին'իուըլ, a. անընդհատ, շարունակ, անդուլ: -ly, ad. անդադար, շարունակաբար:

Continuance քընթին'իուընս, s. տեւողութիւն, յարատեւութիւն; բնակութիւն; շարունակութիւն:

Continuate քընթին'իուէյթ, va. շարունակել; 2. կցել, յարել: =a. յարակից; 2. շարունակ, անընդհատ -tion քընթինիուէյ'շըն, s. շարունակութիւն, յարատեւութիւն: -tive քընթին'իուէյթիվ, s. շաղկապ +; 2. շարունակական (նախադ.) էր. -tor քընթին'իուէյթըր, s. շարունակող:

Continue քընթին'իու, vn. շարունակել, մնալ; 2. հաստատ կենալ, տեւել: =va. շարունակել, եր-

կնցնել։ Continued fraction, -proportion, շարունակ կոտորակ՝ համեմատութիւն։

**Continuity** քան'թինիու–իթի, *s.* տեւականութիւն, շարայարութ.։

**Continuous** քըն'թին'իու–ըս, *a.* անընդհատ, շարունակ։ -ly, *ad.*

**Contort** քընթօրթ', *va.* ոլորել, գալարել։ -tion քընթօր'շըն, *s.* գալարում, ծամածռութիւն. -ive քընթօր'թիվ, *a.* ծռուռումուռ։

**Contour** քընթուր', *s.* շրջագիծ, ծիր; 2. շրջափակ ոճ.

**Contra** քան'թրէ, *pr.* ի փոխարէն։ =*prefix.* հակ . . . ։

**Contraband** քան'թրէպէնտ, *a.* արգիլեալ։=*s.* արգիլեալ ապրանք; 2. մաքսանենգութիւն։ -ist -տիսթ, *s.* մաքսանենգ, մաքսախոյս։

*Contract քընթրէքթ', *va.* with *a person,* for *a thing* կծկել, ամփոփել; 2. դաշն հաստատել, պայման դնել; 3. նշանել (աղջիկ); 4. (վանկը՝ ձայնաւորը) կարճել ք. =*va.* կծկուիլ, ամփոփուիլ; 2. դաշնադրել, պայմանադրել։ =քան'թրէքթ, *s.* դաշնադրութիւն, պայման; 2. պայմանագիր; 3. սուղ, ամփոփ (բառ, վանկ)։

**Contracted** քընթրէքթ'էտ, *a.* քաշուած, կծկուած, պռստած; 2. կարճ, ամփոփ; 3. սուղ, կարճ (բառ); 4. պայմանեալ; 5. նշանուած։ -ly. *ad.* -կերպով։ -ness, *s.* -ութիւն.

**Contractible** քընթրէքթ'իպլ, *a.* ամփոփելի, հանդրիճելի։ -ness, -bility քընթրէքթիպըլ'նէս, քընթրէքթիպիլ'իթի, *s.* ամփոփելիութիւն։

**Contraction** քընթրէք'շըն, *s.* ամփոփում, հաւաքում; 2. կարճութ. կարճելը, կծկում, պռստում; 3. համառօտելի իր; 4. սղում վանկի ք.

**Contractile,-tive** քընթրէքթ'իլ, -թիվ, *a.* ամփոփելի, կծկելի։ -lity քընթրէքթիլ'իթի, *s.* ամփոփելիութ.։

**Contractor** քընթրէքթ'ըր, *s.* դաշնադիր, յանձնառու, կապալառու։

**Contra-dance** քանթրէ'տէնս, *s.* հակապար. [նաեւ Country-dance]։

**Contradict** քանթրէտիքթ', *va.* ուրանալ, ժխտել; 2. հակառակել։ -er քանթրէտիք'թըր, *s.* հակաբան, ընդդիմաբան։ -ion քանթրէտիք'շըն, *s.* հակասութիւն; 2. ընդդիմութիւն, հակառակութիւն; 3. հերքում, ժխտում։ -ious քանթրէտիք'շըս, *a.* հակասական, ներհակ, ընդդէմ։ -ive քանթրէտիքթ'իվ, *a.* ժխտական, հակասական։

**Contradictory** քանթրէտիքթ'ըրի, *s.* հակասութիւն։=*a.* հակասական; 2. ներհակ, հակառակ։ -torily քանթրէտիքթ'ըրիլի, *ad.* հակասաբար։ -toriness քանթրէտիք'թըրինէս, *s.* հակասականութիւն։

**Contradistinction** քանթրէտիսթինք'շըն, *s.* [to] հակադրութիւն; 2. ընտրութիւն, զատելը։

**Contradistinguish** քանթրտիսթին'կուիշ(ը), *va.* ընտրել, զատել, տարբերաչափել։

**Contraindication** քանթրէինտիքէյ'շըն, *s.* հակառականշան բժ.

**Contralto** քանթրէլ'թօ, *s.* դերաբարձր, մերձաղիլ եր.

**Contraposition** քըն-, *s.* հակադրութիւն։ [հակականք տր.

**Contraries** քան'թրէրիզ, *pl.* ներ-

**Contrary** քան'թրէրի, *a.* [to] ընդդէմ, դէմ, հակառակ; 2. տարբեր։ =*s.* ներհակ (իր, նախադասութիւն)։ On the–. ընդհակառակն, նա մանաւանդ։ To the–. հակառակ այսմ։ -rily քան'թրէրիլի, *ad.* -riwise քան'թրէրիուայզ, *ad.* ընդհակառակն։ -riness քան'թրէրինէս, *s.* հակառակութիւն։

Contrariety քօնթրէրայ'իթի, s. ընդդիմութիւն, ներհակութիւն։

Contrast քօնթրէսթ', va. [with] դիմապատկերել, հակապատկերել. =քան'թրէսթ, s. հակադրութիւն։

Contratenor քան'թրէթէնըր, s. մերձաղիլ եր. [պատմէշ։

Contravalla'tion, s. խրամա-

Contravene քա'նթրէվին, va. հակառակիլ, վիճել; 2. աւրել։ -vention, s. օրինազանցութիւն։

Contraversion, s. հակադարձ։

Contrayerva քանթրէյըրվէ, s. դեղթափ արմատ, թոյնթափ։

Contretemps քանթըրթանկ', s. ձախորդ ժամանակ, փորձանք։ [F.]

Contributable քանթրիպիուդ'է-պլ, a. նպաստելի։ -tary քանթրի'պիուդէրի, a. միասին հարկատու։

Contribute քօնթրի'պիութ, an. նպաստել, օգնել, սատարել, գործակցիլ; 2. մասնակցիլ, հանգանակել։

Contribution քան'թրիպիուշըն, հանգանակութիւն; 2. մաս, բաժին. նպաստ; 3. տուրք, հարկ եւ; 4. բանահարկ պէտ. -tive, -tory քօնթրիպ'իուդիվ, -դըրի, a. նպաստող։ -tor քօնթ'րիպիուդըր, s. ձեռնտու, օգնական; 2. աշխատակից։

Contrite քան'թրայթ, a. տխուր, վշտացեալ, ապաշաւող։ -ness, -*tion քանթ'րայթնէս, քանթրի'շըն, s. զղջումն, ապաշաւ։

Contriv'able քօնթրայ'վէպլ, a. գիւտահնար. -vance քօնթրայ'վէնս, s. հնարք, գիւտ; 2. ճարտարութ.։

Contrive քօնթրայվ'(դ), an. հնարել, գտնել, խորհիլ. -ver քօնթրայ-վըր, s. հնարիչ, գտիչ։

Control քօնթրօ'լ(դ), s. [over] համարատու, քննիչ; 2. հակակշիռ, հսկողութիւն; 3. սանձ, զուսպ; 4. իշխանութիւն։ =va. քննել, ստուգել; 2. հակակշռել, վերահսկել; 3. զսպել, վարել; 4. իշխել. -lable քօնթրօ'լէպլ, a. նուաճելի։ -ler քօնթրօ'լըր, s. տեսչական քննող, քննիչ; 2. համարատու; տոմսաքննիչ թօր. -ment քօնթրօ'լմէնթ, s. վերահսկողութիւն, վարելը։

Controversial քան'թրօվըրշըլ, a. վիճաբանական։ -ist -վըր'շէլիսթ, s. վիճաբանող։ -ly -օվըր'շըլլի, ad.

Controversy քան'թրօվըրսի, վէճ, խնդիր; 2. հակառակութիւն։

Controvert քան'թրօվըրթ, va. վիճիլ, հակաճառել, մաքառիլ. -er, -ist քանթրօվըրթ'ըր, -թ'իսթ, s. հակաճառող, պայքարագիր։ -ible քանթրօվըրթ'իպլ, a. վիճելի։

Contumacious քանթիումէ'շըս, a. կամակոր, ըմբոստ, խեռ։ -ly, ad. -ness, s. -ութիւն։

Con'tumacy քան'թիումէսի, s. կամակորութիւն, յամառութիւն; 2. օրինազանցութ., դատազանցութ.

Contumelious քանթիումի'լիըս, նախատական, թշնամանիչ։ -ly, ad. անարգանօք։ -ness, s. նախատինք։

Contumely քան'թիումլի, s. թշնամանք, պարսաւ; 2. լրբութիւն, լպրշութիւն։

Contuse քօնթիուզ(դ), va. ճմլել, փշրել։ -sion քօնթիու'ժըն, s. ճմլում; 2. ճմլած, վէրք։

Conundrum քօնըն'դրըմ, s. առեղծուած, հանելուկ։

Conusance քան'իուզէնս, s. ճանաչում. գիտութիւն։ -sant քա-նիու'զընթ, a. գիտակ։

Convalesce քան'վէլէս(դ), vn. ապաքինիլ, աղէկնալ, բուժուիլ։

Convalescence. -cy լէ'սընսի, s. նորոգեալ վիճակ, ապաքինում։ -cent -ս'ընթ, a. ապաքինեալ։

Convection քօ-, փոխանցում։

Convenable քօ-, a. պատշաճ։

-atology տոլ՛ըճի, -աբանութիւն։
Dermal տըր՛մըլ, *a.* մորթային։
-gia տըրմըլ՛ճիէ, *s.* մաշկացաւ։
Dernier տըր՛նիէյըր, *a.* վերջին, ծայրագոյն։ -ressort. յետին միջոց։
Derogate տէր՛օկէյթ, *va.* [from] փոփոխել, խառորել; 2. եղծանել, հակառակել։ -tion տէրօկէյ՛շըն, *s.* [from, to] փոփոխում (օրինաց)։ -tory տէրակէ՛թըրի, *a.* [to] փոփոխիչ, եղծանող։
Derrick տէր՛իք, *s.* նաւու բեռնաբարձ ճախարակ։ -boom. բեռնակայմ։ [ճանակ։
Derringer տէր՛ինճըր, *s.* ատրր-
Dervis, -vese, -vish տըր՛վիս, տըր՛վիշ, *s.* տերվիշ։
Descant տէս՛քէնթ, *s.* եղանակի մը զարգացում, փոփոխում; 2. երաժշտախմբի բարձրագոյն ձայնը, սոբրանօ; 3. երկայնաբանութիւն, մեկնութիւն, ճառ։ =տէսքէնթ՛, *va.* երգել, երգակցել; 2. երկայնաբանել, պարզաբանել, մեկնել, ճառել։
Descend տիսէնտ՛, *vn.* [from] իջնել; 2. կյնալ; 3. խոնարհիլ, մարը մտնել; 4. սերիլ, ծագիլ։ =*va.* (լեռնէն) իջնել։ Well-ed. ազնիւ ընտանիքէ, ազնուասեր։
Descendant տիսէնտ՛ընթ, *s.* ազգ, տոհմ; 2. զաւակ, սերունդ, շառաւիղ։ =*a.* իջնող, սերող։
Descendible տիսէնտ՛իպըլ, *a.* իջանելի, սերելի։ -bility տիսէնտիպիլ՛իթի, *s.* սերելիութիւն, փոխանցականութիւն։
Descension տիսէն՛շըն, *s.* իջում, խոնարհում, մուտք։ -al տիսէն՛շընըլ, *a.* մտից տար.
Descent տիսէնթ՛, *s.* էջք, իջում; 2. զառիվայր; 3. անկում, խոնարհում; 4. յարձակում; 5. անցք, փոխանցում; 6. ծագում, սերունդ, զաւակ, ժառանգութ.; 7. ազգահամար; 8. յատակ։ [նկարագրելի։
Describable տիսքրայպ՛էպըլ, *a.*
Describe տիսքրայպ՛(տ), *va.* ըստորագրել, նկարագրել, գծագրել։
*Description տիսքրիփ՛շըն, *s.* նըկարագիր, նկարագրութ.; 2. ազգ, տեսակ։ -tive տիսքրիփ՛թիվ, *a.* նըկարագրական։ -geometry. ձեւագրական երկրաչափութիւն։
Descry տիսքրայ՛(տ), *va.* նշմարել, զննել, դիտել։ =*s.* տեսիլ, տեսարան; 2. նշմարանք։
Desecrate տէս՛իքրէյթ, *va.* սըրբապղծել, ապականել։ -tion, *s.* սրբապղծութիւն, ապականութիւն
Desert տէզ՛ըրթ, *s.* անապատ, ամայի երկիր։ =*a.* ամայի, անմարդաբնակ, աւերակ, առանձին։ =տիզըրթ՛, *va.* թողուլ, ձգել, լքանել, դասալիք ըլլալ; 2. փախչիլ։
Desert տիզըրթ՛, *s.* արժանիք, վարձք; 2. արժանաւորութիւն; 3. արժանաւոր։ -less, *a.* անարժան։
Deserter տիզըրթ՛ըր, *a.* փախըստական, դասալիք։ [լքում։
Desertion տիզըր՛շըն, *s.* թողում,
Deserve տիզըրվ՛(տ), *va.* [of] արժանիք՝ արդիւնք ունենալ։ =*vn.* տիզըրվ՛, արժանաւոր ըլլալ։ -dly տիզըր՛վիտլի, -vingly տիզըր՛վինկլի, *ad.* արժանապէս։
Deshabille տէզապիլ՛, *s.* տան հագուստ, անխնամ հագ (F.)։
Desiccate տէս՛իքէյթ, *va.* ցամքեցնել, չորցնել։ =*vn.* ցամքիլ, չորնալ։ -tion տէսիքէյ՛շըն, *s.* չորութիւն։ -tive -՛թիվ, *a.* չորցնող։
Desiderate տիսիտ՛ըրէյթ, *va.* ցանկալ, փափաքիլ։
Desideratum, -ta տիսիտըրէյ՛թըմ, *pl.* ցանկալի՝ փափաքելի իրեր։
*Design տիզայն՛(տ), *va.* [for] նըկարել, գծել, ստուերագրել; 2. խորհիլ, մտածել; 3. սահմանել; 4.

ցցնել։ =vn. նպատակ ունենալ։ =s. ծրագիր; 2. խորհուրդ, գաղափար; 3. նպատակ; գծագրութիւն, նկար։ -able տիզայն'էպլ, a. գծելի; 2. գտանելի; 3. խորհելի։

Designate տէզ'իկնէյթ, va. որոշել, անուանել։ -tion տէզիկնէյ'շըն, s. որոշելը, որոշուիլը; 2. անուանում, կարգում; 3. անուն, մականուն։

Designer տիզայն'ըր, a. նկարիչ, գտիչ; 2. վարպետորդի։ [նենգաւոր

Designing -ն'ինկ, a. խորամանկ,

Designless տիզայն'լէս, a. անզգոյշ, աննպատակ, անխորհուրդ։

Designment տիզայն'մէնթ, s. դիտաւորութիւն, յատակագիծ։

Desinence տէզ'ինէնս, s. հոլով; 2. խոնարհում +. [խաղաւէր։

Desip'ient տէսի-, a. մանկական,

Desirable տիզայր'էպլ, a. ցանկալի, փափաքելի, բաղձալի, գեղեցիկ։ -ly տիզայր'էպլի, ad. -կերպով։ -ness, s. -ութիւն։

*Desire տիզայր'(ր), s. փափաք, տենչանք, իղձ, մաղթանք; 2. յօժարութիւն, ցանկութիւն։ =va. ցանկալ, փափաքիլ, բաղձալ; 2. մաղթել, խնդրել; 3. հրամայել։ Earnest–. անկեղծ փափաք։ Inordinate–. մարմնոյ, անզուսպ բաղձանք։ By–of. հրամանաւ։ To be inflamed by–. ցանկութեամբ տոչորուիլ։ To curb one's–. բանադատել, զսպել։

Desirous տիզայ'րըս, a. [of] փափաքող։ -ness, s. կաթոգին սէր, փափաք, բաղձանք։

Desist տիզիսթ', vn. [from] հրաժարիլ, կենալ։ -ance տիզիսթ'էնս, s. հրաժարում։

Desk տէսք, s. գրասեղան; 2. ժամի գրակալ; 3. ամպիոն, բեմ։

Desman տէս'մըն, s. ջրաքիս (.

Desmine տէս'մին, s. մետաքսաքար հն+. [ուսմաբանութիւն։

Desmology տէսմոլ'ըճի, s. յօդ-

Desolate տէս'ըլէյթ, a. ամայի, անբնակ; 2. աւերակ; 3. առանձին, անմխիթար։ =va. ամայացնել, աւերել, անշքացնել։ -ly, ad. -ness, s. անշքութիւն։

Desolation տէսըլէյ'շըն, s. քանդում, կործանում; 2. ամայութիւն, աւեր; 3. առանձնութիւն; 4. վհատութիւն։

Despair տիսփէր'(ր), vn. [of] յուսահատիլ։ =s. յուսահատութիւն; 2. վհատիչ իր. -ingly, ad. անյուսաբար։

Despatch' See Dispatch.

Desperado տէսփըրէյ'տօ, s. յուսահատ, կատաղի, յանդուգն (It.)։

*Desperate տէս'փըրէյթ, a. անյոյս, յուսահատ; 2. կատաղի, մոլի, անհնարին։ -ly, ad. յուսահատութեամբ, յանդգնաբար։ -ness, -tion տէսփըրէյթ'նէս, տէսփըրէյ'շըն, s. անյուսութիւն, մոլեգնութիւն։

Despicable տէս'փիքէպլ, a. անարգ, նուաստ, չնչին։ -ly, ad. նուաստաբար։ -ness, s. անարգութիւն անպիտանութիւն։

Despisable տէսփայզ'էպլ, a. արհամարհ, չնչին; 2. գարշելի, ոչինչ։

Despise տէսփայզ'(ր), va. անարգել, արհամարհել; 2. խորշիլ։ -dness -փայզ'էտնէս, s. անարգութ.

Despite տէսփայթ', s. չարութիւն, նախատինք, թշնամութիւն։ =va. զայրացնել; 2. անարգել, նախատել։ -of. այսու ամենայնիւ։

Despiteful տէսփայթ'ֆուլ, a. չարակամ, անգգամ։ -ly, ad. թշնամութեամբ, անգգամութեամբ։

Despoil տէսփօյլ'(ր), va. [of] կողոպտել, յափշտակել; 2. զրկել։ -ment, Despoliation տէսփօլիէյ'շըն, s. կողոպտում, զրկում։

Despond դէսփոնտ՛, va. վհատեցնել, սրտաբեկել, լքանել։

Despondence, -cy դէսփոն՛տընս, s. սրտաբեկում, լքում։ -dent, -ding դէսփոն՛տընտ, -փոն՛տին, a. լքեալ, յուսահատ։

Despot դէս՛փօտ, s. միահեծան՝ ինքնիշխան տէր։ [բացարձակ։

Despotic, -al դէսփօտ՛իքըլ, a.

Despumation դէսփիւ-մէյ՛շըն, s. փրփրաքաղութիւն ը.

Desquamation դէս-քուա-մէյ՛շըն, s. թեփոտում (մորթի) բժ. [չkrkq

Dessert դէզըրթ՛, s. աղանդեր

Destination դէս-թինէյ՛շըն, s. սահմանում, կարգում; 2. որոշում; բաղդ; 3. նպատակ, վախճան; 4. սահմանեալ տեղ, վայր։

*Destinate, -tine դէսթինէյթ, դէս՛թին. [to] սահմանել, որոշել։

Destiny դէս՛թինի, s. ճակատագիր, բաղդ; 2. կեանք, բաժին, վիճակ։ The Destinies դէս՛թինիզ, պարկայք դից.

Destitute դէս՛թիթիու-թ, a. լքեալ, խեղճ, անոք, աղքատ; 2. թափուր, անման, անխնամ, զրկեալ, կարօտ, զուրկ։

Destitution դէս-թիթիու՛շըն, s. կարօտութ. զրկանք, չքաւորութ.։

*Destroy դէս-թրօյ՛, -րօյ՛(դ), va. կործանել, ջնջել, եղծել; կործանել, աւերել, քանդել։ -able դէս-թրօյ՛էպլ, a. ջնջելի, եղծելի։ -er, -ing դէս-թրօյ՛ըր, -րօյ՛ին, a. կործանիչ, սատակիչ; 2. թօրփիլարձակ(նաւ)։

Destructible դէս-թրըք՛թիպլ, a. ապականացու, կործանելի։

Destruction դէս-թրըք՛շըն, s.[for, to] աւերում, կործանում; 2. քակտում, ջնջում, կորուստ; 3. ապանութիւն։ -ist դէս-թրըք՛շընիսթ, s. անզեղջ մեղաւորին հոգւոյն ջնջման հաւատացող, ջնջական Ան. nr եւ Annihilationist. 2. կործանարար։

Destructive դէս-թրըք՛թիվ, a. [of, to] խանգարիչ, ապականիչ; 2. սատակիչ։ -ly, ad. չարաչար։ -ness, s. եղծում, ապականութիւն։

Desudation դէսիու-տէյ՛շըն, s. քրտնահարութ., քրտինքխաշ բժ.

Desuetude դէս՛ուիթիուտ, s. խափանում (սովորութեան)։

Desulphurate դէսըլ՛ֆըրէյթ, va. ծծումբը հանել, ծծմբատել։

Desultory դէս՛ըլթըրի, a. յոդդողդ, անհաստատ, ոստոստուն։ -riness դէս՛ըլթըրինէս, s. -ութիւն։ -rily դէս՛ըլթըրիլի, ad. անկապակից, անյարիր, թռչլ կերպով, ցատկոտուն։

Detach դիթէչ՛(թ), va. [from] անջատել, բաժնել; 2. արձկել, քակել, փրցնել; 3. զօրքի հատուած մը ղրկել։ -ment, s. անջատում; 2. հատուած, ջոկատ (զօրաց)։

Detail դի՛թէյլ, դիթէյլ՛(դ), s. մանրամասնութիւն, պարագայք; 2. մաս մաս բաժանում; 3. ջոկատ, հատուած մը փrkqk շըն.=va. մանրամասնօրէն պատմել; 2. հատուածները՝ ջոկերու բաժնել։ In detail. մանրամասնաբար։

Detain դիթէյն՛(դ), va. պահել, արգիլել, ձեռբակալել, վար դնել, բանտել։ -der դիթէյն՛տըր, s. հրամանագիր բանտարկութեան։

Detainer դիթէյն՛ըր, s. խափանող, պահող, վար դնող էր. ձեռբակալման հրամանագիր։

Detainment դիթէյն՛մընթ, s. բանտարկութիւն, ձեռբակալում։

Detect դիթէքթ՛, s. յայտնել, երեւան հանել, գտնել։ -ion դիթէք՛շըն, s. յայտնութիւն, գիւտ։ -ive դիթէքթ՛իվ, s. երեւան հանող, գտնող; (ոճրագործա) գտակ; 2. գաղտնի ոստիկան, փախանորդ։ -or, -er դիթէքթ՛ըր, s. յայտնիչ,

յայտնող, յայտնակ։

Detention տիթէն՛շըն, s. արգիլելը, ձեռբակալում; յապաղում։

Detent տիթէնթ՛, s. ձգան (հրացանի, պատի ժամացուցի) բռնիչ։

Detentor տիթէն՛թըր, s. գողօն։

Deter տիթըր՛(ր), va. ետ կեցնել (վախցնելով), կասեցնել; 2. հեռացնել, արգիլել։

Deterge տիթըրճ՛(ը), va. մաքրել, լուալ, սրբել։

Detergent տիթըր՛ճընթ, a. վէրք մաքրող (դեղ), վիրասրբիկ։

Deteriorate տիթիր՛իըրէյթ, va. աւրել, ապականել։ =vn. վատթարանալ, գէշնալ։ -tion տիթիրիըրէյ՛շըն, s. վատթարացում, աւրումն, աղաւաղում, յոռութիւն։

Determent տիթըր՛մընթ, a. արգելք, խոչ, խափան։

Determinable տիթըր՛մինէպլ, a. վճռելի, սահմանելի։

Determinate տիթըր՛մինէյթ, a. որոշեալ, սահմանեալ։ -ly, ad. որոշապէս, հաստատապէս։

*Determination տիթըր՛մինէյ՛շըն, s. սահմանելը, որոշելը; 2. առաջադրութիւն, դիտաւորութիւն; 3. կամք, հաստատամտութիւն։ To come to a—. բանի մը՝ որոշման մը յանգիլ։ —of blood to the head. արիւնը գլուխը զարնելը։ -tive ՛մինէյթիվ, a. որոշիչ, յատկանշական։

Deter'mine, va. [on] որոշել; 2. սահմանել; 3. հաստատել, ընտրել, կարգել։ =va. որոշել, լմննալ, աւարտել։ [ղե՛ գերեզմանէ հանելը։

Deterration տիթըրէյ՛շըն, s. հո-

Deterrent տիթէր՛րընթ, a. ահաբեկող, արգիլող, կանխարգել։

Detersion տիթըր՛շըն, s. վէրքը մաքրելը; սրբում։ -sive տիթըր՛սիվ, a. մաքրողական, վիրասրբիկ։

*Detest տիթէսթ՛, an. գարշիլ, զանիլ, զզուիլ; 2. ատել։ -er տիթէսթ՛ըր, va. թշնամի, ատեցող։

Detestable տիթէսթ՛էպլ, a. զզուելի, ատելի։ -ness, -tion տիթէսթ՛էպլնէս, տիթէսթէյ՛շըն, s. զզուանք, զան, գարշանք, ատելութիւն։

Detonate, Detonize տէթ՛ոնէյթ, տէթ՛ընայզ(ը). an. ճայթել, ճայթեցնել, բոմբիւն հանել, թնդալ

Detonation տէթընէյ՛շըն, s. բոմբիւն, շառաչիւն, ճայթիւն։

Detort տիթորթ՛, va. շրջել, փոփոխել, ծամռտկել, աղաւաղել։ -tion, -sion տիթոր՛շըն, s. աղաւաղում, այլայլում, փոփոխում։

Detour տէյ՛թուր. տիթուր՛, s. շրջումն, ոլորուն ճամբա [F.]։

Detract տիթրէքթ՛, va. [from] վատահամբաւել, զրկել։ -ion տիթրէք՛շըն, s. բամբասանք, զրպարտութիւն; 2. վնաս։ -tive, -tory -րէքթ՛իվ, տիթրէքթ՛ըրի, a. նախատական, անուանարկիչ, բամբասող։ -ress տիթրէքթ՛րէս, s. լեզուագար կին։

Detriment տէթ՛րիմընթ, s. վնաս, կորուստ։ -al -մընթ՛էլ, վնասակար։

Detrition տիթրի՛շըն, s. մաշում։

Detritus տիթրայթ՛ըս, s. լեռուքք, մաշուք, մնացորդ էրէ. [վար քշել։

Detrude տիթրուտ՛, հրել, մղել,

Detruncate տիթրընք՛էյթ, va. ծայրատել, կրճատել։ -tion -քէյ՛շըն, s. ծայրատում, յապաւում։

Detrusion տիթրու՛ժըն, s. հրելը, մղում; 2. վանում։

Deuce տիուս, s. կրկին, կրկնակ թղ; 2. սատանայ։ -ace տիուսէյս, s. կրկին կրկնակ sիւպարէ։ The—is in him. սատանան փորն է։

Deuced տիուս՛էտ, a. սատանայական; 2. անհամար, գարշելի(թիւ)

Deuteronomy տիութըրոն՛ըմի, s. գիրք երկրորդ օրինաց Մ.։

Deuterogamy տիութըրոկ՛էմի, s.

երկրորդ ամուսնութիւն։ -gamist -կ'էմիսթ, s. երկրորդ անգամ ամուսնացող։ -pathy տիւթէրօփ'էթի, s. կրկին հիւանդութիւն, կրկնախտ։ -scopy տիւթէրօս'գօբի, s. երկրորդ նշանակութիւն՝ տեսութիւն։

**Deutoxide** տիւթօք'սայտ, s. երկօքսիդ, երկժանգ, երկթթուխտ.

**Devastate** տէվ'աստէյթ, va. կործանել, աւերել, քանդել։ -tion -էվէսթէյ'շըն, s. կործանում, աւերում, աւերակ; 2. մեռելի գոյքի վատնում, մսխում եւ.

**Develop** տիվէլ'ըփ(թ), va. բանալ, արձկել, պարզել; 2. յայտնել, մանրամասնել, ընդարձակել; 3. զարգացնել։ -ment տիվէլ'ըփմընթ, s. բացում, աճում, ծաւալում, զարգացում; 2. մանրամասնութիւն; պարզում; 3. տարածում; 4. երկայնութիւն։

**Devest** տիվէսթ', va. մերկացնել, հանուեցնել, փետտել; 2. (իրաւունքէ) զրկել, ետ առնել եւն. =vn. (իրաւ.) կորսուիլ եւն.

**Devexity** տիվէքս'իթի, s. կորութիւն; 2. զառիվայր։

**Deviate** տիվիէյթ', vn. [from] մոլորիլ, զառածիլ, խոտորիլ։ = Without deviating. ուղղակի, չխփշտակ։

**Deviation** տիվիէյ'շըն, s. խոտորում, զառածութիւն; 2. մոլորիլը; 3. վրիպակ, սխալ։

*Device տիվայս'(թ), s. հնարք, գիւտ; 2. խորամանկութիւն; 3. միջոց, խորհուրդ, նշան։ -ful տիվայս'ֆուլ, a. հնարագէտ, խորամանկ։

**Devil** տէվ'լ, s. դեւ, սատանայ, սադայել; 2. գող, սրիկայ; 3. մանրող՝ գզող մեքենայ, գզոց, անեղ; 4. պղպեղը շատ՝ այրող կերակուր։ =va. չարացնել; 2. մանրել, գզել; 3. համեմել, պղպեղել։ Printer's-. տպարանի մանչ։ To play-with. միջամտել, նեղել; կործանել։ Devil's darning needle. ճպուռ, գաւան (մժեղ)։

**Devilish** տէվ'լիշ, a. սատանայական, դիւային, դժոխային, զզուելի։

**Devilkin** -'քին, s. պզտի սատանայ

**Deviltry** տէվ'լթրի s. սատանութ.

**Devious** տէվ'իըս, s. ծուռումուռ; 2. խոտորեալ։ [2. հնարելի։

**Devisable** -վայզ'էպլ, a կտակելի;

**Devise** տիվայզ'(թ), va. խորհիլ, ծրագրել, հնարել; 2. գծագրել, գծել; 3. կտակել։ =s. հրիտակ, կտակ; 2. ժառանգութիւն։

**Deviser** տիվայզ'ըր, s. գտիչ, հնարող։ -sor տիվայզ'ըր, s. կտակող, կտակարար։ -see տիվայզ'ի, s. հրիտակաւու, ժառանգորդ։

**Devoid** տիվոյտ', տիվօյտ', a. պարապ, դատարկ; 2. զուրկ, զրկուած։

**Devoir** տիվուար', s. մեծարանք, յարգութիւն; 2. պարտականութ.

**Devolution** տիվօլու'շըն, s. փոխանցում, թաւալում։

**Devolve** տիվոլվ'(թ), va. [on, upon] փոխանցել, շրջել։ =va. թաւալիլ; 2. փոխանցել։ -ment տիվոլվ'մընթ, s. փոխանցում։

**Devonian** տիվօ'նիըն, a. դեւոնեան (դար)։ -age. ձկանց շրջան երկ.

**Devoration** -'շըն s. գիշատում։

**Devote** տիվօ'թ, va. [to] ուխտել, ձօնել, ընծայել, նուիրագործել, նուիրել; 2. նզովել։

**Devoted** տիվոթ'էտ, a. ընծայեալ, նուիրեալ, նուիրական; 2. ուխտեալ, օխերիմ; 3. նախանձաւոր, անձնուէր։ -ness, s. -ութիւն։

**Devotee** տիվօթի', s. ջերմեռանդ, սուտ բարեպաշտ, պաշտօնամոլ։

**Devoter** տիվօթ'ըր, s. պաշտող։

**Devotion** տիվօ'շըն s. ուխտ, նուիրում; 2. անձնուիրութիւն,

բարեպաշտութիւն, աղօթասիրութիւն; 3. *pl.* աղօթք, երկրպագութ

**Devotional** տիվօ՛շընըլ, *a.* բարեպաշտական: -ist, *a.* կրօնամոլ:

**Devour** տիվաու՛ր, *va.* կլլել, գիշատել; 2. բղկտել, պատառել; 3. սպառել, լզել; 4. անյագաբար դիտել: -er, -ing տիվաու՛րըր, տիվաու՛րինկ, *a.* սպառող; 2. որկրամոլ:

**Devout** տիվաու՛տ, *s.* ջերմեռանդ, բարեպաշտ, երկիւղած; 2. եռանդուն: -ly, *ad.* եռանդագին, ջերմեռանդօրէն: -ness տիվաու՛տնէս, *s.* ջերմեռանդութիւն:

**Dew** տիու(տ), *s.* ցօղ, շաղ: =*va.* ցօղել; 3. խոնաւցնել: -berry. ժոխ, մորենի: -drop. ցօղի կաթիլ: -lap. կենդանեաց վզին տակ կախուած միս, վիժակ, մուուղ: -point. ցօղակէտ ջնչ. -retting. կանեփը՝ քթանը արեւը փռել: -worm. լպրծուկ, բոտոտ սօղուղճանն:

**Dewiness** տիու՛ինէս, *s.* խոնաւութիւն, ցօղաթրմութիւն:

**Dewless** տիու՛լէս, *a.* անցօղ:

**Dewy** տիու՛ի, *a.* ցօղաթուրմ:

**Dexter** տէքս՛թըր, *a.* աջ սաղ, աջոյ, աջ ձեռքի: -ity, -ousness -թըր՛իթի. տէքսթը՛րըսնէս, *s.* արագութիւն; յաջողակութ; վարպետութ.

**Dexterous, Dextrous** տէքսթը՛րըս, *a.* արագաշարժ, թեթեւ; 2. յաջողակ, վարպետ, հրքամիտ: -ly, *ad.* -ութեամբ, ճարպիկօրէն:

**Dextral** տէքս՛թրըլ, *a.* աջ, աջոյ:

**Dex'trine** -րին, *a.* աջօսլայ տ.

**Dey** տէյ, *s.* կուսակալ Ալճերիոյ, տայի հծ. [կամ թեթեւ նաւ:

**Dhow, Dow** տաու, *s.* արաբա-

**Dhole** տօ՛լ, *s.* շուն մը, ծողաշուն: [չաքար հնդ:

**Diabase** տայ՛էպէյս, *s.* կանա-

**Diabetes** տայէպի՛թիզ, *pl.* շաքարախտ, առատամիզութիւն:

**Diablerie, -lery** տիէպ՛լըրի, *s.* սատանութիւն, կախարդութիւն:

**Diabolic, -al** տայէպօլ՛իքէլ, *a.* դիւական, դժոխային: -ness -իքըլնէս, *s.* սրիկայութիւն, ամարդութ.

**Diabolism** տայէպ՛ըլիզմ, *s.* սատանութիւն: [դայրեցական տէս.

**Diacaustic** տայէքօսթ՛իք *a.* ըն-

**Diachylon, -lum** տայէքիլ՛ըն, -քիլ՛ըմ, *s.* սպեղանի եազը:

**Diac'onate,** *s.* սարկաւագութ.:

**Diacoustics** տայէքուս՛թիքս, *a.* լսելաքանական: =*pl.* լսելաքանութ.

**Diacritic, -al** տայէք՛րիթիքէլ, *a.* յայտարար, տրոհական ք. [ւէգ ջս.

**Diadelphia** տայէտէլ՛ֆիէ *s.* որձե-

**Diadem** տայ՛էտըմ, *s.* թագ, պըսակ, խոյր; 2. վարսակալ, պսակակալ; 3. իշխան, ինքնակալ: -ed -տըմտ, *a.* թագազարդ: [տրոհումն

**Diæresis** տայէր՛իսիս, *s.* վանկի

**Diagnosis** տայէկնօ՛սիս, *s.* ախտաճանութիւն, ախտագիտութիւն, ախտացոյց նշան: -nostic -նոսթ՛իք, *s.* ախտաճանաչութիւն; 2. ախտանիշ: =*a.* ախտացոյց, ախտաճանաչ:

**Diagonal** տայէկ՛ընըլ, *s.* տրամանկիւն, անկիւնագիծ: =*a.* անկիւնական: -ly, *ad.* տրամանկիւնաբար, առ ի շեղ:

**Diagram** տայէկ՛րէմ, *s.* ծրագիր, ձեւ, ծրագրութիւն: -raph -՛րէֆ, *s.* ձեւագծող, տրամագիր գ.

**Dial** տայ՛էլ, *s.* արեւի ժամացոյց; 2. ժամացոյցի երես: -plate. արեւաժամու շրջանակ: -ist, *s.* ժամագործ: [գաւառաբարբառ:

**Dialect** տայ՛էլէքթ, *s.* լեզու; 2.

**Dialectic, -al** տայէլէքթ՛իքէլ, *a.* գաւառաբարբառի; 2. տրամաբանական: =*pl.* տայէլէք՛թիքս, *s.* վիճաբանելու արուեստ, տրամաբանութիւն: -tician տայէլէքթի՛շըն, *s.* տրամախօս, հակաճառող:

Diallage -'էլէճ, *s.* խառնաքար հնք.

Dialogist -'ըճիսթ, *s.* տրամախօս:

Dialogue տայ'էլօկ, *s.* տրամախօսութիւն; 2. խօսակցութիւն:

Dialysis տայէլ'իսիզ, *s.* բառից տրոհում; 2. երկլուծում դ.; 3. քակտումն=*a.* հակամագնիսական:

Diamagnetic տայէմէկնէթ'իք, *s.* տրամագնիսութիւն: -ally, *ad.* հակամագնիսաբար:

Diameter տայէմ'իթըր, *s.* տրամագիծ, տրամաչափ, երկակտուր: -tral -մ'իթրըլ, *a.* տրամաչափական

Diametric, -al տայէմէթ'րիքէլ, *a.* տրամագծական: -ly, *ad.* տրամագծաբար, հակառակ:

Diamond տայ'մընտ, տայ'էմընտ, *s.* ադամանդ; 2. շեղանկիւն պատկեր; 3. քառեակ օրէնք թղ. =*a.* ադամանդեայ, ակնակուռ: —cutter. ակնահատ: Glazier's—. ապակեգործի ադամանդ: —edition. ադամանդատիպ, ամենամանր գրով գեղեցիկ տպագրութիւն —shaped -շէյբտ. շեղաձեւ:

Dian'drous, *a.* երկորձայ (բոյս):

Diapason տայէբէյ'զըն, *s.* ձայնաշար, ութերեակ; 2. ձայնացոյց եր.

Diaper տայ'էբըր, *s.* բանուած երփնազարդ կտաւ; 2. անձեռոց հանգոյց: =*va.* կտաւին վրայ բանել; 2. տղուն կրծկալ դնել: =*vn.* գծագրել:

Diaphaneity տայէֆէնի'իթի, *s.* թափանցկութիւն: -phanous տայէ'ֆէնըս, *a.* թափանցիկ, պայծառ:

Diaphoresis տայէֆօրի'սիս, *s.* քրտնութիւն: -retic, *a.* քրտնաբեր

Diaphragm տայ'էֆրէմ, *s.* անջրպետ, խարոց, միջնացանկ; 2. խորշաթաղանթ (պտուղներու); 3. տոծանի, ատագատ ճաճ ծվի մրդ.

Diar'chy, *s.* երկպետութիւն:

Diarist տայ'էրիսթ, *s.* օրագրութիւն պահող, օրագրող:

Diarrhæa,-hea տայէր'իէ, *s.* փորքշուք, թանձ փորհարութ. [հաշիւ

Diary տայ'էրի, *s.* օրագրութ; 2. օր-

Diastase տայ'էսթէյս, *s.* ցորենի խմորումէ յառաջ եկած շաքարային նիւթ մը, տիտաղ:

Diastole տայ'էսթօլ, *s.* ընդարձակում, ծաւալում սրտի բժ.

Diastyle տայ'էսթայլ, *s.* տարասիւն շինուած, տրամասիւն ճ.

Diatessaron տայէթէս'էրըն, *s.* համաձայնութիւն չորից աւետարանաց; քառանիւթ: [միտութիւն

Diathesis տայէթհ'իսիս, ախտա-

Diatonic տայէթ'օնիք, *a.* յարաձայն (սանդուխ) եր.:

Diatribe տայ'էթրայպ, *s.* դատափետութիւն, պարսաւագիր, -ճառ:

Dibber, Dibble տիպ'պըր, տիպ'լ, *s.* տնկելու փայտ: =*va.* փայտով ծակ բանալ եւ տնկել:

Dice տայս, *pl. of* Die. քուեայք զառ; 2. նարտախաղ: =*vn.* նարտ խաղալ: -box. քուէսկահ զառ գուպուռու

Dichroism տայ'քրօիզմ, *s.* երկգունութիւն դէս.

Dichromatic,-romic տայքրօմէթ'իք, -քրօ'միք, *a.* երկգոյն, երկերանգ:

Dichotomy տայքօթ'ըմի, *s.* երկհերձութիւն, երկճղութիւն; 2. կիսալուսութիւն, կիսերեւում (լուսնի): -mous տայքօթ'ըմըս, *a.* երկհերձ

Dickens տիք'ընզ, *int.* շո՛ւտիկ, գրո՛ղ, աչքդ կուրնա՛: [(մորթ):

Dicker տիք'ըր, *s.* տասը հատ

Dickey,-ky տիք'ի, *s.* կառաց ետին ծառայի տեղ; 2. շապկի առաջամաս; 3. թեւնոց:

Dicotyledon, -ous տայքօթիլիտ'ըն, -լիտ'ընըս, *s.* երկբլթակ բոյս:

Dictate տիք'թէյթ, *va.* [to] թելադրել, տուն տալ, ըսել; 2. ցնել, հրամայել: =*s.* թելադրութիւն,

տուն տալը; 2. հրաման։

**Dictation** տիքթէյ՛շըն. *s.* թելադրութիւն, տուն տալը, գրուցագրութիւն; 2. հրամայելը։

**Dictator** տիքթէյ՛թըր, *s.* իշխանապետ, դիկտատոր։ -ial տիքթէթ՛օրիըլ, *a.* -ական։ -ship, -ry, -ture տիքթէյ՛թըրշիփ, տիքթէյ՛չըր, *s.* դիկտատորութ., վարչապետութ.։

**Dictatress, -rix** տիքթէյ՛թրէս, -յ՛թրըքս, *s.* իշխող՝ հրամայող կին։

***Diction** տիք՛շըն, *s.* ասացուած, առում, ոճ; 2. գրուցուածք։

**Dictionary** տիք՛շընէրի, *s.* բառարան, բառագիրք։

**Dictum** տիք՛թըմ, *pl.*-ta տիք՛թէ. ասացուած, վճիռ, առած։

**Did, Didst** *See* **Do** ըրիր։

**Didactic, -al** տիտէք՛թիքըլ, *a.* վարդապետական, յորդորական; 2. *pl.* ուսուցման արհեստ։

**Didactyl,-ous** տիտէք՛թիլըս, *a.* երկճղակ, երկատեղն։

**Didapper** տիտ՛էփըր, *s.* տորոնիկ, վայրի բադ մը. nrbz Black-chin grebe, dabchick, dobchick.

**Diddle** տիտ՛լ(տ), *va.* խաբել։

**Didina'mia,** *a.* երկազօր (բոյս)

**Dido** տայ՛տօ, *s.* խաղ. ծուղակ։

**Die** տայ, *vn.* (Died տայտ, Dying) [*of* a desease; *by* an instrument, violence, or famine; *from* a person or thing; *for* another] մեռնիլ; կորսուիլ, անհետանալ; 2. չորնալ, սատկիլ, ճօղիլ (շան); 3. նուաղիլ, մարիլ; 4. հրաժարիլ; 5. տառապիլ։ Dying breath. վերջին շունչը։ To die away. շիջանիլ; մեռնիլ։ To die off. մարիլ, մոցուիլ։

**Die** տայ, (*pl.* Dice տայս) *s.* քուէ (նարտի) զար; 2. (*pl.* Dies տայզ) կնիք դրամոյ, կնքոց սիֆֆէ; 2. ներկ։ -sinking. քուէշինութիւն. -stock. դրամահատ մամուլ, դրօշմ։

**Dier** տայ՛ըր, *See* Dyer.

**Diesis** տայ՛էսիս, *s.* կիսաստր եւ.

**Diet** տայ՛էթ, *s.* ռոճիկ, մնունդ, կերակուր; 2. ժուժկալութիւն, պահեցողութիւն, կերառութիւն եւ; 3. ատեան, ժողով։ =*va.* սնուցանել; 2. կերակուրէ զգուշացնել։ =*vn.* սնանիլ, ուտել; 2. (կերակուրէ) զգուշանալ։ -drink. բուսաջուր

**Dietary** տայ՛էթէրի, *sa.* պահեցողական; 2. ցուցակ ուտելի կերակրոց

**Dietetic, -al** տայէթէթ՛իքըլ, *a.* առողջապահիկ, կերակրոյ։

**Dieter, -tarian** տայէ՛թըր, տայէթէ՛րիըն. *a.* դարմանիչ։

**Diff** տիֆ, *s.* կոփածոյ։

***Differ** տիֆըր՛(տ), *vn.* (*from*) տարբերիլ, զանազանիլ, չմիաբանիլ, գժտիլ; 2. (*with*) տարակարծիք ըլլալ։

***Difference** տիֆ՛ըրընս(թ), *s.* տարբերութիւն, զանազանութիւն, խըտիր; 2. խնդիր, վէճ; 3. տարբերականութ. =*va.* որոշել, զանազանել։

**Different** տիֆ՛ըրընթ, *a.* [from] տարբեր, այլեւայլ, զանազան։-ly, *ad.* -կերպով, փոփոխական։

**Differential** տիֆըրէն՛շըլ, *s.* անհունապէս փոքր քանակութիւն՝ թիւ, տարբերաքանակ։ =*a.* տարբերական։ -calculus. տարբերական համարողութիւն։

**Differentiate** տիֆըրէն՛շիէյթ, *va.* տարբերութեան չափը առնուլ, տարբերաչափել։ =*vn.* տարբերել, որոշել, անջատել։ -tion -շիէյ՛շըն, *s.* տարբերաչափում; որոշում։ -tia -րէն՛շիա, *s.* տարբերաքանակ. տեսակարար տարբերութիւն եւ.

**Difficult** տիֆ՛իքըլթ, *a.* [of] դըժուար, ծանր, խիստ. տաժանելի։-ly, *ad.* դժուարաւ, դժուարութեամբ։

**Di'fficulty** -քըլթի. *s.* [in] դըժուարութիւն, ծանրութիւն; 2. խըն-

գիր, տարակոյս; 3. ցաւ, վիշտ; 4. ընդդիմութիւն։

Diffidence, Diffidentness տիֆ'ֆիտընս, տիֆֆի'տընթնէս, *s.* տարակոյս, երկմտութիւն; 2. երկչոտութիւն; 3. անվստահութիւն։

Diffident տիֆ'ֆիտէնթ, *a.* թերահաւատ, կասկածոտ։ -ly, *ad.*

Diffluence տիֆ'ֆլուէնս, *s.* հալումն, լուծումն, ջրջրութիւն։

Difform տի'ֆորմ, *a.* տձեւ; 2. տարբեր։ -ity -ֆորմ'իթի, *s.* աննըմանութիւն; 2. տգեղութիւն։

Diffract տիֆֆրէքթ', *va.* (լոյսը) բեկբեկել։ -ion -'շըն, *s.* խոտորումն բեկբեկումն լուսոյ։

Diffranchise *See* Disfran-.

Diffuse տիֆֆիուզ'(զ), *va.* հեղուլ, զեղուլ; 2. ծաւալել։ =տիֆֆիուս', *a.* ճոխ, ճապաղ, ընդարձակ, տարածեալ։ -ly -'լի, *ad.* ընդարձակօրէն, ճապաղ կերպով։ -ness -'նէս, *s.* երկայնաձիգ ճապաղ ոճ։

Diffused տիֆիուզտ', *a.* սփռեալ, ցանուցիր։ -ly, *ad.* ճոխաբար; 2. շփոթ։ -ness, *s.* ծաւալումն։

Diffusible -'իպլ, *a.* տարածելի, սփռելի։ -bility, *s.* -ութիւն։

Diffusion տիֆիուժ'ըն, *s.* տարածումն, ծաւալումն, ցրուիլը։

Diffusive տիֆիու'-սիվ, *a.* սփռելի, ցրուեալ, ճապաղ։ -ly, *ad.* -կերպով։ -ness, -ութիւն։

Dig տիկ, *va.* (Dug, Digged տիկտ) բրել, փորել, պեղել; 2. բահով փորել; 3. բահ փորել, աշխատիլ։ =*s.* բահի հարուած; 2. ապտակ, բռունց

Digamma տայկէմ'մը, *s.* անգործածելի յունի. տառ մը (*F*), որ հաւանականաբար w կ'հնչուէր։

Digastric տայկէսթ'րիք. *a.* կրկնափոր(գնդեր) մէջ; 2. երկփորային։

Digest տիճէսթ' *va.* մարսել, հալեցնել; 2. հանդուրժել, կլլել; 3. կշռել, կարգադրել, քննել; 4. հասցնել =*vn.* մարսուիլ, հալիլ; 2. հասնիլ, թարախոտիլ (վէրքը)։ = տայ'ճէսթ, *s.* հաւաքումն (օրինաց)։ -er տիճէսթ'ըր, *a.* մարսողական; 2. մարսիչ, հալիչ; 3. ամրափակ պղնձէ աման մը, փութեփուկ։

Digestible տիճէսթ'իպլ, *a.* դիւրամարս։ -ness, -bility -'նէս, -պիլիթի, *s.* մարսողականութիւն։

Digestion տիճէսթ'չըն, *s.* մարսողութիւն; 2. կարգադրութիւն; 3. հասունութիւն; 4. շարաւումն։

Digger տիկ'ըր, *s.* փորող, պեղող։

Diggings տիկ'ինկզ, *pl.* հանք։

Dight տայթ, *va.* պճնել, կոկկել, հագուեցնել, պատրաստել։

Digit տիճ'իթ, *s.* մատ; 2. մատնաչափ, մատ; 3. թիւ, թուանշան (0, 1—9)։ -al տի'ճիթըլ, *a.* մատի, մատնային։ -ate, -ated տիճ'իթէյթ, տիճ'իթէյթէտ, *a.* մատնաւոր, ճղճըղկէն; մատնաձեւ (տերեւ)։ -alis տիճիթէյ'լիս, *s.* մատնուկ, մատնեծաղիկ։ -ation -'շըն, *s.* մատնաձեւութիւն, մատնաւորումն։ -iform տիճ'իթիֆորմ, *a.* մատնաձեւ է. -igrade -իկրէյտ, *a.* մատնագնաց է.

Dignified տիկ'նիֆայտ, *a.* յարգելի, մեծարոււ; 2. աստիճանաւոր։

Dignify տիկ'նիֆայ, *va.* աստիճան իշխանութիւն տալ; 2. բարձրացնել, փառաւորել, մեծարել։

Dignitary -թէյրի, *a.* աստիճանաւոր, բարձրաստիճան։

Dignity տիկ'նիթի, *s.* աստիճան, պատիւ; 2. բարձրութիւն, արժանապատուութիւն; 3. գերազանցութ; 4. շուք։ [գոր. ch, sh, ea, ie.

Digraph տայ'կրէֆ, *s.* երկգիր։

Digress տիկրէս'(տ), *vn.* խոտորիլ, շեղիլ։ -ion տիկրէ'շըն, *s.* շեղումն։ -ional, -ive -'շընըլ, տիկրէս'իվ, *a.* խոտորեալ, խոտոր, զարտուղի։

Dike տայք(տ), *s.* փոս, խրամ; 2. թումբ, առուամէջ, խանդակ; 3. հանքի երակ; 4. խրամակեցք (հրաբխային)․ =*va.* թումբ շինել, ամբարտակել: [պատառուած, հերձ:

Dilaceration տիլէսըրէյ՛շըն, *a.*

Dilapidate տիլէբ՛իտէյտ, *va.* աւերել, կործանել; 2. վատնել: -tion -՛էտէյշըն, *a.* աւերում, կործանում; 2. վատնում, մսխում: -dator տիլէբիտէյ՛թըր, *s.* աւերիչ, վատնիչ:

Dilatable տիլէյթ՛էպլ, *s.* ծաւալելի, տարածելի․ -bility -պ՛իլիթի, *s.* ընդլայնականութիւն:

Dilatation, Dilation տիլէյթէյ՛շըն, տայլէյ՛շըն, *a.* ծաւալում, ընդլայնում, ընդարձակում:

Dilate տիլէյթ՛, *va.* ընդարձակել, լայնցնել; 2. տարածել: =*vn.* սփռուիլ, ուռիլ, բացուիլ:

Dilator տիլէյ՛թըր. *a.* լայնցնող, լայնող: -iness, *s.* յապաղում:

Dilatory տիլէյ՛թըրի, *a.* յամր; 2. դանդաղ, ծդծդող: [բաբանութ.

Dilemma տայլէմ՛մա, *s.* երկայ-

Dilettante տիլէթ՛թէնթի, *s.* (*pl.* ti -թայ) *s.* գեղարուեստասէր, -ism, -tism -թէն՛թիզմ, *s.* -ութիւն: It.

*Diligence տիլ՛իճընս, *s.* փոյթ, ջանք, խնամք; 2. ճեպընթաց(կառք)

Diligent տիլ՛իճընթ. *a.* ժիր, փութաջան, ջանասէր: -ly, *ad.* ժրաջան, եռանդուն կերպով, փութով:

Dill տիլ, *s.* սամիթ տուրազ օթու:

Dilly տիլ՛ի, *s.* պնդակառք:

Dilucidation տիլուսիտէյ՛շըն, *s.* բացայայտութիւն: [անօսրիչ:

Diluent տիլ՛իուընթ, *a.* լուծիչ,

Dilute տիլիութ՛, *va.* ջուր դնել, հարել, լուծել; 2. մեղմել, բարեխառնել: [բաց, մեղմ:

Diluted տիլիու՛թէտ, *a.* թոյլ,

Dilution տիլիու՛շըն, *s.* ջուր խառնելը, մեղմելը; 2. լուծելը, հաբելը; 3. բացդունութիւն:

Diluvial, -vian տիլու՛վիըլ,-վիըն, *a.* ջրհեղեղի, ջրհեղեղեան:

Diluvium, -vion տիլու՛վիըմ, -՛վիըն *s.* ջրհեղեղեան երկիր, հեղեղանիւթ; 2. չորրորդախաւ երկ.

Dim տիմ, *a.* աղօտ, նսեմ, մթին: =*va.* մթագնել, նսեմացնել: -ly *ad.* -կերպով: -ness, *s.* -ութիւն:

Dime տայմ, *s.* թալերին ¹/₁₀ը:

Dimension տիմէն՛շըն, *s.* տարածութիւն, քանակութիւն լայն.; 2. տարածոց, ծաւալ; 3. հասողութիւն; 4. կարողութիւն: -less, *a.* անեզր, անչափ: [բնու.

Dimeter տիմ՛էթըր, *s.* երկամանակ

Dimidiate տիմիտ՛իէյթ, *va.* կիսել:

Diminish տիմին՛իշ(տ), *va.* [from] պակսեցնել, նուազեցնել; 2. պզտիկցնել; 3. նըբացնել: =*vn.* քիչնալ, նուազիլ; 2. պզտիկնալ; 3. բարակնալ: -able, *a.* նուազելի, իջնալիք: [ձայնիջեկ եր. (>) *[It.]*:

Diminuendo տիմին՛իուէնտօ, *a.*

Diminution տիմինիու՛շըն, *s.* [of] նուազում, նուազութիւն, պակսութիւն, փոքրութիւն; 2. վերջ:

Diminutive տիմին՛իութիվ, *a.* նըուազ, փոքր, պզտիկ: =*s.* նուազական անուն: -ness, *s.* նուազութիւն, պզտիկութիւն: -ly, *ad.*

Dimish տիմ՛իշ, *a.* աղօտ:

Dimissory տիմիս՛օրի, *a.* արձակման; թոյլտուութեան (թուղթ):

Dimity տիմ՛իթի, *s.* պատտառ մը, տօրակ տիմի պէզի:

Dimly տիմ՛լի, *a.* մթագին, աղօտ:

Dimming տիմ՛մին, *s.* նսեմացում:

Dimness տիմ՛նէս, մթագնութ.:

Dimorphous տայմօր՛ֆըս, *a.* երկկերպեան (բիւրեղ), երկձեւ:

Dimple տիմ՛բլ, *s.* փոսիկ, այտափոսիկ: =*an.* փոսել, փոսցնել; 2. փոսիկ փոսիկ ընել:

**Din** տին(տ), *s.* աղմուկ, աղաղակ։ =*va.* հնչեցնել, թնդացնել։

**Dine** տայն, *an.* ճաշել; ճաշ տալ։

**Ding** տինկ(տ), *va.* թնդացնել, զօղանջել։ Ding-dong. զօղանջիւն։

**Dinger** տին'կըր, *s.* գող։ [(Հնդ.)

**Dinghy, -gey** տին'կի, *s.* նաւակ

**Dingle** տին'կըլ, *s.* հովիտ, ձոր։

**Dingy** տին'ճի, *a.* աղօտ, մութ։

**Dingo** տին'կօ, *s.* Աւստրալ. շուն։

**Dining** տայն'ինկ. *s.* ճաշելը, ճաշ։ -hall, -room. ճաշարան։

**Dinner** տին'ըր, *s.* ճաշ, հացկերոյթ; 2. խնճոյք, հրաւէր։ –party. ճաշկերոյթ։ –time. ճաշաժամ։

**Dinotherium** տայնօթի'րիըմ, *s.* քարացեալ կենդանի մը, հսկայագազան։ –saur. –saurian տայնօսօ'րիըն, *s.* հսկայամողէզ եւլ.

**Dint** տինթ, *s.* հարուած, վէրք, խոց; 2. զօրութիւն; 3. հետք, նշմար, նշան։ =*va.* խոցել, նշան ընել։

**Diocesan** տայօսի'սըն, *a.* թեմական։ =*s.* վիճակաւոր եպիսկոպոս։

**Diocese** տայ'օսիս *s.* թեմ, վիճակ

**Diœcia** տայիս'իէ, երկտնակք բս.

**Dioptrics** տայոփթ'րիքս, *pl.* ընդհայեցողութիւն, լուսոյ բեկբեկման գիտութիւն։ [րանացոյց։

**Diorama** տայօրէյ'մէ, *s.* տեսա

**Dip** տիփ. *va.* (Dipped տիփտ, *or* Dipt) ընկղմել, մխել, թաթաւել։ =*vn.* սուզանիլ, մխիլ։ =*s.* ընկղմում, մխելը, մխրճում; 2. հակում, ճնշում; 3. թաթխուած մոմ։ –chick. տորորիկ բ.։ –ping needle. կողմնացոյցի ասեղ, բեւեռացոյց։ Dip of the horizon. հակում հորիզոնի։ Dip of the needle. մագնիսական ճնշում [տերեւեան (բոյս)։

**Dipetalous** տայփէթ'էլըս, *a.* երկ

**Diphtheria** տիֆթիր'իէ, տիփ-, *s.* կեղծամաշկութիւն բժ.

**Diphtong** տիֆ'թօնկ, *s.* երկբարբառ. երկձայն։ –al տիֆթօն'կըլ, *a.* երկձայն։

**Diphyllous** տայֆիլ'ըս, *a.* երկտերեւի։ [փետտել։

**Dipilate** տիփ'իլէյթ, *va.* մազերը

**Diploe** տիփլօ'ի *s.* ոսկրապատունդ, ամթնուկ, ապնդանիւթ մրտ.

**Diploma** տիփլօ'մէ, *s.* (*pl.* տիփլօմէզ,) աստիճանագիր, վկայական, վկայագիր։ –ties մէթ'իքս, *s.* գիտութիւն դրչագրաց, դրչագիտութիւն

**Diplomacy. -matism** տիփլօ'մէսի, տիփլօ'մէթիզմ, *s.* դիւանագիտութիւն, ճարտարութիւն; 2. դիւանագիտական մարմին։

**Diplomat, -mate, -matic, -matist** տիփ'լօմէթ, -մէյթ, -մէթ'իք, տիփլօ'մէթիսթ, *s.* դիւանագէտ, քաղաքագէտ; 2. վարպետորդի։

**Diplomatic. -al** տիփլօմէթ'իքըլ, *a.* դիւանագիտական։ –ly, *ad.*

**Dipped** տիփթ, *a.* պարտական։

**Dipper** տիփ'ըր, *s.* սուզակ; մխրճող; կեռնեխ բ.; մեծ արջ աստ.

**Dipsomania** տիփսօմէյ'նիէ, *s.* ծարաւամոլութիւն, գինեմոլութիւն։

**Dipteral, -terous** տիփ'թըրըլ, -'թըրըս, *a.* երկթեւեայ (միջատ)։

**Dire** տայր, *a.* սոսկալի, սարսափելի, դժնդակ; 2. նեւուլիկ։

**Direct** տիրէքթ', *a.* շիտակ, ուղղորդ, ղորդ, ուղիղ; 2. ուղղագիծ, ուղղակի; 3. պարզ, որոշ։ =*va.* ուղղել, առաջնորդել; 2. ուղղութիւն տալ, ղորդել; 2. հրամայել, վարել; 3. հասցէն գրել։ –ness, *s.* ուղղութիւն, բացորոշութիւն։

*****Direction** տիրէք'շըն, *s.* ուղղութիւն, հրահանգ, հրաման; 2. վարչութիւն տեսչութիւն; 3. հասցէ։ –post. ուղեցոյց։ –word. երեսադարձ, կոչում։

**Directive** տիրէք'թիվ, *a.* առաջնորդող, վարչական; 2. ուղղիչ։

*Directly դիրէքթ'լի, *ad.* ուղղակի, յայտնապէս; 2. անմիջապէս։

Director դիրէք'թըր, *s.* տնօրէն, տեսուչ, վերակացու, վարիչ, առաջնորդ։ -ship, *s.* տնօրինութիւն, առաջնորդութիւն։ -ate -'թըրէյթ, *s.* վարչութիւն, վարչական ժողով։ -ial -թօ'րիըլ, *a.* վարչական, վարիչ։

Directory դիրէք'թըրի *s.* վարչութ. ուղղութիւն։ -trix, -tress թրիքս, -թրէս, *s.* տնօրինուհի; 2. ուղղիչ գիծ։

Direful տայր'ֆուլ, *a.* սոսկալի, այլանդակ։ -ness, Direness տայր'նէս, *s.* ահագնութիւն։

Dirge տըրճ, *s.* լալօնք, մահերգ։

Dirigent դիրի'ճէնթ, *s.* ուղղիչ, վարիչ։

Dirk տըրք, *s.* դաշոյն մը։ =*a.* մութ։ =*va.* դաշունահարել։

Dirt տըրթ, *s.* աղտ, տիղմ; 2. ճիրպ, աղտեղութիւն, բիծ =*va.* աղտոտել։ -eating. աղբակերութ. հողակերութիւն; խօսքը ուտել՝ ուրանալ; ժուժել, համբերել։ -ied տըրթ'իտ, *a.* աղտոտած։ -iness, *s.* աղտոտութիւն; 2. նուաստութ.։

Dirty տըրթ'ի, *a.* աղտոտ, ցեխոտ; 2. պղտոր, ապականած։

Diruption դայրըփ'շըն, *s.* պայթում, պայթիւն; 2. խորտակում։

*Disability -ըպիլ'իթի, անկարողութ.

Disable դիսէյ'պըլ, *va.* [-bled from] անկարող՝ անգործածելի ընել; 2. տկարացնել։ -ment, *s.* անկարողանալը, տկարացնելը։

Disabuse դիսըպիուզ'(զ), *va.* զգուշացնել, ուղղել, շտկել։

Disaccommodate դիսըքքօմ'օտէյթ, *va.* նեղը խօթել, տագնապեցընել։ -tion -'շըն, *s.* անպատրաստութիւն։

Disaccord դիսըքօ'րտ, *s.* երկպառակութ.; անհամաձայնութ.։

Dissaccustom դիսըքըսթըմ, *va.* սովորութիւնը կտրել տալ, տարավարժել։

Disacknowledge դիսըքնօլ'էճ, *va.* ուրանալ, ժխտել, չճանչնալ։

Disadvantage դիսըտվէն'թէյճ, *s.* ձախորդութիւն; 2. վնաս, կորուստ։ -tageous էտ'վէնթէյճըս, *a.* ձախորդ, ձախող, վնասակար։ -ly, *ad.* -ness -թէյճ'ըսնէս, *s.*

Disaffect դիսըֆֆէքթ', *va.* [-ed *with*] սէրը կտրել, պաղեցնել; 2. խառնակել։ -ion -'շըն, *s.* ցրտութիւն, անտարբերութ. ատելութ.։

Dissaffirm դիսըֆֆըրմ'(զ) *va.* ժխտել, հերքել; 2. մերժել։ -ance, -ation -ֆըր'մէնս, -ֆըրմէյ'շըն, *s.* մերժում; ժխտում; 2. հերքում։

Disagree դիսըկրի'(զ), *vn.* [with, to] տարբերիլ, չհամաձայնիլ, չյարմարիլ, հակառակիլ։ -able -րի'էպլ, *a.* [to] անհամաձայն, հակառակ, անհաճոյ ատելի։ -ment -րի'մէնթ, *s.* անհամաձայնութիւն, գժտութիւն, թիւրիմացութիւն։

Disallow դիսըլլաու'(զ), *va.* արգիլել; 2. մերժել; 3. դատապարտել։ -able, *a.* անընդունելի, մերժելի։ -ance -'էնս, *s.* արգելք։

Disanimate դիսէն'իմէյթ, *va.* սպաննել; 2. վհատեցնել։

Disannex դիսէննէքս'(զ), *va.* բաժնել, կտրել, զատել։

Disannul դիսէննըլ', *va.* ոչընչացընել; 2. ջնջել, աւրել։

Disappear դիսէփփիյր'(զ), *vn.* աներեւութանալ, գոյութենէ դադրիլ։ -ance -'էնս, *s.* անհետացում, ոչնչացում։

Disappoint դիսէփփօյնթ', *va.* [-ed *of* a thing not obtained; *in* a thing obtained] ստել, խաբել; 2. ի դերեւ հանել, յուսախաբ ընել։ -ment -մէնթ, *s.* յուսազրկում, վրիպում; 2. դերեւանք յուսախաբու-



թիւն; 3. սրտնեղութիւն։

Disappreciate տիսըփրիշ'իէյթ *va* արհամարհել, չգնահատել; 2. չվաւերացնել, չթոյլատրել։

Disapproval, -probation տիսըփրու'վըլ, -փրօպէյ'շըն, *s.* անհաւանութիւն։ -batory -պէյ'թըրի, *a.* անհաւան, չընդունող։

Disapprove տիսըփրուվ'(զ), *vn.* [of] անհաւանիլ, մերժել, ատդատանել

Disarm տիզարմ'(զ), *va.* [of] զինաթափ ընել; 2. համդարտեցնել։ -ament -մ'ըմընթ, *s.* զինաթափութ.

Disarrange տիսըրրէյնճ'(զ), *va.* խառնակել, խանգարել։ -ment, *s.* խանգարում, շփոթութիւն։

Disarray տիսըրրէյ'(զ), *va.* զգեստը հանել, մերկանալ; 2. շփոթութիւն ձգել։ =*s.* խառնակութիւն, շփոթութիւն; 2. մերկացում։

Disaster տիզա'սթըր, *s.* յանկարծական աղէտք, թշուառութ., վիշտ։ -ous -'թրըս, *a.* աղետալի։

Disavow տիսըվաու'(զ), *va.* ուրանալ, մերժել։ -ment, -al -'մընթ, -վաու'ըլ, *s.* մերժում, ուրացում։

Disband տիսպէնտ', *va.* արձակել, ճամբել (զօրքը), ցրուել։ -ment -'մընթ, *s.* արձակում։ [պարպել։

Disbark' տիսպարք', *va.* նաւը

*Disbelief տիսպիլիյֆ', *s.* անհաւատութիւն; 2. տարակոյս։

Disbelieve տիսպիլիյվ'(զ), *vn.* չհաւատալ, թերահաւատիլ։

Disbeliever տիսպիլիյ'վըր, *a.* անհաւատ, թերահաւատ։ [հանել։

Disbowel -պաու'էլ *va.* աղիքները

Disburden, -burthen տիսպըր'տն, *va.* բեռը պարպել, թեթեւցնել։

Disburse տիսպըրս'(թ) *va.* վատնել, խարճել, ծախսել։ -ment, *s* վատնում, ծախսում, մսխում։

Disc, *See* Disk.

Discard տիսքարտ', *va.* վտարել, մերժել; 2. աւելորդը նետել ԹՂ.

Discern տիզզըրն'(զ), *va.* որոշել, զատել, նշմարել։ =*vn.* զանազանել։ -ing -'ինկ. միտացի, խոհեմ։ -*ment -'մընթ, *s.* դատողութ. ընտրողութ.

Discernible տիզզըրն'իպլ, *a.* տեսանելի, զգալի, որոշ, յայտնի, դիւրիմաց։ -ness, *a.*-bly, *ad.* -կերպով։

Discharge տիսչարճ'(զ), *va.* [of] բեռը պարպել, թեթեւցնել; 2. (հրացանը) արձակել, պարպել; 3. ազատել, համդարտեցնել; 4. (պարտքը) վճարել; 5. ազատ կացուցանել, արձակել; 6. (պաշտօնը) կատարել; 7. սփոփել։ =*vn.* թափել, պարպել; 2. վազել (վէրքը)։ =*s.* բեռնաթափում; 2. հոսում; 3. հրացանութիւն, զէնք պարպելը; 4. պաշտօնանկութիւն; 5. վճարում, փրկանք; 6. անդորրագիր; 7. ազատ թողուլը; 8. գործադրութիւնը։

Discharg'er -չարճ'ըր, *s.* ելեկտր. հոսանքը պարպող գործի, զերծիչ ԹՂ.

Disciple տիսսայ'պլ, *s.* աշակերտ, հետեւող։ -ship, *s.* աշակերտութիւն։ [հաձեւ։

Dis'ciform տիս'իֆորմ, *a.* սկա-

Discipline տիս'իփլին, *s.* կրթութիւն, հրահանգ; 2. կարգապահութիւն, առաջնորդութիւն; 3. յանդիմանութ., խարազան, ձաղկանք, պատիժ։ =*va.* բարեկարգել; 2. հրահանգել, կրթել; 3. պատժել, ձաղկել։

Disciplinable տիսիփ'լինէպլ, *a.* դիւրամարզ, հրահանգելի։ -ness, *s.*

Disciplinant տիս'իփլինէնթ, *s.* խստակրօնք, ձաղկիչ կրօնաւորք։

Disciplinarian տիսիփլինէյ'րիէն, *a.* խրատական; 2. խստապահանջ։

Disciplinary տիսիփլինէյ'րի, *a.* կարգապահական, հրահանգական։ -rian -նէյ'րիըն, *a.* հրահանգական, հրահանգող։ =*s.* խստապահանջ։

**Disclaim** տիս+քլէյմ'(ս), *va.* հրաժարիլ, մերժել, ուրանալ, չընդունիլ; 2. վտարել: -**er** տիս+քլէյ'մըր, *s.* ուրացում, յետս կոչում, հրաժարում; 2. մերժում:

**Disclose** տիս+քլօզ'(ս). *va.* բանալ, հօլանել; 2. յայտնել, ցցնել:

**Disclosure** տիս+քլօժ'ըր, *s.* բացում, յայտնութիւն, գիւտ գտում:

**Discoid** տիս+քօյտ', *a.* սկաւառաձև:

**Discolor** տիս+քըլ'ըր, *va.* գունաթափել; բծաւորել: -**ation** -քըլըրէյ'շըն, *s.* գունաթափութիւն, դժգունութ.:

**Discomfit** տիս+քըմ'ֆիթ, *va.* խորտակել, յաղթահարել; 2. ցրուել:

**Discomfiture** -քըմ'ֆիչըր, *s.* պարտութ; 2. կոտորած, աւերուն վիճակ

**Discomfort** տիս+քըմ'ֆըրթ, *s.* վրհատութիւն, տառապանք: =*va.* տխրեցնել, վշտացնել, ցաւցնել:

**Discommend** տիս+քըմ'մէնտ, *va.* պախարակել: -**able** -մէնտ'էպլ, *a.* պարսաւելի: -**ation** -մէնտէյ'շըն, *s.* նախատինք, պարսաւ:

**Discommode** տիս+քըմմօտ', *va.* անհանգիստ ընել, նեղել, խռովել:

**Discommon** տիս+քամ'մըն(ս), *va.* հրաւազրկել:

**Discompose** տիս+քըմփօ'զ, *va.* խռովել, խանգարել; 2. գործէ հանել, ճամբել, հրաժարեցնել:

**Discomposure** տիս+քըմփօժ'ըր, *s.* շփոթ, խանգարում, եղծում:

**Disconcert** տիս+քընսըրթ', *va.* շփոթեցնել, խռովել, խանգարել: -**ion** -սըր'շըն, *a.* խառնակութիւն:

**Disconnect** տիս+քըննէքթ', *va.* որոշել, զատել: -**ion** -նէք'շըն, *s.* անջատում, բաժանում:

**Disconsolate** տիս+քան'սըլէյթ, *a.* անմխիթար, տխուր, վշտահար: -**ly** -'սըլէյթլի, *ad.* -**ness** -'նէս, *s.*

**Discontent** տիս+քընթէնթ', *s.* դըժկամակութիւն=*a.* դժգոհ, տհաճ:

-**edness**, *s.* տհաճութիւն, վիշտ

**Discontinue** տիս+քընթին'իու(ս), *va.* ընդհատել, ընդմիջել, թողուլ, չշարունակել: =*vn.* ընդհատուիլ:

**Discontinuance. -ation** տիս+քընթին'իուէնս, -նիուէյ'շըն, *s.* ընդհատում; թողում: -**tinuity** -թինիու'իթի, *s.* լուծում, հատում: -**tinuous** -թին'իուըս, *a.* ընդհատ, անյարատև, չշարունակող:

**Discord** տիս+քօրտ', *s.* դժտութիւն, երկպառակութիւն, աններդաշնակութ.: =*vn.* չհամաձայնիլ:

**Discordant** տիս+քօր'տէնթ, *a.* անհամաձայն, աններդաշնակ; 2. խառնիխուռն; 3. կոշտ, հակառակ: -**ness. -dance, -dancy** -նէս, -տէնս, -'տընսի, *s.* -ութիւն: -**ly** -'տընթլի, *ad.* -կերպով:

**Discount** տիս'քաունթ, *s.* զեղչ, ակօնթօ: =*va.* զեղչելով առնել տալ, վճարել. ՚ի. -**able**, *a.* զեղչելի:

**Discountenance** տիս+քաուն'թինէնս, *s.* շնորհազրկութիւն; դժկամակութիւն=*va.* երես չտալ, երես դարձնել, ամչցնել; 2. վհատեցնել:

**Discourage** տիս+քըր'էճ, -քըր'էճ, *va.* [from] վհատեցնել, վախցնել: -**ment** -րէյճ'մէնթ, *s.* [to] վհատութիւն, վախցնելը; 2. վհատիչ իր: -**able** -'էպլ *a.* վհատեցնող:

**Discourse** տիս+քօրս'(ս), *s.* խմացականութիւն; 2. գրոյց, խօսք; 3. բանախօսութիւն, ճառ, քարոզ: =*vn.* պատճառաբանել; 2. ճառել, քարոզել; 3. բանախօսել=*va.* խօսիլ; 2. դուրս տալ, բերնին տալ:

**Discoursive** տիս+քօրս'իվ, *a.* տրամախոհական, խօսակցական:

**Discourteous** տիս+քըրթ'իըս, *a.* բիրտ, տմարդի, անկիրթ, կոպիտ:

**Discourtesy** տիս+քըրթ'էսի, *s.* բրտութիւն, կոպտութիւն:

**Discous** տիս'քըս, *a.* սկաւառաձև,

լայնանիստ (ծաղիկ)։

*Discover դիսքը՛վըր(դ), *va.* բանալ, յայտնել; 2. գտնել, հնարել գիւտ ընել; 3. ցցնել։ -able -վըրէպըլ, *a.* գտանելի, նշմարելի։

Discoverer դիսքը՛վըրըր, *s.* գտիչ, հնարիչ, գտակ, երկրախոյզ։

Discovery դիսքը՛վըրի, *s.* գիւտ, գտում, հնարք; 2. յայտնում։

Discredit դիսքրէտ՛իթ, *s.* վարկի՝ յարգի նուազում, անվարկութիւն; 2. անվստահութիւն։ =*va.* անվարկել, վարկը կտրել; 2. հաւատ չընծայել։ -able, *a.* վարկակոտոր, անպատիւ։

Discreet դիսքրիյթ՛, *a.* խելացի, խոհական, խոհեմ, զգուշաւոր, հեռատես, գաղտնապահ։ -ly, *ad.* -կերպով, -ութեամբ։

Discrepant դիսքրէփ՛ընթ, *a.* իրարու աննման, տեսակ տեսակ, այլակերպ, տարբեր, աններդաշնակ։ -pance, -cy դիսքրէփ՛ընս, -փ՛ընսի, *s.* -ութիւն։

Discrete դիսքրիթ՛, *a.* որոշեալ, որոշ, զատ, տարորոշ, տարանջատ, վերացեալ (թիւ)։ [հակ. է Concrete թանձրացեալ]։

Discretion դիսքրէ՛շըն, *s.* խոհեմութիւն, զգուշաւորութ., գաղտնապահութիւն խոհականութ. դատողութիւն; 2. կամք; 3. հաճութ. իմաստ։ To come to years of—. յարբունս հասնիլ, ինքնագլուխ ըլլալ։ At—. անպայման կերպով։

Discretional, -nary դիսքրէշ՛ընըլ -նըրի, *a.* ազատ, ընտրողութեամբ։

Discretive դիսքրէթ՛իվ, *a.* ընտրողական, զատական, որոշող։

Discriminate դիսքրիմ՛ինէյթ, *an.* զատել, որոշել, զանազանել։ =*a.* որոշ, զատ, ուրոյն։ -ly, *ad.* որոշակի։ -ness, *s.*

Discrim'inative, -tory -թիվ, -թըրի, *a.* զանազանիչ, խտրական։

Discrimination դիսքրիմինէյ՛շըն, *s.* որոշում, տարբերութիւն, ընտրողութիւն; 2. որոշիչ նշան։

Disculpate դիսքըլ՛փէյթ, *va.* արդարացնել, արձակել, անպարտել։

Discumber դիսքըմ՛պըր(դ), *va.* ազատել, հանել, դուրս բերել։

Discursion դիսքըր՛շըն, *s.* երթեւեկ, պտոյտ; 2. նիւթէ նիւթ անցնել, ցատկել; 3. ճառել, խօսիլ։

Discursive, -sory դիսքըր՛սիվ, քըր՛սըրի, *a.* տրամախոհական; 2. բանական; 3. ատամնդական։ -ly, *ad.*

Discus դիս՛քըս, (*Eng. pl.* -es -՛քըսէզ, *Lat. pl.* Disci դիս՛սայ) *s.* խաղի մէջ նետելու տափակ՝ կլոր քար կամ երկաթ, ճիճան, լեփ, ցլիկ զայsըրագ; 2. սկուտեղ (ծաղկի); 3. սկաւառակ (արեւու)։ *See* Disk.

Discuss դիս՛քըս(դ), *va.* քննել, յուզել; 2. վիճիլ; 3. լուծել, քակել; 4. պարպել։ -ion -քըշ՛ըն, *s.* քննութիւն; 2. վիճաբանութիւն, պայքար; 3. լուծում։

Discussive, Discutient դիս-քըս՛իվ, -քը՛շընթ, *a.* լուծողական; 2. փարատիչ, լուծիչ (դեղ)։

Disdain դիսդէյն՛(դ), *va.* առ ոչինչ գրել, անարգել։ =*s.* արհամարհանք; 2. քամահրանք; 3. խոժոռութիւն։ -ful -՛ֆուլ, *a.* արհամարհոտ; 2. անփոյթ; 3. հպարտ։

*Disease դիզիյզ՛(դ), *a.* հիւանդութիւն, ախտ; նեղութիւն։ =*va.* հիւանդացնել, ախտարացնել; նեղել։ (միայն անց. դերբ.ը կգործածուի)։

Disembark դիսէմպարք՛(դ), *vn.* ցամաքը հանել, ելլել։ -ation, -ment -պարքէյ՛շըն, -էմպարք՛մէնթ, *s.* ցամաք ելլելը, հանելը։

Disembarrass դիսէմպէր՛րէս(դ) *va.* արգելքները վերցնել, մաքրել, փրկել։ -ment -՛մէնթ, *s.* փրկու-

թիւն, հանգստութիւն, հանդարտութիւն։

**Disembody** տիսէմպատ'ի(տ), *va.* անմարմնացնել ; 2. զօրքը ցրուել։

**Disembogue** տիսէմպօկ', *va.* գետը ծովը թափիլ։ -ment -'մէնթ. *nr* եւ

**Disembouchure** տիսամպուշուր' *s.* գետին ծովը թափուիլը։

**Disembowel** տիսէմպաուէլ(տ), *va.* փորոտիքը հանել, փորը պարպել։

**Disembroil** տիսէմպրօյլ(տ), *va.* կնճիռը լուծել, քակել։ [բողացնել։

**Disenable** տիսէնէյ'պլ, *va.* անկա

**Disenchant** տիսէնչանթ', *va.* պատրանքը փարատել, հմայաթափ ընել։ -ment, *s.* հմայաթափում։

**Disencumber** տիսէնքըմ'պըր. *va.* ազատել, զերծ ընել, մաքրել։

**Disencumbrance** տիսէնքըմ'պրէնս, *s.* թեթեւութիւն, զերծում։

**Disengage** տիսէնկէյճ'(տ), *va.* փրկել, թեթեւցնել. զատել։ *vn.* զատուիլ, արձկուիլ, ազատիլ։ -dness, -ment, *s.* պարապութիւն; 2. արձակում թողուլը։

**Disennoble** տիսէննօպ'լ, *va.* նըսեմացնել, անպատիւ ընել։

**Disenroll** տիսէնրօլ', *va.* ցուցակէն հանել, ջնջել, աւրել։

**Disentangle** տիսէնթէնկ'լ, *va.* արձկել, զատել, մաքրել, յայտնել։

**Disenthral.** *See* Disinthral.

**Disentomb** տիսէնթում', *va.* գերեզմանէն՝ հողէն հանել։

**Disentrance** տիսէնթրէնս'(տ) *va.* զգաստացնել, խելքը գլուխը բերել։

**Disesteem** տիսէսթիմ', *va.* անպատուել, անարգել։ -ation -մէյ'շըն, անպատուութիւն, անարգանք։

**Disfavor** տիսֆէյ'վըր, *s.* շնորհազրկութիւն, անպատուութիւն; 2. ատելութիւն, թշնամութիւն։ =*va.* երեսէ ձգել, մերժել։

**Disfigure** տիսֆիկ'ըր(տ), *va.* այլափոխել, աւրել, խանգարել։ -ment, -ation -ֆիկըր'մէնթ, -կըրէյ'շըն, աւրելը, այլափոխութ.; տգեղութիւն։

**Disfranchise** տիսֆրէն'չէզ(տ), իրաւունքէ՝ արտօնութենէ զրկել։ -ment, *s.* իրաւազրկում։

**Disgorge** տիսկորճ', *va.* փսխել, ժայթքել ; 2. հոսել ; 3. յանձնել։ =*s.* փսխում; 2. յետս դարձնելը։ -ment, *s.* փսխուք, դարձուք։

**Disgrace** տիսկրէյս'(տ), *s.* շնորհազրկում; 2. դժբաղդութիւն; 3. նախատինք, աղէտք; 4. ամօթ։ =*va.* նախատել, անպատուել ; 2. շնորհքէ զրկել ; 3. ամօթ ըլլալ։ -ful, -cious -կրէյս'ֆուլ, -կրէյ'շըս. *a.* ամօթալից, -պարտ, անհաճոյ, անշնորհք

**Disguise** տիսկայ'զ(տ), *va.* ծպտել, այլակերպել ; 2. պահել ; 3. կեղծել ; 4. (գինւով) զուարթացընել։ =*vn.* ծպտիլ, փոխուիլ։ =*s.* ծպտում, այլակերպում, կեղծելը; 2. զուարթութիւն։ -dly -կայ'զէտլի, *ad.* ծպտեալ։ -ment տիսկայզ'մէնթ, *s.* ծպտելը, ծպտում։

**Disgust** տիսկըսթ', *s.* զզուանք, յափրանք։ =*va.* [at, with] զզուեցընել։ -ful, -ing -կըսթ'ֆուլ, -կըսթ'ինկ, *a.* զզուելի, գարշելի։

**Dish** տիշ(տ), *s.* սկաւառակ, պնակ, գաւաթ; 2. խորտիկ, կերակուր։ =*va.* սեղան յարդարել՝ շըտկել ; 2. պնակը լեցնել ; 3. գոգել, խոռոչել։ To -up. շտկուտել -cloth, clout. ջնջոց։ [ցնել. յոյսը կտրել։

**Dishearten** տիսհար'թն. վհատե-

**Dishevel** տիշէվլ'(տ), *va.* հերարձակ լինիլ, մազերը թափել։ [ցուն)։

**Dish'ful** տիշ'ֆուլ, *s.* աման մը (լե-

**Dishonest** տիզան'էսթ, *a.* անպարկեշտ, անուղղամիտ, անհաւատարիմ; 2. անհամեստ, ամօթալից։ -ly, *ad.* -կերպով, -օրէն։ -nesty տիզան'էսթի, *s.* անհաւատար-

մութիւն, անպարկեշտութիւն։

**Dishonor** տիզօն'ըր, *va.* անպատուել, անարգել, վարկաբեկ ընել; 2. արատել, աւրել, պղծել; 3. (փոխանակագիրը) չվճարել։=*s.* ամօթ, անպատուութիւն, անարգանք ։ –able, *a.* ամօթալից։

**Disinclination** տիսինքլինէյ'շըն, *s.* անյօժարութ., հակակրութիւն։

**Disincline** տիսինքլայն'(տ), *va.* միտքը դարձնել, խորշեցնել։

**Disinfect** տիսինֆէքթ', *va.* օդը մաքրել։ –ant –թ'էնթ, *a.* մաքրական, հականեխական։ –ion –ֆէք'շըն, *s.* ապանեխում։

**Disingenous** տիսինճէն'իըս, *a.* կեղծ, խարդախ, անազնիւ։ –ly, *ad.* գաղտ՝ խարդախ կերպով։ –ness, *s.* խարդախութիւն։

**Disinherit** տիսինհէր'էթ, *va.* ժառանգազրկել։ –ance, –herison –հէ'րիզըն, *s.* ժառանգազրկութիւն։

**Disintegrate** տիսին'թէկրէյթ, *va.* (մարմնոյ մասերը) անջատել։

**Disintegration,** *s.* անջատում; 2. մաշում (հողային խաւուց) եւլ.

**Disinter** տիս'ինթըր, *va.* հողէ՝ մեռացութենէ դուրս հանել։

**Disinterested** տիսին'թըրէսթէտ, *a.* անշահասէր, անաչառ։ –ly, *ad.*

**Disinthrall** տիսինթրօլ'(տ), *va.* ազատագրել։ –ment, *s.* գրութիւն։

**Disjoin** տիսճօյն', –ճօյն'(տ), *va.* զատել, բաժնել։ =*vn.* բաժնուիլ։

**Disjoint** տիսճօյնթ', *va.* խախտել; յօշել, բաժնել; 2. խանգարել; կտոր կտոր ընել։ =*vn.* կտոր կտոր ըլլալ։ –ly, *ad.* բաժնուած, կտոր կտոր։

**Disjunct** տիսճընքթ', *a.* ուրոյն, կտոր կտոր, անջատ, զատ ։ –ion տիսճընք'շըն, *s.* անջատում։

**Disjunctive** տիսճընք'թիվ. *a.* զատող, անջատող; 2. տրոհական ։. –ly տիսճընքթ'իվլի, *ad.* տ.

**Disk** տիսք, *s.* սկաւառակ; 2. գունտ, երես (արեւու); 3. սկուտեղ (ծաղկի)։ *See* Discus.

**Dislike** տիսլայք'(տ), *s.* զզուիլը, զզուանք; 2. ատելութիւն, խորշում =*va.* [to] խորշիլ, ատել։

**Dislocate** տիս'լօքէյթ, *va.* խախտել, տեղէն հանել; 2. յօդախօտոր ընել։ =*a.* խախտած, տեղէն ելած։ –tion –քէյ'շըն, *s.* խախտելը, քայքայում; խախտում եւլ; յօդալոյծք եծ.

**Dislodge** տիսլաճ', –լօճ, *va.* վըտարել, վռնտել։ –ment, *s.*

**Disloyal** տիսլօյ'էլ, *a.* նենգաւոր; 2. անհաւատարիմ։ –ty տիսլօյ'էլթի, *s.* նենգութիւն։

*Dismal տիզ'մըլ, *a.* աղետալի, ցաւագին, տխուր; 2. սոսկալի, ձախորդ։ –ly, *ad.* աղետալի կերպով։

**Dismantle** տիսմէն'թլ, *va.* վրանոցը հանել; 2. կործանել, քանդել; 3. կողոպտել, վերցնել։

**Dismask** տիսմասք'(տ), *va.* դիմակը հանել; 2. հոլանել ևլ.

**Dismast** տիսմասթ', *va.* կայմերը կոտրել (նաւու)։

*Dismay տիսմէյ'(տ), *va.* վախցնել, սոսկացնել։=*s.* սոսկում, արհաւիրք։

**Dismember** տիսմէմ'պըր(տ), *va.* անդամատել, յօշել։ –ment –'պըրմէնթ, *s.* յօշում, անդամահատում։

**Dismiss** տիսմիս'(տ), *va.* արձակել, թող տալ; 2. պաշտօնէ հանել, վռնտել։ –al, –ion –մի'շըլ, –'շըն, *s.* [from] առաքում, թոյլտուութ.; 2. արձակում, պաշտօնանկութիւն; 3. վտարում։ –ive, –ory տիսմի'սիվ, –մի'սըրի, *a.* արձակուրդի։

**Dismount** տիսմաունթ', *va.* վար իջնել։ =*va.* իջեցնել, վար առնուլ, ձիէն ձգել; 2. կոտրել, (հրետանին) խանգարել։

**Disobey** տիսօպէյ'(տ), *va.* անհընազանդիլ, չանսալ։=*vn.* անսաստել։

**Disobedience** տիսօպիտ'իէնս, *s.* անհնազանդութիւն։

**Disobedient** տիսօպիտ'իէնթ, *a.* անհնազանդ, խեռ։ -ly, *ad.*

**Disobligation** տիսապլիկէյ'շըն, *s.* անբարեմիտ՝ տմարդի ընթացք։

**Disoblige** տիսօպլայճ'(տ), *va.* սիրտ կոտրել, վշտացնել; 2. անբարեմիտ ըլլալ։ -gingly, *ad.*

*****Disorder** տիսօր'տըր(տ), *s.* խառնակութիւն, անկարգութիւն, շփոթութիւն; 2. հիւանդութիւն։ =*va.* խառնակել, շփոթել; հիւանդացնել։ In-. խառնափնդոր։ -*ly, *ad.* խառնակ, շփոթ։ -liness, *s.* -ութիւն։

**Disorganize** տիսօր'կընայզ(տ), *va.* խանգարել, կազմալուծել։ -zation -օրկընիզէյ'շըն, *va.* խանգարում, շփոթութ., կազմալուծում։

**Disown** տիսօ'ն, տիզօն'(տ), *va.* չճանչնալ, ժխտել, ուրանալ։

**Dispand** տիսփէնտ', *vn.* տարածել

**Disparage** տիսփէ'րէյճ, -փէր'էճ, *va.* անարգել, անպատուել; 2. արժէքը կոտրել, անշքացնել։ -ment -րէճ'մէնթ, *s.* [to] ըստ արժանւոյն չգնահատելը, անարգելը; 2. վատախնամութիւն; 3. անպատուութիւն; 4. արժէքի նուազում։ -er, *s.*

**Disparate** տիս'փըրէյթ, *a.* անյարմար, անհանգէտ, աննման; 2. տիս'փըրէյթիզ, *pl.* ներհականք։

**Disparity** տիսփէր'իթի, *s.* [of, in] աննմանութիւն, անհաւասարութ.

**Dispark** տիսփարք'(տ), *va.* տարածել, ցրուել, քճքճել; 2. բանալ։

**Dispart** տիսփարթ', *va.* զատել, որոշել, բաժնել։ =*vn.* զատուիլ, ցրուիլ; 2. հրացանին ծայրը նպատակին ուղղել։ [դարտութիւն։

**Dispassion** տիսփէշ'ըն, *s.* հան-

**Dispassionate** տիսփէշ'ընէյթ, *a.* անվրդով, հանդարտ, անկիրք։

**Dispatch** տիսփէչ'(տ), *va.* առաքել, յղել; 2. անդին ղրկել, մեռցնել; 3. փութացնել, բուացնել; 4. լմնցնել, կատարել։ =*vn.* աճապարել։ =*s.* առաքում; 2. ղրկուածը, ղրկուելիքը; 3. պաշտօնագիր, հեռագիր; 4. փոյթ, արագութիւն։ -ful տիսփէչ'ֆուլ, *a.* արագընթաց, փութկոտ։

**Dispatcher** տիսփէչ'ըր, *s.* ղըրկող; 2. սպանող։ [վտարել։

**Dispel** տիսփէլ'(տ), *va.* ցրուել,

**Dispensable** տիսփէն'սէպլ, *a.* բաշխելի, զանցառնելի, թոյլատրելի։

**Dispensary** տիսփէնսէ'րի, *s.* ձրի բուժարան; 2. դեղարան։

**Dispensation** տիսփէնսէյ'շըն, *s.* բաշխում, մատակարարութիւն, բաժանում; 2. տնօրինութիւն, նախախնամութիւն Ա.Գ.; 3. տնտեսութիւն, ուխտ (Հին և Նոր) Ս.Գ.; 4. արտօնութիւն, թոյլտուութիւն; 5. ներողագիր Պապին։

**Dispensative** տիսփէն'սէթիվ, *a.* արտօնական, ներողութեան։ -tor -ս'էյթըր, *a.* մատակարար։ -tory -ս'էյթըրի, *a.* ներողութեան։ =*s.* հաւաքումն դեղագրոց։

**Dispense** տիսփէնս'(տ), *va.* բաշխել, մատակարարել, վարել։ =*vn.* (with) ազատ ձգել, թոյլատրել։

**Dispermous** տայսփըր'մըս, *a.* երկսերմ (բոյս)։

**Disperse** տիսփըրս'(տ), *va.* ցրըուել, սփռել, տարածել; վտարել։ =*vn.* սփռուիլ, տարածուիլ, ցրուիլ։

**Dispersion** -փըր'շըն, *s.* սփռում, ցրուում; բաժանում (ճառագ.) Բնգ.

**Dispirit** տիսփիր'իթ, *va.* ահաբեկել, վախցնել, վհատեցնել։

**Displace** տիսփլէյս'(տ), *va.* տեղափոխել; 2. պաշտօնէ հանել, ճամբել; 3. գրաւել, տեղը փոխել։ -ment, *s.* տեղափոխութիւն; 2. պաշտօնափոխութիւն; 3. պաշտօ-

կանացու; 2. օրհասական, մահաժերձ
Dyke տայք, *See* Dike.
Dynasty տայն'եստի, *s.* թագաւորական ցեղ, հարստութիւն: -tic -տիք, *a.* հարստութեան, արք. տան:
Dysentery տիս'ընթըրի, *s.* թանչախտ; թանչ զանգը խաճայ: -teric, -al տիսընթըր'իք, -եըլ, *a.* թանչային, թանչախտաւոր:
Dysmenorrhea տիսմընօր'իը, *s.* դժուարադաշտանութիւն եւ.
Dyspepsia, -sy տիսփեփ'սիը, տիսփեփ'սի, -փեփ'սի, *s.* դժուարամարսութիւն: -peptic, -al -փեփ'տիք, -տիքըլ, *a.* դժուարամարս:
Dysphony տիսֆօ'նի, *s.* դժուարախօսութիւն:
Dyspnœa տիսփն'իը, *s.* դժուարաշնչութիւն, շնչարգելութիւն:
Dysury տիս'իուրի, *s.* միզարգելութիւն: [իշակեւ:
Dziggethai ձիկ'կըթայ, *s.* էշ,



Each իչ, *a.* իւրաքանչիւր: -one. ամէն մէկ: Each other. իրար, իրարու: On each side. երկու կողմէն
*Eager ի'կըր, *a.* [in, for, after] մեծափափաք, ջերմ, անձկալից: -ly ի'կըրլի, *ad.* կաթոգին, ուժգին: -ness ի'կըրնէս, *s.* փափաք, փոյթ, ջանք; 2. անհամբերութիւն:
Eagle ի'կլ, *s.* արծիւ; արծուեդրամ Ա.Մ. -eyed իկլայտ, -sighted. սրատես: -stone -սթօն, *s.* արծուաքար: -winged, -pinioned. բարձրաթռիչ: -less ի'կլէս, *s.* էգ արծիւ, արծուահաւ:
Eaglet իկ'լէթ, *s.* արծուիկ:
Eagre ի'կըր, էյ'կըր, *s.* կոհակ, մկանունք ջուրց, ալեկոծ ջուրեր:
Ean իյն, *vn.* ծնիլ, ծնգնիլ, ձկնիլ:
Ear իյր, ի'ըր, *s.* ականջ; 2. լսողութիւն; 3. ունկնդրութիւն, ուշադրութիւն; 4. հասկ սպաշագ: = *vn.* հասկ կապել; 2. հերկել: About the-. քթին տակ, մօտիկը: By the ear. մտերմօրէն: Up to the-. մինչեւ վիզը (ընկղմած): A box on the ear. ապտակ, կմպուղ: -ache իյք, ականջի ցաւ: -drop. գինդ, օղ; 2. արջականջ ծղ. -lap. ականջայայթ, բլթակ: -mark. (ոչխարի) ականջի նշան: -pick. ականջակրկիտ ճիշալ: -ring. գինդ, օղ: -shot. ձայնահաս գաւլաց մենգիլի: -wax իյ'րուէքս, ականջի աղտ, ծիրպ: -wig. ունկնամուտ ճճի; ականջ ագրեւակեր որդ: -witness ականջալուր վկայ: To have a good -. խաղերը որոշելու կարող լինել:
Eared իյրտ, *a.* Long-. երկանականջ: Full-. առոք, լիահասկ:
Earing իյ'րին, *s.* առագաստի ծայրի չուան; 2. հերկ, հերկելը:
Earl ըրլ, *s.* կոմս զօրք: -Marshal. մեծ արարողապետ Ան. -dom ըրլ'տըմ, *s.* կոմսութիւն:
Earless իըր'լէս, *a.* ականջը կըտրած, ականջատ; 2. անհասկ:
Earliness ըր'լինէս, *s.* կանխում, յառաջում; 2. փոյթ, շտապ:
Early ըր'լի, *a.* կանուխ; 2. կանխահաս; 3. նախկին: = *ad.* կանուխէն, շուտով, անյապաղ: -christians. Ա. դարու քրիստոնեայք: In -life. պատանեկութեան ատեն: -riser. կանուխէն ելնող, կանխայարոյց:

**Earn** ըրն, *va.* ստանալ, շահիլ, 2. արժանանալ։

***Earnest** ըրն'էսթ, *a.* ջերմեռանդ; 2. սոխակողական ։ =**s.* ստուգութիւն, իրականութիւն; 2. առհաւատչեայ, գրաւ; 3. երախայրիք։ In —. լրջօրէն։ In good—. ըստ արժանւոյն։ To give—. գրաւական տալ։ —money. գրաւ քէյ։ —ly ըր'նէսթլի, *ad.* Թախանձանօք, լրջօրէն; 2.փութաջան; ականկաւոյց։ —ness -նէս, *s.* Թախանձանք, լրջութիւն; 2.փութաջանութիւն, նախանձաւորութ.

**Earning** ըրն'ինկ, *s.* ստանալը; 2. շահիլը; 3. շահ, վաստակ։

**Earth** ըրթհ, *s.* հող, երկիր; 2. գետին; 3. աշխարհ; 4. որջ (աղուէսի) =*vn.* որջանալ; 2. պահուըտիլ; 3. հողով ծածկել ։ Fuller's—. մոխիր։ Potter's—. կաւ պաղլըղ։ To—up, over. հողով հաստատել, ծածկել։ -board. արօրի ականջ, կորեպեղ։ -nut. գետնանուշ, հապպըղէզիզ։ —work. հողապատնէշ։ —worm. փորի որդ, ոչինչ մարդ։

**Earthen** ըրթհ'ըն, *a.* հողեղէն, կաւեղէն, խեցեղէն։ —ware. խեցեղէնք, պտուկեղէնք։

**Earthiness**, **Earthliness** ըրթհ'ինէս, -'լինէս, *s.* հողեղէն բնութիւն, կոշտութիւն; 2. աշխարհասիրութիւն։

**Earthling** ըրթհ'լինկ, *s.* արտրած, մահկանացու; 2. խղճուկ։

**Earthly** ըրթհ'լի, *a.* հողեղէն, աշխարհային; 2. նուաստ; 3. հնարաւոր։

**Earthquake** ըրթհ'քուէյք, *s.* երկրաշարժ։ **Earthward** ըրթհ'ուըրտ, *ad.* դէպի երկիր, դէպի գետին։

**Earthy** ըրթհ'ի, *a.* հողեղէն, երկրաւոր, մարմնաւոր; 2. կոշտ։

**Ease** էյզ, *s.* հանգիստ, անդորրութիւն, դիւրութիւն։ =*va.* դիւրացնել; 2. (ցաւը) փարատել; 3. Թեթեւցնել, մեղմել։ With—. դիւրաւ։ At ease. հանգիստ; անսեթեւեթ։

**Easel** էզ'ըլ, *s.* պատկերակալ նկ.

**Easement** էզ'մէնթ, *s.* դիւրութիւն, յարմարութիւն; 2. նպաստ; 3. (ուրիշին ստացուածքին վրայ) Թոյլատրական իրաւունք։

**Easily** էզ'իլի, *ad.* դիւրաւ, յօժարակամ; 2. ազնուօրէն, մեղմաբար։ To take—. անվրդով մնալ։

**Easiness** էզ'ինէս, *s.* դիւրութ., հանգստութ.; 2. դիւրակեցութ.։

**East** էյսթ, *s.* արեւելք; 2. արեւելեան երկիրներ։ =*a.* դէպ ի արեւելք։ -ing էս'թինկ, *s.* միջօրէականէ մը դէպ արեւելք հեռաւորութիւն։ -ward -'ուըրտ, *ad.* դէպ արեւելք։

**Easter**, **-day** էս'թըր, -տէյ, *s.* Զատիկ; պասեք։ -eve -թըրիվ, *s.* խթում։ -ly -լի, *aa.* արեւելեան։

**Eastern** էսթ'ըրն, *a.* արեւելեան; 2. արեւելքէն։

**Easy** էզ'ի, *a.* դիւրին; 2. հանգիստ, խաղաղ, անխռով; 3. յօժարակամ; 4. Թեթեւ; 5. համարձակ; 6. ախորժելի, դիւրահամբոյր։ -chair. Թիկնաթոռ ։ -going. անհոգ, անտարբեր։

**Eat** էյթ, *va.* (Ate, Eaten) ուտել, սպառել; 2. կրծել, լափել, լպստել։ =*vn.* ուտել; 2. մաշել ։ To—away, up. սպառել, հատցնել ։ To—one's word. Թքածը լզել, դրժել ։ —ing house. ճաշարան։

**Eatable** էյթ'էպլ, *a.* ուտելի; 2. լզելի։ =*s.* ուտելիք, նպար։

**Eater** էյ'թըր, *s.* ուտող, մաշող։

**Eau-de-vie** օտըվի', *s.* օղի։

**Eaves** էյվզ, *pl.* քիւ, ծնօտ տանեաց ստրշագ ։ —drop -'տրօփ, *vn.* դռնէն՝ ծակէն մտիկ ընել ։

**Ebb** էպ(պ), *s.* տեղատուութիւն, հոսանք; 2. անկում, քայքայում։ =*vn.* քաշուիլ, տեղի տալ; 2. քիչ-

նալ։ Ebb and flow. տեղատուութիւն և մակընթացութիւն ։ Ebb-tide. տեղատուութիւն ։

Eben, Ebon, Ebony էպ'ըն, էպ'ընի, s. եբենոս, ոսպնիազ; եբենոսէ։

Ebonize էպ'ընայզ, va. եբենոսի պէս սեւցնել, ոսպնիազել ։

Ebriety, Ebriosity իպրայ'էթի, -րիաս'իթի. գինովութ. հարբածութ.

Ebullience, -cy, -tion իպըլ'իէնս, -սի. իպըլ'իշըն. s. եռացում.

Ebullient իպըլ'իէնթ, a. եռացող։

Eburnean իպըր'նիըն, փղոսկրէ։ -ation -'նէյշըն, s. փղոսկրացում ...

Ecarté էգար'թէ, s. զուգախաղ, տարախաղ խաղաթղթ օյունով.

Ecbolic էքպօ'լիք, a. վիժեցուցիչ

Eccehomo էքսէհօ'մօ, s. փուշպսակ պատկեր Տեառն մերոյ, (ահա այրդ); 2. այր ցաւոց, ցաւագար։

Eccentric,-al էքսէնթ'րիք, -էլ, a. արտակեդրոն; 2. այլանդակ։ -ly էքսէնթ'րիքըլլի, ad. այլանդակ անճոռնի կերպով։

Eccentricity էքսէնթրիս'իթի, s. արտակեդրոնութ., այլանդակութ.

Ecchymosis էքիմօ'սիս, s. (բժշ մորթեայ) արեան կապուտ բիծ։

Ecclesiastes էքլէզիէս'թիզ, s. Գիրք Ժողովողի Սղ.

Ecclesiastic, -al էքլէզիէս'թիք, -թիքէլ, a. եկեղեցական, եկեղեցւոյ։ =s. եկեղեցական, կրօնաւոր, ժառանգաւոր։ [s. Գիրք Սիրաքայ։

Eccleciasticus էքլիզիէս'թիքըս,

Echelon էշէլ'ան, va. զօրքը աստիճանաբար շարել ։

Echinite էք'ինայթ, s. բրածոյ ծովոզնի։ -nate,-ed -'ինէյթ. -թէտ, a. ոզնանման, փշապատ։

Echinus էքայ'նըս, s. ոզնի ֆիշըրի, ծովոզնի; 2. սեան խոյակի զարդ, ձուարդ; 3. փշալից գլուխ ծաղկանց

Echo էք'օ, s. արձագանգ։ (pl. էք'օզ)։ =va. արձագանգել։ -meter էքօ'միթըր, s. արձագանգաչափ։

Eclaircissement էքլէյրսիս'մօն, -էզ'մօն, s. բացատրութիւն [F.]

Eclat էքլա', s. փառք, շքեղութիւն; 2. շուք, պերճութիւն [F.]

Eclectic էքլէք'թիք, sa. ընտրողական, ընտրական։ -ism -'թիսիզմ, s. ընտրողականութ.։ -ally էքլէք'թիքըլլի, ad. ընտրողաբար։

Eclipse էքլիփս'(ս), s. խաւարում (արեւու և լուսնի); 2. նսեմութիւն։ =aa. խաւարեցնել; 2. նսեմացնել, ծածկել։ =vn. խաւարիլ, բռնուիլ։

Ecliptic էքլիփ'թիք, s. ծիր խաւարման։ =a. խաւարածիրի; 2. խաւարման։ [թիւն, տուարածականք։

Eclogue էք'լօկ, s. հովուերգութ

Economic, -al իքօնօմ'իք, -իքըլ, a. տնտեսական, խնայողական։ -ally -իքըլլի, ad. խնայողաբար, տնտեսագիտօրէն։ -mics իքօնօ'միքս, pl. տնտեսագիտութ., քաղ. տնտեսութ.։

Economist իքան'օմիսթ, s. տնտեսագէտ; խնայող, տնտեսական։

Economize իքան'օմայզ(ս), va. երկու ծայրը մէկտեղ բերել, տնտեսել; 2. մատակարարել, խնայել։

*Economy իքան'օմի, s. տնտեսութիւն, տնօրինութիւն; 2. մատակարարութիւն, խնայողութիւն։

Ecstacy, -tasy էքս'թէսի, s. զմայլում, մտաց յափշտակութիւն, սքանչացում; 2. յիմարութիւն։ -tatic,-al -թ'էթիք, -թիքըլ, a. հիանալի, հոգեզմայլ, սքանչելի։

Ectype էք'թայփ, s. պատճէն, օրինակ; 2. գաղափար, նախատիպ։ -pal էք'թիփըլ, a. օրինակուած, նմանցուած; 2. դրոշմածոյ։

Ecumenic,-al էքիումէն'իք, -իքըլ, a. ընդհանրական, տիեզերական։

Eczema էքզիմ'է, s. մորթի եռք,

մալաքոր, բիծ տէտ. [կեր։

Edacious էտէյ՛շըս, *a.* շատա-

Edacity էտէս՛օիթի, *s.* շատակե-րութիւն, անյագութիւն։

Edda էտ՛տէ, *s.* սկանտինաւեան դիցաբանութիւն, սակա։

Eddy էտ՛տի, *s.* հակահոսանք (ջրի, օդի); 2. ջրապտոյտ, յոր-ձանք, պտոյտ, կէկլոն ։ =*a.* հոսա-նուտ, փոթորկեալ ։ =*vn.* պտուտ-կել, յորձանք ընել։ -ing էտ՛իին, *a.* յորձանուտ, շրջանաւոր։

Edelweiss, -weisse էյ՛տըլվայս, *s.* Ալպեան ձիւնածաղիկ։

Eden իտ՛ն, *s.* Եդեմ, Ադին Ս.։

Edental, -talous, -tate, -ted էտէն՛թըլ, -՛թէլըս, -՛թէյթ, էտէն՛-թէտ, *a.* ակռաները թափած, անա-տամ; 2. ժռւատ, ակռապլիկ։

Edge էճ, *s.* եզր, շրթունք, սայր, ծոթ, ծայր; 2. ուժգնութիւն, սաստ-կութիւն։ =*va.* եզրել, սրել, յեսա-նել; 2. մղել, գրգռել ։ =*vn.* կա-մաց կամաց յառաջ քշուիլ ։ To set the teeth on edge. ակռան առ-նուլ գամաշմաց։ To give–. ախոր-ժակ բանալ, սրել ։ To take off–. գուլցնել, բթացնել (korçkeptkf)։ Edge tool. կտրոց, սրածայր գործի։

Edgewise *ad*, քով քով, եզերեալ

Edging էճ՛ին, *s.* ծայր՝ եզր շի-նող; 2. երիզարդ, երիզք։

Edible էտ՛իպլ, *a*, ուտելի։

Edict ի՛տիքթ, *s.* հրաման, պա-տուէր (թագաւորի); 2. հրովարտակ

Edification էտիֆիքէյ՛շըն, *s.* (կրօն. և բարոյական) զարգացում; 2. հրահանգութիւն, կրթութիւն։

Edifice էտ՛իֆիս, *s.* (հոյակապ և փառաւոր) շինուածք, շէնք; 2. ապարանք ։ -ficial էտիֆիշ՛ըլ, *a.* շինուածքի ։ -fier էտիֆայ՛ըր, *s.* շինող, հրահանգող ։

Edify էտ՛իֆայ (տ), *va.* շինել, հրահանգել, զարգացնել (կրօն. և բարոյապէս); 2. բարի օրինակ լինիլ։

Edile ի՛տայլ, *s.* քաղաքաբաշխ Հ.

Edit էտ՛իթ, *va.* շարադրել, խմբագրել; 2. (ձեռագիր) պատրաստել; ամփոփել։ -ion էտի՛շըն, *s*, տպագրու-թիւն, տիպ; 2. մէկ անգամ տպեալ գրոց թիւը, հրատարակութիւն։

Editor էտ՛իթըր, *s*, տպագրիչ, հրատարակիչ; 2. խմբագիր։ -ship -շիփ, *s.* հրատարակչութիւն; 2. խմբագրութիւն։

Editorial էտիթօր՛իըլ, *a.* տպա-գրական; 2. խմբագրական, առաջ-նորդող (յօդուած) ։ -ly -լի, *ad.* իբրև հրատարակիչ, խմբագիր։

Educate էտ՛իուքէյթ, էճ՛իուքէյթ *va.* դաստիարակել, (միտքը) մշա-կել; 2. մարզել, կրթել ։

*Education էտիուքէյ՛շըն, էճիու-քէյ՛շըն, *s.* դաստիարակութիւն, դաս-տիարակական կրթութիւն, հրա-հանգութիւն, մանկավարժութիւն։ -ist -՛շընիսթ *s.* կրթասէր։ -al -քէյ՛-շընըլ, *a.* -tor էճիուքէյ՛թըր, *s.* դաս-տիարակ, կրթիչ; 2. վարժապետ։

Educe էտիուս՛(տ), *va.* ի լոյս հանել, դուրս բերել, արտադրել ։

Educt իտ՛ըքթ, *s.* վերլուծմամբ ի լոյս եկած իր, արտահան։ -tion էտըք՛շըն, *s.* ի տես կամ ի լոյս հա-նելը, արտահանութիւն։ -tor, *s.*

Edulcorate էտըլ՛քըրէյթ, *va.* քաղցրացնել։ -tion էտըլքըրէյ՛շըն, *s.* անուշցնելը ։

Eel իյլ, *s.* օձաձուկ։ -grass. լօռ-սկնիզ կվրիշփիսփ։ -pot իյլ՛փոթ, *s.* օձաձուկ որսալու կողով։ -pout. փո-ղոշ, լճադի իրի եայրլի պալրղը։

E'en ի՛ն, համառ. Evenի։

E'er էյ՛ըր, է՛ըր, համառ. Everի։

Eerie, Eery իյ՛րի, *s.* ահարկու, կախարդ։ [ճառելի, խօսելի։

Effable էֆ՛ֆըպլ, *a.* բացատրելի,

**Efface** էֆֆէյ՛ս, *va.* աւրել, ջնջել; 2. մոքէն հանել։ -ment, *s.*

**Effect** էֆֆէքթ՛, *s.* [over, on, upon] արդիւնք, արդասիք, գործ; 2. ներգործութիւն, ազդեցութիւն; 3. գիտաւորութիւն; 4. վախճան, աւարտ; 5. *pl.* կարասիք, ապրանք։ =*va.* կատարել, իրականացնել; 2. արտադրել; 3. ներգործել. To carry into—. իրագործել։ To this—. ասոր համար, առ այս։ Of no—. ապարդիւն, անօգուտ, չնչին։ For—. ներգործելու համար։ No effects. անկուտի գօգօզ։ [ծագրելի։

**Effect'ible** էֆֆէքթ՛իպլ, *a.* գոր-

**Effection** էֆէք՛շըն, *s.* ստեղծում, արտադրութիւն; 2. գծագրութիւն նախադասութեան է.

**Effective** էֆֆէքթ՛իվ. *a.* պատճառող; 2. պիտանի, իրական, ազդու։ -ly -լի, *ad.* -կերպով։ -ness, *s.*

**Effectless** էֆֆէքթ՛լէս, *a.* ապարդիւն։ [ճառող, կատարող։

**Effector** էֆֆէքթ՛ըր, *s.* պատ-

**Effectual** էֆֆէքթ՛իուըլ, *a.* ազդու, ներգործիչ, իրական։ -ly, *ad.* -ness, *s.* -ութիւն։

**Effectuate** էֆֆէքթ՛իուէյթ *va.* կատարել, ընել, գործադրել։ -tion էֆէքչուէ՛յշըն, *s.* գործադրութիւն։

**Effeminate** էֆֆէմ՛ինէյթ, *a.* կնամարդի, կանացի, թոյլ, հեշտասէր։ =*va.* կնամարդի ընել, մեղկացնել։ -ness, -cy -՛մինէյթնէս, -՛մինէյսի, *s.* կնատութիւն, մեղկութիւն։

**Effendi** էֆէն՛տի, *s.* տէր։ [T.]

**Efferent** էֆ՛ըրէնթ, *a.* արտածող։

**Effervesce** էֆ՛ֆըրվէս(ս), *vn.* եռալ պղպջալ; 2. բորբոքիլ։ -nce, -cy -վէս՛ընս, -վէս՛ընսի, *s.* եռացում, բորբոքում [köpürmek]; 2. եռանդ, աւիւն։ -cent -վէս՛ընթ, *a.* եռացկոտ։ -cible -վէս՛իպլ, *a.* եռանալի։

**Effete** էֆֆիյթ՛, *a.* ամուլ, անբեր, անծին; 2. հինցած, զառամ։

**Efficacious** էֆֆիքէյ՛շըս. *a.* ազդու, զօրաւոր; արդիւնագործ (շընորհ)։ -ly -լի, *ad.* ազդուապէս։ -ness, Efficacy; Efficience, -cy նէս, էֆֆի՛քէսի, էֆֆի՛շընս, -սի, *s.* ազդեցութիւն, զօրութիւն, կարողութիւն։

**Efficient** էֆֆիշ՛ընթ. *a.* ներգործիչ, պատճառող; կարող։ -ly -լի, *ad.* ազդուապէս։

**Effigy** էֆ՛իճի, *s.* դէմք, նմանութիւն; պատկեր։ (*pl.* -gies -ճիզ)

**Efflate** էֆֆլէյթ՛, *va.* փչել, ուռեցնել։ [բորբոսիլ, ծանգոտիլ։

**Effloresce** էֆֆլօրէս՛(ս), *va.*

**Efflorescence** էֆֆլօրէս՛ընս, *s.* ծաղկիլ սկսիլը, փթթում; 2. բորբոս, ծաղկոտութիւն; 3. պզտի ուռեցք։ -cent -ս՛ընթ, *a.* ծաղկիլ սկսող (բոյս); 2. բորբոսած։

**Effluence**, -cy: **Efflux**, -ion էֆ՛ֆլուընս, էֆ՛լուընսի, էֆ՛լըքս, էֆլըք՛շըն, *s.* հեղում, զեղում, հոսում; 2. գոլորշի։ [հոսող։

**Effluent** էֆ՛լուընթ, *a.* արտա-

**Effluvium** էֆլու՛վիըմ, *s.* գոլորշի, մագնիսական հոսում, արտաշնչութիւն։ [դուն գործել։

**Efforce** էֆ՛ֆօրս(ս), *va.* ստիպել,

***Effort** էֆ՛ֆըրթ, *s.* ճիգ, ջանք; 2. աշխատութիւն, փորձ։ To exert every—. ջանք չխնայել։ [տօնել։

**Effranchise** էֆրէնչայզ՛, *va.* ար-

**Effrontery** էֆրընթ՛ըրի, *s.* յրբութիւն, անամօթութիւն։

**Effulgence** էֆֆըլ՛ճընս, *s.* փայլ, պայծառութիւն։ -gent -՛ճընթ, *a.* փայլուն, շողշողուն, պայծառ։

**Effuse** էֆֆիուզ՛, *va.* թափել, զեղուլ; 2. սփռել, ծաւալել, տարածել։ =*va.* ելլել, հոսել։ *a.* ցրուած; 2. մէկ կողմ ծռած (ճիւղ)։

**Effusion** էֆֆիու՛ժըն, *s.* հեղում,

զեղում ; արտահոսութիւն։ -sive էֆէ՛սիվ, *a.* վազող, առատահոս։ -ly, *ad.* -ness, *s.* -ութիւն։

Eft էֆթ, *s.* կովադիւաց, մողէս։

Egad իկէտ՛, *int.* խաչմ՛ր։

Egg էկ՛, *s.* հաւկիթ. ձու։ =*va.* գրգռել, սրբել։ -cup. ձուընկալ (գաւաթ)։ -nog էկ՛նոկ, շիկաթան, թոց։-plant.պատնջան.սմբուկ։ Soft-boiled egg. թերխաշ ռափաղմն։

Egis ի՛ճիս, *s.* վահան, պաշտպանութիւն; 2. եկիս դէչ։

Eglantine էկ՛լէնթայն, *s.* ծաղիկ մասրենույ, մասուր։ [թիւն։

Eglogue էկ՛լոկ, *s.* հովուերգութիւն։

Egoist,-tist ի՛կոիսթ,-իսթ,*a.*անձնասէր,ինքնամոլ ; 2. եսապաշտ փիլ.

*Egoism,-tism ի՛կոիզմ, -թիզմ, *s.* -ութիւն։ [ուռենալ, պարծենալ։

Egotize ի՛կոթայզ, *vn.* գովուիլ,

Egregious իկրի՛ճըս, *a.* արտասովոր, արտաքոյ կարգի,այլանդակ։ -ly, *ad.* մեծապէս, անամօթաբար։

Egress, Egression իկ՛րէս, իկրէշ՛ըն, *s.* ելք, մեկնում։

Egret ի՛կրէթ, *s.* ցցնարդ, տառեղ ցցունազարդ թռչնոյ պալըրգչին; 2. տառեղի ցցունք; 3. նըրբաթելք, քիստ (սերմնոց); 4. կապիկ մը։ [ճեղանակ սորղու։

Egrette իկրէթ՛, *s.* զարգամանակ,

Egyptian իճիփ՛շըն, *a.* եգիպտական։=*s.* եգիպտացի; գնչու,խպտի։

Egyptology իճիփթոլ՛ըճի, *s.* եգիպտաբանութ.-gist. -ճիսթ.-աբան

Eider, -duck այ՛տըր, -տըք, *s.* հիւսիսաբադ, փափկափետուր բադ մը բուբյա գազր։ Eider-down. հիւսիսաբադի փետուր, ճեղ։

Eidograph այ՛տոկրէֆ, *s.* ձեւագիծ, պատկերագիծ (գործի)։

Eight էյթ, *a.* ութը։ [ութ։

Eighteen էյթ՛ին, *a.* տասն եւ

Eighteenth էյթինթհ՛, *s.* 18րդ ։

Eightfold էյթֆոլտ,ութնպատիկ

Eighth էյթթհ, *a.* ութերորդ։

Eightieth էյթ՛իէթհ, *a.* 80րդ։

Eightscore էյթ՛սքօր,*a.*160 հատ։

Eisteddfod էսթէթ՛ֆոտ, *s.* ժողով կալլէսի բանաստեղծաց։

Eighty էյթ՛ի, *a.* ութսուն։

Either իտհ՛ըր, *pron.* & *a.* երկուքէն մէկը, մին կամ միւսը, այս կամ այն։ =*conj.* կամ; թէ։

Ejaculate իճէք՛իուլէյթ,*va.*պոռչըտալ, գոչել; 2. նետել, ցայտել։ =*vn.* բացագանչել;սրտանց մաղթել

Ejaculation իճէքիուլէյ՛շըն, *s.* աղաղակ, համառօտ մաղթանք; 2. նետելը, ցայտելը։ -tory -թ՛ըրի, *a.* հառաչանաց; 2. յորդահոս։

Eject իճէքթ՛, *va.* դուրս ընել, արտաքսել; 2. պաշտօնէ մերժել։ -ment, -tion -՛մընթ, իճէք՛շըն, *s.* արտաքսում, մերժում; 2. պաշտօնանկութիւն; 3. դգայուում, փրախում, դարձուք։ [հողի]։

Ejector իճէք՛թըր, *a.* բռնաստաց

Eke իյք(թ), *va.* աճեցնել, մեծցնել, ընդարձակել; 2. (out) երկնցնել, աւելցնել։ =*ad.* նաև ; նման։

Elaborate իլէպ՛ըրէյթ, *va.* աշխատասիրել, խնամքով պատրաստել, երկասիրել =*a.* խնամեալ,կոկիկ; 2.հոյակապ, ընտիր։-ly-լի,*ad.* մեծաւ խնամօք, զգուշութեամբ։-tion -էյ՛շըն,*s.* աշխատասիրութիւն, երկասիրութիւն; 2. կազմակերպութիւն մը։ -tor -՛թըր, *s.* աշխատասիրող, կազմակերպող։

Elan էլան՛, *s.* եռանդ, թափ։ F.

Elaine իլէյ՛ին, *s.* իւղիտ ք։

Elance իլէնս՛(թ), *va.* ուժով մը նետել, խոյացնել։ [ղըն ։։

Eland իլ՛ընտ, *s.* հիւսիսեղնաւոր-

Elapse իլէփս՛,*vn.*սահիլ,անցնիլ։

Elastic իլէսթ՛իք, *a.* առաձիգ, առաձգական, երկնցող կարճցող։

-ity իլէօթիւ'էթի, s. առաձգութիւն, առաձգականութիւն:

Elate իլէյթ', va. բարձրացնել, հպարտացնել; 2. զուարթացնել:= a. ամբարտաւան, փքացեալ: -dly -'էթլի, ad. սէգօրէն, գոռոզութեամբ

-tion իլէյ'շը՛ն, s. գոռոզութիւն, սէգութիւն. ամբարտաւանութիւն

Elaterium իլէթէր'իըմ, s. իշկոյ-վարունգ, շանվարունգ:

Elbow էլ'պօ, s. արմուկ; 2. անկիւն:=va. արմուկով հրել, մղել; 2. վանել:=vn. անկիւնաւոր ըլլալ; 2. խթուիլ: -chair էլ'պօչէէր, թիկնաթոռ, բազկաթոռ գօյրուզ: -piece. արմկազէն: -room. ասպարէզ, դաշտ: -grease. զօրութիւն, տոկունութիւն: At the—. կեցը, քովիկը: Out at—. արմուկները մաշած; 2. խեղճ:

Eld էլտ, s. հին օրեր; 2. ծերութիւն; 3. ծերունի, ալեւոր:

Elder էլտ'ըր, a. երիցագոյն, մեծ, տարիքոտ, հինաւուրց: =s. ծերունի, ծեր; 2. երէց, պաշտօնեայ; 3. նախահայր, պապ; 4. թանթրվենի մուրմէր ադամը: -berry. թանթրուկ, շամբուկ մուրմէր sամկmի: -brother. երէց եղբայր, անդրանիկ: Dwarf—. մոլաթանթրուենի: -ly էլ'տըրլի, ad. հասակով մեծ, ծերունի, հինաւուրց:-ship էլ'տըրշիփ, s. ալեւորութիւն, երէցութիւն:

Eldest էլտ'էսթ, s. երիցագոյն, մեծը; 2. ծերունի, ամէնէն ծերը; 3. անդրանիկ, առջինեկ (զաւակ):

Eldorado էլտօրէյ'տօ, s. հեշտութեան և առատութեան երկիր, Պղնձէ Քաղաք (Sp.):

Elecampane իլէքէմ'փէյն, s. լատենի, կղմուխ խisnrq օրni:

Elect իլէքթ', va. ընտրել, որոշել, զատել; 2. սահմանել Ա.Գ.: = a. ընտրեալ, փրկեալ, նախասահմանեալ: =pl. 2. ընտրեալ ազգ, սեփհական ժողովուրդ (Աստուծոյ):

Election իլէք'շը՛ն, s. ընտրութիւն; 2. ընտրեալութիւն Ա.Գ.; 3. ընտրողութիւն, ազատ կամք; 4. ընտրեալ սերունդ Ա.Գ.: -eer -շը՛նի'ըր, vn. քուէ մուրալ, ընտրուելու ճիգ թափել: -tive իլէքթ'իվ, a. ընտրական, ընտրողական: -affinity -էֆինիթի. ընտրական յարակցութիւն ք. -ly իլէքթ'իվլի, ad. ընտրութեամբ, ընտրողաբար:

Elector իլէք'թըր, s. ընտրող; 2. կայսրընտիր (Գերմանիոյ): -al ըըլ, a. ընտրողի, ընտրական, կայսրընտիր -ate -թ'ըրէյթ, կայսրընտրութիւն: -tress -թ'րէս, s. կայսրընտրուհի:

Electric,-al իլէք'թրիք, -'թրիքըլ, a. ելեկտրական=s. անհաղորդիչ ձիգ.

Electrician իլէքթրիշ'ը՛ն, s. ելեկտրագէտ: [տրականութիւն:

Electricity իլէքթրիս'իթի, s. ելեկ-

Electrify, Electrize իլէք'թրիֆայ, իլէք'թրայզ, va. ելեկտրականացնել; 2. ելեկտրապէս ազդել, ցնցել, վառել: -fiable -ֆայ'էպլ, a. ելեկտրականալի, ելեկտրանալի:

Electro-. [թիւն:

-biology, ելեկտրակենախօսու-

-chemistry, s. ելեկտրաստարքաբանութիւն: [ւով՝պղնձի վրայ):

-gilding, ելեկտրապօծում (ոսկ-

-logy -ալըճի. ելեկտրախօսութ.:

-lysis -լիսիս, ելեկտրալուծում:

-lyte. s. ելեկտրալոյծ: [սութիւն

-magnetism s. ելեկտրամագնի-

-meter -միթըր, s. ելեկտրաչափ:

-motor -մօթըր, s. ելեկտրաշարժիչ

-negative իլէք'թրօնէկ'էթիվ, a. ելեկտրաժխտական:

-positive, a. ելեկտրադրական:

-scope -սքօփ, s. ելեկտրացոյց:

-type -թայփ, s. ելեկտրատիպ:

Electrode իլէք'թրօտ, s. ելեկ-

տրաստյր, -բեր. -trum -'տրըմ, s. նախնեաց գեղին սաթը քհրիմպա։

Electuary իլեք'դիու-երի, s. ըն-տրուկ, քաղցրախիւս մածուն։

Eleemosynary էլի'էմօսինըրի, a. գթասիրական, գթութեան։ =s. ողորմութեամբ ապրող։

*Elegance, -cy էլ'իկէնս, -սի, s. վայելչութիւն; 2. գեղեցկութիւն; 3. շքեղութիւն։

Elegant էլ'իկէնթ, a. վայելուչ, ընտիր, շքեղ։ -ly -լի, ad.

Elegy էլ'իճի, s. եղերերգութիւն, եղերերգ։ -giac.-al էլիճ'այ'էք, -էըլ, a. եղերերգական, ողբերգական։ -gist էլ'իճիսթ, s. ողբերգակ, եղերերգու։

Element էլ'իմէնթ, s. տարր, սկզբունք; 2. pl. տարերք, նախադիտելիք; 3. (չորս) տարերք։ The consecrated -s. Հաց և գինի (Հաղորդ.) Ս.Յ.։ To be in one's-. իր միջավայրին մէջ; սիրած զբաղմունքը ունենալ։ -al,-ary էլիմէնթ'ըլ, -տ'ըրի, a. տարրական, սկզբնական; 2. էական; 3. պարզ։ -ly -'թըլի, ad. -կերպով։ [Ա.Մ. ուսումն։

Elemi էլ'իմի, s. զուկի ձէթ ք․․

Elench իլէնք', s. սխալ եզրակացութիւն, իմաստակութիւն Տր.

Elephant էլ'իֆէնթ, s. փիղ փիղ; մեծաթելթգծագրութեամբ թուղթ (28×25)։ Bull, cow-. արու, էգ փիղ։ -iasis էլիֆէնթ'այէսիս, s. խատուրակ, խատուրուկ Բժ. -tine էլիֆէն'թին, a. փղի, փղական; 2. ահագին։

Eleusinian էլիուսին'իէն, a. Դեմետրէ դիցուհւոյն, հնձոց։

Elevate էլ'իվէյթ, va. բարձրացնել, վերցնել, տնկել, կանգնել; 2. աւելցնել, աճեցնել; 3. ոգեւորել, գրգռել։ =a. բարձր, վսեմ, վեհ, պերճ։

Elevation էլիվէյ'շըն, s. բարձ-րացնելը, վերցնելը; 2. բարձրութիւն; 3. բարձրաւանդակ, բարձունք; 4. վսեմութիւն, պատիւ; 5. շէնքի կանգուն ծրագիր։ -of the Host. վերաբերում սկիհի։ -tor -վէյթըր, s. բարձրացնող; 2. վերամբարձ մեք.; 3. վերացուցիչ գնդերը Մրմ.։

Élève էլէվ', s. ձեռնասուն, սան։

Eleven իլէվն, a. տասնըմէկ։

Eleventh իլէվ'նթհ, a. 11րդ։

Elf էլֆ, s. (pl. Elves էլվզ) օդապայ, ճիւաղ։ =va. խառնշտկել, թնջուկել։ -arrow, -bolt. նետաձեւ գայլախազ։ -lock. խռով հիւսուած մազ, թնճուկ։ -in էլֆ'ին, s. պայիկ; 2. չարաճճիկ։

Elicit իլիս'իթ, va. հլուզել, դուրս հանել։ [պաւել ․․

Elide իլայ'տ, va. կրճատել, յա-

Eligible էլ'իճիպլ, a. ընտրելի, նախամեծար։ -ness,-bility -նէս, -պիլ'իթի, s. ընտրելիութիւն, ատաւելութիւն։ -bly էլ'իճիպլի, ad. վայելչօրէն։

Eliminate իլիմ'ինէյթ, va. տարագրել, ջնջել Թուա.; 2. արտաքսել։ -tion -նէ'շըն, s. արտաքսում, տարագրութիւն։ [յապաւում։

Elision իլիժ'ըն, s. կրճատում;

Elite էյ'լիյթ, s. ընտրելագոյն մաս, ընտիր ընտիրը։

Elixir իլիք'սըր, s. ոգեղէն ըմպելի, ազնիւ ցքի, իքսիր; 2. բաղադրեալ ըմպելի (դեղ); 3. փիլիսոփայական քար։ -vitæ. կենաց ջուր։

Elizabethan իլիզէպիթ'ըն, a. Եղիսաբեթեան (դարու)։

Elk էլք, s. խարբուզ, խարաբուզ, եղնիկ մը։ -nut. բանընկոյզ։

Ell էլ, s կանգուն ենսադէ։

Ellipse էլ'իփս, s. թերատ, ձուաձև պէյզի Ե.։

Ellipsis էլիփ'սիս, s. զեղջում Քր.

Ellipsoid,-al էլիփսոյտ', -էըլ a.

թերատաձև, թերատակերպ։

Elliptic, -al ըլլիփ՛թիք, -քըլ, *a.* թերատական է;-ly, *ad.* զեղջական [աղաւ։

Ellipticity ըլլիփ՛թիսիթի, *s.* թերատականութիւն։

Elm էլմ, *s.* կնձնի, թեղի զառա

Elm'y էլմ'ի, *a.* կնձնուտ, թեղուտ

Elocution էլօքիու՛շըն, *s.* պերճախօսութիւն, վայելչախօսութ.։ -ary -'էրի, *a.* պերճախօսական։ -ist -'շընիսթ, *s.* պերճախօս; 2. ուսուցիչ վայելչախօսութեան։

Eloge էլօժ՛, *s.* ներբող [F.]

Elohim է՛լօհիմ, *s.* Եղովէ, Եղովայ, Աստուած (ի Ս. Գիրս)։-histic էլօհիս՛թիք, *a.* եղովական, Ս. Գրոց այն մասերը՝ ուր Եղովայ գործածուած է փոխանակ Եհովայի։

Elongate իլօն՛կէյթ, *va.* հեռացնել; 2. երկարել, տարածել։=*vn.* բացուիլ երկարաձգուիլ; 2. հեռանալ։ -tion -կէյ՛շըն, *s.* երկարում, տարածում; 2. հեռացում; 3. միջոց, հեռաւորութիւն; 4. տարակացութիւն աստ.; 5. անկատար խախտում ոսկերաց վէր.։

Elope իլօփ՛(թ), *vn.* փախչիլ, խոյս տալ (սիրահարին հետ)։-ment իլօփ՛մընթ, *s.* (կնոջ իր սիրահարին հետ) փախուստ, լքում։

Eloquence էլ՛օքուընս, *s.* պերճախօսութիւն, ճարտարախօսութիւն։ Forensic—. ատենական պերճախօսութիւն։ Pulpit—. քարոզախօսութիւն; քարոզասացութիւն։

Eloquent էլ՛օքուընթ, *a.* պերճախօս, ճարտասան; 2. կորովաբան։ -ly -ընթլի, *ad.* պերճօրէն։

Else էլս, *a.* ուրիշ, այլ։ =*ad.* եթէ ոչ; 2. ուրիշ կերպ, այլապէս։ Or else. կամ թէ, և կամ։

Elsewhere էլս՛հուէր, *ad.* ուրիշ տեղ, ուրիշ կողմ, այլուր։

Elucidate իլիուս՛իտէյթ, *va.* պարզաբանել, պարզել, լուսաբանել։ -tive,-tory -տէյ՛թիվ, -տէյ՛թըրի, *a.* բացատրիչ, լուսաբանիչ։ -tion -տէյ՛շըն, *s.* բացատրութիւն, մեկնութիւն, լուսաբանութիւն։

Elude իլիուտ՛, *va.* փախուստ՝ խոյս տալ; 2. պարապ՝ ի դերև հանել; 3. ծածուկ մնալ։ [դերևելի։

Eludible իլիուտ՛իպլ, *a.* խուսելի,

Elusion իլիուժ՛ըն, *s.* փախուստ, պատրուակ, ննգութիւն։ -sive, -sory իլիու՛սիվ, -'սըրի, *a.* պատիր, խորամանկ, խաբէական։

Elutriate իլիու՛թրիէյթ, *va.* լըւալ, մաքրել, աղտը հանել։

Elv, Elvish էլ՛վ, էլ՛վիշ, *See* Elf.

Elysian իլիժ՛իըն, *a.* ելիսեան, երանական, եղիւսական։

Elysium իլիժ՛իըմ, *s.* ելիսեան դաշտ, երանելեաց բնակարան։

Elytron,-rum էլ՛իթրըն, -թրըմ, *s.* վերնաթեւ (միջատի)։

'Em համառ. Them ի

Emaciate իմէյ՛շիէյթ, *vn.* հիւծիլ, հալիլ, հատնիլ, նիհարնալ։ = *va.* նիհարցնել, վատուժցնել։-tion -շիէյ՛շըն, *s.* հիւծում, նիհարում։

Emanant էմ՛ընընթ, *a.* ծագած, բխած, ելած; 2. բխական։

Emanate էմ՛ընէյթ, *vn.* ծագիլ, բխել, ելնել; 2. տարածուիլ։-tion էմընէյ՛շըն, *s.* ծագում, բխում, հոսում; 2. արտահոսում, հոսանք։

Emancipate իմէն՛սիփէյթ, *va.* ազատագրել, ազատել։ =*a.* ազատագրեալ։ -tion -փէյ՛շըն, *s.* ազատագրութիւն, ազատութիւն։-tor -փէյ՛թըր, *s.* ազատագրող։

Emasculate իմէս՛քիուլէյթ, *va.* ներքինացնել, մալել; 2. իգացնել, մեղկացնել։ =*a.* մալեալ; 2. կնամարդի։ -tion -լէյ՛շըն, *s.* մալում, ամորձատութիւն; 2. մեղկութիւն։

Embalm էմպամ՛, *va.* զմռսա-

տել, զմռսել ; 2. խնկել ; 3. անուշահոտել ; 4. յաւերժացնել, անմահացնել։ -ment -'մէնթ, s. զմըռսում։ -ed էմպամ'դ, a. զմռսեալ։ -er -մ'ըր, s. զմռսող, դիազարդ։

Embank էմպէնք'(ք), a. Թումբ քաշել, լեցնել։ -ment մէնթ, s. Թմբաշինութ. եզրաթումբ, պատուար։

Embar էմպար'(ք), va. գոցել։

Embarcation, Embarkation էմպարքէյ'շըն, s. նաւ դնելը, նաւ մտնելը, նաւամուտք; 2. բեռ։

Embargo էմպար'կօ, s. նաւերու գրուած արգելք, նաւարգելք։ =va. նաւուն մեկնումը արգիլել։

Embark էմպարք'(ք), va. [in, for] նաւակ դնել, նաւ մտցնել ; 2. գործի մէջ նետել, խոթել։ =va. [at] նաւ մտնել ; 2. ձեռք զարնել, սկսիլ ; 3. նետուիլ։

*Embarrass էմպէ'րրէս(ք), va. արգիլել, խափանել ; 2. նեղը խոթել, շփոթեցնել, ամչցնել ; 3. խառնշտկել, կնճռոտել ; 4. պարտքով ճնշել։ -ment -մէնթ, s. նեղութիւն, հոգ, տագնապ, դժուարութիւն։ -ed -'րէսթ, a. վարանեալ, շփոթ, նեղուած ; խառնափնդոր

Embas'sador էմպէս'էտըր, s. դեսպան։ -ial -էըլ, a. -ական։

Embassy էմ'պէսի, s. դեսպանութիւն; 2. դեսպանորեարք; 3. դեսպանատուն; 4. պատգամ, լուր։

Embattle էմպէթ'լ, va. պատերազմի շարել ; 2. պատրաստել։

Embay էմպէյ', va. ծոցի կամ խորշի մէջ փակել ; 2. ապաստարան ընծայել։ [դնել, պառկեցնել։

Embed էմպէդ', va. անկողին

Embellish էմպէ'լիշ(ք), va. [with] զարդարել, գեղազարդել, գեղեցկացնել։ -ment էմպէ'լիշմէնթ, s. զարդարանք, զարդ, գեղեցկութիւն։ -er էմպէ'լիշըր, s. -ող։

Embers էմ'պըրզ, pl. վառ կրակ, խարոյկ։ Ember-days. չորս եղանակաց ծոմ պհ.։ -goose. հողամաղ հիւսիսի, հիւսիսային Թռ. -week. ծոմապահութեան շաբաթ։

Embezzle էմպէզլ', va. խորել, նենգել, գողնալ։ -ment -մէնթ, s. (աւանդի) խորում, նենգութիւն։

Embit'ter էմպիթ'ըր, va. դառնացնել։

Emblaze, -blazon էմպլէյզ', -պլէյզ'ն, va. գեղազարդել, շքեղազարդել, տոհմանշանել։ -zonry էմպլէյզ'ընրի, s. զինանշանի պճնում։

Emblem էմ'պլէմ, s. խորհրդանշան, խորհրդաւոր նշան, տիպ։ -atic, -al -լէ'մէթիք, -իքըլ, a. խոհրդաւոր, նշանական։ -atize էմպլէմ'էթայզ, va. խորհրդաւոր կերպով ներկայացնել։ [(հողի)։

Em'blement էմպլէ'մէնթ, s. բերք

Embodiment էմպա'տիմէնթ, s. մարմնացնելը, մարմնացում; 2. մարմնաւորութիւն, պարունակում։

Embody էմպա'տի, va. մարմնացընել, մարմնաւորել ; 2. ժողվել, ամփոփել ; 3. պարունակել, պարփակել։ [տալ, քաջալերել։

Embolden էմպօլտ'ն, va. երես

Embolism էմ'պօլիզմ, s. ամսահանանջ, ամիսի՝ օրի յաւելում։ -al, -ic, -bolic էմպալիզ'մըլ, -լիզ'միք, էմպալ'իք, a. նահանջային։ -bolus էմ'պօլըս, s. ագուցիկ մեքենայի, մեխեղ, սեպ. արեան փոր։

Enbonpoint անպօնփուան', s. մարմնեղութիւն, գիրութիւն [F.]։

Emborder էմպար'տըր, va. եզերել, եզերազարդել ; 2. եզրաւորել, շրջապատել։ [գգուել ; պահել։

Embosom էմպուզ'ըմ, va. գրկել ;

Embos էմպաս'(ք), va. ուռեցնել, տորմել ; 2. քանդակել, բարձրաքանդակել։ -ment էմպաս-

'մէնթ, s. բարձրաքանդակ։

**Embottle** էմպոթ'լ, *va.* շիշ կամ սրուակ քաշել։

**Embouchure** անկուշիւր', s. (գետի, հնոցի)բերան գետաբերան։

**Embowel** էմպաու'էլ, *va.* փորոտիքը հանել; 2. խորունկը խոթել, թաղել։

**Embower** էմպաու'ըր, *va.* ծառազարդել, ծողաբարձ շինել։

**Embrace** էմպրէյս'(զ), ընդգրկել, գրկել; 2. փարիլ ; 3. համբուրել; 4. պատել, պարփակել; 5. ընդունիլ, յանձն առնուլ; 6. ողջունել։ =*vn.* փաթթուիլ, գիրկընդխառնել։ =s. ընդգրկում; 2. փարում; 3. գիրկընդխառնութիւն; 4. համբուրելը։ -ment -'մէնթ, s. ողջագուրանք, գրկանք; 2. բովանդակութիւն։ -ceor -'սըր, s. կաշառքի միջնորդ։ -cery էմպրէյ'սըրի, s. կաշառքի առաջարկ, կաշառառք։

**Embrasure** էմպրէյ'ժըր, s. որմածակ, որմածերպ. ամր.։

**Embrocate** էմ'պրօքէյթ, *va.* հիւանդ մասին վրայ հեղուկ թափել, սածել, շփել։ -tion էմպրօքէյ'շըն, s. շփելը, սածում։

**Embroider** էմպրօյտ'ըր, *a.* ասղնագործել, բանիլ; 2. նկարակերտել, երփնել։ -dery -տ'ըրի s. ասղնագործութ. եզերալարդ.ք ամկվադօ։

**Embroil** էմպրօյլ'(զ), *va.* խառնել շփոթել; 2. խառնշտկել, տակնուվրայ ընել։

**Embryo** էմ'պրիյօ, s. նախասաղմ =*a.* սաղմնային, անկատար։ -logy էմպրիօ'լօճի, s. սաղմնաբանութիւն։

**Emend** իմէնտ', *va.* ուղղել, շըտկել, բարեփոխել։ -able -'էպլ, *a.* ուղղելի, բարեփոխելի։ -ation -տէյ'շըն, s. ուղղութիւն, բարեփոխում -ator -տէյ'թըր, s. ուղղիչ, բարեփոխիչ։ -atory -տէյ'թըրի, *a.* ուղղութեան, բարեփոխական։

**Emerald** էմ'ըրէլտ, s. զմրուխտ; 2. գրի տեսակ մը. տպ.։ The — isle. դալարագեղ կղզի, Իռլանտա։

**Emerge** իմըրճ'(զ). *vn.* [from] բարձրանալ, ի լոյս գալ, երեւիլ։ -gence, -cy իմըրճ'ընս, -ճ'ընսի, s. ելք, արտածագում; 2. դէպք, պատահար; 3. առիպողական հարկ։ In case of —. ի պահանջել հարկին։ -gent իմըրճ'ընթ, *a.* ծագեալ, երեւցող, արտափայլող։

**Emeritus, -ted** իմէր'իթըս, -'իթէտ *a.* արժանաւոր, վկայեալ։ Professor —. բազմարդիւն ուսուցիչ։

**Emerods, -roids** էմ'ըրօյտզ, *pl.* տեւատեսութ., թութք մայասըլ։

**Emersion** իմըր'շըն, s. վեր երեւնալը, բարձրացում, արտածագում; 2. վերածագում ա.

**Emery** էմ'ըրի, s. սմպատակ, զմռնխտ զըմպարա [մաղձադեղ։

**Emetic** իմէթ'իք, s. փսխեցնող,

**Emeu, Emew** իմ'իու, s. հընդկաջայլամ, կանգուռ թռ.

**Emication** էմիքէյ'շըն, s. ցայտում (ջրոյ); 2. կայծարձակութ.։

**Emiction** իմիք'շըն, s. միզում։

**Emigrant** էմ'իկրէնթ. s. գաղթող, գաղթական; 2. պանդուխտ, նժդեհ։

**Emigrate** էմ'իկրէյթ, *vn.* գաղթել, պանդխտիլ։ -tion -րէյ'շըն, s. գաղթում պանդխտութիւն; գաղթականութ.; հաստուած, գաղութ։

**Eminence, -cy** էմ'ինընս, -սի, s. բարձրութիւն, վսեմութիւն; 2. առաւելութիւն, գերազանցութիւն; 3. բարձր տեղ, բարձրաւանդ; 4. պերճութիւն; 5. պերճաշնորհ (Կարդինալ), շնորհափայլութիւն։

*Eminent էմ'ինընթ, *a.* բարձր, գերազանց; 2. վսեմ, հոյակապ; 3. ծայրագոյն։ [(մահմետակ.), ամիրա

**Emir, Emeer** է'միր, s. իշխան

**Emissary** է՛միսէրի, s. լրտես, գաղտնի պատուիրակ ։ =a. խուզարկող, լրտեսող ճասուս։

**Emission** իմի՛շըն, s. արձակում, առաքում; 2. բխում, հոսում; 3. հրատարակութիւն, պրակ, թերթ։

**Emit** իմի՛թ, va. արձակել, ղրկել; 2. բուրել; 3. շրջաբերութեան հանել

**Emmet** էմ՛մէթ, s. մրջիւն։

**Emolliate** էմօ՛լլիէյթ, va. կակղցընել, թուլցնել, մեղկացնել։ -lient -լ՛իէնթ, a. կակուղցնող; 2. կակղադեղ։ -lition -լի՛շըն, s. կակղացում։ -lescence -լէս՛ընս, s. մետաղի կակղում, կակուղութիւն։

**Emolument** էմօ՛լիումընթ, s. վարձ, շահ, եկամուտ, տարեթոշակ

***Emotion** իմօ՛շըն, s. յուզում, յոյզք։ -al. -tive իմօ՛շընըլ, իմօ՛թիվ, a. յուզիչ։

**Empale** էմփէյլ՛, va. շրջափակել (ցիցով, ցանկով), շրջապատել; 2. ցիցը հանել զաղըգլխամագ։ -ment -՛մընթ, s. ցանկապատում; 2. ցցահանութիւն; 3. բաժակ (բուսոց)։

**Empannel** էմ՛փէնէլ, s. (երդուելոց) ցուցակ։

**Empassion** էմփէ՛շըն, va. (կիրքերը, զգացումները) շարժել, յուզել։ -ate էմփէ՛շընէյթ, a. յուզեալ, բորբոքած։ [րուհի։

**Emperess** էմ՛փըրէս, s. կայս-

**Em'peror** էմ՛փըրըր, s. կայսր, ինքնակալ։

**Emphasis** էմ՛ֆէսիս, s. (*pl.* ses -ֆէս՛իզ) սեթեւեթեալ ազդուութիւն, կոկողութիւն, ճոռոմութիւն։ -size -ս՛այզ, va. շեշտել։ -tic,-al էմֆէթ՛իք, -թ՛իքէլ, a. ազդու, հզօր, կոկողաբան, ճոռոմաբան։

**Empire** էմ՛փայր, s. կայսրութ., ինքնակալութիւն, իշխանութիւն, տէրութիւն։

**Empiric** էմփ՛իրիք, a. փորձառական; 2. առանց գիտութեան, փորձառութեամբ միայն ։ =s. անուսում՝ խաբեբայ բժիշկ, բուժակ։ -ism էմփիրիզմ, s. փորձառականութիւն; -պաշտութիւն բժշ. -rist էմփի՛րիսթ, s. փորձապաշտ բժշ.

**Emplastic** էմփլէսթ՛իք, a. մածուցիկ կպչուն, փակչող։

**Employ** էմփլօյ՛, va. [in, on, upon, about] գործածել, գործ տալ; 2. գործիք՝ միջոց ընել ։ =s. զբաղում. գործ, պաշտօն։ To – one's self. զբաղիլ, գործել ։ -ment էմփլօյ՛մընթ, s. գործածութիւն; 2. զբաղում, գործ, պաշտօն։

**Employé** անփլուայէ՛, s. պաշտօնեայ, ծառայ, մարդ [F.]։

**Employer** էմփլօյ՛ըր, s. գործածող, զբաղեցնող; 2. գործատէր, գործարանատէր։ The – and employed. վարպետն ու բանուորը։

**Empoison** էմփօյզ՛ն, va. թունաւորել, մեռցնել։ -ment -՛մընթ, s. թունաւորում; 2. դառնացում։

**Emporium** էմփօ՛րիըմ, s. վաճառատեղի, վաճառանոց։

**Empoverish** էմփօվ՛ըրիշ(թ), va. աղքատացնել, խեղճ՝ թշուառ ընել, անզօրացնել, տկարացնել ։

**Empower** էմփա՛ուըր, va. հրաման՝ իշխանութիւն տալ, արտօնել։

**Empress** էմփ՛րէս, s. կայսրուհի։

**Empressement** անփրէսման՛, s. եռանդ, խանդ [F.]։ [կութիւն։

**Emprise** էմփրայզ՛, s. ձեռնար-

**Emptiness** էմ՛թինէս. s. դատարկութիւն, պարապութիւն; 2. ունայնութիւն; 3. տգիտութիւն։

**Emption** էմփ՛շըն, s. գնում։

**Empty** էմ՛թի, s. դատարկ, պարապ, ունայն; 2. սնոտի, անիմաստ, դատարկ; 3. անսուաղ, անօթի; 4. անապատ, ամայի ։ =an. դատարկել, պարպել; 2. պարպուիլ; 3.

*թափել:* To -itself. *թափիլ, հոսիլ:* -handed. *ունայնաձեռն:* -headed. *դատարկգլուխ:*

Emptying էմփ'թիին, s. *պարպելը:* =pl. *դիրտ, տկուք, մրուր:*

Empurple, va. *ծիրանի ներկել:*

Empyema էմփի'իմա, s. *կուրծքի թարախում, ներակայտ բժ.:*

Empyrean էմփիր'իըն, s. *հրեղէն երկինք, վերին եթեր; 2. երանելեաց բնակարան, երկինք:* =a. *հրեղէն:*
-real -ր'իըլ, a. *հրեղէն, եթերային:*

Empyreumatic, -al էմփիրիումէ-թ'իք, -'քըլ, a. *խանձային, խանձահոտ*

Emu, Emue, s. *կանգուռ թռ.:*

Emulate էմ'իուլէյթ, va. *հետամտել, ջանալ; 2. մրցիլ, նախանձիլ; 3. հաւասարիլ:* -*tion -լէյ'շըն, s. *մրցում, բարի նախանձ:* -tor էմիու-լէյ'թըր, s. *նախանձորդ, հետամուտ; 2. ախոյեան, մրցակից:*

Emulgent իմըլ'ճընթ, a. *արիւնատար, կթիչ (անօթ) մրտ.:*

Emulous է'միուլըս, a. [of] *նախանձորդ, հետամուտ:*

Emulsion իմըլ'շըն, s. (*բուսական*) *կիթ, մզօշարակ:* -sive իմըլ'սիվ, a. *կակղիչ, կաթնային, կթելի:*

Emunctory իմընք'թըրի, s. *կղկղիչ գործարան, վտար, վտարելիք մրտ.:*

Enable էնէյ'պլ, va. *կարողացնել; 2. միջոց՝ զօրութիւն՝ թոյլտուութիւն տալ:*

Enact էնէքթ', va. *սահմանել, ժողով հաստատել, վճռել; 2. կատարել, ընել, յառաջ բերել:* -ment էնէքթ'մէնթ, s. *վաւերացում; 2. օրէնք, կանոն; 3. դերակատարութիւն թտ.:* -tive էնէքթ'իվ, a. *վճռական, հաստատական:* -tor էնէքթ'ըր, s. *օրէնսդիր, գործող:*

Enallage էնէլ'էյճի, s. *հակադասութիւն, փոխադրութիւն +.*

Enambushed էնէմ'պուշտ, s. *դարանամուտ (զօրք):*

Enamel էնէմ'ըլ, an. *կիտուանըկարել, կիտուածել; 2. զարդարել, գեղերփնել:* =s. *կիտուածանկար, կիտուած մինա, մինա իշի; 2. կիտուած՝ բուռ ակռայի:* -ler, -list էնէմ'էլըր, -'էլիսթ, s. *կիտուածագործ, կիտուածանկարիչ մինաճի:*

Enamour էնէմ'ըր, va. [of] *սէրը բորբոքել, դիւթել, գրաւել:*

Encage էնքէյճ'(տ), va. *վանդակին մէջ փակել, վանդակել:*

Encamp էնքէմփ', an. (-ed -քէմփտ) *բանակեցնել, բանակիլ:* -ment էնքէմփ'մէնթ, s. *բանակում, բանակ, բանակետղ:*

Encase էնքէյս'(տ), va. *պատեանը դնել; 2. գանձել:* [*գանձում:*

Encashment էնքէշ'մէնթ, s.

Encaustic էնքօսթ'իք, s. *մոմանկարչութիւն, մոմածեփ, -ներկ:*

Encave' էնքէյվ, va. *պահել, մառանել:* [*մրտ.* =a. *յղի (կին):*

Enceint էնսէյնթ', s. *շրջափակ*

Encephalic էնսէֆէլ'իք, a. *գըլխի, գանկի, ուղեղի:* [*գրգռել:*

Enchafe էնչէյֆ'(տ), *բարկացնել,*

Enchain էնչէյն', va. *շղթայել; 2. պնդել, ամրցնել:* -ment էնչէյն'մէնթ, *շղթայում:*

Enchant էնչանթ', va. *կախարդել, դիւթել, մոգել, թովել; 2. գրաւել, զմայլեցնել:* -ed էնչանթ'էտ, a. *յափշտակեալ, ոխրալի, հիացքանչ* -er էնչանթ'ըր, s. *դիւթիչ, թովիչ, հրապուրիչ:* -ting էնչանթ'ին, a. *գրաւիչ, դեղանի:* -ment էնչանթ'մէնթ, s. *դիւթում, կախարդութ., յափշտակութիւն; 2. զմայլում, զարմանալիք:* -tress էնչանթ'րէս, s. *վհուկ, կիւս:*

Enchase էնչէյս', va. *ագուցանել, յեռուլ; 2. զարդարել. քանդակել:*

Encircle էնսըրք'լ, va. *շրջապա-*

տել, պատել, պարփակել; 2. շրջել, դառնալ; 3. ընդգրկել։

**Enclave** էն+'քլէյվ, *s.* օտար երկրէ շրջապատեալ գաւառ, միջնափակ, միջերկիր։=*va.* միջնափակել, մէջն առնուլ։ [*a.* կցեալ +.

**Enclitic.** -al էն+քլիթի'+, -'+ըլ,

**Enclose** էն+քլօզ'(ս), *va.* փակել, գոցել, պատել, ներփակել։ The enclosed letter. ներփակեալ նամակը։

**Enclosure** էն+քլօժ'ըր, *s.* փակում, գոցելը; 2. ներփակում; 3. փակարան, ցանկապատ տեղ; 4. ներփակեալ (իր, նամակ)։

**Encomiast,-ic** էն+օ'միէստ, -'է+ *a.* գովասանական, ներբողիչ։

**Encomium** էն+օ'միըմ, *s.* ներբողեան, գովեստ, գովասանք։

**Encompass** էն+ըմ'փէս(ս), *va.* պատել, պարփակել, գոցել։

**Encore** ան+օր', *ad.* & *int.* անգամ մ'ալ, դարձեալ։ =*va.* դուրս կոչել, ծափահարել ...։

**Encounter** էն+աունթ'ըր, *s.* [with] հանդիպում, պատահում; 2. հակառակութիւն, կռիւ, վէճ; 3. դիպուած։=*va.* իրարու հանդիպիլ, յարձակիլ, կռուըտիլ։ =*va.* հանդիպիլ, պատահիլ; 2. հակառակիլ, ընդդիմանալ; 3. ընդհարիլ, զարնուիլ։

*Encourage էն+ըր'էճ, -'ըէճ, *va.* խրախուսել, քաջալերել։ -ment էն+ըրէճ'մընթ, *s.* [to] խրախոյս, քաջալեր; 2. օգնութ, շահ։-ging էն+ըրէյճ'ինկ, *a.* խրախուսիչ, քաջալերական։

**Encrimson** էն+րիմ'զն, *va.* ծիրանագարդել, ներկել։

**Encrinite** էն'+րինայթ, *s.* քարաշուշան, շուշան քարացեալ։

**Encroach** էն+րօչ'(ս), *va.* ոտնձիգ ձեռնձիգ ըլլալ; 2. յափշտակել, շորթել։-ment -'մընթ, *s.* [on, upon] ոտնձգութիւն, ձեռնձգութիւն; 2. (իրաւանց) յափշտակութիւն։ -er -'ըր, *s.* -ձիգ։

**Encumber** էն+ըմ'պըր, *va.* ծանրաբան գոցել՝ բռնել, գոցել; 2. խափանել, խռնիլ; 3. արգիլել; 4. բեռնաւորել։ -brance -պ'րէնս, *s.* արգելք, խոչ, շփոթութիւն; 2. հոգ, պարտք; 3. տագնապ; 4. (նաւու) մեծ հակ։ [ջաբերական։

**Encyclical** էնսայ+'լի+ըլ *a.* շըր-

**Encyclopædia,-pedia** էնսայ+լօփի'տիէ, *s.* համայնագիտական բառարան, հանրագիտարան։-pedian, -pedic,-al -փի'տիէն, -փի'տի+,-+ըլ հանրագիտական։-pædist էնսայ+լօփի'տիստ, *a.* հանրագիտակ։

**Encysted** էնսիստ'էտ, *a.* պարկուցիկ, փամփշտապատ։

**End** էնտ, *s.* ծայր, եզր, վերջ; 2. նպատակ, վախճան; 3. մահ, կործանում, անկում։ =*vn.* [in] վերջանալ, լրանալ, լմննալ; 2. կորսուիլ, մեռնիլ։ =*va.* լմնցնել, կտրել; 2. ծայր՝ գլուխ չինել; 3. մեռցնել; 4. լռեցնել։ The further—. միւս ծայրը։ The large—. հաստ կողմը։ At an end. լմնցած, հատած։ By the end. մինչև վերջը; պատահաբար։ In the end. վերջ ի վերջոյ, հուսկ ուրեմն։ An end. շարունակ, անդադրում։ On end. շփշիտակ, ուղղորդ։ Private end. թագուն նըպատակ։ To the end of . . . նպատակաւ։ World without—. յաւիտեանս յաւիտենից։ To no end. աննպատակ, պարապ տեղը։ End-long. ուղղաձիգ, հեւաձիգ։ End-piece. ծայրի կտորը։ End-pipe. ծորակ փխիֆյէ ղիլէսի։

**Endamage** էնտէմ'էճ, *va.* վնասել։-ment -մընթ, *s.* վնաս, կորուստ։

**Endanger** էնտէն'ճըր, *va.* վըտանգել։

**Endear** էնտիր', *va.* [to] սիրցնել,

-ment -'մէնթ, s. սիրելութիւն ; գգուանք, նազանք, փայփայանք:

*Endeavor էնտէվ'ըր, s. ջանք, ճիգ, աշխատանք։=vn. [after] ջանալ, նկրտիլ, փութալ։ =va. վաստկիլ, ջանալ։ Chiristian – Society. Քրիստոնեայ աշխատաւորք ։ -er էնտէվ'ըրըր, s. աշխատաւոր։

Endecagon էնտէք'էկըն, s. մետասանանկիւն։

Endemic, -al; Endemial էնտէմ'իք, -'իքըլ, էնտէմ'իըլ, a. տեղական, տոհմային, բնիկ (ախտ)։

Ending էնտ'ինկ, s. վերջաւորութիւն, վերջ; 2. հետեւանք ։ =a. վերջացող, լրացող։ [s/iypu ƀ..

Endive էն'տիվ, s. եղերդ ñhli-

Endless էնտ'լէս, a. անվերջ, անծայր, անծայրածիր. անեզր, անլուր; 2. անբաւ, անսպառ։ -screw. անվերջ պտուտակ մե+.։

Endlong էնտ'լոն, ad. ուղղածիգ։

Endocarp էն'տօքարփ, s. ներքնամաշկ (պտղոց)։

Endogen,-ous էնտօճ'էն,-ճ'ընըս, a. ներքնաբոյս, ներքնածնունդ։

Endorse էնտորս'(տ), va. փոխանցել։ -ment -'մէնթ, s. փոխանցում ähro; 2. հաստատութիւն։

En'doscope էն'տոսքօփ, s. միզանցքաչափ։

Endosmose էն'տոսմօզ, s. ներհոսում, ներհոսութիւն բն+.։

Endow էնտաու', va. [with] հասոյթ ասհմանել, օժտել; 2. պարգեւել, նուէր ընել։ -ment -'մէնթ, s. պարգեւ, նուէր, հասոյթ; 2. ձիրք, քանքար, տաղանդ։

Endue էնտիու', va. [with] օժտել, տէր ընել ։

Endurable էնտիուր'էպլ a. կրելի, տանելի, քաշուելիք։ -rance էնտիուրէնս, s. համբերութիւն, տոկալը; 2. տեւողութիւն։

Endure էնտիուր', va. տեւել, տոկալ; 2. համբերել, կրել ։

Endways, Endwise էնտ'ուէյզ, էնտ'ուայզ, ad. ծայրը դէպի յառաջ ։

Eneid, Æneid ին'իիտ, s. ենէական (Վիրգիլիոսի) ։

Enema էնիմ'է, s. գրեխ hoqliu։

Enemy էն'իմի, էն'ըմի, s. թշնամի; 2. սոսխ, հակառակորդ ։ The Arch–. սատանայ։

Energetic, -al; Energic էնըրճէտ'իք, -իքըլ, էնըր'ճիք, a. ազդու, զօրաւոր; 2. սաստիկ, բուռն; 3. գործունեայ։-ly էնըրճէտ'իքըլի, ad. հզօրապէս, ազդու կերպով ։

Energy էն'ըրճի. s. ազդուութիւն, կորով; 2. ոյժ. զօրութիւն։

Enervate էն'ըրվէյտ, va.(ջիղերը) թուլցնել, ջլատել; 2. ուժէ ձգել, տկարացնել ; 3. մեղկացնել։ -tion էնըրվէյ'շըն, s. թուլութիւն. մեղկութիւն; 2. ջլատում, ջլատութիւն։

Enfeeble էնֆիպ'լ, va. ուժաթափ ընել, տկարացնել ։

Enfeoff էնֆէֆ'(տ), va. երկիր՝ աւատ տալ։ -ment -'մէնթ, s. աւատելը; 2. աւատի հրաման; 3. կալուածագիր (հողի) puqnı uklıksh։

Enfetter էնֆէտ'ըր, va. շղթայել։

Enfilade էնֆիլ'էյտ, va. երկայնքէն գնդակոծել։ =s. ուղիղ գիծ, անցք; 2. կարգ, շարք ։

Enforce էնֆօրս'(տ), va. բռնադատել, ստիպել, պնդել; 2. ապացուցանել։ -ment -'մէնթ, s. ստիպում, բռնադատում; 2. հարկ, զօրութիւն։

Enfranchise էնֆրէնչէզ', va. ազատագրել, ազատել; 2. առանձնաշնորհել։ -ment -'մէնթ, s. ազատագրութիւն, առանձնաշնորհում։

Engage էնկէյճ'(տ), va. [in, with, for] երաշխաւոր տալ; 2. գրաւ

դնել, տալ; 3. գրաւել, համոզել, յորդորել; 4. յարել, կապել; 5. վարձել, պարտաւորել; 6. յարձակիլ, մրցիլ։ =va. մխել, մղուիլ; 2. յարիլ; 3. խոստանալ; 4. պատերազմիլ։ To—one's self. անձը պարտաւորել; 2. նշանուիլ, խօսուիլ։ —ged -կէյճտ՛, a. խոստացեալ, վարձեալ, գրաւի դրուած; 2. նշանուած; 3. հետաքրքիր, աշխոյժ։ —column. մասամբ պատին մխուած սիւն։ —ment -՛մէնթ, s. գրաւ, երաշխաւորութիւն; 2. խոստում, յանձնառութիւն; 3. գործ, զբաղում; 4. նշանախօսութիւն; 5. կռիւ, պատերազմ։ June 16's—. ճակատ Ենայի։

Engender էնճէն՛տըր, a. ծնանիլ, արտադրել; 2. սերմանել, ցանել։

Engine էն՛ճին, s. անիւ, մեքենայ; 2. գործիք միջոց; մեքենայութիւն, վարպետութիւն; 3. հրշէջ ջրհան։ Locomotive—. վայրաշարժ երկաթուղւոյ։ Fire—. հրշէջ թուլումպա։ -driver, -man. մեքենավար։ -turn. անիւի վրայ շինուած։

Engineer էնճինիյր՛, s. երկրաչափ, ճարտարապետ; մեքենագործ։ Civil—, military—.

Engineery էնճինիյր՛ի, s. մեքենայք, հրետանի; 2. մեքենավարութ.

England ինկ՛լէնտ, s. Անգլիա։

English ինկ՛լիշ(տ) sa. անգլիերէն, անգլիացի; 2. անգլիական; 3. տպագ. խոշոր տառ մը։ =va. անգլիացնել; 2. (անգլիերէնի) թարգմանել։ -man. անգլիացի։ -woman. անգլուհի։

Engorge էնկօրճ՛, va. կլլել, լափել; 2. խճողել։ —ment էնկօրճ՛մէնթ, s. կլլելը, լափլիզում; 2. խճողում։

Engraff' էնկրաֆ՛, va. ծայրը ատամնաւորել։

Engraft էնկրաֆթ՛, va. պատուաստել; 2. աւելցնել, յաւելուլ։

Engrail էնկրէյլ՛, va. կիտուածել, ատամնաւորել; ժանեկաձեւել։

Engrain էնկրէյն՛, va. (մութի) ներկել։

Engrave էնկրէյվ՛, va. փորագրել, քանդակել; 2. խորապէս տպաւորել, դրոշմել։ —ment, -ing -՛մէնթ, -՛ինկ, s. փորագրութիւն, քանդակ։ —ver էնկրէյ՛վըր, s. փորագրիչ։

Engross էնկրօս՛(տ), va. համագրաւել, ամբողջովին գնել; 2. առնուլ, գրաւել; 3. գեղեցիկ և խոշոր գրել; 4. օրինակել, պատճենել։ —ment, -ing -՛մէնթ, -՛ինկ, s. ամբողջական գնում, գրաւում; 2. խոշոր գեղագիր; 3. օրինակելը, պատճենում։ [հավիժել։

Engulf էնկըլֆ՛(տ), va. կլլել, գա-

Enhance էնհէնս՛(տ), va. աւելցնել, բարձրացնել, աճեցնել; 2. գէշցնել։ =vn. աճիլ, մեծնալ։ —ment -՛մէնթ, s. աճում; յաւելում; 2. վատթարացում։

Enharbor էնհարպ՛ըր, va. բնակիլ, պարփակել, պարունակել։

Enigma էնիկ՛մը, s. առեղծուած, հանելուկ։ —tic, —al -մէթ՛իք, -քըլ a. առեղծուածային, մթին; խրթին, անիմանալի։ —ly էնիկմէթ՛իքըլի, ad. —tist էնիկ՛մըթիսթ, s. առեղծուածագիր; խրթնաբան։ -tize էնիկ՛մըթայզ, va. առեղծուած շինել, ծածկափանել

Enjoin էնճօյն՛, va. [on, upon] պատուիրել, հրամայել; 2. արգիլել։ —ment էնճօյն՛մէնթ, s. պատուէր, հրաման; 2. արգելք։

Enjoy էնճօյ՛, va. վայելել, ըմբոշխնել; 2. հաճոյք զգալ, ուրախանալ։ To—one's self. զուարճանալ, ցնծալ, երջանիկ ըլլալ։ —ment -՛մէնթ, s. վայելում, վայելք, զուարճութիւն, երջանկութիւն։ —able -՛էպլ, a. վայելելի; հաճոյական։

Enkindle էնքին՛տլ, va. վառել,

բորբոքել, բռնկցնել, գրգռել։

Enlarge էնլարճ՛(ը), va. մեծցնել, լայնցնել, ընդարձակել; 2. տարածել, ուռեցնել; 3. արձակել (բանտէն)։ =vn. մեծնալ, աճիլ; 2. ծաւալիլ; 3. խօսքը երկարցնել, չափազանցել, փոտեցնել։ -ment -՛մէնթ, s. ընդարձակութիւն, ընդարձակում; 2. արձակում, ազատութիւն; 3. երկայնաբանութիւն, չափազանցութիւն; 4. (մտքի) ընդլայնում; 5. (սրտի) տորոմում։

Enlighten էնլայթ՛ն, va. լուսաւորել; 2. լուսաբանել։ -ment -՛մէնթ, s. գիտութիւն, լուսաւորութիւն։ -er -՛նըր, s. (Գրիգոր) լուսաւորիչ։

Enlink էնլինք՛(ը), va. կապել, յօդել։

Enlist էնլիսթ՛, va. արձանագրել; 2. զինուորագրել, գրել; 3. յարիլ, փակչիլ։ -ment -՛մէնթ, s. արձանագրութիւն; 2. զինուորագրութ.։

Enliven էնլայվ՛ն, va. ոգեւորել, խրախուսել; 2. կազդուրել, զուարճացնել։

En masse անմաս՛, ad. խմբովին, գլխովին [F.]

Enmity էն՛միթի, s. թշնամութիւն, ատելութիւն, հակառակութ

Enneagon էն՛իիկըն, s. իննանկիւն

Ennoble էննօ՛պլ, va. ազնուացնել, բարձրացնել, ազնուականացնել։ -ment -՛մէնթ, s. ազնուացում։

Ennui ան՛նուի, s. ձանձրոյթ [F.]։

Enormity ինօրմ՛իթի, s. անվայել՝ ամօթալից գործ, ամբարշտութիւն; 2. անկարգութ.; 3. եղեռն։

*Enormous ինօրմ՛ըս, a. տարապայման, անսովոր, անճոռնի, վիթխարի; 2. ամբարիշտ։ -ly -լի, ad. -ness ինօր՛մըսնէս, s. անսովոր մեծութիւն, այլանդակութիւն; 2. սաստկութիւն։

Enough ինըֆ՛, ad. ըստ բաւականին։ =a. բաւական, բաւ։

Enpassant անփասան՛, ad. անցողակի, միտքս ինկաւ [F.]։

Enquire *See* Inquire.

Enrage էնրէյճ՛, va. զայրացնել։

Enrank էնրէնք՛, va. կարգադրել։

Enrapt էնրէփթ՛, a. յափշտակեալ, գրաւեալ, հմայեալ։

Enrapture, Enravish էնրէփ՛չըր, էնրէվ՛իշ(ը), va. յափշտակել, գրաւել; 2. զմայլեցնել, լիացնել։

Enrich էնրիչ՛(ը), va. հարստացնել, պարարտացնել; 2. կրթել, պճնել։ -ment -՛մէնթ, s. հարստութ., զարդարանք, ճոխացում։

Enrobe էնրօպ՛, va. հագուեցնել։

Enroll էնրօ՛լ, va. յիշատակել; 2. արձանագրել, գրել; 3. զինուորագրել; 4. փաթթել։ -ment -՛մէնթ, s. արձանագրութիւն, ցուցակ, արձանագրելը; 2. փաթթելը; 3. արձանագիր, տոմար; 4. զինուորագրութիւն։

Enroot էնրութ՛, va. (խոր) տնկել։

Ensample էնսէմ՛պլ, a. օրինակ։

Ensconse էնսքանս՛(ը), va. պատսպարել, պահել, պաշտպանել։

Ensemble անսանպ՛լ, ad. միահաղոյն, մէկանց։ =a. ամբողջ [F.]։

Enshield էնշիլ՛տ, va. ծածկել, պաշտպանել, պահպանել։

Enshrine էնշրայն՛, va. գանձի՝ շիրմի մէջ պահել, պատուել։

Enshroud էնշրաուտ՛, va. պատանքել, ծածկել։

Ensiferous էնսիֆ՛ըրըս, s. սուսերակիր։

Ensiform էնսիֆօրմ a. սուսերաձեւ

Ensign էն՛սայն, s. դրօշակ, դրօշ; 2. նշան; 3. դրօշակիր։ -ship, -cy -՛շիփ, -՛սի, s. դրօշակրութիւն։

Enslave էնսլէյվ՛, va. նուաճել, գերել, յանկուցանել։ -ment -՛մէնթ, s. գերութիւն, ծառայութիւն։

Ensue էնսիու՛, va. հալածել, ետեւէն լինալ, հետեւիլ։ =vn. ետե-

ւէն գալ, յաջորդել։

Ensuing էնսիուին, *a.* հետեւեալ։

Ensure էնշուր', *va.* ապահովել։

Entablature, -lement էնթէպ'լէչըր, էնթէ'պլմէնթ, *s.* վերնախարիսխ (սեան)։

Entail էնթէյլ', *va.* տալ, կտակաւ թողուլ, հրխտակել։ =*s.* հրխտակում, հրխտակ վարգ։ -ment -'մէնթ, *s.* պայմանաւ կտակում։

Entangle էնթէն'կլ, *va.* թնճուկել, խառնշտկել; կնճռոտ գործերու մէջ ձգել, կնճռոտել։ -ment -'մէնթ, *s.* կնճիռ, շփոթ։

Enter էն'թըր, *va.* [on, upon, into] մտնել, մխել, թափանցել; 2. ձեռնարկել, սկսիլ, ընդունիլ; 3. արձանագրել, մտցնել; 4. անդորրագիրը մաքսատան յանձնել։ =*vn.* երթալ գալ, սկսիլ; 2. մխուիլ, մէջ մտնել; խորը մտնել, թափանցել։ To—into details. մանրամասնութեանց մտնել։ To—upon. սկսիլ։ To—one into. մէկուն գաղտնիք մը յայտնել։ [ընդունելութիւն։

Entering էնթ'ըրին, *s.* մուտք,

Enteritis էնթէրայթ'իս, *s.* կողացաւ, հարկինք սաբյիճամն ջէ.։

Entero'tomy էնթէրօ'թըմի, *s.* աղէհարութիւն։

Enterprise էն'թըրփրայզ, *s.* ձեռնարկութիւն; 2. ձեռնարկ; արկած, յանդգնութիւն։ -ser -փրայ'զըր, *s.* ձեռնարկու, ձեռներէց, ստանձնող։

Entertain էնթըրթէյն'(թ), *va.* հիւրընկալել, հիւրասիրել; 2. հացկերոյթ՝ սեղան տալ; 3. ընդունիլ, տածել, բռնել; 4. յղանալ, յիշել; 5. հնարել; 6. զուարճացնել։ =*vn.* հիւր ընդունիլ։ To be—ed. հիւրասիրուիլ, ընդունուիլ; զուարճանալ։ -er -'ըր, *s.* հիւրընկալ, հիւրամեծար; 2. կոչնատէր; 3. հնարող, զուարճացնող։ -ing -'ին, *a.* զուարճացուցիչ, յանկուցիչ։ -ment -'մէնթ, *s.* խնճոյք, կոչունք; 2. զուարճութիւն, հանդէս, զբօսանք; 3. ներկայացում, թատերախաղ; 4. հիւրընկալութիւն, ընդունելութիւն; 5. գործ՝ թոշակ տալը։

Enthrall էնթհրօլ', *va.* գերել։

Enthrone էնթհրօն', *va.* աթոռ բարձրացնել, նստեցնել; 2. գահը բազմեցնել։ -ment էնթհրօն'մէնթ, *s.* գահակալութիւն։

*Enthusiasm էնթհիու'զիէզմ, *s.* սաստիկ եռանդ, հիացում, խանդ, աւիւն, հրճուանք; 2. յափշտակութ. աստուածադդեցութ. -siastic, -al -զիէզ'թիք, -քըլ, *a.* եռանդուն, յափշտակեալ, աւիւնալից։

Enthymeme էն'թհիմիմ, *s.* եզրակացութիւն, հնար, հանճար տր.։

Entice էնթայս'(թ), *va.* հրապուրել; 2. որսալ, պատրել, խաբել։ -ment -'մէնթ, *s.* հրապոյր, յափշտակութիւն։ [րիչ։

Enticer էնթայս'ըր, *s.* հրապու-

Entire էնթայ'ըր, *a.* բոլոր, բովանդակ, ամբողջ, անթերի; 2. անկեղծ, պարզ, անխառն; 3. անճիւղ (բոյս)։ -horse, *s.* յովատակ այղըր։ -ness, -ty -'նէս, -'թի, *s.* ամբողջութիւն, լրութիւն; 2. պարզութ.։

Entirely էնթայըր'լի, *ad.* ամբողջովին, լիովին։

Entitatively էն'թիթէթիվլի, *ad.* աւանձին նկատեալ։

Entitle էնթայթ'լ, *va.* անուանել, յորջորջել, մականուանել, կոչել; 2. իշխանութիւն՝ իրաւունք տալ։ [էակութիւն Ա.Ժ.

Entity էնթ'իթի, *s.* էութիւն,

Entomb էնթում', *va.* թաղել, ծածկել։ -ment -'մէնթ, *s.* թաղում։

Entomology էնթըմօլ'ըճի, *s.* միջատաբանութիւն։ -gist -ճիսթ, *s.* միջատաբան։ -mostracean էնթը-

մօօ'թրըէ+էն, s. միջատախեցի ։

Entozoom էն'թօզօօմ, s. (pl. -zoa էնթօզօ'ը), s. ներքնամիջատ ։

Entrails էն'թրէյլզ, pl. ընդերք, փորոտիք; 2. (երկրիս) խորքեր։

Entrance էն'թրէնս, s. [on, upon, into] մուտք, դուռ; 2. սկիզբ, սկզբնաւորութիւն; 3. մտնելու իրաւունք; 4. մտից հրաման; 5. մուտք, մաքս. -fee, -money. մուտք, մուծք։ -hall. նախասենեակ, նախադուռ։ =էնթրա'նս(դ), va. դէշ վարուիլ, նախատել; 2. հեռացնել, գրաւել; 3. թմրեցնել, ափշեցնել։ -ment -'մէնթ, s. յափշտակութիւն, թմրիլ։

Entrap էնթրէփ'(դ), va. որսալ, թակարդել; 2. ծուղակ լարել։

Entreat էնթրիյթ', va. աղերսել, պաղատիլ; 2. համոզել, կակղցնել։ -ment, -ty -'մէնթ, էնթրիյթ'ի, s. աղերս, խնդիրք; 2. աղերսելը։

Entrée օնթրէյ', s. մուտք, մտից հրաման; 2. (սեղանի) նախախորտիկ

Entremets օնթրմէյ', s. երկրորդական կերակուր, խահանմէջ։

Entrenous օն'թրնու, aa. խօսք մեր մէջ։ [մէթերմանց։

Entrepôt օնթրփօ', s. պահեստ

Entresol օնթրսօլ', s. միջնայարկ։

Entry էն'թրի, s. մուտք, սկիզբ; 2. արձանագրութիւն; 3. փողոց, անցք; 4. նախասենեակ, դահլիճ; 5. ծանուցում, յայտարարութիւն (մաքսի մէջ); 6. հողի տիրացում էր։ Entry-door. տան դուռ, փողոցի դուռ։ Single-. պարզ տոմար։ Double-. կրկնատոմար։

Entwine, Entwist էնթուայն', էնթուիսթ', va. փաթթել, հիւսել։

Enucleate ինիու'քլիէյթ va. պարզել, լուծել, յայտնել։

Enumerate ինիու'մըրէյթ, va. համրել, հաշուել -tion ինիումըրէյ'շըն s. հաշուելը, թուում, թուարկութ.։

Enunciate ինըն'շիէյթ, va. հրատարակել, յայտնել, արտայայտել, 2. անուանել, ըսել։ =vn. (բառ, գիր) հնչել։ -tion ինընշիէյ'շըն, s. յայտարարութ., յայտնում; 2. բուածք, բացատրուածք; 3. խօսք, յառաջադրութիւն։ -tive, -tory -'թիվ, ինընշիէյ'թըրի, a. յայտնիչ (խօսք)։

Enveigle էն'վիկլ, See Inveigle.

Envelop էն'վէլըփ(դ), va. ծրարել, փաթթել, պատատել; 2. ներփակել, մէջ առնուլ; 3. պաշարել, շուրջ պատել; 4. քօղարկել, ծածկել։

Envelop, Envelope էնվէլըփ, էն'վէլօփ, s. պահարան, ծածկոյթ, պատեան (նամակի) զարմ։ -ment էնվէլ'ըփմէնթ, s. փաթթելը, պատելը, պատատում։

Envenom էնվէն'ըմ, va. (վէրքին մէջ) թոյն դնել, թունաւորել; 2. դառնացնել, զայրացնել։ [ձելի։

Enviable էն'վիէպլ, a. նախանձ-

Envier էն'վիըր, s. նախանձոտ։

Envious էն'վիըս, a. [of, at, against] նախանձոտ, յաչաղկոտ։ -ly -'լի, ad. ոխով։

Environ էնվայ'րըն, va. շրջապատել, պարփակել; 2. չորս կողմն առնուլ, պաշարել։ -ment -մէնթ, s. պաշարում; պատելը; 2. միջավայր։

Environs էնվայ'րընզ, էն'վիրընզ, pl. արուարձանք, շրջակայք։

Envoy էն'վօյ, s. հրեշտակ, պատգամաւոր, պատուիրակ [F.]։

Envy էն'վի, s. [of, to] նախանձ, մախանք; 2. նախանձելը։ =va. նախանձիլ, մախալ; 2. փափաքիլ, ցանկալ, ըղձալ։ [յին (շրջան)էօլ.

Eocene իօ'սին, a. արշալուսա-

Eolian, Eolic իօ'լիըն, իօլ'իք, a. եւոլեան; 2. հովի, հողմային; 3. եւոլերէն (լեզու)։ -harp. հողմահնչիւն տաւիղ, եւողաքնար։

Eon, Æon ի'օն, a. յաւիտենա-

*Fix ֆիքս'(թ), *va.* պնդել, հաստատել; 2. սեւեռել, անքթիթ նայիլ, աչքը տնկել; 3. հաստատագործել; 4. որոշել, սահմանել, կարգադրել։ =*vn.* պնդանալ, կարծրանալ; 2. դադարիլ, կենալ։ =*s.* դժուար կացութիւն, դրութիւն, դիրք։ -able, *a.* հաստատելի։ -ation ֆիքսէյ'շըն, *s.* ամրութիւն, հաստատութիւն; 2. անքթթութիւն; 3. անցնդականութ. թանձրութիւն։ -ative ֆիքս'էթիվ, *a.* հաստատող; 2. հաստատիչ հիւթ գունոց, մաղկատիչ, խածակ։

Fixed ֆիքս'թ, *a.* հաստատուն, սեւեռուն, անշարժ, պինդ; 3. որոշեալ, ժամադրեալ, սահմանուած; 4. վերջին (գին)։ -stars. հաստատուն աստեղք։ -ly ֆիք'սէտլի, *ad.* անթարթափ, հաստատ։ -ness ֆիք'սէտնէս, *s.* ամրութիւն; 2. անցնդելիութիւն։

Fixity ֆիքս'իթի, *s.* հաստատամտութիւն; 2. անցնդելիութիւն։

Fixture ֆիքս'չըր, *s.* անքակտանելի մասն; 2. անշարժականութ.; 3. անշարժ կահ, կարասիք։

Fizgig ֆիզ'կիկ, *s.* հրթիռ; 2. պըչրուհի; 3. եռաժանի (ձկնորսաց)։

Fizz, Fizzle ֆիզ, ֆիզլ, *vn.* սուլել; 2. վրիպիլ, սխալիլ։ =*s.* սուլում, ճարճատիւն; 2. վրիպում։

Flabby, Flaccid ֆլէպ'պի, ֆլէք'սիտ, *s.* կակուղ, թոյլ։ -biness, -'cidness, -cid'ity ֆլէպ'պինէս, ֆլէք'սիտնէս, -սիտ'իթի, *s.* -ութիւն։

Flabel'liform, *s.* հովհարաձեւ։

Fla'cker, *va.* ծփալ, ծածանիլ։

Flag ֆլէկ, *s.* նշան, դրօշ, դրօշակ; 2. սալ, սալաքար; 3. մօրահիրիկ, մօրաշուշան, դեղին շուշան։ =*vn.* ծածանիլ, ծփալ, կախուիլ; 2. թօշնիլ, ուժը կորիլ, թուլնալ։ =*va.* տկարացնել, թուլցնել; 2. սալարկել; 3. դրօշակով նշան տալ։ Corn-. թրաշուշան։ To deck with -s. դրօշազարդել։ To hoist a-. դրօշ վերցնել, պատուել ն-. To strike a-. ձանձնուիլ։ -man. դրօշակիր, դրօշակով նշան տուող։ -officer. նաւախումբի հրամատար։ -ship. հրամատարի նաւ։ -stone. սալաքար։ -staff. դրօշաձող։

Flagellate ֆլէճ'էլլէյթ, *va.* ձաղկել, խարազանել։ -tion -լէյ'շըն, *s.* ձաղկում, խարազանում։ -'lant -ճէլ'լէնթ, *s.* ինքնաձաղկեան (կրօնաւոր)։ -liform ֆլէճէլ'լիֆօրմ, *a.* խարազանաձեւ։ -geolet ֆլէճ'օլէթ, *s.* սրուկ նէյ։

Flag, -ged ֆլէկտ, *a.* սալարկուած։ -giness ֆլէկ'կինէս, *s.* կակղութիւն, թուլութիւն։ -ging ֆլէկ'կին, *s.* սալարկում; 2. սալայատակ; տկար, թոյլ։ -gy ֆլէկ'կի, *a.* թոյլ, տկար, կթոտ; 2. անհամ, անլի; 3. շուշանաստան, շուշանուտ

Flagitious ֆլէճի'շըս, *a.* ապիրատ, անզգամ, սարսափելի։

Flagon ֆլէկ'ըն, *s.* սրուակ։

Flagrance, -cy ֆլէյ'կրէնս, -սի, *s.* այրում; 2. անզգամութիւն։

Flagrant ֆլէյկ'րէնթ. *a.* վառած, հրային; 2. նոյն պահուն գործուած, ինքնայայտ (յանցանք)։

Flail ֆլէյ'լ. *s.* (ցորենահար) գաւազան, տոփան, թափան։

Flake ֆլէ'յք, *s.* ձիւնի հատիկ; 2. թեփահատ (ձկան); 3. կշիռքի աչք; 4. կեղեւանք, երուխ (քարի) նժար; 5. ցցունաւոր չահոքրամ; 6. մաղպար, լաստակ եաքու իufk-ղkuh։ =*va.* ծեփը, ներկը, թեփը թափուիլ։ -s of fire. կայծ։ -white. սպիտակադեղ իւսփիւկն։

Flaky ֆլէյք'ի, *ad.* թեփոտած, կեղեւ կեղեւ թափած։

Flam ֆլէ'մ, *s.* պատրանք, քար-

բանիչք։ –'beau ֆլէմ'պօ, s. ջահ, կերոն

**Flame** ֆլէյ'մ, s. բոց, կայծ, հուր; 2. եռանդ, կիրք, սաստկութիւն; 3. տռփանք, սէր։ =vn. վառիլ, բորբոքիլ, արծարծիլ, փայլիլ։ -colored. հրագոյն։ -less, a. անբոց։

**Flamen** ֆլէյ'մըն, s. բոցաքուրմ Հ.

**Flaming, Flamy** ֆլէյ'մին, ֆլէյ'մի, a. բոցավառ; 2. եռանդուն։

**Flamingo** ֆլէմին'կօ, s. փիւնիկաթեւ, հրաթռչուն, բոցահաւ։

**Flammiv'omous**, a. հրացայտ։

**Flange** ֆլէնճ', s. եզր, շուրթ, ծնօտ (անուոյ)։ =va. երկաթ շրջանակով պատել (անիւը)։

**Flank** ֆլէնք', s. կուշտ, կող, ազդր, գիստ, կողմ։ =va. կողէն զարնել; 2. քովէն նայիլ, պաշտպանել։ -er ֆլէն'քըր, ad. քովէն մարտկոց շինել։ | ճակատ։

**Flannel** ֆլէն'էլ, s. ասուեակ

**Flap** ֆլէփ', s. քղանց, տառն; 2. թեւ, ծայր; 3. բաղխիւն; 4. ձիու շրթնախտ։ =va. զարնել, բաղխել (թեւերը)։ =vn. զարնուիլ, ծփծփիլ։ -dragon. խաղ մը (այրուած խաղացողները այրող օղիին մէջէն չամիչ կխլեն կուտեն)։ -eared. կախականջ, երկանականջ։ -table. ծալածոյ սեղան։ -doodle. անպատեհութիւն։ -jack. շօթ, ձուազեղ ձլորգսա։

**Flare** ֆլէյ'ըր, vn. փողփողել, փայլիլ, շլացնել։ =s. բոցավառ լոյս; 2. կատաղուձուկ։ To–up. զայրանալ, բորբոքիլ։ –up articles. ուշագրաւ յօդուածք լրագրաց։

**Flash** ֆլէշ'(շ), s. շողիւն, փայլակ; 2. վաղանցիկ լոյս; 3. քթիթ ական; 4. բոց, արագ նայուածք։ =a. սորբին, գռեհիկ; 2. վարպետ։ =vn. փայլատակել, շուտ մը անցնիլ; 2. խոյանալ։ =va. յանկարծ լուսաւորել։ A–of lightening. փայլակ։ –s of wit. սրաբանութիւնք։ For a–. յանկարծ, ի քթթել ական -language. արհեստերէն, գողերու լեզու։ -man. գող, մարդասպան։ -house. գողի տուն։ -song. գռեհիկ երգ։ He is but a–. իր միտքը բան չկայ։

**Flashy** ֆլէշ'ի, a. փցուն, գռեհիկ, սնոտի, անհեթեթ; վաղանցիկ։

**Flask** ֆլասք', s. սրուակ, շիշ; 2. թորանոց։ –board. ծուլիչի տախտակ։ A powder–. վառօթաշիշ։

**Flat** ֆլէթ', a. հարթ, տափարակ, տափակ; 2. գռեհիկ, անճաշակ; 3. նկուն; 4 անփայլ; 5. կիսավար(ձայն)։ =s. դիւր, տափարակ; 2. դաշտավայր; 3. տափակ կողմ, ծանծաղուտ; 4. ծանծաղամիտ մարդ; 5. կիսահարթ (♭) եր. =va. տափակցնել; 2. աղօտացնել; 3. ապուշ ընել, սառնացնել, ցածցընել։ -arch. (դրան) բարաւոր ⌒. -bottomed. հարթայատակ։ –cap. պրակով դրի թուղթ։ -footed. տափոտն; հաստատամիտ։ -fish. խարտոցաձուկ։ -nosed. տափակաքիթ, տափունչ։ -iron. արդուկ իւթիւ։ -tile. կղմինար մը։

**Flat.-ly** ֆլէթ'լի, ad. պարզօրէն, որոշ կերպով; հրխօնաբար; մեքենաբար, անսիրտ։ –ness, s. մակարդակութիւն, հարթութիւն; 2. հաւասարութիւն; 3. անհամութ., անճաշակութիւն; 4. ցածութիւն։ –ten ֆլէ'թըն, va. տափակցնել, հարթել; 2. ճնշել; 3. ցածցնել։ =vn. հարթուիլ, տափակնալ; 2. տխրիլ։ –tish ֆլէթ'թիշ, a. հարթաձեւ; տափատափակ; աղօտ կերպով։

**Flatter** ֆլէթ'ըր, va. շողոքորթել, փաղաքշել, շոյել, շողոմել։ To–one's self. մեծամտիլ, ինքզինքը խաբել։ –er ֆլէթ'ըրըր, a. շողոքորթ։ –ing, a. փաղաքուշ. քծնի

=s. շողոմութիւն, շողոքորթութ.։ -tery ֆլէթ՛ըրի, s. շողոմութիւն, շողոքորթութիւն։

**Flatulence,-cy;-tus** ֆլէ՛թիուլէնս, ֆլէյ՛թըս, s. փուք, փքոտութիւն եկը։ -lent ֆլէթ՛իուլէնթ, a. փքոտ, փուք պատճառող; 2. դատարկ, ուռուցիկ, գոռոզ։

**Flatways, -wise** ֆլէ՛թուէյզ, ad. տափակութեամբ, հարթաձեւ։

**Flaunt** ֆլօնթ՛, va. սիգալ։ -utist ֆլօ՛թիսթ, s. սրնգահար։

**Flavor** ֆլէյ՛վըր, s. համ, ճաշակ։ =va. համ տալ։ -ous ֆլէյ՛վըրըս, a. համեղ, անուշահոտ։

**Flaw** ֆլօ՛. s. ճեղք, ճաթած; 2. փոթորիկ, մրրիկ; 3. կռիւ, աղմուկ; 4. թերութիւն, պակասութ.; 5. փորոր (գոհարաց մէջ) sամչա ։ =va. կոտրել։ -less, a. անբիծ, անտխեղծ

**Flawy** ֆլօ՛ի, a. ճաթքոտած, արատաւոր։

**Flax** ֆլէքս՛, s. վուշ, քթան։

**Flaxen, Flaxy** ֆլէքս՛ն, ֆլէքս՛ի, a. վշեայ, քթանէ; 2. խարտեաշ։

**Flay** ֆլէյ՛, va. քերթել, մորթել։

**Flea** ֆլի՛, s. լու։ -bite. լուխած։ -bane, -wort. լուխոտ։ -bitten. լուէ խածուած; սպրին, ցած; դեղնագոյն (ձի)։ A-in the ear. գլխուցաւ, հոգ, հնհնուք։

**Fleak** ֆլի՛ք. հիւսք, ծիւ, գերձան

**Fleam** ֆլի՛մ, s. պայտառի նշտրակ։ -teeth. սղոցի ակռայք։

**Fleck** ֆլէ՛ք, s. բիծ, պիսակ։

**Fledge** ֆլէճ՛, va. փետրազարդել, պատրաստել։ -ling ֆլէճ՛լին, s. անփետուր թռչնիկ։

**Flee** ֆլի՛. vn. (Fled.) փախչիլ։

**Fleece** ֆլիյս՛, s. բուրդ; 2. խուզածք։ =va. խուզել; 2. կողոպտել; 3. բրդով պատել։ Fleecy ֆլիյ՛սի, a. ասրապատ, բրդային։

**Fleer** ֆլիյր՛, va. երեսը ծամծկել, ծաղրել։ =s. ծաղր։ -er ֆլիյ՛րըր, s. ծաղրիչ։ -ingly, ad.

**Fleet** ֆլիյթ՛, s. նաւատորմիղ, նաւախումբ։ =a. սրընթաց, արագոտն, թեթեւ։ =vn. սրանալ, սահիլ, անցնիլ։ =va. սահեցնել։ -foot. արագոտն, վազուկ։ -ly, ad. արագութեամբ։ -*ing ֆլիյթ՛ին, a. վաղանցիկ, անցաւոր։ -ness, s. արագութիւն։

**Flemish** ֆլէ՛միշ, a. հոլանտական։ -account. անբաւական, խառըն հաշիւ (նաւաստեաց լեզուաւ)։

**Flense** ֆլէնս՛, (պալենեան) կտրատել

**Flesh** ֆլէշ՛(շ), s. մարմին, միս; pkճ, եր; 2. շնչաւոր, մարդ, մարդկութիւն; 3. հեշտանք, ցանկութիւն; 4. սերունդ, ցեղ; 5. միս (պտղոյ)։ =va. շունին միս տալ, գիշախանձ ընել; 2. թուրը փորձել; 3. վարժուիլ; 4. կշտանալ։ -brush. շփամրձին, շփոց։ -hook. մսահան գ. -day. ուտիք օր։ -meat. մնեղէն կերակուր։ -tint. մարմինի գոյն նկ. -wound. երեսունկ վէրք։

**Flesh,-iness** ֆլէշ՛ինէս, s. մարմնեղութիւն, գիրութիւն։ -ing, s. մարմինի գոյն հանդերձ, թռւսպ բոտ. -less, a. նիհար։ -ly, a. մարմինի; մարմնական; մարմնաւոր; կենդանական; մարդկային; ցանկասէր, հեշտական։

**Fleshy** ֆլէշ՛ի. a. գէր, գիրուկ, մեծափոր; լեցուն, մսուտ (պտուղ)։

**Fleur-de-lis** ֆլըրտըլի՛, s. շուշան; հիրիկ; արքայականնշանԳ.-Հ.-Ֆ.

**Flew** ֆլի՛ու, See Fly.

**Flex** ֆլէքս՛, va. ծռել, թեքել։ -ibility, -ibleness, s. կակղութիւն, դիւրաթեքութիւն։

**Flexible, Flexile** ֆլէքս՛իպըլ, ֆլէ՛քսայլ, a. ճկուն, ճապուկ; 2. դիւրաբեկ, կակուղ; 3. դիւրադարձ

**Flexion, -xure** -՛շըն, ֆլէք՛շըր,

s. ծռում, ծեքում, ճկում ; կրկնուած

**Flexor** ֆլէք'սըր, s. կորացուցիչ ջիղերը, կորամկունք մրդ.

**Flicker** ֆլիք'ըր, va. պլպլալ ; 2. թեւաշարել ; =s. ոսկեգոյն փայտփոր

**Flier** ֆլայ'ըր, a. թռչող, փախըստական ; 2. ճշգակ բիւրվանի ձի.

**Flight** ֆլայ'թ, s. թռչիլը, թըռիչ, չու, երամ, ճախրանք (թռչնոց) ; 2. սլացում, թափ, խոյանք ; 3. սաւառնում, փախուստ ; 4. սանդուխ։ A–of steps. վերնադաւթակ։ The–of artillery. շաւիղ ռումբերու։ To take–. թռիլ, փախիլ ։ To put to–. փախցնել։ –time. թռչնոց գաղթելու ժամանակ, չու ։ –ily ֆլայ'թիլի, ad. թեթեւութեամբ ; անխորհրդաբար ։ –ty ֆլայթ'ի, a. սրընթաց, արագ, կայտառ ; թեթեւամիտ, թեթեւսոլիկ ; ցնդական, ցնդելի։ –iness. s. –ութիւն։

**Flimsy** ֆլիմ'զի, a. թեթեւ, տկար

**Flinch** ֆլինչ', vn. վհատիլ, ընկրկիլ ։ [կտորք, ծուէնք, փշուրք։

**Flinders** ֆլին'տըրզ, s. հատա-

**Fling** ֆլինկ', va. արձակել, նետել, ձգել ։ =vn. նետուիլ ։ =s. նետուածք, ձիգ, արձակում ; 2. նախատինք ; 3. պար սկովտիական։ To have one's–. վայելել ; յաղենալ ։

**Flint** ֆլինթ', s. գայլախազ, աղուէսաքար ; քար։ -glass. բիւրեղապակի, վանապակի։ -lock. կայծոտ հրացան չախմախլը։ -stone. կայծքար չախմախ քարը։ –y ֆլինթ'ի, a. գայլախազուտ ; 2. գայլախազային ; 3. անգութ, քարսիրտ։

**Flip** ֆլիփ, s. գարեջրօղի։

**Flippant** ֆլիփ'ըընթ, a. լեզուանի, շատախօս, շուտխօսիկ։ –ness, –pan'cy, s. –ութիւն։

**Flip'per**, s. լողաթեւ (ձկան)։

**Flirt** ֆլըրթ', va. արձակել ; =vn. նետուիլ ; 2. սիրաբանարճ ակնարկներ նետել, քծնիլ, քծնաբանել, աչքունք ընել ; 3. քաշկռտել ։ =s. նետուածք, կատակ, ծաղր ; 2. պչրուհի։ –ation, s. նազանք, սիրաւէտ ակնարկք, քծինք, քծնաբանութիւն, աչքունք ; 2. արագ շարժմունք։

**Flit** ֆլիթ', vn. սրանալ, թռչտիլ ; 2. փոխադրուիլ ։ –ter ֆլիթ'ըր, s. պատառ, կտոր, ծուէն։ -mouse. չիղջ

**Flitch** ֆլիչ, s. թիկնավար չերտ (խոզի)։

**Float** ֆլօթ', va. տատանիլ, ծածանիլ ; 2. տարուբերիլ։ =va. ողողել ; 2. ջուրին վրայ կեցնել ; 3. միահարթել։ =s. լաստ, լաստափայտ ; 2. ծփանք, կոհակ ; 3. խարսխատակառ ; 4. կարթասուհնկ ; 5. ծեփիչ։ -board. ջաղացանիւի տախտակ ։ -stone. չեչաքար։ –age, s. ջուրին երեսը տատանող բան։

**Floating**. a. երերուն ։ -bridge. շարժական կամուրջ ։ -debt. երերուն պարտք ։ -security. անհաստատ երաշխաւորութիւն։

**Flocculence** ֆլաք'եուլէնս, s. ծիւծիւ ըլլալը, ծուաւորութիւն։ –lent ֆլաք'եուլէնթ, a. ծուաւոր։

**Flock** ֆլաք', s. երամ, խումբ, հօտ, ամբոխ ; 2. բրդի պերուս բուրդ ; 3. խուզած, ծիւ ; 4. գանգուր։ =vn. ժողվուիլ, խռնիլ ։ -bed, -mattress. բրդ ալիցանկողին։ -surface թաւշեպատ։ -paper. կպչուն թուղթ

**Floe** ֆլօ', s. սառնալեռ։

**Flog** ֆլագ', խարազանել, մտրակել

**Flood** ֆլըտ', s. հեղեղ, ջրհեղեղ ; 2. գետ, ծով ; 3. հոսում, մակընթացութիւն ; 4. յորդութիւն ; 5. դաշտան ։ =va. հեղեղել, ողողել ։ -gate. սահանադուռք։ -mark. ջրակացութեան նշան, չափ։ -tide. մակընթացութեան ժամանակ։ –ing, s. առատահոսութիւն (դաշտանի)։

**Floor** ֆլօր՛, *s.* տախտակամած; 2. դատիկոն; 3. նաւակող; 4. ատենասրահ; 5. խօսելու կարգ՝ իրաւունք։ =*va.* յատակել; 2. լռեցընել։ –cloth. մոմշոր մուշամբա։ To get the–. (ժողովոյ մը մէջ) վիճաբանութեան մասնակցիլ։ To have the–. խօսելու կարգը ունենալ։ –ing, *s.* յատակ, տակ; 2. տախտակամած; –մածում։ [զարնել։

**Flop** ֆլաբ՛ *va.* թեւերը իրար

**Flora** ֆլօր՛է, *s.* ծաղկանոյշ. փըլօրա դէօ; 2. երկրի մը բոյսերը, ծաղկացուցակ։ [փլորականն։

**Floral** ֆլօ՛րըլ, *a.* ծաղկային;

**F ora'mour**, *s.* անթառամ բո.

**Florescence** ֆլօրէս՛ընս, *s.* փըթթելու ժամանակ, ծաղկափթիթք։

**Floret** ֆլա՛րէթ, *s.* ծաղկիկ։

**Floriculture** ֆլօ՛րիքըլչըր. -լչուր, *s.* ծաղկաբուծութիւն։

**Florid** ֆլա՛րիտ, *a.* ծաղկաւէտ; 2. պայծառագեղ (գոյն); 3. պըճնազարդ (ոճ)։ [ֆիօրին։

**Florin** ֆլա՛րին, *s.* ծաղկադրամ;

**Flor'ist**, *a.* ծաղկասէր, –դարմանն

**Floscule** ֆլա՛սքիուլ, *s.* ծաղկիկ, բաղադրեալ ծաղկի մէկ մասը։

**Floss** ֆլաս՛, *s.* աղուամազ, մետաքսանման երկայն թելեր; 2. մետաքսի պէրուս բուրաւ։ –silk. խակ մետաքս։ [ուած փայտ։

**Flotage** ֆլա՛թէյճ, *s.* գետը ծըգ-

**Flotation** -՛շըն, *s.* ծփում։

**Flotilla** ֆլաթիլ՛լէ, *s.* նաւատորմիկ, նաւախումբ։

**Flotsam,-son** ֆլաց՛էմ, -ց՛ըն, *s.* նաւաբեկութեան մնացորդք։

**Flounce** ֆլա՛ունս, *vi.* տատանիլ, յուզուիլ, խլրտիլ։ =*s.* թօթափում, ցնցում; 2. փոթփոթիկ, խորշխորշունք (շրջազգ.) եզրափոթք

**Flounder** ֆլա՛ունտըր, *s.* տափաբանձուկ։ =*vi.* [out of] տարուբերիլ, շարժիլ, տապլտկիլ; գլորիլ, թաւալիլ

**Flour** ֆլա՛ուր, *s.* ալիւր; 2. փոշի։ =*va.* ալիւրոտել; ալիւրել; 2. աղալ։ –y ֆլաու՛րի, *a.* ալերանման։

**Flourish** ֆլը՛րիշ(ը), *vn.* ծաղկիլ, փթթիլ, բարգաւաճիլ; 2. պճնազարդել (ոճ); 3. պերճանալ, ճոխանալ։ =*va.* ճոխաբանել, ընդլայնել, ծաղկեցնել, շողացնել; 2. նկարակերտել, պատուածել։ =*s.* զարդարանք, փայլիւն; 2. ընդլայնում, պերճաբանութիւն; 3. թրթռուն գեղգեղանք, թրթռանք; 4. պատածք, գրերու հիւսեալ սահն։ –ing, *a.* բարգաւաճ, ծաղկեալ։

**Flout** ֆլաութ՛, *va.* ծաղրել։

**Flow** ֆլօ՛, *vn.* հոսիլ, վազել; 2. բղխիլ, ծագիլ; 3. յորդել, լեցուիլ; 4. սահիլ; 5. ծածանիլ, ծփալ։ =*va.* ողողել, ծածկել։ =*s.* հոսում, ընթացք; 2. մակընթացութիւն; 3. յորդութիւն, առատութիւն, զեղում։ To–out. կրուկն աւրուիլ; ծովը քաշուիլ։ –age ֆլօ՛էյճ, *s.* հոսում, ծորում։

**Flower** ֆլաու՛ըր, *s.* ծաղիկ; 2. ծաղիկ հասակ; 3. դաշտան; 4. ընտրեալ՝ ազնիւ մաս։ =*vn.* ծաղկիլ, փթթիլ։ *va.* ծաղկազարդել։ -bed, -garden. ծաղկոց, ածու։ -bud. կոկոն։ -de luce. թրաշուշան; Գաղիա։ -dust. բեղնափոշի (ծղկ.)։ -fence. դրախտածաղիկ։ -stalk, ցօղուն։

**Floweret** ֆլա՛ուրէթ, *s.* ծաղկիկ։

**Flowery** ֆլաու՛րի, *a.* ծաղկաւէտ; զարդարուն, գեղեցիկ (ոճ)։

**Flown** ֆլօն՛ *pp. of* Fly.

**Fluate** ֆլու՛էյթ, *s.* փլորատ փ.

***Fluctuate** ֆլըք՛թիուէյթ, *vn.* ծածանիլ, ծփալ, վարանիլ; 2. փոփոխել։ –tion ֆլըքթիուէյ՛շըն, *s.* ծըփանք, ելեւէջք; 2. վարանում։ –ting, –tuant -թիուէյթին, -՛ընթ, *a.* ծփուն։

**Flue** ֆլու՛, s. ծխնելոյզ, մուխառուկ; 2. աղուամազ, թեթեւ փոշի։ —faker. ծխան մաքրող։ -hole. Հնոցի բերան։

**Fluellen** ֆլիւ-է՛լլըն, s. բերբե- [նիկէ բո.

**Fluency** ֆլու՛ընսի, s. դիւրասահութիւն (ոճոյ) սահունութիւն։

**Fluent** ֆլու՛ընթ, a. դիւրասահ, լոյծ, սահուն, վազուն; 2. ճոխաբան; 3. արագ, հարթ։ =s. ամբողջական (քանակութիւն)։

**Fluff** ֆլըֆ, s. աղուամազ, փոշի։

**Flugelman** ֆլիւ՛կըլմըն, s. շարքի՝ տողանի գլուխ, պարագլուխ զին.

**Fluid** ֆլու՛իտ, s. հեղանիւթ, հեղուկ։ =a. լոյծ, հոսանուտ, ծորող։ -ness, -ity, s. ջրիութիւն։

**Fluke** ֆլիւք, s. խարսխաճանկ; 2. (գնդախաղի մէջ) հարուած, նշան; 3. անակնկալ շահ; 4. կիտաձետ։ —worm. գառնորդ։

**Flume** ֆլիւ՛մ, s. առու։

**Flummery** ֆլըմ՛ըրի, s. խաւիծ, խիւս; 2. փաղաքշանք, քծինք։

**Flung** ֆլընկ՛, *pp. of* Fling.

**Flunk** ֆլընք՛, vn. առ աչքի ետ քաշուիլ. քննութեան մէջ չյաջողիլ։ =s. անյաջողութիւն։ -y ֆլընք՛ի, s. ծառայ, լաճ; 2. ապուշ, անմիտ, դիւրախաբ։ -yism -նքի՛իզմ, s. ստրկութիւն։

**Fluor** ֆլիւ՛ըր, -spar. ծաղկեքար, ծորին հնք. —albus. գաշտան։

**Flur-bird** ֆլըր-պըրտ, s. հաւկոչ

**Flurry** ֆլըր՛ի, s. յուզմունք; 2. յանկարծահողմ; 3. տարափիկ։ = va. յուզել, խռովել; 2. վախցնել։

**Flush** ֆլըշ՛, va. շառագնել, ամըչցնել; 2. զուարթացնել; 3. խրտչեցնել, վերցնել; 4. կարմիր ներկել, լուալ։ =vn. պոռթկալ; 2. մէկէն շառագնիլ; 3. յանկարծ փայլիլ։ =s. շիկնում, շառագնութիւն; 2. յուզմունք; թարմութ.; 3. խրտչած թռչուններու երամ; 4. համագոյն թղթեր ճն.=a. թարմ, պայծառ, եռանդուն; 2. շռայլ; 3. մակաւասար, հարթ։ -er ֆլըշ՛ըր, s. մկնակալ բազէ fուպճի։

**Fluster** ֆլըս՛թըր, s. յուզմունք, գլխու տաքութիւն։ =vn. թուշերը կարմրիլ, ſկյſ ըլլալ, զուարթանալ; 2. խառնակել, շփոթցնել։

**Flute** ֆլու՛թ, s. սրինգ; 2. մատնէք, խոռոչ (սեան); 3. խողովակ, փողրակ; 4. փողաձեւ փոթ։ =vn. խողովակել, փողաձեւել; 2. փոթ փոթ ընել։ =vn. սրինգ ածել։ -ted ֆլիւ-թ՛էտ, a. նուրբ, բարակ, փողաձեւ; սրնգանման։ -ting ֆլիւ՛թինկ, s. ակօսաձեւ փորուածք. մատնէք։ -tist -՛թիսթ, s. սրնգահար։

**Flutter** ֆլըթ՛ըր, s. յուզում, երերում, տատանում, թրթռում։ va. յուզել։ =vn. յուզուիլ, խռովիլ։ —wheel. աղօրիքի՝ առուակի անիւ soյաայ։

**Fluvial, -uviatic, -u'viatile** ֆլու՛վիըլ, -էթ՛իք, -թիլ, a. գետային, գետի; գետասուն, -բոյս; -գնաց։

**Flux** ֆլըքս՛, s. հոսում, ընթացք, վազելը, անցք; 2. ծորում, ծորանք; 3. թանչք, փորհարութիւն; 4. մակընթացութիւն; 5. հալիչ դ.; 6. լուծումն։ —and reflux. մակընթացութիւն և տեղատուութիւն։ =va. լուծել, հալել։ =a. անհաստատ, փոփոխամիտ։ -ation, s. լուծում։

**Fluxion** ֆլըք՛շըն, s. հոսում, ծորում; 2. հոսած, ծորած (արիւն են.); 3. անհունապէս փոքր քանակութիւն՝ թիւ; 4. *pl.* տարբերական համարողութիւն nr եւ Differential calculus. -al, -ary, a. փոփոխելի, փոփոխական։

**Fly** ֆլայ՛, (Flew, Flown) *vn.* թռչիլ, սաւառնիլ, սրանալ; 2. ցատկել, նետուիլ; 3. սահիլ անցնիլ,

փախչիլ ; 4. խորտակել ։ =*va.* խուսել, քաշուիլ ; 2. Թռցնել ։ =*s.* ճանճ; 2. ճշգակ ժ.․; 3. ճօճանակ, օլակ; 4. մամուլի Թղթակալ գդ.; 5. ճանճաձեւ կարԹ; 6. դրօշ։ To—out. բարկուԹեան բռթիլ ; դըրգըռիլ։ To let—. արձակել, նետել։ -bane. ճանճասպան։ -blow. ճանճի ծիրտ ։ -boat. նաւակ մը։ -catcher. ճանճորս։ —fish, *vn.* ճանճով ձուկ կարԹել։ -leaf. գրքին սկիզբը՝ վերջը պարապ ձգուած երեսներ ։ -paper. ճանճասպան ԹուղԹ ։ -rail. սեղանակալ ։ -trap. ճանճկալ ։ -wheel. ճշգակ։

**Flyer,** *See* Flier, *s.* Թռչող ։

**Flying** ֆլայ'ին․ *a.* —artillery. ձիաքարշ հրետանի գնդ. —bridge. շարժական կամուրջ, շարժակամուրջ ։ —buttress. կամարակալ ։ —fish. Թռաձուկ։ —jib. ցռկառագաստ (նաւու առաջակողման)։ —squirrel. Թռչող սկիւռ։

**Foal** ֆօ'լ, *s.* մտրուկ ։ =*va.* (ձին) ծնանիլ ։

**Foam** ֆօ'մ, *s.* փրփուր ։ =*vn.* [փրփրիլ։

**Foamy** ֆօմ'ի, *a.* փրփրալից։

**Fob** ֆապ', *s.* գրպանակ ։ =*va.* [off] խաբել, խորել, վերցնել ։

**Focus** ֆօ'քըս, *pl.* -es, -foci ֆօ'քըսէզ, ֆօ'սայ, *s.* վառարան (լուսոյ); 2. վառարան, կեդրոն, կէտ ե.—cal ֆօ'քըլ, *a.* վառարանային։

**Fodder** ֆատ'ըր, *s.* ճարակ, ալիք; կեր։ =*va.* արծել, սնուցանել

**Foe** ֆօ', *s.* Թշնամի, հակառակորդ։ -man. ոսոխ, պատերազմիկ։

**Fœtus** ֆի'թըս, *s.* սաղմ ։

**Fog** ֆագ, *s.* մշուշ, մէգ; մառախուղ ; ամպ; աշնանային՝ վերաբոյս խոտ; չոր խոտ։ -bank, -ring. ծովամէգ, բոլորձիգ; հեռամէգ։ -bell, horn, -whistle. մշուշի պահուն չալուած զանգակ են. —age ֆագ'էճ, *s.* ձմեռնախոտ։ -gy ֆագ'ի, *a.* միգապատ; ամպոտ; 2. աղօտ, անորոշ։-gily ֆագ'իլի, *ad.* —կերպով։ -giness, *s.* -ուԹիւն, մառախուղ։

**Fogy,-gie,-gey** ֆօ'կի, *s.* պահպանողական, հին գլուխ։ -ism, *s.*

**Foh** ֆօ', *int.* ոհ, բուհ։

**Foible** ֆայ'պլ, *s.* տկարուԹիւն, տկար կողմ; 2. պակասուԹիւն, ԹերուԹիւն։

**Foil** ֆայ'լ, *va.* ընկճել, նկուն ընել; 2. եղծանել, խափանել։ =*s.* պարտուԹիւն, վրիպում ; 2. խաղասուր, մարզասուր; 3. մետաղի ԹերԹ; 4. ոնդկանագ (հայելիի); 4. սուտ ոսկեԹիԹեղ; 5. տերեւազարդ, տերեւաձեւ զարդ ճ.; 7. գեղացուցակ։

**Foist** ֆօյսթ, *va.* սահեցնել ; 2. փախցնել ; 3. խարդախել ։

**Fold** ֆօլտ', *s.* փարախ, գաւիթ, հօտ; 2. ծալք, կրկնուած; 3. անգամ։ =*va.* տաւաղել, փարախել, փակել ; 2. պատել ; 3. ծալել։ =*vn.* ծալուիլ, կրկնուիլ, փաԹԹուիլ ։ Three—, four—. երրեակ, քառեակ։ To—the arms. Թեւերը խաչաձեւ ծալել։ To—a letter. նամակ ծալել։ -er ֆօլտ'ըր, *s.* ԹղԹածալ գ.

**Folding,** *a.* ծալարուն։ -screen. հողմարգել։-doors ծալարուն փեղկք

**Foliaceous** ֆօլիէյ'շըս, *a.* տերեւային։

**Foliage** ֆօ'լիէյճ, *s.* սաղարԹունք տերեւք; 2. տերեւազարդ ճ.—tion, *s.* ԹերԹաւորում ; 2. տերեւաւորուԹիւն; 3. տերեւազարդում ։

**Foliate** ֆօ'լիէյթ, *va.* ԹիԹեղել, ԹերԹաւորել։ =*a.* տերեւազարդ։

**Folio** ֆօ'լիօ, *s.* կիսաԹերԹ՝ մեծածալ գիրք, էջ ։

**Folk** ֆօք', *s.* ամբոխ, ժողովուրդ; 2. մարդիկ։ -lore. զրոյցք, աւանդավէպք, ճետեարք։ -mote. ժողով ։

**Foll'icle,** *s.* պատիճ , պարու-

տակ։ -licular, *a.* պարկային ։

*Follow ֆոլ՛օ, *an.* [-ed by] հետեւիլ, հետամտիլ, ուղեկցիլ, ետեւէն երթալ; 2. շարունակել, պարապիլ, յաճախել; 3. յաջորդել, գալ; 4. յարմարիլ, նմանիլ; 5. անսալ, յարիլ։ To-on, -up. զհետ պնդիլ, հետեւիլ ։ As follows. որք են։ -er ֆոլ՛օըր, *s.* հետեւող, ուղեկից; 2. նմանող; 3. աշակերտ, ծառայ; 4. կուսակից; միաբան; 5. մերձի խումբ մէ+. -ing ֆոլօ՛ւին, *a.* հետեւեալ, հետագայ, գալիք։

Folly ֆոլ՛ի, *s.* յիմարութիւն, խենդութիւն, անխելքութ. էշութ.

Foment ֆօ՛մէնդ, *va.* վրան տաքդեղ՝ թաց դնել; 2. գրգռել; 3. սատակացնել; 4. քաջալերել -ation ֆօմէնդէյ՛շըն, *s.* տածում, թաց; 2. գրգռում; արծարծում։

Fond ֆանդ՛, *n.* [of] մոլի; 2. հետամուտ, սիրող, կաթոգին, եռանդուն, սիրաբորբոք։ -ly, *ad.* կաթոգին, մոլեկան։ -ness, *s.* [for] խանդաղատանք, ճաշակ, սէր։

Fondle ֆանդ՛ըլ, *va.* գգուել, փայփայել -ling, *s.* սիրական։-ler, *s.* սիրաբանող, թեթեւաբարոյ։

Font ֆանդ՛, *s.* մկրտարան, աւազան; 2. ձուլատառք։

Fontal ֆանդ՛ըլ, *a.* աղբիւրի։

Fontanel, -ticulus ֆան՛դընէլ, ֆանդիք՛իուլըս, *s.* խարան եազը; 2. գանկի ոսկերաց կցուածք, գագաթնակ ։

Food ֆուդ՛, *s.* կերակուր, որնունդ, ուտեստ, ճարակ, կեր, կուտ։ -ful, *a.* սննդարար։

Fool ֆու՛ըլ, *s.* փախուկ, խենդ, անմիտ, խեւ, ցնդած, յիմար; 2. ամբարիշտ Սէ.; 3. խեղկատակ, ծաղրածու։ =*vn.* յիմարութ. ընել; աղուաշել, ծաղրել ։ =*va.* խենդեցնել, խեւցնել; խաբել։ -'s errand. յիմարական ձեռնարկ։ To-away. յիմարաբար մսխել ։ -hardy. յանդուգն, ժպիրհ; անզգոյշ։-hardiness. յանդգնութ. -stones. ձուածաղիկ սալէպ բս. Foolscap ֆուլզ՛քէբ, *s.* միաթերթ՝ խոշոր գրի թուղթ ($13^1/_2 \times 16^1/_2$) ։

Foolery ֆու՛լըրի, *s.* տխմարութիւն, անբանութիւն, էշութիւն; 2. ծաղրածութիւն։

*Foolish ֆու՛լիշ, *a.* տխմար, աւանակ; 2. ափեղցփեղ; 3. ծաղրական; 4. անզգամ, մեղաւոր Սէ.-ly, *ad.* յիմարաբար; տկար կերպով։ -ness, *s.* յիմարութ. անխելքութ.

Foot ֆութ, *s.* (*pl.* Feet ֆիյդ) ոտք, թաթ, ճիւ; 2. տակի մաս, ստորոտ; 3. արմ, պատուանդան, խարիսխ; 4. ոտնաչափ (12 մատ.); 5. հետեւակ զօրք։ =*vn.* կոքաւել, պարել; 2. քալել ։ =*va.* կից զարնել, աքացել, չափով քալել; 2. (թիւ) գումարել; 3. ոտք շինել ։ By-, on-. ոտքով, հետի։ Bare-. բոպիկ։ To-a bill. (մուրհակը) վըճարել ։ To be on-. շարժման մէջ ըլլալ։ To set on-. սկսիլ; հնարել։ -ball. ոտնագունդ, խաղագնդակ; գնդախաղ։ -boy. ծառայ, սպասիկ։ -bridge. անցարան, հետեւակաց համար նեղ կամուրջ ։ -fall. ոտնաձայն, դիպուած; գայթում։ -guards. հետեւակաց պահակ գնդ. -hold. ոտից կռուան։ -light. կանթեղաշար բեմ. -man. հետեւակազօր; ծառայ։ -mark, print, step. ոտից հետք՝ նըշան, ոտնահետ։ -note. լուսանցքի ծանօթութիւն։ -pace. սովորական քալուածք, քայլափոխ, ոտք; գաւթիկ սահմանիրգ; բեմառաջք Եէ. -pad. հուղկահար, գող։ -passenger. հետեւակ, հետի։ -path, -pavement. նրբուղի, արահետ, մայթ։ -soldier. հետեւակազօր բիwsk ։ -sore. ոտքը

ցաւոտ, յոգնած, յլկած։ -stalk. (տերեւի) կոթունն։ -step. հետք, շաւիղ։ -stool. ոտնաթոռ, պատուանդան։ -stove, -muff, -bag. ջերմունակ (ոտքի)։

Footing ֆուտ'ինկ, *s.* ոտնատեղի, պատուանդան, կռուան. հիմ; 2. հաստատ վարկ, պատիւ, դիրք; 3. ընթացք; 4. գումարում, գումար; 5. քայլուածք, կոխքաւ, պար; 6. (կօշկի) նորոգում; 7. խարխուխ, ոտք։

Fop ֆափ, *s.* խենդ, անմիտ; ցուցամոլ, պճնասէր։ -ling ֆափ'լինկ, *s.* խենդուկ։ -pery ֆափ'ըրի, *s.* անմտութիւն, տխմարութիւն, թեթեւութիւն, պճնասիրութիւն, պճնամոլութիւն։ -pish ֆափ'իշ, *a.* պճնամոլ, ցուցամոլ, թեթեւ, թեթեւսօլիկ զեվզեկ։ -ly, *ad.* -ness, -ութիւն։

For ֆօր, ֆոր, *pr.* համար, վասն։ =*con.* վասն զի, որովհետեւ; թէեւ։ For as much as. քանզի, եւ որովհետեւ։ —ever. յաւիտեան, ցմիշտ, յաւէտ։ For, as for. գալով, իսկ, մասին։

Forage ֆը'-, ֆար'էճ(տ), *s.* պաշարածութիւն, խոտաքաղ; 2. բուսաճարակ, ալիք, կեր (կենդանեաց) =*an.* (բանակի) պաշար խոտ ժողվել, ճարակ փնտռել, խուզարկել։ -ger ֆար'էյճըր, *s.* խոտաքեր զօրական; 2. ասպատակ։

Foramen ֆօրէյ'մէն, *s.* (*pl.* -mina ֆօրէմ'ինէ,) ծակ, փորուած մրտ.

Foraminif'erous, *a.* ծակաբեր։

Forasmuch ֆըրէզմըչ', *con.* որովհետեւ, յորմէհետէ։

Foray ֆըրէյ', ֆարէյ', *s.* ասպատակ, —ութ., արշաւանք (զօրաց)։

Forbade -պէտ', *imp. of* Forbid.

Forbear ֆարպէյր', *an.* (Forbore -borne.) ինքզինք զսպել, խորշիլ; 2. զգուշանալ; 3. հրաժարիլ, մերժել։ -ance ֆարպէյր'էնս, *s.* ձեռնպահութ., հրաժարում; համբերութ.

Forbid ֆարպիտ', *va.* (Forbade, Forbidden.) արգիլել, խափանել; 2. զգուշացնել։ =*vn.* արգելք դնել։ -dance ֆըրպիտ'էնս, *s.* արգիլելը, արգելք։ -der ֆըրպիտ'ըր, *s.* արգելիչ, խափանարար։ -ding ֆըրպիտ'ինկ, *p. a.* անհաճոյ, զզուելի, զազիր։

*Force ֆօրս(տ), *s.* զօրութիւն, կարողութիւն, ոյժ; 2. բռնութիւն; 3. (ցամաքի՝ ծովու) զօրութիւն, զօրք; 4. վաւերականութիւն եւ. =*va.* բռնադատել, ստիպել; 2. բռնաբարել; 3. բռնի առնուլ, յափշտակել; 4. վարել, վանել։ In—, of—. վաւերական։ By main—. բռնի -meat. ծեծուած միս։ -pump. ճնշիչ՝ օդամուղ ջրհան։

Forceps ֆար'սէփս, *s.* ունելիք, կատտ վիր.; 2. ատամնաքաշ վիր.

Forcer ֆօր'սըր, *s.* ստիպող, ճնշող; 2. ջրհանի մխոց։

*Forcible ֆօրս'իպլ, *a.* ազդու, բուռն, հզօր; 2. բռնի։ -ly, *ad.* հզօրապէս, բռնութեամբ։

Ford ֆօրտ, *s.* գետի անցք, հուն. =*va.* հունէն անցնել։ -able, *a.* հունաւոր, անցուելիք, ծանծաղուտ։

Fore ֆօ'ըր, ֆօ'ր, *a.* առաջ, առաջամասն; 2. նախկին, նախընթաց։ =*ad.* դէպի առաջ։ =*s.* ճակատ, առաջ։ —and aft. նաւուն երկայնքին։ To the—. առաջը; 2. պատրաստ; 3. ողջ, յայտնի.

(Իբր ածական հազիւ կգործածուի. իսկ յաճախ ի բարդութիւնս վարի, որպէս է տեսանել։)

Fore–,

-advice', *va.* զգուշացնել։

-arm ֆօըր'արմ, *va.* առաջուընէ զինել։ =*s.* ֆօրարմ', արմուկէ մինչեւ դաստակ թեւի մաս, ծղի, բազուկ։

-bode, *va.* կանխագուշակել։
-boding, վտանգի նախազգացում։
-boder, *s.* բաղդագուշակ։
-cast, *va.* նախատեսել; ծրագրել, խորհիլ։ =*s.* նախատեսութ., կանխամտածութիւն։ [ւանդակն.
-castle, *s.* առաջքի բարձրա-
-cited -սայթ'էտ, *a.* նախայիշեալ։
-close, *va.* գոցել, արգիլել։
-closure, *s.* արտամերժում եւն.
-doom, *va.* նախասահմանել։
-end, *s.* առաջակողմ։
-father, *s.* նախահայր, պապ։
-fend, *va.* արգիլել, պահել։
-finger, *s.* ցուցամատ։
-foot, *s.* առջեւի ոտք; ոշնայ եւն.
-front, *s.* առաջոյ մաս։
-go ֆօրկօ', *va.* լքանել, թողուլ, հրաժարիլ; 2. նախընթաց ըլլալ։
-gone, *a.* սկիզբէն խորհուած։
-ground, *s.* առաջոյ մաս եւն.
-hand, *s.* ձիու լանջ; 2. կարեւորագոյն մաս; 3. խոհեմութիւն։
-handed, *a.* կանուխ; 2. նախաձեռն; 3. դիպուկ (առիթ)։
-head ֆօր'էտ, *s.* ճակատ; 2. վստահութիւն, համարձակութիւն։
Foreign ֆօր'ին, *a.* [to, from] օտար, դրսեցի; 2. արտաքին; 3. տարաբնակ, տարաշխարհիկ; 4. արտասահման։ -ness, *s.* օտարութիւն։ -office. արտաքին գործոց պաշտօնարան Անգ. -er ֆօր'ինըր, *s.* օտարական, օտարազգի; 2. պանդուխտ։
Fore-, [խապաշարել։
-judge, *va.* կանխադատել; նա-
-know ֆօրնօ' *va.* կանխաւ գիտնալ
-knower -նօ'ըր, *s.* կանխագէտ
-knowledge ֆօրնօ'լէճ, *s.* կանխագիտութիւն։
-land, *s.* հրուանդան; գլուխ։
-lay, *va.* (ճանբան) սպասել։
-lock ֆօրլօք', *s.* ճակատի մազ, վարս։ To take time or occasion by the —. առիթը չփախցնել, օգտուիլ
-man, *s.* (երդուեալոց) գլխաւոր; 2. վրակեցու, գործավար։
-mast, *s.* յառաջակայմ։
-mentioned, -named, *a.* վերյիշեալ, յիշեալ։ [նախապատիւ։
-most, *a.* գլխաւոր, առաջին,
-name, *s.* (մկրտութեան) անուն
-noon, *s.* նախ-միջօրէ, առտու։
Forensic, -al ֆօրէն'սիքըլ, *a.* ատենական, դատաստանական։
Fore-,
-ordain, *va.* նախակարգել, նախասահմանել։ [նութիւն։
-ordination, *s.* նախասահմա-
-part, *s.* առաջակողմ, առաջամաս, սկիզբ։ [խաշարք։
-rank, *s.* զօրքի ճակատ, նա-
-run, *vn.* յառաջել, կանխել։
-runner -րըն'ըր, *s.* յառաջընթաց; 2. (նախա)կարապետ; 3. նշան։
-sail, *s.* նախառագաստ եւն.
-see -սի', նախատեսել, գուշակել
-seer սիյր', *s.* բաղդագուշակ։
-shadow, նախագաղափարել։
-shorten, *va.* համառօտել, կարճել; 2. ամփոփել եւն. [տեսել։
-show, *va.* գուշակել, կանխա-
-sight, *s.* նախատեսութ. շրջահայեցութիւն, խոհեմութիւն։
-skin, *s.* թլփատ ղուղմ'ն։
Forest ֆօր'էսթ, *s.* անտառ, շահար; 2. արքունի երէոց։ =*va.* անտառացնել։ -er ֆօ'րէսթըր, *s.* անտառապահ; անտառաբնակ։ -ry ֆօ'րէսթրի, *s.* շահրատածութիւն, անտառամշակութիւն։
Fore-,
-stall -սթօլ', *va.* առաջուց ընել, կանխել; 2. խափանել, խցել, (ճանբան) գոցել; 3. համագրաւել եւն.
-staller -սթօ'լըր, *s.* (ապրանքը) կանխաւ գնող, համագրաւող։

-taste -թէյսթ՛, s. նախաճաշակ, ակնածութիւն, ֆըր՛թէյսթ, va. ճաշակն առնուլ; առաջնել, կանխել։
-tell, va. կանխաձայնել, նախաձայնել; 2. գուշակել։
-teller, s. մարգարէ, գուշակ։
-thought -՛թհօթ, s. նախատեսութիւն, կանխամտածում։
-token -թօ՛քն, va. գուշակել։ =s. գուշակութիւն, նշան։
-tooth, s. առջեւի՝ հերձ(ակռա)։
-top ֆօըր՛թօփ, s. ճակտի մազ; գագաթի ցցուկք՝ փունջ; կայմառաջի հայեկ պաշ չանափղիղը ն—.
-warn -ուօրն՛, va. զգուշացնել։
Forever ֆօրէվ՛ըր, ad. միշտ, յաւիտեան, յաւերժ, անդադար, անդադրում, անդուլ։
Forfeit ֆոր՛ֆիթ, a. կորուսած, դատապարտ, գործը գէշ։ =s. կորսուած մաս, կորուստ; 2. դրաւում, դրաւուածք, տուգանք; 3. պատուհաս, պատիժ; 4. (խաղի) գրաւ։ =va. (յանցանքով մը) կորսնցնել, իրաւազուրկ ըլլալ։ -able ֆորֆիթ՛էպլ, a. տուժելի; 2. գրաւելի։ -ure ֆոր՛ֆիչըր, s. իրաւազրկութիւն, կորուստ, տոյժ; 2. գրաւում։
Forgave, imp. of Forgive.
Forge ֆօրճ, s. երկաթի գործարան, դարբնոց; 2. (դարբինի) հնոց։ =va. (երկաթը) ծեծել, կռել, դարբնել; 2. ձեւել, հնարել; 3. կեղծել, խարդախել։ =vn. (երկաթը) ծեծուիլ, դարբնուիլ; 2. (նաւը) յառաջանալ։ -g'er ֆօրճ՛ըր, s. դարբնող, խարդախ։ -ry ֆօր՛ճըրի, s. շինելը, յօրինելը, կեղծելը; 2. խարդախութիւն, նմանագործութիւն; 3. կեղծ (թուղթ)։
Forget ֆըրկէթ՛, va. (-got, -gotten. ֆըրկոթ՛, ֆըրկոթ՛ն,) մոռնալ; 2. զանց ընել։ To—one's self, ինքզինքը մոռնալ, չափը անցնել։ —me-not. յիշէ՛ զիս; յիշածաղիկ, անմոռուկ մՀrâmիկիշ բ—.
Forget'ful, n. մոռացկոտ, անփոյթ, անհոգ։ -ness, s. անհոգութիւն, անփութութիւն, մոռացկոտութիւն։
Forgetter -կէթ՛ըր, s. մոռացկոտ
Forgiv'able, a. ներելի։
Forgive ֆըրկիվ՛, va. (-gave, -given ֆըրկիվ՛ն,) ներել, շնորհել, թողուլ։ -*ness, s. ներողութիւն, ներում, շնորհ, թողութիւն։ -v'er, s. ներող, շնորհող։ -ving ֆըրկիվ՛ինկ, pa. ներող, գթած, ողորմած։
Fork ֆօրք՛(թ), s. եռաժանի, երկժանի օր չարպը; 2. պատառաքաղ, մրաակալ; 3. գետի ճիւղ չարալ։=va. չարժել, փորել, քրքրել (հողը); 2. խարխալել, որնել (ցորենը); 3. խառնել (խոտ); 4. երկճղել, ճիւղաւորել չարայլամագ։ To—over, առատանալ, կանխիկ՝ ուելի տալ։ To—out. ճըղճըղիլ, տալ։
Forked ֆօրք՛էտ, ֆօրքտ, a. ծամածուռ, օձագիծ, երկճղի։ -ness, -kiness ֆօրք՛էտնէս, ֆօր՛քինէս, s. ծամածռութիւն, երկճղութիւն։
Forky ֆօրք՛ի, a. երկճիւղ, երկճըղի, բազմաճղի, ճղճղած։
*Forlorn ֆըրլորն՛, a. թողեալ, լքեալ, ամայի; 2. անտէր, անոք։ The—hope. նախայարձակ գունդ գն. -ness, s. անյուսութ., աւեր։
Form ֆօրմ (թ), s. ձեւ, կերպարանք, տեսք, եղանակ. ոճ; 2. կարգ, տարազ, կանոն, օրէնք թոթ; 3. կաղապար, տիպ; 4. նստարան, տախտ; 5. դաս, կարգ հմմ.; 6. որջ, բոյոց (նապաստակի) (նստարան); 7. (չարուած երեսի) երկաթ շրջանակ, իջակալ ձorձա։ =va. [-ed from] ձեւ տալ, ձեւացնել, շինել; 2. ձեւել, կազմակերպել, յօրինել, սեղծել, երկնել; 3. կրթել, հրահանգել; 4. բոյն որջ

շինել։ In due—. օրինական ձեւով։ 1st, 2nd, 3rd—, պատրաստական ճիւղի 1ին, 2րդ, 3րդ կարգ հօմ.

*Formal ֆօր՛մըլ, a. ձեւական; 2. էական; 3. պարզ, որոշ, մեկին, օրինաւոր; 4. արտաքին; 5. հանդիսական, պաշտօնական։ -ism ֆօր՛մըլիզմ, a. ձեւապաշտութիւն, ծիսապաշտութ. -list ֆօր՛մըլիսթ, s. ձեւապաշտ, ծիսապաշտ, ծիսասէր։ -ity ֆօրմէլ՛իթի, s. ձեւակերպութիւն, կարգ, ձեւ; 2. (արտաքնական) սովորոյթք, կարգաւորք, արարողութիւն; 3. ձեւաւորութ.։ -ly ֆօր՛մըլի, ad. պաշտօնապէս; 2. մեկին, բացայայտ; 3. կանոնաւորապէս։

Formation ֆօրմէյ՛շըն, s. կազմելը, առեղծում; 2. ձեւացում; 3. ձեւաւորութիւն; 4. կազմակերպութիւն, ձեւակերպում; 5. կազմութիւն, շարք (ժայռից) Երկ.; 6. յարդարում (վաշտի)։ -tive ֆօր՛մէթիվ, a. հատոյց, յօրինիչ, ձեւացընող։ =s. ածանցական, կազմիչ (տառ) +.

Former ֆօր՛մըր, s. յօրինիչ, առեղծող; 2. զանգիչ։ =a. նախկին, նախընթաց, առաջուան։ -ly ֆօր՛մըրլի, ad. ի հնումն; 2. յանցելումն, առենօք; 3. նախապէս։

For'mic ֆօր՛միք, s. մրջնաթթու.-ary, s. մրջնաբոյն, մրջիմնոց։ -ation ֆօրմիքէյ՛շըն, s. մարմնաջում։

Formidable ֆօր՛միտէպլ, a. ահաւոր, ահեղ, սոսկալի, զարհուրելի։ -ness, s. -ly, ad.

Formless ֆօրմ՛լէս, a. անձեւ, տձեւ, անկերպարան, տգեղ։

Formula ֆօր՛միուլէ, a. (pl. -læ, -las -լի, -լէզ,) ձեւ, բանաձեւ; 2. դաւանագիր Եկ.; 3. տարազ, ձեւան Իրհ.; 4. դեղագիր. նուսխայ Բժ; 5. նշանագրայ տ. -ry ֆօր՛միուլըրի, a. ձեւական, պաշտօնական, արարողական։ =s. ձեւարան; 2. դեղամատեան; 3. օրինակ, ձեւ։ -te, -lize ֆօր՛միուլէյթ, ֆօր՛միուլայզ, va. ըստ օրինի՝ ձեւապէս գրել; 2. տարազ շինել; 3. դեղագրել։

Fornicate ֆօր՛նիքէյթ, va. շնալ, պոռնկիլ։ =a. կամարայած, կամարակապ։ -tion ֆօրնիքէյ՛շըն, s. շնութիւն, պոռնկութիւն։ -tor ֆօրնիքէյ՛թըր, s. շնացող, կուսապաշտ; 2. ամբարիշտ, չար։

Forray, See Foray.

Forsake ֆըրսէյք՛, va. (-sook, -saken ֆըրսուք՛, ֆըրսէյ՛քն,) երեսէ ձգել, թողուլ, լքանել; 2. բարձի թողի ընել, մեկդի նետել։

Forsooth ֆըրսութ՛հ, ad. իրաւ, որ, ճշմարիտ; 2. շատ աղէկ։

Forswear ֆըրսուէյր՛, va. (—wore, -worn.) երդումով մերժել, ուրանալ։ =vn. սուտ երդնուլ, երդմնազանցել, երդմնազանց ըլլալ։

Fort ֆօրթ, s. ամրութիւն, ամրոց -alice ֆօրթ՛էլիս, s. ամրոցիկ դէն.

·Forte ֆօրթ, s. հաստատուն կողմ, զօրաւոր մաս։ =-՛թէյ, ad. ուժգին։

Forth ֆօրթհ, ad. յառաջ, անդին, դուրսը, հեռու։ And so—. եւայլն, այլովքն հանդերձ, եւ որ զկնի։ To bring—. ծնանիլ, արտադրել։ To put—. մղել; բանալ։ To go—. դուրս ելլել, տարածուիլ։ —from, (սկսեալ) էն։ —coming. ելլելու վրայ, երեւնալիք, պատրաստ։ —with. անմիջապէս, ուղղակի։

Fortieth ֆօր՛թիէթհ, a. 40րդ։

Fortifiable ֆօր՛թիֆայէպլ, a. ամրանալի, ամրնալիք։

*Fortification ֆօրթիֆիքէյ՛շըն, s. ամրացում, ամրութիւն; 2. պատնէշ, ամրոց, ական; 3. բերդաշինութիւն։

Fortifier -ֆայ՛ըր, s. ամրացնող։

**Fortify** ֆօր'թիֆայ, *va.* զօրացնել, ամրացնել; 2. զինել։

**Fortis'simo,** *ad.* հզօրագոյնէն.

**Fortitude** ֆօր'թիթիուտ, *s.* արիութիւն, քաջութիւն; 2. հաստատամտութիւն։

**Fortnight** ֆօրթ'նայթ, *s.* երկու շաբաթ, տասնըհինգ օր ։ **-ly,** *ad.* հնգետասանօրեայ, 15 օրուան։

***Fortress** ֆօր'թրէս, *s.* բերդ, ամրոց, միջնաբերդ; 2. ամրակուռ քաղաք։

**Fortuitous** ֆօրթիու'թըս, *a.* պատահական, անակնկալ։ **-ly,** *ad.* դիպուածաւ։ **-ness,** *s.* դիպուած։

**Fortuity** ֆօրթիու'թի, *s.* պատահար, դէպք, դիպուած։

***Fortunate** ֆօր'չընէյթ, *a.* բախտաւոր, երջանիկ, բարեբաստիկ; 2. յաջողակ ։ **-ly,** *ad.* բարեբաղդաբար։ **-ness,** *s.* բաղդաւորութիւն, երջանկութիւն ։

**Fortune** ֆօր'չըն, *s.* բաղդ, դիպուած, պատահար, վիճակ; 2. ինչք, հարստութիւն; 3. օժիտ, պռոյգ = *vn.* պատահիլ, վիճակիլ։ -hunter. հարուստ աղջիկ փնտռող ։ -teller. բաղդագուշակ։ Bad, Good–. դըժբաղդութիւն, յաջողութիւն ։ To make a–. հարստանալ ։ To tell one's–. բաղդը՝ վիճակը նայիլ ։ The Fortune. բաղդի չաստուած։ By-. դիպուածաւ, պատահաբար։

**Forty** ֆօր'թի, *s.* քառասուն։

**Forum** ֆօ'րըմ, *s.* վաճառանոց, հրապարակ Հ.; 2. ատեան, ժողով ։

**Forward** ֆօր'ուըրտ, *a.* առաջի, առջեւի, գլուխի, ճակատի; 2. յանձնապաստան, յանդուգն; 3. եռանդուն, պատրաստ; 4. կանխահաս =*va.* փութացնել, կանխել, կանխավճարել; 2. ղրկել, շուտով հասցնել; 3. դարձնել, անցնել։ **-ly,** *ad.* եռանդեամբ, փութանակի։ **-*ness,** *s.* փոյթ, եռանդ, յօժարութիւն; 2. կանխահասութիւն; 3. յառաջացում։ **-er** ֆօր'ուըրտըր, *s.* փութացնել, ղրկող; 2. ապրանք ղրկող, առաքիչ ըմալիքրճի։

**Forward, -wards** ֆօր'ուըրտզ, *ad.* դէպ ի յառաջ, յառաջ։

**Forzando** ֆօրձան'տօ, *ad.* բռնադատելով (>) abb. *sf.* or *fz.*

**Fosse** ֆաս, *s.* փոս, փապ, խրրամ ամր.; 2. փոսիկ, փորոք (սրտի)։

**Fossil** ֆաս'իլ, *s.* հանածոյ, բըրածոյ երկ. =*a.* գետնի տակէն հանուած։ **-iferous,** *s.* հանածոյաբեր։ **-ist** ֆաս'իլիստ, *s.* հնէաբան։

**Fossilize** ֆաս'իլայզ, *vn.* քարանալ; 2. հիննալ։ **-zation** ֆասիլայզէյ'շըն, *s.* քարացում։

**Foster** ֆաս'թըր, *va.* սնուցանել, ծծցնել; 2. դարմանել; 3. գրգել, քաջալերել։ -brother. կաթնեղբայր, եղբայրագիր։ -child, **-ling,** *s.* ծըծկանի տրուած, սանդեալ; 2. որդեգիր ։ -father. հայրագիր։ -mother. սանտու, ծծկան, դայեակ; մայրագիր։ -son. որդեգիր։ **-age,** *s.* դայեկչէք։ **-er** ֆաս'թըրըր, *s.* սանտու, ծծմայր, ծծկան ։

**Fother** ֆաթհ'ըր, *va.* ծակը խըրցել Ն.

**Fought** ֆօթ, *pp. of* Fight.

***Foul** ֆաուլ, *a.* աղտոտ, անմաքուր, պիղծ, գարշելի; 2. անպարկեշտ; 3. ատելի; 4. ամպոտ; 5. մթին; 6. թնճուկոտ, խառնակ։ = *va.* աղտոտել, աւրել; 2. խառնակել, խառնշտկել։ =*vn.* իրար խառնըւիլ։ A–copy. սրբագրեալ օրինակ մը. To fall–. իրար իյնալ, կռուիլ։ To run *or* fall–of. ընդհարիլ, իրար զարնուիլ; հակառակ գալ Ն. -mouthed, -spoken. հայհոյիչ, պիղծբերան։ **-ly** ֆաուլ'լի, *ad.* -կերպով։ **-ness,** *s.*

**Foulard** ֆուլարտ', *s.* հնդիկ մե-

տաքս; 2. մետաքս թաշկինակ։

**Foumart** ֆուՙմըրթ, *s.* կզաքիս։

**Found,** *imp.* & *pp. of* Find.

**Found** ֆաունդ, *va.* [upon, on *a basis,* in *truth*] հիմերը դնել, կանգնել, հիմնարկել; 2. հաստատել, կառուցանել, հիմնել, շինել; 3. ձուլել, թափել, հալեցնել։

**Foundation** ֆաունտէյՙշըն, *s.* հիմնարկութիւն, հիմնադրութիւն; 2. հիմնարկէք; 3. խարիսխ, հիմ; 4. բարեպաշտական նուէր, հրիտակ; 5. բարեսիրական հաստատութ. -er -շընըր, *s.* բարերարեալ (ուսանող)։

**Founder** ֆաունտըր, *s.* հաստատիչ, հիմնարկու, հիմնադիր; 2. (աղանդա)պետ; 3. ձուլիչ (գրի, զանգակի) skofմkăի։ =*va.* ջրով լեցուիլ, ընկղմիլ նա; 2. (ձին) կաղալ, գայթել; 3. փրփիլ, ի դերև ելլել։ =*va.* (ձիուն ոտքը) կարկամիլ, կաղալ։ =*s.* ոտից բորբոքում (ձիու); 2. սաստիկ յօդուածացաւ։ Letter-. գրաձոյլ, գրաձուլիչ։ -ous ֆաունտըրըս, *a.* ճախին, տղմուտ։

**Foundery, -dry** ֆաունտըրի, *s.* ձուլագործութիւն, ձուլում; 2. հալարան, ձուլարան։

**Foundling** ֆաունտլին, *s.* ընկեցիկ տղայ։ [րերարուհի։

**Foundress** ֆաունտրէս, *s.* բա-

**Fount,** *See* Font կաղապար։

**Fount, Fountain** ֆաունթ, ֆաունթէյն, *s.* աղբիւրակն, աղբիւր, ջուրի ակ; 2. սկիզբ, նախապատճառ։ -head. աղբիւրակն, ակ, սկիզբ, նախապատճառ։ -pen. ինքնածոր մելանաւոր, -կալ, գրիչ, մելանաբոյծ։ Fount of types. ձուլատառք։

**Four** ֆօր, *s.* չորս։ -fold. քառապատիկ; չորս անգամը։ -footed. չորքոտանի, չորս ոտքով։ -handed. քառաձեռնի։ -in-hand. քառաձի կառք; սանձարձակ (վարգ)։ -o'clock. իրիկնածաղիկ ծղ. -score. ութսուն։ -wheeled. քառանիւ։ -square. չորեքկուսի; քառանկիւն։

**Forteen** ֆօրթին, *s.* տասնըչորս։

**Fourteenth** ֆօրթինթհ, *a.* 14րդ։

**Fourth** ֆօրթհ, *s.* չորրորդ։ -'ly ֆօրթհլի, *ad.* չորրորդ, 4ր դին։

**Fowl** ֆաուլ, *s.* թռչուն; հաւ։ =*va.* թռչուն որսալ։ -ing piece. (որսի) թեթեւ հրացան։ -er ֆաուլըր, *s.* հաւորս, թռչնորս։

**Fox** ֆաքս(զ), *s.* աղուէս; 2. խորամանկ, աղուէս-ախպար, նենգաւոր; 3. ձիաձուկ; 4. շանաձուկ մը, ծովկապիկ ։. =*va.* կօշիկը նորել, նորոգել։ =*vn.* (գարեջուրը) թթուիլ։ -and geese. քանի մը տեսակ խաղեր։ -chase, -hunt. աղուէսի որս։ -evil. հերաթափք ախտ. -glove. մատնոցակ եiւfuiւf ojnւ։ -hound. ընտիր բարակ մը pազը։ -tail. աղուէսագի ք. -trap. ծուղակ, աղուէսակալ։ -trot. ձիու արագ ընթացք։ -ed ֆաքստ, *a.* դեղնած թուղթ, տախտակ։

**Foxy** ֆաքսի, *a.* աղուէսանման, աղուեսս; 2. դեղնագոյն, գոյնը նետած; թթու (խաղող), թթուաշ։

**Foyer** ֆուայէ, *s.* հանրասրահ։

**Fracas** ֆրէյքա, *s.* աղմուկ, ժխոր; 2. շաուաշ, ճայթիւն։

**Fraction** ֆրէքշըն, *s.* բաժին, հատուած, մաս; 2. կոտորակ։ -al, -ary ֆրէքշընըլ, ֆրէքշընըրի, *a.* կոտորակային, կոտորակաւոր։

**Fractious** ֆրէքշըս, *a.* կռուասէր, ցասկոտ; 2. խածան։ -ly, *ad.* -ness, *s.* խեռութիւն։

**Fracture** ֆրէքչըր *s.* բեկում, խորտակում; 2. բեկած; 3. ոսկրաբեկք վէր; 4. ծերպ էրլ. =*va.* խորտակել, կոտրել; ճեղքել։ Comminuted-. ջախջախած (ոսկր) վէր. Compound-. քանի մը տեղերէն բեկած։

**Fragile** ֆրէճ՛իլ, *a.* դիւրաբեկ, կոտրուն; 2. տկար, մեղանչական, 2. անհաստատ, սխալական։ -lity ֆրէճիլ՛իթի. *s.* -ութիւն։

**Fragment** ֆրէկ՛մընթ, *s.* բեկոր, կտոր, նշխար; 2. հատուած, հատուածակտոր։ -ary ֆրէկ՛մընթէրի, *a.* կտոր կտոր, հատուածական։

*Fragrant -յ՛կրէնթ, *a.* անուշահոտ, բուրող, քաղցրաբոյր, հոտաւէտ։ -ly, *ad.* -rance, -cy ֆրէյկ՛րէնսի, *s.* -ութիւն

**Frail** ֆրէյլ, *a.* դիւրափշուր, դիւրաբեկ; 2. տկար, դիւրագայթ, սխալական, փոփոխամիտ, դիւրահաւան; 3. անհաստատ։ =*s.* կողով (թուզի, խաղողի); 2. ողորնի սոտ, ողոր։ -ness, -ity ֆրէյլ՛իթի, *s.* -ութիւն։

**Frame** ֆրէյմ, *va.* կազմել, շինել, յօրինել; 2. յարմարցնել, հնարել, կեղծը շինել; 3. կանոնաւորել, ձեւի բերել; 4. (պատկեր) շրջանակել։ =*s.* կազմութիւն, շինուածք; 2. շրջանակ չէրչիվէ; 3. կերպարանք; 4. ձեւ, կմախք; 5. գործածեղան sէqլեաk; 6. ջուհրիկ ճէրկէֆ; 7. բնաւորութ. խառնուածք։ In—. վանդակապատ, շրջանակաւոր։ The human—. մարդ. կազմութիւն գայլըպ։ -work. շրջանակ, վանդակ։

**Framer** ֆրէյմ՛ըր, *a.* շինող։

**Franc** ֆրէնք, *s.* Փռանկ (4 ½ դհ.)

**Franchise** ֆրէն՛չիզ, *s.* (քուէի) իրաւունք; 2. առանձնաշնորհում, արտօնութիւն; 3. ապաստանարան, փախստարան։ =*va.* արձակել, թող տալ։ -ment, *s.* արձակում։ Համ. Release, deliverance, freedom

**Franciscan** ֆրէնսիս՛քըն. *s.* Փրան կիսկեան (կրօն.) որ և Gray Friars.

**Francolin** ֆրէնք՛օլին. *s.* տալամր, դառնուհ, կիքրիս չիլ գուշու։

**Frangible** ֆրէնճ՛իպլ, *a.* դիւրաբեկ, փխրուն կիրիֆ։ -bility, *s.*

**Frangipane** ֆրէն՛ճիփէյն, *s.* նշաքաքար; անուշահոտ իւղ, հոտանոյշ։

**Frank** ֆրէնք(թ), *a.* անկեղծ, բաց, պարզախօս, արձակ՝ համարձակ, համարձակախօս; 2. պարզ։ (=*va.* նամակը) փրկանաւորել, տուրքէ զերծ ընել, ձրի ղրկել։ =*s.* անտուրք՝ ձրիատար նամակ; 2. հին Գերմանիկ ժողովուրդ մը; 3. եւրոպացի ֆրէնկ։ —almoigne. կտակեալ կալուած էջ. —incense. խունկ, ծխանելիք։ -lin, *s.* An English freeholder. -ly, *nd.* յայտնի համարձակ, անկեղծաբար։ -ness ֆրէնք՛նէս, *s.* անկեղծութ. պարզութիւն; 2. համարձակութ.։

**Frantic, -al** ֆրէն՛թիք, *a.* կատաղի, մոլեգին; 2. վայրենի, մոլի։ [ցել։

**Frap** ֆրէփ(թ) *va.* կապել, հանգու-

**Fraternal** ֆրէթըր՛նըլ, *a.* եղբայրական։ -nity ֆրէթըր՛նիթի, *s.* եղբայրութիւն, եղբայրակցութիւն

**Fraternize** -՛նայզ, *vn.* եղբայրաբար ապրիլ; 2. եղբայրակցիլ։ -za'tion, *s.* եղբայրակցութիւն։

*Fraud ֆրօտ, *s.* նենգ, խարդախութիւն, խարդաւանք, խաբէութիւն։ -ful -՛ֆուլ, *a.* խաբէական։ -ulence, -cy ֆրօտ՛իուլընսի, *s.* խաբեբայութիւն, նենգութիւն։ -*dulent ֆրօտ՛իուլընթ, *a.* խաբեբայ, խարդախ; 2. նենգաւոր, խաբէական։ -ly, *ad.*

**Fraught** ֆրօտ, *a.* բեռնաւորեալ, բեռցուած, լեցուն; ամբարեալ։

**Fray** ֆրէյ, *s.* վէճ, կռիւ, աղմուկ; 2. պատռուած, մաշուք։ =*va.* ահաբեկել, վախցնել; 2. մաշեցնել։

**Freak** ֆրիք(թ), *s.* քմահաճոյք, այլանդակութիւն, խենդութիւն։ =*va.* քառեկաւորել. պիսակոտել։

**Freakish**, *a.* այլանդակ, անճոռնի, քմածուր։ -ly, *ad.* -ness, *s.*

**Freckle** ֆրէքըլ, *s.* գեղնագոյն պիսակ, բիծ, ցան չիլ, պէնիէ; անգունութիւն։ =*va.* պիսակոտել։

**Freck'ly**, *n.* պիսակոտ, ցանոտ։

***Free** ֆրի, *a.* [from, of] զերծ, արձակ, անձնական; 2. անարգել, համարձակ, անկեղծ, բաց; 3. հեռի; 4. ձրի; 5. ճոխ, շռայլ; 6. անպարտ։ =*va.* արձկել, քակել; 2. արձակել, պրծեցնել, թողուլ; 3. բանել, մաքրել, պարպել։ –agency, -will. ազատ կամք ֆէլ. -booter. հէն, աւազակ; յափշտակիչ, աւարառու։ -hand. ձեռքով, առանց գործիքի։ -hearted. առատաձեռն, ձեռքբաց։ –hold. կալուածք, հող միւլք։ –holder. հողատէր էր. -liver. կենցաղասէր։ -martin. զուգածին հորթ։ -port. անմաքս արձակ՝ բաց նաւահանգիստ։ -stone որձաքար, տաշաքար մայրա քաշր։ –thinker, *s.* ազատախոհ, անհաւատ, սկեպտիկեան։ –thinking, *s.* անհաւատութիւն։ –trade. անմաքս փոխանակութիւն ¥ճ. –trader. մաքսամերժ։ -warren. որսորդութեան իրաւունք։ -will, *a.* յօժար, ինքնաբեր։ -wind. պարզ՝ բաց օդ ն–. **Համ.** At liberty, independant, enjoying political liberty. *Opp. to* Arbitrary, despotic, absolute.

**Freed'man, Freed'woman.**

**Freedom** ֆրի'տըմ, *s.* համարձակութիւն, ընտանութիւն։ –of the City. պատուոյ քաղաքացիութիւն։ **Համ.** Liberty, independence.

***Freely** ֆրի'լի, *ad.* լիուլի; առատաբար; 2. ձրի; 3. անարգել պարզ։

***Freeman** ֆրի'մէն, *s.*

**Freeness** ֆրի'նէս, *s.* առատաձեռնութիւն; պարզութիւն։ **Համ.** Freedom, liberty; openness.

**Freeze** ֆրիյզ, *va.* սառեցնել; պաղեցնել։ =*vn.* սառիլ; 2. պաղիլ։ =*s.* սառեցնելը, սառիլը; 2. ցրտացում։ -zing-point, սառուցման կէտ (ջուրի), որ է 32° *Fah.* –zer ֆրիյզ'ըր, *s.* սառուցիչ, զովացուցիչ; 2. պաղարար ¥.

**Freight** ֆրէյթ. *s.* նաւու բեռ; 2. նաւողչէք, բեռնագին։ =*va.* (նաւը) բեռնաւորել, բեռցնել։ –age ֆրէյթ'էճ, *s.* նաւողչէք, բեռնագին; 2. նաւու բեռ; 3. նաւվարձութիւն։ –er ֆրէյթ'ըր, *s.* նաւաբարձ, բեռնաբարձ; 2. վաճառահան, յանձնակատար ¥ճ.

**French** ֆրէնչ', *a.* Փրանսական, գաղղիական։ =*s.* Փրանսերէն, գաղղիերէն; 2. գաղղիացի; 3. Ֆրանսա։ -berry. գաhրի ճէքէրի։ –chalk -չօք, աճառաքար։ -crown. ճաղատութիւն։ -grass. երեքնուկ, իշառւոյտ էվլիա օրու։ -horn. գալարափող։ –leave. անհրաման մեկնում։ -pox. գաղղիական ախտ ֆրէնկի։ -girl, -woman. Փրանսուհի։ –man. գաղղիացի։ -ify ֆրէն'չիֆայ, *v.* գաղղիացնել

**Frenetic, –al** ֆրէնէթ'իքըլ, *a.* կատաղի, վայրենի; 2. շռնդալից։

**Frenzy** ֆրէն'զի, *s.* մոլեգնութիւն, կատաղութիւն; 2. զառանցանք. խելացնորութիւն, մոլորախութիւն։

**Frequency** ֆրի'քուէնսի, *s.* յաճախութ., յաճախում; շուտութ.

**Frequent** ֆրի'քուէնթ, *a.* ստէպ, յաճախ; 2. արագ, շուտ։ =*va.* յաճախել, ցանկորդել; 2. շատ երթալ, մտնել ելլել։ –ation ֆրիքուէնթէյ'շըն, *s.* շատ երթալը, յաճախում։ –ative ֆրիքուէնթէյ'թիվ, *a.* յոլովական; 2. յաճախական (բայ)։ –ly ֆրի'քուէնթլի, *ad.* յաճախակի, յաճախ ստէպ ստէպ, յոլովակի։ –er ֆրիքուէնթ'ըր, *s.* յաճախող։

**Fresco** ֆրէս'քօ, *s.* զովութիւն, շուք; 2. տամկանկար, որմնանկար ¥.

*Fresh ֆրէշ, *a.* Թարմ, նոր, դալար; 2. հովասուն, պաղուկ, զով, ցուրտ; 3. կայտառ, առոյգ; 4. անուշ, անլի, չաղած (ջուր, միս)։ =*s.* անուշ ջուրի գետ; 2. գետայարոյցք, հեղեղ; 3. անուշ ջուրի խառնուրդ՝ հոսանք։ -water, *a.* անուշ՝ աղի չեղող ջուր; 2. անուշ ջուրի մէջ ապրող; 3. համբակ, խակ։ —way. աճեցուն արագութիւն ն.. -ly, *ad.* -ness, *s.*

Freshen ֆրէշ՛ն, *va.* աղիութիւնը առնուլ, անուշցնել; 2. (չուանը) թուլցնել, զօրացնել ն.. =*vn.* անուշնալ; 2. զօրանալ, նորոգուիլ։

Freshet ֆրէշ՛էթ, *s.* (անձրեւէ) յորդում, գետայարոյցք։

Freshman ֆրէշ՛մէն, *s.* նորընծայ, համբակ; 2. կրտսեր (ուսանող) հմմ. —class. առաջին տարի, Փրէշմէն՝ կրտսեր կարգ։ Sub—. կրտսերագոյն կարգ (գոլէճի)։

Fret ֆրէթ, *va.* մաշեցնել, մաշել, ուտել; 2. աւրել, խանգարել; 3. զայրացնել, բորբոքել, յուզել; 4. դրուագել, շրջագարդել; 5. բատեղնազարդել գ. եր. =*vn.* մաշիլ, ցեցոտիլ; 2. զայրանալ։=*s.* (ջուրի) պղպջակում, ծփծփում; 2. զայրոյթ, վրդով, յոյզ, վարանք; 3. հիւսազարդք ճ. ճն.; 4. ստեղունք, մատ եր.; 5. որքին բեմրեյի բժ.; 6. *pl.* գետեզերքի մաշուք հն.։ —saw. բարակ նեղ սղոց։ —work. հարթքանդակ։ -ty ֆրէթ՛թի, *a.* քանդակազարդ։

*Fretful ֆրէթ՛ֆուլ, *a.* խոժոռ, դէզ բիբիզ։ -ly, *ad.* -ness, *s.*

Friable ֆրայէ՛պլ, *a.* դիւրափշուր, փխրուն, փուխ կեմրկք։ —ness, -bility, *s.* փխրականութիւն։

Friar ֆրայ՛էր, *s.* աբեղայ, կրօնաւոր, վանական, միաբան, եղբայր; 2. թերթի չտպուած մաս տպ. Gray —. Փրանկիսկեան կրօնաւոր։ Black —. Դոմինիկեան։ White—. Կարմելեան կրօնաւոր։

Friary ֆրայ՛էրի, *s.* մենաստան, վանք; 2. վանականութիւն։

Fribble ֆրիպ՛լ, *a.* փուճ, անօտի, ոչինչ։ =*s.* ծանծաղամիտ, անպիտան։ =*vn.* ոչինչ բաներով խաղալ, զբօսնուլ։

Fricassee ֆրիքէսի՛, *s.* աղանձած, տապակ գաւուրմա։ =*va.* աղանձել, տապակել, տապկել։

Fricative ֆրիքէյ՛թիվ, *a.* մարձահնչիւն՝ շփողական (գիրեր, ս, շ, ֆ, վ)

Friction ֆրիք՛շըն, *s.* շփում, աճըռւելը, մարձում օվալաշամա։ -wheel. մարձանիւ։ -al ֆրիք՛շընըլ, *a.* շըփումէ յառաջ եկած։

Friday ֆրայ՛տէյ, *s.* ուրբաթ։

Fried ֆրայտ, *imp.* & *pp.* *of* Fry.

Friend ֆրէնտ, *s.* բարեկամ, մտերիմ; 2. ծանօթ, ընկեր; 3. երեւրական, քուէյքըր Յր. =*va.* բարեկամաբար գործել, պատուել։ A—at court. անձնուէր, մտերիմ։ -less, *a.* լքեալ, խեղճ։ -ly, *a.* [to, towards] բարեկամական, բարեացակամ; 2. սերտ, մտերմական, հաշտաբար։ —liness, *s.* —ութիւն։ -ship ֆրէնտ՛շիփ, *s.* բարեկամութիւն, մարդասիրութիւն, քաղցրութիւն։

Friese, Frisian ֆրիյզ, ֆրիժ՛ըն, *s.* հոլանտական գաւառաբարբառը, Փրիզերէն, Ֆրիսլանտացւոց լեզուն

Frieze ֆրիյզ, *s.* գանգրաւուր շայաք; 2. ծոփոր, քանդակ ճ. =*va.* գանգուր շինել, գռզաբուրդել։

Frigate ֆրիկ՛էյթ, *s.* մարտանաւ (երկյարկ); 2. ճղլակ ն.

Fright ֆրայթ, *s.* ահ, երկիւղ, սոսկում։ =*va.* վախցնել, դող ազդել։ -ten ֆրայթ՛ն, *va.* [-ed *at*] դող հանել, ահաբեկել, զարհուրեցնել։

*Frightful ֆրայթ՛ֆուլ, *a.* սոս-

կայլի, աչաւոր։ -ly, *ad.* -ness, *s.*

**Frigid** ֆրիճ'իտ, *a.* սառուցեալ, պաղ, ցուրտ; 2. անկարող։ -ness, -ity ֆրիճիտ'իթի, *s.* -ութիւն։ -ly ֆրիճիտ'լի, *ad.* կերպով։

**Frigorif'ic,-al**, *a.* ցրտաբեր։

**Frill** ֆրիլ, *s.* վակաս էջ.; 2. փոթոձիք, փողկապ (կանանց)։ =*va.* փողաձեւել; 2. փողկապ շինել։ =*vn.* (ցուրտէն) սարսռալ, դողալ, սրսփիլ։

**Fringe** ֆրինճ', *s.* ծոպ, վերջաւորք ասլաց։ =*va.* ծոպաւորել։

**Frippery** ֆրիփ'ըրի, *s.* հինումին հանդերձ, հնոտիք; 2. հնավաճառանոց; 3. հնավաճառութիւն։

**Friseur** ֆրի'զըր, *s.* սափրիչ։

**Frisk** ֆրիսք', *vn.* զուարճանալ, ցատկռտել, խաղալ, խնդալ; պարել։ =*s.* խաղ, խնդում, կայթիւն։ -er ֆրիսք'ըր, *s.* խաղացող։ -et ֆրիսք'էթ, *s.* թերթապահ (շրջանակ) տպ.

**Frisky** ֆրիսք'ի, *a.* զուարճասէր, զուարթ, եռանդուն։ -kiness, *s.*

**Frit** ֆրիթ, *s.* ապակիի զանգուած, ապակենիւթ։ =*va.* (ապակին) զանգել, խմոր ընել։

**Frith** ֆրիթհ, *s.* գետաբերան, ծոց; 2. (ձկնորսի) թել։

**Fritil'lary**, *s.* շահպրակ ծղ.

**Fritter** ֆրիթ'ըր, *s.* պտուղով կարկանդակ, ծիրխտա; 2. շերտ, կտոր։ =*va.* (միսը) շերտ շերտ կըտրել, մանրել; 2. ջարդուբուրդ ընել, կտրտել։ To—away. սպառել։

**Frivolous** ֆրիվ'ըլըս, *a.* անոտի, ոչինչ, չնչին։ -ness, -volity ֆրիվօլ'իթի, *s.* փուճ բաներ, ունայնութիւն, թեթեւութիւն։

**Friz. Frizzle** ֆրիզ, ֆրիզլ, *va.* ոլորել, գանգրել, խոպոպել։ =*s.* գանգուր, խոպոպ, պուպուկ։

**Fro** ֆրօ, *ad.* ետ, անդին։ To and—. աստ անդ, հոսս հոսան։

**Frock** ֆրօք, *s.* բաճկոն, վրանոց; 2. սքեմ էջ. —coat. թիկնոց։

**Frog** ֆրօկ, *s.* գորտ; 2. (ձիու սմբակի) ներքնակողմ; 3. (հագուստի վրայ) արիզուած; 4. ճամբու եռանկիւն էր. -bit. սանտրուկ բս; կատուաձուկ, ծովադեւ։ -grass. գառնալեզու ծովի բս. -hopper. ապակարող (միջատ)։

**Frolic** ֆրօլ'իք(թ), *a.* ուրախ, զուարթ, կայտառուն։ =*s.* կայթատոնք, ուրախութիւն։ =*vn.* խաղալ խնդալ, ցնծալ, ուտել խմել։

**Frolicsome** ֆրօլ'իքսըմ, *a.* զբօսասէր, խաղասէր, -մոլ, չարաճճի։ -ness ֆրօլիքսըմ'նէս, *s.* -ութիւն։

**From** ֆրօմ, *pr.* Բացառականի նախդիր է. 'ի . . . , . . . է, . . . էն։ Far—home. հեռի ի տանէ։ —ignorance. առ տգիտութեան։ —day to day. օր ըստ օրէ։ —a friend. բարեկամի մը կողմանէ։ -this. այսուհետեւ

**Frond** ֆրօնտ, *s.* (ձարխոտի) տերեւ, ցցատերեւ։ -ation ֆրօնտէյ'շըն, *s.* տերեւածք, ճիւղաւորում։ -iferous, *a.* տերեւաբեր, ճիւղաբեր։ -escence -տէս'ընս, *s.* տերեւաբուխ ժամանակ։ -ose, -ous -տօս', -ն'տըս, *a.* տերեւալից, -բեր։

**Front** ֆրընթ, *s.* ճակատ; 2. երես, դէմք; 3. երեսի ջուր, լրբութիւն, աներեսութիւն; 4. առաջակողմ; 5. ճակատի մազ (կանանց) =*a.* առջեւի, առաջակողմի, ճակատի, առաջքի։ =*va.* հակառակիլ, դէմ կենալ; 2. հանդիպիլ; 3. ճակատը զարդարել։ =*vn.* ճակատիլ, առջեւը կենալ։ -age ֆրընթ'էճ, *s.* շէնքի երես, ճակատ։

**Front-:-al** ֆրընթ'ըլ, *a.* առաջակողմեան, ճակտի։ =*s.* գլխաշուք, ծամակալ; 2. (դռան) եռանկիւնի ճակատ ճ; 3. ճակտի ապարօշ (Հրէից), ճակատնոց Սգ. -ier ֆրօնթ'իյր, *s.* սահման, սահմանա-

**Papaverous** ՓԷՓԷՎ'ԸՐԸՍ, *a.* *մեկոնի, խաշխաշի (պէս)։*

**Papaw** ՓԷՓՕ', *s.* *Հնդիկ սեխ։*

**Paper** ՓԷՅ'ՓԸՐ, *s.* *թուղթ, քարտ, քարտէզ; 2. կտոր, թերթ (թղթի); 3. լրագիր օրագիր; 4. գրութիւն; 5. մուրհակ, փոխգիր; 6. թղթադրամ, արժէթուղթ; 7. որմաթուղթ, նկարաթուղթ, ներկաթուղթ։* =*va.* *թղթորմել (սենեակը); 2. թուղթ անցնել; 3. թուղթին մէջ դնել, թղթել։* -hangings. *գունաւոր որմաթուղթ։* -stainer. *որմաթուղթ շինող։* -case, -holder. *թըղթանոց; 2. ծանրոց, թղթապինդ, թղթակալ։* —-credit, —-currencys. *պանքատոմս, թղթադրամ։* -cutter, -knife. *թղթահատ։* -faced. *ճերմակերես։* -folder. *ծալոց գ.* -hanger. *թղթամածույց (մարդ)։* -kite. *թռուցիկ, վիշապակ։* -making. *թղթաշինութ.* -money. *դրամատոմս, թղթադրամ գայիմէ։* -reeds. *պապիրոս, թղթեղէգ (Եգիպտոս)։* -weight. *ծանրոց, դնոց (թուղթի վրայ)։*

**Papes'cent**, *a.* *մոււտ (պտուղ)։*

**Papier-maché** ՓԷՓ'ԻԷՅՄԱ'ՇԷՅ, *s.* *թանձրաթուղթ։*

**Papilionaceous** ՓԷՓԻԼԻՕՆԷՅ'-, *a.* *թիթեռնակերպ, -նածաղիկ։*

**Papilla** ՓԷՓԻԼ'ԼԷ, *s.* (*pl.* -læ -'ԼԻ) *մորթի վրայ մանր բշտիկ, պտուկ; 2. պինդ ու չոր ուռեցք մորթի կամ բուսոց վրայ, շուտ, շիտ։*

**Papillary, -lose, -lous** ՓԷՓ'Ի-ԼԷՐԻ, -ԼՕՍ, *a.* *կոնոնային, պտրանկերպ։*

**Pap'illote**, *s.* *գանգրաթղթիկ։*

**Papist** ՓԷՅ'ՓԻՍԹ, *s.* *պապական։* **-ic, -ical** ՓԷՓԻՍԹ'-, *a.* *պապութեան։*

**Pa'pistry**, *s.* *պապականութիւն։*

**Papouse, Pappoose** ՓԷՓ'ՓՈՒՍ, *s.* (*Հիւս. Ամ. Հնդ.*) *երախայ, չաղա։*

**Pappous, -pose** ՓԷՓ'ԸՍ, ՓԷՓ'ՕՍ, *a.* *բրդոտ (բոյս), ցցունավարդ։*

**Papulous, -illose** ՓԷՓ'ԻՈՒԼԸՍ, ՓԷՓԻԼՕՍ, *a.* *պալարալից, շիտուտ։*

**Papyrus** ՓԷՓԱՅ'ՐԸՍ, *s.* [*pl.* -ri -'ՐԱՅ.] *եղէգ մը, պրտու, պապիրոս։*

**Par** ՓԱՐ, ՓԱ'Ր, *s.* *հաւասարագին, բուն գինն ունենալը, գլուխ գլխի գալը։* At . *գլուխ գլխի (արժէթուղթ)։* Above—. *շահաբաժինով։* Below—. *զեղչով, դրամազեղչով։* On a—. *հաւասար, հարթ։* —value. *անուանական արժէք արժէթղթոց, հանագին։*

**Parable** ՓԷՐ'ԷՊԼ, *s.* *առակ։*

**Parabola** -'ՊՕԼԷ, *s.* *զուգորդ։* **-boliform, -boloid** ՓԷՐԷՊԱԼ'-, *a.* *զուգորդակերպ։* **-bolist** ՓԷՐԷՊ'ԸԼԻՍԹ, *s.* *առակախօս։* **-boloid** ՓԷՐԷՊ'ԸԼՈՅՏ, *s.* *զուգորդակերպ։*

**Parabolic, -al** ՓԷՐԷՊԱԼ'ԻՔԸԼ, *a.* *այլաբանական, առակաւոր; 2. զուգորդական, լարաձիգ է.* **-ly**, *ad.* *առակով; 2. զուգորդօրէն։*

**Paracentric, -al** ՓԷՐԷՍԷՆ'-, *a.* *արտակեդրոն։* [*ժամանակութ.։*

**Parachronism** -ՐԷՔՐԸ'-, *s.* *յետ-*

**Parachute** ՓԷՐ'ԷՇՈՒԹ, *s.* *անկարգել (օդապարիկի), պահպանակ*

**Paraclete** ՓԷՐ'ԷՔԼԻԹ, *s.* *մխիթարիչ, Հոգին Սուրբ։*

***Parade** ՓԷՐԷՅՏ', *s.* *ցոյց, շուք, հանդէս, շռշականք; 2. զօրահանդէս, անցահանդէս։* =*va.* *ցոյց ընել, ձեւացնել; 2. զօրահանդէս ընել; 3. ժողվուիլ։*

**Paradigm** ՓԷՐ'ԷՏԻՄ, *s.* *յարացոյց, օրինակ (լծորդ.) ք.*

**Paradise** ՓԷՐ'ԷՏԱՅՍ, *s.* (*եդեմական*) *դրախտ, եդեմ, դրաստ, պարտէզ; 2. արքայութիւն, գերերջանիկ վիճակ, երկինք։* —Lost. *դրախտ կորուսեալ։* —Regained. *դրախտ վերագտեալ։* **-disiacal** ՓԷՐԷՏԻՍԱՅ'ԷՔԸԼ, *a.* *եդեմական։*

**Paradox** ՓԷՐ'ԷՏԱՔՍ, *s.* *այլան-*

դակ կարծիք, յարակարծիք։ -ical, *a.* նորօրինակ, յարակարծական։

Paraffine բէր'էֆֆին, *s.* հաստատուն և իւղային նիւթ, խայծաղանաճարպ, մոմանիւթ։ -matches. մոմապատ լուցկի շէմալը ֆիթիլի; 2. ծայրը մոմանիւթի թաթխուած լուցկի։

Paragoge բէրէկօ'ճի, *s.* վերջադրութիւն։ -gic, -al բէրէկոճ'իքըլ, *a.* վերջադրական։

Paragon բէր'էկըն, *s.* օրինակ, գաղափար։

Paragraph բէր'էկրէֆ, *s.* հատուած, պարբերութիւն; 2. հատուածի նշան, հատուածանշան (§)։ -ph'ic, -al, *a.* հատուածական։

Paraleipsis բէրէլայփ'սիս, *s.* յապաւում, զանցառութիւն հռ.

Parallax բէր'էլլէքս, *s.* տեղազանութիւն։ -lactic, -al -լէք'թիքըլ, *a.* տեղազանական։

Parallel բէր'էլէլ, *s.* զուգահեռագիծ; 2. նոյնութիւն, հաւասարութիւն; 3. զուգակշիռ, համեմատութիւն; 4. զուգ. խրամ, զուգահեռակ գիծ; 5. ուղղագիծ (||) տպ. =*a.* հաւասար հեռաւոր, զուգահեռական; 2. միօրինակ, հաւասար։ =*va.* զուգ. ընել, դնել; 2. հաւասարիլ։ -ism, *s.* զուգահեռականութիւն, հաւասար հեռաւորութիւն։ -ogram բէրէլլէլ'օկրէմ, *a.* զուգահեռագիծ, քառակողմեան ձև։ -opiped, -opipedon բէրէլլէլօբիբ'էտըն, *s.* զուգահեռանիստ

Paralogy, -gism բէրէլ'ըճիզմ, *s.* թիւր պատճառաբանութիւն, սուտ ձեռնարկութիւն։

Paralysis բէրէլ'իսիս, *s.* անդամալուծութիւն։ -litic, -al բէրէլիթ'իքըլ, *a.* անդամալոյծ ֆէօբրիւլ։ -lyze բէր'էլայզ, *va.* անդամալուծել, լուծել; 2. խափանել։

Paramount բէր'էմաունթ, *a.* գերագոյն, գերազանց; 2. բարձրագոյն, գլխաւոր, գերակայ։

Paramour բէր'էմուր, *s.* հոմանի, հոմանուհի; 2. սիրուհի հարճ։

Paranymph բէր'էնիմֆ, *s.* փեսաղբայր, հարսնեւոր, հարսնքոյր; 2. օգնական, ընկեր, ձեռնտու։

Parapet բէր'էբէթ, *s.* բարձրկեկ եզր, ծնօտ, պսակ, վանդակորմ, փայտորմ; 2. հողակոյտ ամբ.

Paraph բէր'էֆ, *s.* գծերու հիւսակ, պատուածք սահի։

Paraphernalia -ֆըրնէյ'լիէ, *pl.* կնոջապատկան (ինչք) արդուզարդք

Paraphrase բէր'էֆրէյզ, *s.* ընդարձակ մեկնութիւն՝ թարգմանութիւն, յարասութիւն։ =*an.* ընդարձակօրէն թարգմանել, լայնաբար մեկնել, յարասել, պարզաբանել։ -rast բէր'էֆրէսթ, *s.* ընդարձակ թարգմանիչ, մեկնիչ։ -rastic, -al բէր'էֆրէսթիքըլ, *a.* յարասական, ճոխագոյն, ազատ (թարգ.)։

Paraplegy, -gia բէրէբլի'ճի, -'ճիէ, *s.* կիսանդամալուծութիւն։

Paraquet, *See* Parrakeet.

Parasang բէր'էսէնկ, *s.* հրասախ, փարսախ ֆարսախ։

Paraselene բէրէսիլի'նի, *s.* երբեմն լուսնին շուրջը տեսնուած լուսաւոր շրջանակ, լուսնանմանութ.։

Parasite բէր'էսայթ, *s.* հացկատակ, պատառաբոյծ, պնակալէզ, ժիժ ցաղգաղուգ; 2. մակաբոյծ, օտարաբոյծ, այլաբուն (միջատ, բոյս) մակաբոյս, օտարաբոյն։ -tic, -al բէրէսիթ'իքըլ, *a.* պատառաբոյծ. մակաբուծական։ -tism -սիթ'իզմ, *s.* հացկատակութիւն; 2. մակաբուծութիւն, պատառաբուծութ. բս.

Parasol բէր'էսօլ, *s.* հովանոց, հովանիկ։ -ette, *s.* հովանոցիկ։

Parboil բար'պոյլ, *va.* կիսեփ ընել, թերխաշել։

**Parbuckle** բար՛պըքըլ, *s.* բեռնաբարձում ն—. =*va.* բեռ վերցնել։

**Parcæ** բար՛սի, *s.* պարկայ, երեքին դիցուհիք կենաց և մահու, ճակատագիր դէց.

**Parcel** բար՛սըլ, *s.* մաս, մասնիկ, կտոր, բաժին; 2. ծրար, կապոց, վաճառածրար, խերուծ; 3. հաւաքուած, կտորիկ էր. =*va.* [out] մաս մաս բաժնել։ =*aa.* մաս առ մաս, կտոր կտոր։ –post. թղթատարով ղրկուած ծրար foյի pouդայ։

**Parcenary** բար՛սինըրի, *s.* ժառանգակցութիւն։ –cener բար՛սինըր, *s.* տիրակից էր.

**Parch** բարչ(թ), *an.* խանձատել, խանձել, խանձիլ qավnուrմաq; 2. չորցնել, ազազել։ [գաղաթ։

**Parchment** բարչ՛մընթ, *s.* մա-

**Pard** բարտ, *s.* ինձ, ընձառիւծ։

**Pardon** բար՛տըն, *va.* թողութ. տալ, ներել; 2. շնորհել, ներողամիտ ըլլալ։ =*s.* թողութիւն, ներում; 2.ներողութիւն։ –able բար՛տընէպլ, *a.* թողելի, ներելի։ –ness –նէպլնէս. *s.* –ութիւն։ –bly, *ad.*

**Pare** բէէր. *va.* կեղեւել; 2. կոփել, քերծել; 3. յապաւել, կրճատել

**Paregoric** բէրիկօր՛իք, *a.* մեղմիչ, մեղմացուցիչ; 2. ցաւամոք (դեղ)։

**Parent** բէէր՛ընթ, *s.* ծնողք, հայր մայր; 2. պատճառ, սկիզբ, աղբիւր –age բէ՛րընթէճ, *s.* տոհմ, ազգականութիւն; 2. ծնունդ, սերունդ։ –al բէրէնթ՛ըլ, *a.* ծնողական, ծնելասէր, խանդակաթ։ –ly, *ad.*

**Parenthesis** բէրէն՛թըսիս, *s.* [*pl.* -ses –սիյզ.] միջանկեալ խօսք; 2. փակագիծ ( ) դր. –thetic, –al, *a.* միջանկեալ։ –thetically, *ad.*

**Parer** բէէր՛ըր, *s.* խանձող։

**Parget** բար՛ճէթ, *s.* պատի ծեփ։ =*va.* ծեփել։ –ing –՛ճէթին, *s.* ծեփ։

**Parhelion** բէրհի՛լիըն, *s.* արեւանմանութիւն, սուտարեւ —.

**Pariah** բա՛–, բէյ՛րիէ, *s.* հնդկաց յետին դասակարգէ մարդ, մերժիկ, ջղեբաց, տարամերժ, սինլքոր։

**Parian** բէյ՛րիէն, *s.* պարոսեան։

**Parietal** բէրայ՛էթըլ, *a.* որմական, որմաբոյս, պատի վրայ բուսնող, պատի; 2. կողմնական (գանկոսկր)։

**Paring** բէէ՛րին, *s.* կտուրք, կըտրած, յապաւած; 2. տաշեղ, տաշուք

**Parish** բէր՛իշ, *s.* թեմ. ժողովրդապետութիւն; 2. եկեղ. հասարակութիւն, ծխականք; 3. ծուխ, բնակիչ։ =*a.* թեմական, ժողովրդապետական։ –ioner բէրիշ՛ընըր, *s.* ծխական, ժողովուրդ; 2. ծուխ։

**Parisyllabic, –al** –էսիլ՛էպիքըլ, *a.* հաւասարավանկ, զուգավանկ։

**Parity** բէր՛իթի, *s.* հանգիտութիւն, նմանութիւն, հաւասարութ.

**Park** բարք, *s.* փակարան (երէներու), որսավայր; 2. ցանկապատ (խաշանց), չափար, մակաղատեղ; 3. ցանցապատ, ձկնորսարան; 4. զբօսավայր, որմափակ մեծ պարտէզ, ճեմավայր, դարաստան; 5. (բանակի) սայլեար, հրազէնք, մարտակառք։ =*va.* ցանկապատել, փակել, պահել։

**Parlance** բար՛լընս, *s.* խօսակցութիւն, խօսք, վրոյց, ոճ։

**Parley** բար՛լի, *vn* [with] (հաշտութեան համար) բանակցիլ. բանագնաց ըլլալ։ =*s.* բանակցութիւն, իրաւախոհութիւն։

**Parliament** բար՛լիմէնթ, *s.* խորհրդարան, աւագանեաց ժողով; 2. գերագոյն ատեան։ –arian, –ary –թ՛էյրիէն, *a.* խորհրդարանական։

**Parlor** բար՛լըր, *s.* ողջունարան, խօսարան, հիւրանոց։

**Parochial** –՛քիըլ, *a.* թեմական։

**Parody** բէր՛ըտի, *s.* գրուածքի

մը ծաղրական նմանութիւն, յարերգութիւն, ծեքենայ։ =va. ծեքենայել։ -dist, s. յարերգու։

**Parol, Parole** բէրըլ՛, բէրօլ՛, s. զրոյց, տուացուած, խօսք էր; 2. խոստում, պատուոյ խօսք; 3. անցախօս բառօշա։ =a. բերանացի, անգիր։

**Paronomasia** բէրընըմէյ՛ժիէ, s. յարաբանութիւն (զնր. pray, tray) -nym, -nymous բէրան՛իմըս, a. յարանուն, նոյնահնչիւն (բառ) զոր. All, awl. 2. լծորդ, նոյնարմատ։

**Paroquet** -՛ըքէթ, s. պապկայ։

**Parotid** բէր՛աթիտ, s. ունկնադեղձ, ունկնակ։ =a. -ային։

**Paroxysm** բէր՛ըքսիզմ, s. բորբոքում, զայրագնութ., գրգռում; 2. զայրոյցք բժ. -al բէրըքսիզ՛մըլ, a. ցնցական; 2. զայրացկոտ։

**Parquet, -quette** բարքէյ՛, բէրքէթ՛, s. գուսանադաս, երաժշտախումբին ետեւի մասը թատ.; 2. գետնայարկ (թատրոնի)։ -ry բար՛քէթրի s. տախտակայատակ, տախտակամած։

**Parr** բար, s. լոսդիկ ձկ.

**Par'rakeet**, s. պապկայ մը։

**Parricide** բէր՛իսայտ, s. ծնողասպան, հայրասպան, մայրասպան, հաւասպան; հայրենադաւ։ -cidal բէրիսայ՛տըլ, a. -ական։

**Parrot** բէր՛ըթ, s. թութակ։

**Parry** բէր՛ի, an. զգուշանալ, խոյս տալ; 2. առջեւն առնուլ, ի դերեւ հանել։

**Parse** բարս(զ), va. վերլուծել, [լուծել +.

**Parsee** բար՛զի, բարսի՛, s. կրակապաշտ, զրադաշտական, պարսիկ։ -ism, s. զրադաշտական կրօն։

**Parsimonious** բարսիմօ՛նիըս, s. չափազանց խնայող, կցիր, կծծի։ -ly, ad. -ness, Par'simony բար՛սիմընի, s. կծծիութիւն, խնայողութիւն։

**Parsley** բարս՛լի, s. ազատքեղ մայդանոս։ [զար, քշուր։

**Parsnip, -nep** բարս՛նիփ, s. գա-

**Parson** բար՛սն, s. ժողովրդապետ, քահանայ. թեմերէց; 2. եկեղեցական։ -age բար՛սնէճ, s. երիցատուն։

**Part** բարթ, s. մաս, կտոր, բաժին; 2. մաս, մասնակցութիւն, գործակցութիւն, հաղորդութիւն; 3. վիճակ, տեղ; 4. շահ, շահակցութիւն; 5. անձ, կողմ; 6. դեր, բաժին թատ.; 7. նուագամաս։ =va. [from, with] բաժնել, կիսել, բաշխել; 2. որոշել, զատել, անջատել; 3. միջամտել։ =vn. բաժնուիլ, զատուիլ, մեկնիլ։ In good—. բարեկամաբար։ In ill—. դժգոհանօք, ակամայ։ For the most—. ընդհանուր առմամբ։ For my—. ըստ իս, իսկ ես, իմ մասիս։ In part. մասամբ մը։ -and parcel. էական մաս, բաժին։

**Partake** բարթէյք՛, an. [of] հաղորդ՝ մասնակից ըլլալ; 2. մաս՝ բաժին ունենալ, մասնակցիլ, հաղորդիլ։

**Partaker** բարթէյք՛ըր, s. [of, in] մասնակից, հաղորդ, կցորդ։

**Parter** -՛ըր, s. բաժնող, զատող։

**Parterre** -թէր՛, s. ծաղկոց, ածու

**Partial** բար՛շըլ, a. [to] մասնակի, մասնաւոր; 2. կուսակից, աչառու, կողմ քաշող, թեր եղող։ -ly, ad. մասամբ; 2. ակնառութեամբ։

**Partiality** բարշիէլ՛իթի, s. [to, for] կողմնակցութիւն, աչառութ.։

**Partible** բարթ՛իպլ, a. բաժանական, բաժանելի։ -bility, s. -ութիւն։

**Participant** բարթիս՛իփէնթ, a. մասնակից, հաղորդ, կցորդ։

**Participate** -ս՛իփէյթ, vn. [in, of] մասնակցիլ, մաս ունենալ; 2. հաղորդ ըլլալ; մաս՝ բնութիւն ու-

նենալ։ -tion, s. մասնակցութիւն, մաս, բաժին; 2. բաշխում, բաժանում։ -tive բարդիսի'բէյդիվ, a. մասնակցական։ -tor բարդիսի'բէյդըր, s. հաղորդ, մասնակցող։

Participial բարդիսիբ'իըլ, a. դերբայական։ -ly, ad. դերբայօրէն։

Participle բարդիսի'բըլ, s. ընդունելութիւն, դերբայ։ [մասնիկ։

Particle բար'դիքըլ, s. պզտի մաս;

Particular բըրդիք'իուլըր, a. մասնաւոր, առանձին, յատուկ, ուրոյն, առանձնայատուկ; 2. մանրամասն, մազմզող, մըզմըզ, ճիշդ, բծախնդիր; 3. ինքնուրոյն, նորանշան, անսովոր։ =s. առանձին մասնաւոր, մանրամասն մանրապատում, հանգամանք; 2. մասնաւորը, առանձնականութիւն։ In-. մասնաւորապէս, առանձինն, յայտնի, զատ, ինքնուրոյն։ -ly, ad. մասնաւորաբար, որոշակի, զատ, յատկապէս, մի քառ մինչէ, մանրամասնաբար։

Particularity -լէր'իդի, s. մասնաւոր պարագայ, առանձին յատկութիւն, հանգամանք, մանրամասնութիւն։ -larize բարդիք'իուլըրայզ, va. մանրամասնաբար պատմել, մասնաւորել, մանրամասնել։

Parting բարդ'ին, s. բաժանում, անջատում; 2. մաս, բաժին, բաժ։

Partisan բար'դիզըն, s. կուսակից, համախոհ, կողմնածու; 2. մեկնակայքնուց զօրավար; 3. անկանոն զօրք, մեկնաղէն պաշը պօզուգ; 4. դեղարդ մը, արդն։ -ship, s.

Partition բըրդի'շըն, s. բաժանում, անջատում, բաշխում; 2. (խուցերու) միջնորմ [illegible]։ =va. բաժնել; 2. միջնորմել, անջրպետել։ -tive բար'դիդիվ, a. մասնական։

Partly բարդ'լի, ad. մասամբ։

Partner բարդ'նըր, s. բաժանորդ, ընկեր, ընկերակից; 2. պարակից; 3. ըծակից, կողակից։ Sleeping, silent, dormant-. գլխադիր ընկեր [illegible] Limited. կը. Managing-. պատասխանատու ընկեր։ -ship, s. ընկերակցութիւն։

Partridge բար'դրիճ, s. կաքաւ։

Parturient բարդիու'րիընդ, a. ծննդական, տղաբերքի վրայ (կին)։ -turition բըրդիու-րի'շըն, s. տղաբերք

Party բար'դի, s. կուսակցութ., կողմ, դրոշ; 2. խմբեակ, ակումբ, հաւաքոյթ; 3. կուսակից, կողմնակից; 4. լրտես զօրագունդ; 5. հակառակ կողմ, դատախազ էր; 6. անհատ, անձ -colored. խայտաբղէտ, նախշուն։ -jury. (տեղացի-օտար) խառըն երդուեալք։ dinner-. երեկոյթ

Parvenu բարվ'նու, s. նորէն հարստացած, պտկէն ծաղկած, չտես

Paschal -'քըլ, a. զատկական։

Pasha բէշ'շէ, բա'շա, s. բաշա։

Pasque-flower բէսք'ֆլաուըր, s. փենուհա, դարունած, խաչափայտ, ծափկոտրուկ։

Pasquin, -ade բէ'սքուին, -էյտ', s. գուեհիկ երգիծանք, պասկինոյդ։

Pass բէս, բաս(դ), vn. անցնիլ, երթալ; 2. աւրուիլ, թուռիլ կորսուիլ; 3. տեղի ունենալ, պատահիլ; 4. շրջաբերիլ; 5. վաւերանալ, ընդունուիլ =va. անցնիլ; 2. անցունել, յանձնել տալ; 3. արտասանել, խօսիլ; 4. անդին անցնիլ, գերազանցել; 5. զանց ընել, թողուլ։ To bring to-. կատարել, ընել։ To come to-. տեղի ունենալ, ըլլալ։ To let-. ժիշել չտալ։ To-along. անցուդարձ ընել, երթալ գալ։ To-away. սահիլ, անցնիլ, թառամիլ։ To-by. վրայէն անցնիլ, զանց ընել; չսեպել։ To-for. ի նպաստ տրուիլ; ծախել իբր։ To-on, upon. va. որոշել, սահմանել; վճռել։ To-out. դուրս ելլել։ To-

over. զանց ընել, չյիշել: To—water. միզել, ջուր Թափել:

Pass բէս, s. անց, կիրճ; 2. անցագիր, մուտք, արտօնագիր, անցք; 3. հարուած (սրի); 4. ձեռաց շարժում, ձեռնաշարժք; 5. վիճակ, դիրք: -book. հաշուէգիրք: —key. համաբանալիք: -word. անցախօս: —able, a. անցնելիք, անցուելիք; 2. ընդունելի; 3. միջակ, չափաւոր: —ably, ad. ըստ բաւականին, գոհ մնալու չափ, սանկ նանկ: —ade,—do բէսէյտ', a. բէսա'տօ, s. սրի հարուած; 2. ձի վազցնելը:

*Passage բէս'էճ, s. անցնիլը, անցում, անց; 2. ճանբայ, երԹեւեկ, չու, նաւարկուԹիւն; 3. անցադին, ուղեգին, անցատուրք; 4. մահ, փոխումն; 5. սրահ, նրբանցք; 6. դէպք, պատահար; 7. հատուած (գրքէ մը), նուագամաս; 8. վաւերացում (օրինաց):

Passant, a. քալող (կենդ.) Ֆր.

Passenger բէս'էնճըր, s. անցորդ, անցուոր, ճամբորդ, ծովուոր:

Passe-partout բասբարթու', s. համաբանալիք, հասարակաց բանալի; 2. համաշրջանակ.

Passer բէս'ըր, s. անցորդ, ճամբորդ: -by. անցուոր: [կայ:

Passerine բէս'ըրին, a. ճնճղ-

Passible բէս'իպըլ, a. ցաւ՝ հաճոյք զգալու կարող, կրական, ախտակիր: —bility, s. —ուԹիւն:

Passim բէս'իմ, ad. հոս, հոն:

*Passing բէս'ին, a. գերագոյն, գերազանց: =s. վաւերացում (օրինաց) Ան. -bell. մահու զանգակ:

Passion բէշ'ըն, s. կիրք, յոյզք, հոգւոյ կարիք; 2. չարչարանք (Քրիստոսի); 3. փափաք, կրաւորուԹիւն; 4. բարկուԹիւն; 5. սէր, տռփ, տարփանք, ախտ, հրայրք, կիրք; 6. մոլեկան սէր, զգացում, եռանդ, սաստիկ տենչ; 7. սիրոյ առարկայ, սիրական: -flower. անուածաղիկ, խաչածաղիկ: —Sunday. Դալարեաց Կիրակի: -tide. Զ—է. կիրակի Մեծի Պահոց: -week. աւագ շաբաԹ, չարչարանաց եօԹնեակ:

Passionate բէշ'ընէյթ, a. դիւրագրգիռ, կրքոտ; 2. խանդավառ, կամԹոգին, ջերմ; 3. սիրատարփ, սիրաբորբոք; 4. զարնուած, սիրահարեալ: —ly, ad. սաստիկ, խանդագին: —ness, s.

Passionless բէշ'ընլէս, a. առանց կիրքի, հանդարտ, լուրջ:

Passive բէս'իվ, a. կրող, հլու, անգործ; 2. կրաւորական (բայ): —ly, ad. կրաւորապէս: —ness, s. հլուԹիւն, հանդարտուԹիւն:

Passless բէս'լէս, a. անանց, անելանելի, կապուած:

Passover բէս'օվըր, s. պասեք, պասք; 2. զատկական գառ (հրէից)

Passport բաս'բօրթ, s. անցագիր. ճամբու Թուղթ (օտար երկրի)

Past բասթ, a. անցեալ, անցած; 2. անցած գացած, լմնցած:

Paste բէյսթ, s. զանգուած, հայս, խմորիս, խմոր; 2. սուտ քար՝ ադամանդ, դրուշայ; 3. զանգուած, գլխաւոր նիւԹ ժայռի; 4. սինձ, մածուկ; 5. կափոց, խիստ սոսինձ նկարչաց: =va. սոսնձել, փակցնել, կպցնել: -board. խաւաքարտ:

Pastel բէս'թէլ, s. ներկամատիտ; 2. լրջաբոյս, կոկում յիվիs օրու

Pastern բէս'թըրն, s. ձիու սատակայի տեղ, ճախանաց:

Pastil,-tille բէս'թիլ, -թիյլ', s. անուշահոտ ծխելիք. բու բակ գուru, pkԱunւՓ; 2. խիժաշաքար, անանխահաս, անուշահամ գնդակ; 3. ներկամատիտ:

Pastime բէս'թայմ, s. ԹեԹեւ զբաղմունք, զբօսանք, ժամանց:

Pastor բա՛սթըր, *s.* հովիւ, խաշնարած; 2. հոտապետ, երէց, քարոզիչ։ -ship, -torate -՛թըրշիփ, *s.* երիցութիւն, հովուութիւն։

Pastoral բէ՛սթըրըլ, *a.* հովուական։ =*s.* հովուերգութիւն։ -ly, *ad.* իբր հովիւ, հովուաբար։

Pastorale բասթըրա՛լէյ, *s.* հովուերգ եր; 2. հովուապար։ [It.]

Pastry բէյ՛սթրի, *s.* ծաղ, պղպակունդ, խմորեղէն։ -cook. ծաղաբար

Pasturage բէ՛սչըրէճ, *s.* հովուութիւն, խաշնարածութիւն; 2. արօտ, արօտավայր; ճարակ, մարգ։

Pasture բէ՛սչըր, *s.* ճարակ, կեր, խոտ; 2. արօտ։ =*an.* ճարակիլ, արածուիլ; 2. արածել։

Pasty բէյ՛սթի, *s.* կարկանդակ։

Pat բէթ, *a.* ճիշդ, յարմար։ =*ad.* (յարմար) ատենին, ժամուն; 2. ի դէպ։ =*s.* (ձեռքի, մատի) զարնուածք, հարուած; 2. շերտ, կտոր։ =*va.* դափդափել, մեղմով զարնել։

Patch բէչ(թ), *s.* կարկտան, կապերտ, կտոր; 2. շինծու պիսակ (քօղ); 3. հողի մաս, կտոր։ =*va.* կտոր դնել, կարկտել, նորոգել; 2. կեղծ պիսակ՝ քօղ դնել; 3. շտկել՝ շտկռտել։ -work. կարկտուն՝ երփնազարդ վերմակ։

Pate բէյթ, *s.* խելապատակ։

Paten բէթ՛ըն, *s.* սկաւառակ; 2. մաղզմայ (սկիհի)։

Patent բէթ՛-, բէյ՛թընթ, *a.* յայտնի, աններեւ; 2. տարածուն բ.; 3. արտօնեալ։ =*s.* հրովարտակ, վկայագիր, թուղթ; 2. արտօնագիր, մենաշնորհ։ =*va.* արտօնագրել։

Patentee -թիյ՛, *s.* արտօնատէր։

Paternal բէթըր՛նըլ, *a.* հայրենի, հօր կողմանէ, հօրենական։

Paternity -՛նիթի, *s.* հայրութ.

Paternoster բէյ՛թըրնաս՛թըր, *s.* Հայր մեր; 2. օրհնարան, համրիչ։

Path բաթհ, *s.* [*pl.* բաթհզ] ճանապարհ. ուղի, պողոտայ; 2. շաւիղ, արահետ։ -finder. հետախոյզ, հետահան։

Pathetic բէթհէթ՛իք, *a.* սրտառուչ, հոգեյոյզ, յուզիչ։ -ally, *ad.*

Pathless բաթհ՛լէս, *a.* անկոխ։

Pathognomonic բէթհօգնօմօն՛իք, *a.* ախտացոյց (նշան) եւ.

Pathology բէթհօլ՛օճի, *s.* ախտաբանութիւն։ -gist -հօլ՛օճիսթ, *s.* ախտաբան։ -gic, -al, *a.* -ական։

Pathos բէյ՛թհօս, *s.* հոգեյոյզ ձեւեր, կիրք, պաճուճազարդ բանք

Pathway բաթհ՛ուէյ, *s.* կածան, նրբուղի, արահետ։ [կրելի։

Patible բէթ՛իպըլ, *a.* տանելի,

*Patience բէյ՛շընս, *s.* համբերութիւն, համբերք; 2. երկայնմտութիւն, յարատեւութիւն; 3. աւելուկ, բոյսի աշխուն օրոււ։ -dock. օձտակ, մանդակ բ. Patient բէյ՛շընթ, *a.* [in, with, of, under] համբերող, համբերատար, երկայնամիտ; 2. հիւանդ (բժշկի ձեռք); 3. կրող, ենթակայ։ -ly, *ad.* համբերութեամբ; հանդարտութեամբ։

Pat'in, *s.* մաղզմայ (սկիհի)։

Patois բէթուա՛, *s.* գեղջկաբարբառ, կոշտայ, յոխալեզու։

Patriarch բէյ՛թրիարք, *s.* նահապետ; 2. հայրապետ; 3. պատրիարք -al, -ic բէյթրիալ՛քըլ, -՛քիք, *a.* -ական -ate, -ship, -archy բէյթրիարք՛էյթ, -արքշիփ, -արքի, *s.* պատրիարքութիւն; 2. հայրապետութիւն; կաթողիկոսութիւն; 3. պատրիարքարան, կաթողիկոսարան։

Patrician բէթրիշ՛ըն, *a.* ազնուական, պատրիկական։ =*s.* իշխանազուն, ազնուական, պատրիկ։

Patricide բէթ՛րիսայտ, *s.* հայրասպան; 2. հայրասպանութիւն։

Patrimonial բէթրիմօն՛իըլ, *a.*

հայրենական; 2. պապենական։ -ly, *ad.* ժառանգութեամբ։

Patrimony բէթ'րիմօնի, *s.* (հօրենական) ժառանգութիւն, հայրենական ստացուածք; 2. (եկեղեցական, վանապատական) կալուածք։

Patristic, -al բէթրիս'թիքըլ, *a.* հայրապետական՝ նախնի հարց։

Patrol բէթրօլ', *s.* գիշերապահութիւն; 2. գիշերապահք զաւրագօլ։ =*an.* պահակ շրջիլ, պտտիլ։

Patron բէյ'թրըն, *s.* դերետէր, տանուտիկին, տանուտէր, տէր Հ; 2. պաշտպան, թեւարկու, ջատագով, բարեկամ; 3. պաշտպան՝ անուանակիր սուրբ; 4. փաստաբան; 5. (ժամի) հաւատարմակալ; 6. յաճախորդ, ծուխ; 7. խնամակալ։ -less, *a.* անպաշտպան։

Patron-: -age բէթ'րընէճ, *s.* պաշտպանութիւն, հովանաւորութիւն; 2. խնամակալութիւն եկ. -al բէյթ'րընըլ, *a.* պաշտպան, պահապան։ -ess բէյթ'րընէս, *s.* պաշտպանուհի։ -ize բէթ'րընայզ, *va.* պաշտպանել, ձեռք բռնել, օգնել։ -imic,-al -նիմ'իքըլ, *sa.* հայրանուանական; -նունութիւն։

Patroon բէթրուն', *s.* տանուտէր

Patten բէթ'ըն, *s.* սանդալ, չըմուշկ, փայտմոյկ; 2. սեան ոտք։

Patter բէթ'ըր, *vn.* (անձրեւը, կարկուտը) թափթափել, տրոփել, թնդակոծել; 2. (աղօթք) մրմնջել։ =*s.* կարկուտի ձայն, տրոփ։

Pattern բէթ'ըրն, *s.* կաղապար, օրինակ, նմոյշ, փորձ, ծրագիր; 2. տիպար։ =*va.* օրինակել, նմանցնել; 2. օրինակ ըլլալ։ To—after. հետեւիլ, նմանող ըլլալ, նմանիլ։

Patty բէթ'ի, *s.* մանր կարկանդակ, փոկեղ։ -pan. ծաղպնակ։

Paucity բօ'սիթի, *s.* քիչութիւն

Paugie բօգ'ճի, *s.* բոցաձուկ։

Paulician բօլիշ'ըն, *a.* պաւղիկեան, թոնդրակեցի (աղանդ)։

Pauline բօ'լայն, *a.* Պաւղոսի։

Paunch բօնչ, *s.* նախաստամոքս (որոճայնոց); 2. փոր, փորոտիք։

Pauper բօ'բըր, *s.* խեղճ, աղքատ, մուրացիկ, չքաւոր։ -ism, *s.* -ութիւն։ -ize, *va.* աղքատացնել

Pause բօզ, *s.* հանգիստ, դադար, դուլ; 2. միջոց, առկախում; 3. լռութիւն, հանգիստ ⌒ եր. =*vn.* դադար տալ, հանգիստ առնուլ, կենալ; 2. սպասել, տատամսիլ։

Pave բէյվ, *va.* քարայատակ շինել, յատակել; 2. շտկել, դիւրացընել։ -ment, -ing բէյվ'մընթ, բէյ'վինկ, *s.* մոյթ, քարայատակ, սալայատակ, սալարկ skoշkմk։

Paver, Pavier, Pavior բէյվ'ըր, բէյվ'իըր, *s.* յատակիչ, սալարկու

Pavilion բէվիլ'իըն, *s.* վրան, խորան, տաղաւար; 2. պորմ fkoշf; 3. դրօշ, ազգադրօշ, ազգային դրօշակ, նշան (նաւու); շակ; 4. ականջամուտք մրդ. =*va.* վրան հարկանել՝ բանալ՝ լարել։

Pavonine բէվ'-, *a.* սիրամարգի։

Paw բօ, *s.* թաթուլ; թաթ, թաթիկ, տոտիկ; 2. (առիւծի) ճիրան, ճանկ; 3. ձեռք, թաթ։ =*an.* ոտքերը գետին զարնել, թոփել; 4. օրօրտկել, կոխկռտկել։

Pawl բօլ, *s.* սղոցաձեւ անիւ։

Pawn բօն, *s.* գրաւ, գրաւական, ապահովութիւն; 2. (ճատրակի մէջ) վահանակ, հետեւակ սիհsաf։ =*va.* գրաւ դնել։ -broker. (գրաւով) փոխատու, գրաւառու։

Pawnee բօնի, *s.* գրաւառու։

Pawner, -nor բօ'նըր, *s.* -տու։

Pax բէքս, *s.* խաչելութ. (պատկ.)

Paxwax, Paxywaxy բէքս'ուէքս'ի, *s.* հրհրճուկ, կարշ (վզի) է.

Pay բէյ, *va.* [*pp.* Paid բէյդ]

(for, to, with) վճարել, հատուցանել, ցնծալ, տալ; 2. վարձատրել, տուժել; 3. պատժել, ծեծել; 4. քաւել, տուժել; 5. կպրաձիւթել (նաւը)։ =vn. հատուցում ընել, պարտքը տալ։=s. վճարում, վճարք; 2. վարձ, հատուցում; 3. թոշակ։ To–down. վճարել, համրել։ To–for. փոխարինել, քաւել, տուժել։ To–off. հաշիւը տեսնել, ճամբել; կամացնալ (նաւը)։ To–on. վճարումը շարունակել; կրել, քաւել։ To–out. (չուանը) դուրս տալ վիրա նոյնպէս. To–up. հաշիւը գոցել, վճարել։ -bill, list, roll. թոշակառուաց ցանկ՝ ցուցակ, մուրհակ այլն։ –day. ամսականաց՝ պարտքի վճարման օր։ -master. գանձապետ նո. վճ.

Payable բէյ՛էպլ, a. վճարելի։

Payee բէյի՛, a. վճարուելիք, առ որ կվճարուի, փոխ/գրի տէր, կրող։

Payer բէյ՛էր, a. վճարող, ընդունող փոխ/գրի ևն.

Payment բէյ՛մէնթ, s. վճարում, հատուցում; 2. վճարք, փոխարէն։

Paynim, *See* Painim.

Pea բիյ, s. [*pl.* Peas, Pease բիյզ] ոլոռ պիզելիա; ծաղկոլոռ ։ –nut. գետնապիստակ, նաև արաշիդ

Peace բիյս, s. խաղաղութիւն, անդորրութիւն; 2. հանդիստ, հանդարտութիւն, լռութիւն; 3. հաշտութիւն, համաձայնութ. -maker. հաշտարար, խաղաղարար։-offering. խաղաղութեան զոհ։ -officer. հաշտարար (դատաւոր)։ Peace! լռութի՛ւն, լո՛ւռ, լո՛ւռ կեցէք։

Peaceable, Peaceful բիս՛էպլ, -՛ֆուլ, a. խաղաղ, -ասէր, -ական; 2, հանդարտ, անվրդով, անխռով; 3. լուռ։ –ness, s. –ութիւն։–ly, ad. հանդարտիկ, խաղաղիկ, լռիկ։

Peach բիյչ, s. դեղձ, դեղձենի։

=an. ամբաստանել; 2. չարախօսել։

Peacock բի՛գոգ, s. սիրամարգ։

Peak բիք(ք), s. լեռան սուր գագաթ՝ ծայր, սար, կատար; ցրուկաձողի սայր ևն. =va. ծայրը վերցնել, տնկել։–ed բիյքտ, a. սրածայր

Peal բիյլ, s. թնդիւն, բոմբիւն, որոտում; 2. շառաչիւն, ղօղանջիւն։=vn. թնդալ, հնչել, որոտալ։

Pean բիյն, s. յաղթութեան երգ

Pear բէր, s. տանձ։

Pearl բըրլ, s. մարգարիտ; 2. աստառի նման, որ և Mother of–, Nacre; 3. ակնուագոյնը, գոհար; 4. շիթ, կաթիլ, պղպջակ (ցօղի); 5. ամենամանր տառ, մարգարտատառ, բարիկեան տառ տպ. –ash. կալաքար զալիյէ բաշը ։ –oyster. մարգարտաբեր։-white. փոշեանգոյր։

Pearly բըրլի, a. մարգարտեայ; -ազարդ, -այեռ, -ափայլ; -նման։

Pearmain բէրմէյն՛, s. խնձոր մը

Peasant բէզ՛ընթ, s. գիւղացի, գեղջուկ, շինական; 2. անկիրթ, անոպայ։–ry բէզ՛ընթրի, s. գիւղացի տարրը, շինականք։

Peas-cod, s. (բակլայի) պատիճ։

Pease բիյզ, *pl.* ոլոռունք։

Peat բիյթ, s. կիզահող, աթար, հողածուխ, տորֆ նաև ֆքօմպուրիւ, ֆնուքֆ։–bog. հողածուխ, աբիք նաև թեզքեյի։ –moss. աթարեղէնք; կիզահողք; թխաքար ։

Peaty բիյ՛թի, a. աթարային։

Peba բի՛պէ, s. խեցեբէ։

Pebble բէպ՛լ, s. խիճ, մանրախիճ, կոպիճ չագըլ; 2. ժայռ, սոր։

Pebbly բէպ՛լի, a. կոպճուտ ։

Pecan,–na բիգէ՛նա,s. ընկոյզ մը

Peccable բէք՛էպլ, a. մեղանչական։ –bility, s. -ութիւն։

Peccadillo բէքէտիլ՛օ, s. թեթեւ մեղք, փոքրաւոր մեղք։

Peccant բէք՛ընթ, a. մեղաւոր,

յանցաւոր; 2. գէշ, վատ, աւրուած։

**Peccancy** բէ+'էնսի, *s.* ապականութիւն; 2. մեղք, յանցանք։

**Peccary** բէ+'-, *s.* մշկախոզ։

**Peccavi** բէ+էյ'վայ! մեղայ։

**Peck** բէ+(ք), *s.* գրիւի չորրորդը (9.08 լիտր); գեղ, շեղջ (վշտաց), կոյտ, բազմութիւն ։ =*an.* կտցել, կտցահարել, (կտուցով) զարնել; 2. խթանել; փորել, բրել։ -er բէ+'ըր, *s.* կտցահար; 2. փայտփոր ԲԻ.

**Pectinal**; -tinate, -ted բէ+'թինըլ, բէ+'թինէյթ, *a.* սանտրաձև, սանտրեայ (ձուկ, տերեւ) ։

**Pectoral** բէ+'թըրըլ, *a.* կուրծքի, լանջային; կուրծքի օգտակար, լանջապայծ (դեղ)։ =*s.* լանջապանակ Սէ; 2. լուղաթեւ, թեւանակ (ձկան); 3. լանջադեղ ։

**Peculate** բէ+'իուլէյթ, *vn.* խորել, նենգել, գողնալ, իւրացնել (հասարակաց գանձէն)։ -tion բէ+իուլէյ'շըն, *s.* իւրացնելը, խորում, գանձահատութիւն։ -tor -'թըր, *s.* գանձահատ, գող, կափիճ ։

*Peculiar բէ+իու'լիըր, -'եար, *a.* [to] առանձին, մասնաւոր, յատուկ, իւկայատուկ, ուրոյն, սեպհական; 2. նորանշան, արտառոց, եզական, զարմանալի։ =*s.* անձնական ստացուածք; 2. (առանձին իրաւասութիւն ունեցող) ժողովրդապետութիւն, թեմ ։ -ize բէ+իու'լիըրայզ, *va.* առանձնաւորել, մասնաւորել։ -ly, *ad.* մասնաւորապէս, յատկապէս; 2. մանաւանդ; 3. առանձինն, անսովոր կերպով ։

**Peculiarity** բէ+իուլիէր'իթի, *s.* առանձնայատկութիւն, մասնաւոր հանգամանք; 2. մասնաւորութիւն։

**Pecuniary** բէ+իու'նիէրի, *s.* դրամական, ստակի։

**Pedagogic**, -al բէտէկօ'ճի+, *a.* մանկավարժական, վարժապետական։ -gics -կօ'ճի+ս, *pl.* մանկավարժութիւն։ -gism -'էկօճիզմ, *s.* վարժապետութիւն։ -gogue բէտ'էկօկ, *s.* վարժապետ, պատուելի։

**Pedal** բէ'տըլ, *a.* ոտքի, ոտից։ =բէտ'ըլ, *s.* ոտնափող (երգեհոնի); 2. ոտնդիր, ոտնաբան (դաշնակի)։

**Pedant** բէտ'ընթ, *s.* իմաստակ, սնապարծ, սոփեստ; 2. նրբակրկիտ։ -ic, -al բէտ'ընթի+ըլ, *a.* իմաստակի, իմաստակական։ -ly, *ad.* -ry բէտ'ընթրի, *s.* հմտութիւն ծախելը, իմաստակութիւն ։

**Peddle** բէտըլ, *an.* ապրանք պըտըտցնել; 2. չնչին բաներով զբաղիլ։

**Peddler**, **Pedlar** բէտ'լըր, *s.* ոտքի վրայ բան ծախող, փերեզակ։

**Peddlery** բէտ'լըրի, *s.* փերեզակութիւն; 2. փերեզեղէնք ։

**Pedestal** բէտ'էսթըլ, *s.* պատուանդան, ոտք զախսկ, ֆիւրաիւ։

**Pedestrian** բէտէս'թրիըն, *a.* ոտքով, հետի, հետիոտն ։ =*s.* հետեւակ։ -ism, *s.* հետեւակութիւն։

**Pedicel** բէտ'իսէլ, *s.* պզտի կոթուն, ծղիկ, կանթիկ, կոռ բս.

**Pedigree** բէտ'իկրի, *s.* ազգաբանութիւն, ճիւղահամար, պորտ։

**Pediment** բէտ'իմէնթ, *s.* եռանկիւնաճակատ, ճակտոց, մաղճամ սայաց ։

**Pedobaptism** բէտօպէփ'թիզմ, *s.* մանկամկրտութ.։ -tist, *s.* -ական։

**Pedometer** բէտոմ'էթըր, *s.* ուղեչափ, քայլաչափ գ.

**Peduncle** բէտըն+'լ, *s.* կոթուն (ծաղկի պտղի)։ -cular, *a.* կոթնաւոր

**Peek** բիյ+, *vn.* (գողունի) նայիլ։

**Peel** բիլ, *an.* կեղեւը հանել, կեղեւել, գերծուլ, քերթել; 2. յափշտակել, կողոպտել; 3. մերկանալ, (հանդերձը) հանել։ =*s.* կաշի, մաշկ, կեղեւ, փեճեկ; 2. փուռթի, հրթի, հացագործի թի;

3. տպուած թերթերը չորցնելու համար չուաններու վրայ փռելու ձող, տարածոց դզ. գ. -er բիյ'լըր, s. կեղեւող; 2. կողոպտող:

Peen բիյն, s. մուրճի սուր կողմ:

Peep բիյփ(դ), va. (ձագերը) ճռուողել, ճուալ; 2. գողունի ակնարկ նետել, գաղտագողի՝ կիսախուփ նայիլ; 3. երեւնալ, գլուխ ցցնել: =s. ճռուողիւն, ճլուըտուն, ճիւճիւ; 2. հարեւանցի ակնարկ գողունի նայուածք: —hole. գողունի նայելու ծակ: —show. *See* Raree-show. -er բիյփ'ըր, s. նորածին ձագ, պիլիկ, պուպուլ; 2. գաղտնադէտ, լրտես; 3. աչք:

Peer բիյր, s. հաւասար; 2. զոյգ, նման, ընկեր, վարուժան; 3. սեպուհ, լորտերու ժողովի անդամ, ազնուական: =vn. կիսախուփ նայիլ, դիտել; 2. երեւնալ: -age բիյր'էճ, s. աւագութ; 2. ազնուականութիւն, ազնուական դասակարգ (որք են՝ պարոն, դերկոմս, կոմս, մարքիզ եւ դուքսի տիտղոս ունեցողք) Ան. -ess բիյր'էս, s. ազնուականուհի, լորտուհի:

Peerless բիյր'լէս, a. աննման, գերազանց: -ly, ad. անքաղդատելի: -ness, s. -ութիւն:

*Peevish բիյ'վիշ, a. դաժան, դէգ թիթիզ; 2. անտանելի, անհամբոյր: -ly, ad. անհաճոյ կերպով: -ness, s. -ութիւն:

Peg բէկ, s. երիթ, սեպ, ցից չիվի; 2. բոյթ (նուագարանի): =va. բոյթերով՝ ցցիկներով պնդել; 2. հեղուսել, վարսել, հաստատել:

Pehlevi բէյլէյ'վի, s. սասանեանց ժամանակ Պարսկաստան խօսուած լեզու (Գ—Է դար), պահլաւիկ, պահլաւերէն:

Pekoe բի'քօ, s. սեւ թէյ:

Pelagian բէլէյ'ճիէն, a. պեղագեան (աղանդ); 2. ծովու, ծովային:

Pelerine -'ըրին, s. թիկնոցակ:

Pelf բէլֆ, s. կարմրուկ, կրծոն:

Pelican բէլ'իքէն, s. հաւալուս, թռնձ, պեղական սօղուրպլագ, ռախամ ք.; 2. երկկտուց (թորանոց) դ.

Pelisse բէլիյս', s. մետաքսէ թիկնոց մուշկեակ, մուշտակ:

Pell բէլ, s. մորթ; 2. մագաղաթ: -icle բէլ'իքլ, s. նրբամաշկ, փառ: -et բէլ'լէթ, s. գնդակ: -mell բէլմէլ', ad. խառնիխուռն, տակնուվրայ, խառնաշփոթ:

Pellucid բէլլիու'սիտ, a. թափանցիկ, պայծառ, յստակ: -ness, -ity բէլլիուսիտ'իթի, s. -ութիւն:

Pelt բէլթ, s. մորթ քօսք; 2. զարնուածք: =va. (քար) նետել, զարնել: —monger. մորթագործ, մորթավաճառ: [պարանձեւ:

Peltate, -ted բէլ'թէյթ, a. աս-

Peltry բէլթ'րի, s. մորթեղէնք, մուշտակք; 2. չնչին՝ հասարակ իրեր

Pelvic բէլ'վիք, a. որովայնականքի:

Pelvis -'վիս, s. (որովայնա) կոնք

Pemmican բէմ'իքէն, s. (եղջերուի) ապուխտ, չորմիս, պեմիկ:

Pen բէն, s. գրիչ, ծայր; 2. փետրագրիչ, փետուր; 3. մատենագիր, գրագէտ; 4. փակարան, փարախ, (եղան); 5. բին, հաւբին, հաւնոց, հաւատուն: =va. գրել; 2. բնը դնել՝ խոթել, փակել, արգելցել: -holder. գրչակալ, կոթ: —case, —stock. գրչատուփ:

Penal բի'նըլ, a. պատժական: -ty բէ'նըլթի, s. պատիժ, պատուհաս; 2. տուգանք: [րանք:

Penance բէն'ընս, s. ապաշխա-

Penates բինէյ'թիզ, pl. ընտանի աստուածներ, թերափք: [նիներ:

Pence բէնս, pl. of Penny. բէն-

Penchant բանշան', s. զառիվայր, դար; 2. հակամիտութիւն, բերում:

Pencil բէն'սիլ, s. վրձին (նը-

կարչի); 2. մատիտ, կապար գրիչ; 3. նկարչութիւն; 4. ճառագայթ։ =*va.* նկարել, գծել; 2. գծագրել, նշանակել, մատիտել։

Pencraft բէն'քրէֆթ, *s.* վայելչագրութիւն; արուեստ գրչութեան

Pendant բէն'տէնթ, *s.* կախազարդ ծ; 2. գինդ, օղ; 3. օղի քար, գինդաքար; 4. նմանը, զոյգը; 5. դրօշ։

Pen'dency բէն'տընսի, *s.* առկախութիւն, անորոշութիւն; 2. յապաղում, յամեցում։

Pendent բէն'տընթ, *a.* կախ, կախուած, առկախ; 2. ցցուած։

Pending բէնտ'ինկ, *p. a.* առկախ, տարտամ, անորոշ։ =*pr.* միջոցին, ատեն, (գիշեր)այն, (ցորեկ)ով։

Pendulum բէն'տիւլըմ, *s.* ճօճանակ, կշուոց (ժամացուցի)։ –dulous բէն'տիւլըս, *a.* ճօճուն, երերուն, տատանող։

Penetrable բէն'ըթրէպլ, *a.* թափանցելի, թափանցիկ; 2. հասկանալի, իմանալի։ –bility, *s.* -ութ.

Penetralia բէնըթրէյ'լիէ, *s.* ներքնասենեակ; 2. սրբարան Հ.

Penetrance, –cy բէն'ըթրէնսի, *s.* ներս մտնելը, անցնիլը, թափանցում, թափանցութիւն։

Penetrate բէն'իթրէյթ, *va.*[into] մէջը մտնել, անցնիլ, թափանցել; 2. յուզել, ազդել, համակել; 3. խորերը մտնել, հասկնալ։ –tion -թրէյ'շըն, *s.* թափանցում; 2. խելամտութիւն, կորովամտութիւն, սրամտութիւն։

Penetrative, –ting բէն'իթրէյթիվ, *a.* թափանցող, սուր, կորովամիտ։ –ly, *ad.* խորաթափանց։ –ness, *s.* նրբամտութիւն։

Pen'guin, *s.* թեւատ, պարարճ.

Peninsula բէնին'սիւլէ, -ին'շիւլէ, *s.* թերակղզի, ցամաքակղզի։ –lar -ին'շիւլըր, *a.* թերակղզային։

Penis բի'նիս, *s.* առնանդամ։

Penitence բէն'իթընս, *s.* ապաշխարութիւն, զղջում, ապաշաւ։

Penitent բէն'իթընթ, -թէնթ, *a.* ապաշխարող, զղջացեալ, ապաշաւող։ =*s.* խոստովանորդի, -նագուտոր

–ly, *ad.* զղջմամբ։

Penitential բէնիթէն'շըլ, *a.* ապաշխարութեան, զղջման։ –tiary -թէն'շէյրի, *a.* ապաշխարանաց։ =*s.* ապաշխարահայր; 2. ապաշխարող; 2. զգաստարան, բանտ։

Penknife բէն'նայֆ, *s.* գմելի։

Penman բէն'մըն, *s.* գեղագիր; մատենագիր։ –ship բէն'մընշիփ, *s.* գեղագրութիւն; 2. գրութիւն, գիր

Pennant բէն'էնթ, *s.* դրօշ, դրօշակ; 2. կայմադրօշիկ, բոցիկ փիղանsrk ն–. [թեւաւոր։

Pen'nate, –ted, *a.* փետրաձեւ,

Penniless բէն'իլէս, *a.* անկուտի

Pennon բէն'ըն, *s.* դրօշ։

Penny բէն'ի, *s.* [*pl.* Pennies, Pence.] բեննի, քառնոց; 2. դանկ, բնիոն; 3. ստակ, դրամ։ -a-liner. (տողը բեննիինոց) լրահաւաք, տեղեկաբեր։ -post. նամակաբաշխ։ -royal. վայրի դաղձ, խոտ փիղիսփիեւն։ -weight. 24 ցորենոց կշիռ մը։ –wise. խնայող, կծծի։ -worth բէն'-նիւըրթհ, -'ըրթ, *s.* բեննիինոց; աժանութիւն; քիչութիւն։

Pensile բէն'սիլ, *a.* կախուած, առկախ։ –ness, *s.* –ութիւն։

Pension բէն'շըն, *s.*(հանգստեան կոչուած պաշտօնէի մը վճարուած) վարձ, թոշակ, ռոճիկ։ =*va.* թոշակ կապել, թոշակել, հանգստեան կոչել բէգաhiս չըգաrrմազ։ –ary բէն'շըների, *a.* հանգստեան կոչուած, թոշակաւոր, թոշակառու այլըգլը, միւբէգահs։ Grand–. դատաւորապետ (Հոլանտա)։

Pensioner բէն'շըներ, *s.* թոշա-

կաւոր, -առու միւրքգախs; 2. խեղանդամ; Հաշմուտ վէն; 3. [on] Հըպատակ, ենթակայ; 4. երկրորդական ուսանող (ի Քէյմպրիճ)։

Pensive բէն'սիվ, *a.* մտախոհ, լուրջ, խոհուն; 2. բազմահոգ, մըտածկոտ; 3. մելամաղձոտ, տխուր։ -ly, *ad.* -ness, *s.* -ութիւն։

Penstock բէն'սթաք, *s.* աղօրիքի սահանադուռ; 2. ջրհանի փող; 3. գրչի կոթ, գրչակալ։

Pent բէնթ, *pp.* & *a.* գոցուած։

Penta-: բէն'թէ-

-cap'sular, *a.* հնգապատիճ բս.

-chord, *s.* հնգաղի (քնար)։

-gon -'թէկըն, *s.* հնգանկիւն։

-gonal -թէկ'ընըլ, *a.* հնգանկիւնի

-gyn'ian, -nous, *a.* հնգիգայ։

-he'dron -հի'տրըն, *a.* հնգանիստ

-g'raph -կրէֆ, *s.* համագիր գ.

-m'eter -թէ'մը-, *s.* հնգաչափ բն.

-an'gular, *a.* հնգանկիւնի։

-ptote, *a.* հինգհոլովեան։

-stich -'ըսթիք, *a.* հինգտողեան։

-style -'ըսթայլ, *a.* հնգասիւն։

Pentateuch բէն'թէթիուք, *s.* հնգամատեան (Մովսիսի) Սգ.

Pentecost բէն'թըքոսթ, *s.* Հոգեգալուստ, Պենտեկոստէ։ -al -քոս'թըլ, *a.* հոգեգալստեան։

Penthouse բէնթ'հաուս, *s.* որմայեց unւնsnւrմա։

Pentile, *See* Pantile. [գիք։

Pent'roof բէնթ'րուֆ, *s.* շեղեր-

Penult, -ima, -imate բի'նըլթ, -թ'իմէ, -'թիմէյթ, *s.* վերջընթեր։

Penumbra -նըմ'պրէ, *s.* թերաստուեր, կիսաստուեր; 2. մթանց նչ.

Penurious -նիու'րիըս, *a.* կծծի, ժլատ։ -ly, *ad.* -ness, *s.* -ութիւն։

Penury բէն'իուրի, *s.* աղքատութիւն; չքաւորութ., կարօտութ

Peon բի'ըն, *s.* ոտիկան, նուիրակ; 2. պարտական մշակ, ստրուկ։

Peony բի'ընի, *s.* փեոնուհայ, փեննիա, ճչնարօտ, արեգնազ այր կիւլիւ։

*People բի'փըլ, *s.* ժողովուրդ; մարդիկ; 2. հասարակութիւն, ռամիկը։ =*va.* բազմամարդել, շատցընել, շէնցնել։ Kink-. Քինքենք։

Pepper բէփ'ըր, *s.* պղպեղ, տաք դեղ պիպէր; պղպեղ ցանել, պղպեղել; 2. քարոտել, քարկոծել։ -and -salt. աղպղպեղ (գոյն)։ -box. պըղպեղաման։ -corn. պղպեղահատ; չնչին իր։ -grass. հերիւնաձեւ կոտեմ; բաղբակ։ -plant. պղպեղենի։ -idge. լեղի խէժ; ծորենի բս. -mint. անանուխ; անուխի օղի։ -sauce. (քացախի մէջ) աղուպղպեղ։ -wort. նուարտակ խօրօսնուգ բս.

Peppermint -մինթ, *s.* ջուրանուխ եւպանի նանէ; անուխի օղի։ -drop. անուխշաքար նանէ շէքէրի։

Peppery բէփ'ըրի, *a.* պղպեղոտ, տաքդեղոտ, կծու; 2. խիստ, ցասկոտ

Pepsin բէփ'սին, *s.* կերակուրը մարսող նիւթ, բնամոք։ [կան։

Peptic -'թիք, *a.* մարսիչ, մարսա-

Per բըր, *pr.* ի ձեռն, միջոցաւ; առ։ -annum, year. տարեկան, տարին։ -cent. առ հարիւր։ -Paul. Պօղոսի միջոցաւ։ A loaf-man. մարդ գլուխ նկան մը։ Ten-cent. (10 %) հարիւրին տասը։

Peradventure բըրէտվէն'չըր, *ad.* թերեւս, գուցէ; պատահմամբ։

Perambulate բըրէմ'պիուլէյթ, *va.* շրջիլ, յածիլ, պտտիլ; 2. քըննել, խուզարկել։ -tion, *s.* պտոյտ, շրջագայութիւն; 3. զննութիւն; 4. շրջանակ։ -tor -'պիուլէյթըր, *s.* շրջագայող; 2. ուղեչափ; 3. տղոց ձեռքի կառք։

Perceivable -սիյվ'-, *a.* զգալի, իմանալի։ -bly, *ad.* -կերպով։

*Perceive -սիյվ'-, *va.* զգալ, ի-

մանալ, ըմբռնել, հասկնալ, նշմարել

Percentage բըրսէն'թէճ, s. հարիւրորդութիւն, հարիւր-ակութ.; 2. առ հարիւր, -ութիւն, առհարիւրում։

Perceptible բըրսէբ'թիպլ, a. զգալի, իմանալի, ըմբռնելի։ -bility, s. -ութիւն։ -ly, ad. -կերպով։

Perception բըրսէբ'շըն, s. ըմբռնում, ըմբռնողութիւն, հասողութիւն քիչ; 2. գաղափար, զգացում, հասկցողութիւն։ -tive, a. ըմբռնման, ըմբռնողական։ -tivity -թիվ'իթի, s. ըմբռնողութիւն։

Perch բըրչ(թ), s. պերգէ խանձէ պալըղը; 2. ձող, կանգնող սըրըգ; 3. ձողաչափ, $5^1/_3$ մեդր; 4. (թռչունց) թառելու ձող, թառ։ =an. (թռչունը) թառիլ, դադարիլ; 5. ձողին վրայ դնել։

Perchance բըրչանս', ad. թերեւս; 2. պատահմամբ, դիպուածով։

Percher բըրչ'ըր, s. թառող։

Percipient բըրսիբ'իէնթ, a. ըմբռնող, հասու, խելամուտ։ -ience բըրսիբ'իէնս, s. ըմբռնում։

Percolate բըր'քօլէյթ, an. քամել, զտել, անցնել; 2. զտուիլ, մզիլ։ -tion, s. քամում, զտում, մզում։ -'tor, s. քամիչ, զտիչ։

Percussion բըրքըշ'ըն, s. հարուած, բախում, զարնուածք։ -cap. (հրացանի) շողիկ գաբսիւլ։ -lock. խանձ (հրացանի) չախմախ։ [րող։

Percussive -քըս'իվ, a. ընդհարող

Percutientբըրքիուշ'ըէնթ, s. հարկանող, զարնող։

Perdition բըրտի'շըն, s. կորուստ, կործանում, աւերած։

Perdu, Perdue բըր'տիու, a. գաղտնի, թաքուն; 2. կորսուած, չիք

Peregrinate բէր'էկրինէյթ, vn. պանդխտանալ, նժդեհիլ; 2. ճամբորդել, հեռուն երթալ։ -tion -նէյ'շըն, s. պանդխտութիւն, նժդեհութիւն, օտարութիւն։ -tor, s. ուղեւոր, տարագնաց, պանդուխտ

Peremptory բէր'էմթըրի, a. բացորոշ, վճռական, անպատասխանելի; 2. բացարձակ, դրական։ -torily բէր'էմթըրիլի, ad. բացարձակապէս, վճռաբար։ -riness -'թըրինէս, s. -ութիւն։

Perennial բէրէն'նիըլ, a. տարեկան; 2. տեւական, մշտնջենաւոր, մշտատեւ; 3. երկարատեւ (տունկ)։ -ly, ad. շարունակ, անդադրում [բատեւութիւն

Perennity -րէն'նիթի, s. երկա-

Perfect բըր'ֆէքթ, a. կատարեալ, անթերի; 2. աւարտած, լմընցած; 3. կատարուն, լման։ =բըրֆէքթ', va. գլուխ հանել, կատարել, լրացնել, աւարտել։ -tense, անցեալ ժամանակ ք. -ly, ad. կատարելապէս, ամբողջովին; 2. գլխովին, լիովին, ճշգիւ։ -ness, s. կատարելութիւն։

Perfectible բըրֆէքթ'իպլ, a. կատարելագործելի։ -bility, s.

Perfection բըրֆէք'շըն, s. կատարում, լրում; 2. կատարելութ. -ist բըրֆէք'շընիսթ, s. կատարելական, լրապաշտ (աղանդ) Ա.Ժ. Ա.Մ.

Perfective բըրֆէք'թիվ, a. կատարող; լրացուցիչ ք. [րեգործ։

Perficient բըրֆիշ'ըէնթ, a. բա-

Perfidious բըրֆիտ'իըս, a. նենգաւոր, ուխտադրուժ, դրուժան։ -ly, ad. նենգութեամբ։ -ness -'իըսնէս, s. անհաւատարմութիւն։

Perfidy բըր'ֆիտի, s. նենգութիւն, դրժողութիւն, դրժանք։

Perfoliate բըրֆօ'լիէյթ, a. ցօղնապատ, պարացօղուն (բոյս)։

Perforate բըր'ֆըրէյթ, va. ծակ բանալ, ծակել։ -tion, s. ծակում; ծակուածք, ծակ։ -tive, a. ծակող։

Perforce բըրֆօ՛րս, *ad.* բռնի։

Perform բըրֆօ՛րմ, -ֆա՛րմ, *va.* ընել, կատարել, առաջ բերել, գըլուխ հանել, գործադրել։=*vn.* յաջողիլ, (նուագ)ել, (խաղ)ալ ևն. -able -ֆարմ՛էպլ, *a.* գործադրելի։

Performance բըրֆարմ՛ընս, *s.* գործադրութիւն, կատարում, լրումն, աւարտում; 2. արարք, գործ; 3. հանդէս, մարզանք, դեր։

Perfor'mer բըրֆօր՛մըր, բըրֆար՛մըր, *s.* գործադիր, դերասան։

Perfume բըր՛ֆիւմ, *s.* ծխանելիք, անուշահոտութ., բուրմունք, բոյր; 2. հոտեղէն, բուրանիւթ, խունկ։ =բըրֆիւմ՛, *va.* անուշահոտել, խնկաւէտել, հոտաւէտել, խնկել; 2. բուրել։ -mer բըրֆիւմ՛ըր, *s.* իւղարար, իւղեփեաց, խնկեփեց; 2. հոտավաճառ, -ուհի։ -mery բըրֆիւ՛մըրի, *s.* հոտեղէնք։

Perfunctory բըրֆընք՛թըրի, *a.* անհոգ, անփոյթ, թեթեւհոգ։ -orily -ֆընք՛թըրիլի, *ad.* վեր ի վերոյ, հարեւանցի, անփութօրէն։

Perfuse բըրֆիւզ՛, *va.* սրսկել, սփռել, ծաւալել; տոգորել; թրել։

Perhaps բըրհէփս՛, *ad.* թերեւս, գուցէ, հաւանականաբար։ [բէրհ։

Peri բի՛րի, *s.* [*pl.* բի՛րիզ] պարիկ

Perianth բէր՛իէնթ. ծաղկի դրսի պատեան, պարածաղիկ, կապիճ։

Pericardium -՛քարտիըմ, *s.* սրտը պատող մաշկապարկ, սրտապատ։ -diac, -dian, -dial, -dic բէրիքար՛տիէք, -քար՛տիք, *a.* սրտապատի։

Pericarp բէր՛իքարփ, *s.* հունտերու պատիճ, պարուտակ ևն; 2. պարկուճ, շրջապատող, պտղապատ՝ պտղոյ արտաքին մասը որ զիրուտը կպատէ. յորում երեք կարգ կղանազանուին՝ =Epicarp վերնամաշկ, Mesocarp միջնամաշկ, Endocarp ներքնամաշկ։ -ial բէրիքարփ՛իըլ, *a.* պարուտակային։ -oidal -քարփօյ՛տըլ, *a.* պարուտականման։

Perigee, -geum բէր՛իճի, -ճի՛ըմ, *s.* երկրամերձ կէտ, մերձակէտ։

Per'igraph, *s.* անճիշդ ծրագիր

Perihelion, -lium բէրիհի՛լիըն, -իըմ, *s.* արեւամերձ կէտ, -ամերձ։

Peril բէր՛իլ, *s.* վտանգ, կորուստ։ =*va.* վտանգել։

Perilous բէր՛իլըս, *a.* վտանգաւոր։ -ly, *ad.* վտանգաւ։ -ness բէր՛իլըսնէս, *s.* -ութիւն, վտանգ։

Perimeter բէրիմ՛էթըր, *s.* շրջագիծ, շրջապատ, պարաչափ։

*Period բի՛րիըտ, *s.* շրջան (լուսնի); 2. ժամանակամիջոց, դարաշրջան, շրջան; 3. միջոց, ժամանակ; 4. կէտ, վախճան, կատար, ծայրակէտ, ծայր; 5. պարբերութիւն ևր; 6. վերջակէտ (.) տպ.

Periodic, -al բիրիօտ՛իքըլ, *a.* շրջանաւոր, -ական, պարբերական։ -ly, *ad.* պարբերաբար, կանոնաւորապէս։ -dical բիրիօտ՛իքըլ, *s.* պարբերական հանդէս, (շաբաթա) թերթ, ամսաթերթ։

Periodicity -ըտիս՛իթի, *s.* շրջանաւոր դարձ, պարբերականութ.

Periœci -՛սայ, *s.* շրջաբնակք։

Periosteum բէրիօս՛թիըմ, *s.* ոսկրը պատող թելաձեւ մաշկ, ոսկրամիզ։

Peripatetic բէրիբըթէթ՛իք, *a.* Արիստոտելեան, ճեմական։

Periphery բէրիֆ՛ըրի, *s.* (բոլորակի) շրջապատ։ -pheric, -al -ֆէր՛իքըլ, *a.* շրջապատի, արտաքին

Periphrase, -'rasis բէր՛իֆրէյզ, *s.* խօսքի դարձուածք, շրջաբանութիւն։ =*va.* դարձուածքներով խօսիլ։ -ras'tic, -al, *a.* շրջաբանական

Periplus բէր՛իփլըս, *s.* ծովեզերքի շուրջը նաւարկութիւն, շրջանաւութիւն։

Peripneumo'ny, *s.* թոքատապ

Peripteral, -rous Փէրիփ'թըրըլ, -'թըրըս, *a.* սիւնապատ։

Per'iscope, *s.* շրջադիտութիւն

Periscians, Periscii Փըրիշ'ի-ընզ, -'շիայ, *pl.* շրջաստուերեանք։

Perish Փէր'իշ(ը), *vn.* կորսուիլ, կործանիլ, ջնջուիլ, փճանալ; 2. մեռնիլ, կեանքը կորսնցնել; 3. օրէ օր լղանալ, հիւծիլ; 4. հալիլ մաշիլ։

Perishable Փէրիշ'էպլ, *a.* կորըն-չական; 2. անցաւոր, վաղանցիկ։ -ness, *s.* -ութիւն։

Perisperm Փէր'իսփըրմ, *a.* շըր-ջասերմ։ -spheric, -al Փէրիսֆէ'րի-քըլ, *a.* գնդաձեւ, կլոր։

Peristaltic Փէրիսթէլ'թիք, *a.* շըր-ջակծիկ (կծկում աղեաց)։

Peristyle Փէր'իսթայլ, *s.* սիւ-նազարդ (շէնք, վայր)։

Peritoneum Փէրիթօնի'ըմ, *s.* ներ-սէն փորը պատող շճալից թաղանթ, փորամաշկ, շճաթաղանթ։ -tonitis Փէրիթընայ'թիս, *s.* փորամաշկի բոր-բոքում, փորմաշկատապ։

Peritropal Փէրիթ'րօփըլ, *a.* ոլո-րապտոյտ; 2. շրջադարձ (որ պըտ-ղոյն առանցքէն դէպ ի պտղապա-տը կդիմէ)։ [կեղծամ perruque։

Periwig Փէր'իուիկ, *s.* սուտ մազ,

Periwinkle -ուինք'ըլ, *s.* կուսա-ծաղիկ; 2. արուսիկ (խեցեմորթ)։

*Perjure Փըր'ճուր, *va.* սուտ երդ-նուլ, երդմնահարել; 2. երդմնա-զանց ըլլալ, երդումը՝ խօսքը ա-րել, ուտել։ -red, -rer Փըր'ճուրդ, Փըր'ճուրըր, *s.* երդմնազանց, ստեր-դում։ -ry Փըր'ճուրի, *s.* սուտ երդում։

Perk Փըրք, *a.* հպարտ, սիգա-պանծ, սէգ; 2. աշխոյժ, կայտառ։ =*vn.* գլուխ բռնել, պերճանալ; 2. գոռոզանալ։ =*va.* հագուիլ սգուիլ, զարդարուիլ; 2. վերցնել։

Permanent Փըր'մընէնթ, *a.* տե-ւական, հաստատուն, կայուն; 2. մնացական, շարունակ, մնայուն։ -ly; *ad.* -կերպով։ -nence, -cy Փըր'մընէնսի, *s.* -ութիւն։

Permeable Փըր'միէպլ, *a.* թա-փանցիկ, -ցական։ -bility, *s.* -ութ.

Permeate Փըր'միէյթ, *va.* (ջուրը) անցնիլ, թափանցել։ -tion, *s.* թա-փանցում, ներս մտնելը։

Permiscible Փըրմիս'իպլ, *a.* խառ-նելի; 2. ներելի, թոյլատրելի։

Permission Փըրմիշ'ըն, *s.* հրա-ման, թոյլտուութիւն, արտօնու-թիւն։ -sive Փըրմիս'իվ, *a.* թոյ-լատրական։

*Permit Փըրմիթ', *va.* թոյլ տալ, թողուլ; 2. թոյլտուութիւն տալ, թոյլատրել; 3. շնորհել, ներել։ = Փըր'միթ, *s.* արտօնագիր, հրամանա-գիր, հրամանի։ -tance -միթ'թընս, *s.* թոյլտուութիւն։ -ter Փըրմիթ'-թըր, *s.* արտօնատու։

Permutation Փըրմիութէյ'շըն, *s.* փոխանակութիւն, փոփոխում։

Pernicious Փըրնիշ'ըս, *a.* վնա-սակար, վտանգաւոր։ -ly, *ad.* -կերպով։ -ness, *s.* -ութիւն։

Pernoctation Փըրնըքթէյ'շըն, *s.* գիշերաջանութիւն, -պահութիւն։

Peroration Փէրօրէյ'շըն, *s.* վեր-ջաբան (ճառի), վերջաբանութիւն

Peroxide -աքս'այտ, *s.* վերօքսիտ

Perpender Փըրփէնտ'ըր, *s.* պա-տի հաստատութեանը քար, երկ-կողմեայ որմաքար։

Perpendicular Փըրփէնտիք'իու-լըր, *a.* վերէն վար, ուղղահայեաց, ուղղորդ (գիծ)։ -ly, *ad.* վերէն վար։ -ity -իուլէր'իթի, *s.* -ութիւն։

Perpetrate Փըր'փիթրէյթ, *va.* (չար գործ մը) ընել, (ոճիր) գոր-ծել; 2. (շն)ալ, (մեղանչ)ել, յան-ցաւոր ըլլալ։ -tion, *s.* կատարում, գործադրութիւն, չարագործութ.։ -tor, *s.* (չարա)գործ, (ոճրա)գործ։

*Perpetual բըրբէդ'իու-ըլ, *a.* մշտնջենաւոր, յաւերժական, յարատեւ; 2. շարունակ, անդադար; 3. անհալ՝ մշտապատույց (ծիւներ); 4. ցկեանս (աքսոր, հիւպատոս)։ -ly, *ad.* անդադար, յաւէրժաբար; 2. մշտնջենի, մշտնջենական։

Perpetuate բըրբէդ'իու-էյդ, *va.* յաւերժացնել, մշտնջենաւորել, անմահացնել։ -tion, *s.* մշտատեւութ

Perpetuity -իու-'իդի, *s.* անդադար տեւողութիւն, մշտնջենաւորութիւն; մշտնջենականութիւն։

*Perplex բըրբլէքս'(դ), *va.* շփոթել, խառնակել; 2. կնճռել, շուարեցնել։ -edly բըրբլէքս'էդլի, *ad.* շուարած, վարանեալ, տարտամ; 2. խառնաշփոթ, կնճռոտ։

Perplexity բըրբլէքս'իդի, *s.* վարանում, վարանք, շփոթութիւն։

Perquisit բըրքու'իզիդ, *s.* յաւելական վարձ, հասոյթ։ -tion -զի'շըն, *s.* փնտռտուք, խուզարկութ

Perry բէր'ի, *s.* տանձօղի։

Persecute -'սիքիու-դ, *va.* չարչրկել, հալածել; 2. նեղել, ետեւէն իյնալ։ -tion -քիու'շըն, *s.* հալածում, հալածանք, նեղութիւն։ tor -'դըր, *s.* հալածող, թշնամի։

Perseverance բըրսիվիյր'ընս, *s.* արատեւութիւն, հաստատութ.։

*Persevere բըրսիվիյր', *vn.* [in] դիմանալ, յարատեւել, հաստատ մնալ, շարունակել։ -veringly -վիր'ինկլի, *ad.* յարատեւութեամբ։

Persia բըր'շիէ, *s.* Պարսկաստան։

Persian բըր'ժըն, *a.* պարսից, պարսկական; 2. պարսիկ; 3. պարսկերէն։ —berry. դեղնուկ ճճճրի։ -tobacco. թէնպաքի։ -wheel. ջրադարձ անիւ։

Persiflage բէյրսիֆլաժ', *s.* քթէն բռնելը, ծաղր, հեգնութիւն։

Persim'mon բըրսիմ'մըն, *s.* ժորի, ժորենի որ եւ Virginian date plum.

*Persist բըրսիսդ', *vn.* շարունակել, յարատեւել, յամառիլ, պնդել, չփոխուիլ։ -ent, -tive բըրսիս'դընդ, -'դիվ, *a.* յարատեւող, անշարժ, հաստատ, պինդ։ -tence, -cy բըրսիսդ'ընսի, *s.* յարատեւութ.

Person բըր'սն, *s.* անձնաւորութիւն, անձ; 2. կերպարանք, դէմք; 3. մի ոմն, մէկը, մարդ, էակ, անհատ, անձ (այր, կին); 4. դէմք ք. Artificial—. միաբանութիւն եւլ. In—. անձամբ, ինքնին։ 1st, 2d, 3d —. Ա. Բ. Գ. դէմք ք. -able բըր'սընէպլ, *a.* տեսքով գեղեցկադէմ, վայելչահասակ, գեղանի։

Personage բըր'սընէճ, *s.* անձնաւորութիւն, անձ իսկ; 2. նշանաւոր՝ ականաւոր անձ, մեծ մարդ։

Personal բըր'սընըլ, *a.* անձնական, առանձին, յատուկ, անհատական; 2. արտաքին, ըստ մարմնոյ; 3. շարժուն (ինչք՝ ստացուածք, կով կումաշ, անասուն); 4. անձամբ; 5. դիմաւոր (բայ) ք. -ly, *ad.* անձամբ, անհատաբար։ -ity բըրսընէլ'իդի, *s.* անձնաւորութիւն, անձնական խնդիր, անձնականութիւն, անհատականութիւն։

Personate բըր'սընէյդ, *va.* դերը խաղալ, ինքզինք ծախել, նմանցընել, կարծեցնել; 2. ներկայացընել, կեղծել, ծպտել։ =*a.* կնճըթակերպ (բոյս)։ -tion, *s.* ներկայացնելը, կեղծելը, դեր խաղալը, ծպտում։ -tor բըր'սընէյդըր, *s.* դերը խաղցող; 2. ինքզինք ծախող։

Personification բըրսոնիֆիքէյ'շըն, *s.* անձնաւորում, անձնաւորութիւն; 2. դիմառնութիւն քր.

Personify -'իֆայ, *va.* լեզու՝ զգացում տալ, անձնաւորել (անշունչ իրերը); 2. նմանցնել։

Personnel բէյր'սընէլ, *s.* մար-

դիկ, պաշտօնեայք, պաշտօնատարք։

Perspective բըրսբէք'թիվ, s. հեռանկար, հեռապատկեր. տեսարան։ =a. համդիպահայեաց, հեռատեսիլ; 2. տեսարանական։ -ly, ad. դիմացէն, հեռուանց, ի հեռուստ։ -tograph բըրսբէք'թօկրէֆ, s. ծրագրիչ գ.

Perspicacious բըրսբիքէյ'շըս, a. սրատես, սրամիտ, կորովամիտ։ -cacity -քէս'իթի, s. սրատեսութ., կորովամտութիւն, յստակութիւն։

Perspicuous բըրսբիք'իուըս, a. պայծառ, յստակ, պարզ, բացորոշ։ -ly, ad. -կերպով։ -ness, Perspicuity -քիու'իթի, s. -ութիւն։

Perspirable բըրսբայր'էպլ, a. արտաշնչելի։ -ness, s. -ութիւն։

Perspiration բըրսբիրէյ'շըն, s. արտաշնչութիւն, թեթեւ քրտինք։ -tive, -tory -բայր'էթիվ, -բայր'էթըրի, a. քրտնաբեր, արտաշնչական։

Perspire բըրսբայր', an. արտաշնչել, քրտնիլ; 2. դուրս ելնել, թորիլ; 3. քրտնքցնել։ [համոզելի։

Persuadable բըրսուէյտ'էպլ, a.

Persuade բըրսուէյտ', va. համոզել, հաւանեցնել, հաւատացնել։

Persuader -էյտ'ըր, s. համոզիչ, համոզող; 2. անհերքելի փաստ։

Persuasible բըրսուէյ'զիպլ, a. համոզական, համոզելի։ -bility -զիպիլ'իթի, s. համոզելիութիւն։

Persuasion բըրսուէյ'ժըն, s. համոզելը, համոզում, յորդոր; 2. հաւատք, դաւանանք; 3. հաւատապաշտ, հաւատամոլ (աղանդ)։

Persuasive, -sory բըրսուէյ'սիվ, -սուէյ'սըրի, a. համոզիչ, բարեհամբոյր, համոզական, վստահելի՝ համոզկեր։ -ly, ad. -ness, s. համոզում, վստահութիւն։

Pert բըրթ, a. յանդուգն, լիրբ, կոպիտ։ =s. յանդուգն մարդ։

Pertain բըրթէյն', vn. վերաբերիլ, անկ՝ յատուկ լինել; 2. պատշաճիլ, պատկանիլ, վայլել։

Pertinacious բըրթինէյ'շըս, a. պինդգլուխ, յամառ, կամակոր; 2. յարատեւ, հաստատ, անվհատ։ -ly, ad. յամառութեամբ, պնդութիւն -ness, -tinacity, -tinacy բըրթինէս'իթի, -թի'նէսի, s. կամակորութիւն, յամառութիւն; 2. հաստատամտութիւն։

Pertinence, -cy բըր'թինընս, s. յարմարութիւն, պատշաճութիւն։

Pertinent բըր'թինընթ, a. [to] յարմար. պատշաճ, վայելուչ։ -ly, ad

Pertly բըրթ'լի, ad. յանդգնօրէն, լրբաբար։ -ness, s. լրբութիւն։

Perturb բըրթըրպ', va. վրդովել, խռովել, յուզել։ -ation, s. յուզում, խառնակութիւն։ [ծակում։

Pertusion -թիու'ժըն, s. ծակելը,

Peruke բէր'ուք, s. կեղծամ։

Perusal բէրու'զըլ, s. կարդալը, ընթերցում. վերծանում։

Peruse բէրուզ', va. կարդալ, ընթեռնուլ; 2. վերծանել, քննել։

Peruvian բըրու'վիըն, s. պերուացի։ -bark. քինայի կեղեւ։

Pervade բըրվէյտ', va. (մէջէն) անցնիլ, թափանցել; 2. տարածել, սփռել; 3. տիրանալ։ -vasion -վէյ'ժըն, s. թափանցում, ներս մտնելը։ -vasive -վէյ'սիվ, a. թափանցող, անցնող։

*Perverse բըրվըրս', a. ծուռ, խոտոր; խեռ. կամակոր, ապիրատ, չար։ -ly, ad.-ness, Perversity բըրվըրս'իթի, s. -ութիւն։ -sion բըրվըր'շըն, s. խոտորում, խանդարում։ -sive բըրվըր'սիվ a. թիւրելի։

Pervert բըրվըրթ', va. աւրել, թիւրել, ծռել, խանգարել; 2. դարձնել, գլխէ հանել։ =բըր'վըրթ, s. անառակ, մոլորած։ -'ible, a.

գիւրամոլոր ։ -er բըրվըրթ'ըր, s. մոլորցնող, գլխէ հանող։

Pervious բըր'վիըս, a. գիւրամուտ, գիւրանց, թափանցիկ; 2. հասկնալի։ -ness, s. -ութիւն։

Pesky բէսք'ի, a. մեծ, ծանր։

Pes'sary, s. արգանդակալ գ.

Pessimist բէս'իմիսթ, s. յոռետես, ամէն բան գէշ կերթայ կարծող։ -ic բէսիմիս'թիք, a. տխուր, մելամաղձոտ։ -mism բէս'իմիզմ, s. յոռետեսութիւն ։

Pest բէսթ, s. մեծ համաճարակ, սրածութիւն, մահտարաժամ, ժանտամահ, ժանտախտ եռւմու r-ճագ, վէպա; 2. փորձանք, աղէտ։ -house. զգուշարան, մաքրանոց։ -er բէս'թըր, va. չարչրկել, նեղել; գլուխ ցաւցնել, տաղտկացնել ։ -iferous բէսթիֆ'ըրըս, a. ժանտաբեր; 2. մահաբեր, -ցու, վնասակար։ -ilence բէս'թիլէնս, s. համաճարակ, ժանտախտահարութիւն, ժանտախտ; 2. գլխու փորձանք ։ -ilent բէս'թիլէնթ, a. ժանտաբեր, մահաբեր, մահաշունչ, մահացու; 3. ապականիչ, չար։ -ly բէս'թիլէնթլի, ad. -կերպով։ -ial բէսթիլէն'շըլ, a. ժանտաբեր, ժանտ, մահաշունչ։

Pestle բէս'լ, s. սանդխառն կոյ; 2. թակ, դրթակ poգmագ։

Pet բէթ, s. տղու քէն, բարկութիւն; 2. անուշիկ, սիրունիկ; 3. աչքի լոյս, սիրական [ձնիկ, գառնուկ, կատուիկ] ։ =va. գգուել, փայփայել, քնքշել, սիրել, շփացնել։

Petal բէթ'ըլ, բէ'թըլ, s. (ծաղկա)տերեւ, (ծաղկա)թերթ, շափրակաթերթ ։ -oid բէ'թըլօյդ, a. թերթաձեւ ։ -ous բէթ'ըլըս, a. թերթաւոր ։ -ism բէթ'ըլիզմ, s. հնգամեայ աքսոր, տերեւակոյտ վճիռ, տերեւավճիռ (նախնի Սիրակուսացւոց՝ որ ձիթենիի տերեւի վրայ կգրուէր)։

Petard բիթարդ', s. պատերազմական փլուզիչ անօթ, պայթուն գէն

Petecchial, -techial բէթէք'իըլ, a. գիզաւոր, ժանտաբիծ (տենդ)։

Peter-pence բի'թըրբէնս, s. պապական տուրք, պողի (յԱնգ.) հ. ժ.

Petiolar, -lary, -late բէթ'իօլըր, -թիըլէ'րի, -թ'իըլէյթ, a. կոթնաւոր (տերեւ) ։ [թիկ, կոթուն։

Petiole բէթ'իօլ, s. տերեւի կո-

Petit բէթ'ի, բէթի, a. մանր, փոքր, պզտիկ, պզտի։ -larceny. -գողութ

Petition բիթի'շըն, s. խնդիր, հայցուած, աղաչանք; 2. աղերս, աղերսագիր, խնդրագիր, հանրագրութիւն =va. խնդրել, հայցել; 2. աղերսել, աղերսագիր տալ։ -ary, -tioner -'շընըրի, -'շընըր, a. աղերսող; 2. աղերսարկու, խնդրարկու։ -maitre -մէյթր, կնահաճոյ, քծնող; 2. յիմար, պճնամոլ koպպա ։

Petrean բէթրի'ըն, a. քարային, քարանման։

Petrel բէթ'րըլ, s. ծովածիծառ, մրրկահաւ, փոթորկահաւ։

Petres'cent, a. քարացուցիչ։

Petrescence, -rifaction, -rification բէթրէս'ընս, -րիֆէք'շըն, -ֆիքէյ'շըն, s. քարացում, քարացած նիւթեր; 2. կարծրացում, խստութ.

Petrifactive, -rific -ֆէք'թիվ, -ֆ'իք, a. քարացուցիչ; քարացման։

Petrify բէթ'րիֆայ, an. քարացնել, քարանալ; 2. խստացնել, կարծրացնել։

Petroleum բէթրօ'լիըմ, s. քարաձէթ, քարիւղ կազ եաղը։ -leur, -leuse բէթրօլըր', -լըզ'բէթրօ, s. (քարձէթով) հրձիգ ։

Petronel -րըլ'-, s. թնդանօթիկ։

Petticoat բէթ'իքօթ, s. կիսազգեստ, վտաւակ միսo ։ -govern-

-head. խաշխաշ, պուպրիկ ։

Populace բոբ'եուլէյս, s. խառնամբոխ, ռամիկ, խուժան, խուժ։

Popular բոբ'եուլըր, a. ժողովրդեան; 2. ժողովրդասէր, ժողովրդական; 3. ընտանի, սովորական, հասարակ։ -ly, ad. առհասարակ, ռամկօրէն։ -ity բոբէուլէր'իթի, s. -ութիւն ։ -ize, va. հանրացնել, ժողովրդականացնել, սիրցնել։

Populate բոբ'եուլէյթ, va. շատցնել, բազմամարդել, շէնցնել, լեցնել։ =vn. բազմանալ, շատնալ։ -tion -լէյ'շըն, s. բնակիչք, բազմամարդութիւն, ժողովուրդ։

Populous բոբ'եուլըս, a. բազմամարդ, մարդաշատ, շէն։ -ly, ad. -ness, s. -ութիւն։

Porcelain բոր'-, բօրս'լէյն, s. ճենապակի, յախճապակի փաղփուրի։

Porch բօրչ, s. սիւնազարդ սրահ, անդաստակ; 2. գաւիթ էլ.

Porcine բոր'սին, a. խոզի։

Porcupine բոր'-, բօր'քիուբայն, s. կողնի, ցիցողնի, խոզուկ իրի ֆիբրի

Pore բօր, s. մորթի ծակոտի, վըտառ, ծակ։ =vn. յառիլ, պշնուլ, անքթիթ նայիլ, ակնապիշ ըլլալ։

Porer -'ըր, s. ներկուռ ուսանող

Porgee, Porgy, s. հաստաձուկ

Porism բօր'իզմ, s. հետեւութ. է.

Pork բօրք, s. խոզի միս, խոզենի, չոր միս։ [խոճկոր։

Porker բօրք'ըր, s. խոզի ձագ,

Porous բօր'ըս, a. ծակոտ, ծակոտկէն։ -ness, Porosity բըրոս'իթի, s. -ութիւն։

Porphyry բոր'ֆիրի, s. պորփիւր, խայտակուճ, ծիրանաքար սուրմաֆի մկրմկր ։ -ritic բորֆիրիթ'իք, a. պորփիւրային։

Porpois բոր'-, բօր'բըս, s. խոզակ ձուկ, ծովախոզ խօրօսպիլիա։

Porridge բոր'իճ, s. ապուր։

Porringer բոր'-, s. Թասաման։

Port բօրթ, s. նաւահանգիստ; 2. դուռ, անցք; 3. հրետածակ; 4. ձախակողմ նաւ; շոգի-անցք մեք; 5. ընթացք, վարք; 6. Բորդոյի գինի։ =va. հրել, տանիլ։ -hole. թնդանօթակ նաւ. Free-. բաց նաւահանգիստ։ -crayon. մատիտակալ։

Portable բօրթ'էպլ, a. կրելի, տանելի; դիւրատար, առձեռնելի։ -ness,-bility, s. -ութիւն։

Portage բօրթ'էյճ, s. փոխադրութիւն; 2. տանողչէք. ուղեգին; 3. նաւէ նաւ երթալիք) ցամաքի ճանբայ

Portal բօր'թէլ, բօր'թըլ, s. մայրպաճակատ էլ; 2. մուտք, դռնակ, դուռ; 3. դրան շրջանակ։

Port-cullis -քըլ'լիս. See Herse,

Porte բօրթ, s. (արքունի) դուռ; 2. (բարձրագոյն) դուռ, Օսմանեան տէրութիւն, Թուրքիա, Տաճկաստան։ -monnaie -մընէյ', s. դրամապանակ։

Portend բըրթէնտ', va. (կանխա)գուշակել, առաջէն ցցնել։

Portent բըր'թէնթ, s. չարագուշակ նշան ։ -ous բըրթէնթ'ըս, a. չարագուշակ։ -ly, ad.

Porter բօր'թըր, s. դռնապան, բեռնակիր; 2. անգլ. գարեջուր։ -age բօր'թըրէճ, s. տանողչէք; 2 դռնապանութիւն։

Port-folio բօրթֆօ'լիօ, s. թղթակալ; 2. թղթապանակ ճիղsան; 3. պաշտօնէութիւն։ [կապ սրահ։

Portico բօր'թիքօ, s. կամարա-

*Portion բօր'շըն, s. մաս, բաժին, կտոր; 2. ժառանգութիւն, օժիտ, կտրիք, պաոյգ։ =va. բաժին տալ, բաժնել, բաշխել; 2. օժտել, պառուգել։ -less, s. անօժիտ, անժառանգ

Portliness բօրթ'լինէս, s. շքեղութիւն, պերճութիւն (դէմքի); 2. գիրութիւն, մարմնեղութիւն։

Portly բօրթ'լի, *a.* փառաւհեղ, շքեղապանծ; գիրուկ, թիկնաւէտ։

Portmanteau -մէն'թօ, *s.* կրկնոցակիր, ձորձակալ; կաշի պայուսակ։

Portrait,-ure բօր'թրէյթ, -րէյ'չըր, *s.* նկար, կենդանագիր, պատկեր; 2. նկարչութիւն։

Portray բօրթրէյ', *va.* պատկերն հանել, (կենդանեա)գրել, նկարել, նկարագրել։ -al բօրթրէյ'ըլ, *s.* նկարագրութիւն, նկարագիր։ -er, *s.* նկարիչ, պատկերհան, նկարագրիչ։

Port'ress, *s.* դռնապանուհի։

Pose բօզ, *va.* խռովել, շփոթցընել, նեղը ձգել; 2. վարանեցնել։

Poser բօ'զըր, *s.* շփոթցնող, նեղող; 2. դժուարահարց։

Position բըզի'շըն, *s.* կացութ., կեցուածք, դիրք, կացք; 2. դիրք; տեղ; 3. ապրուստի միջոց, գործ, զբաղում; 4. առաջարկ,-ութիւն, յառաջադրութիւն; 5. վիճակ, հանգամանք; 6. միջավայր։

Positive բա'զիթիվ, *a.* դրական, իրական; 2. բացարձակ; 3. ստոյգ, հաստատի։ =*s.* իրականութիւն; 2. դրականը, պարզ +. -ly, *ad.* դրականապէս, հաստատեաւ, բացարձակօրէն։ -ness բա'զիթիվնէս, *s.* դրականութիւն, իրականութիւն։

Positivism բա'զիթիվիզմ, *s.* դրական փիլիսոփայութիւն, դրականութիւն։ -vist բա'զիթիվիսթ, *s.* դրապաշտ, փորձապաշտ։

Posology բասա'լըճի, *s.* քանակաքանութիւն։

Posse բա'սի, *s.* (զապող)զօրութ.

*Possess բըզէս', բըզէս', *va.* [-ed *of*] տէր ըլլալ, ստանալ, տիրանալ, իւրացնել, գրաւել; 2. դիւահարել, տակ ըլլալ (ախտի մը)։

Possession բըզէ'շըն, *s.* ստացում, տիրացում, իւրացում; 2. ըստացուածք, ինչք, կալուածք մի.; 3. (դիւա)հարութիւն։ -sive բըզէ'սիվ, *a.* ստացական (դերանուն)։

Possessor բըզէ'սըր, *s.* ստացորդ, ստացող, տիրացող, տէր։ -sory բըզէ'սըրի, *a.* ստացորդ մնալու, ըստացող; 2. ստացողի։

Posset բա'սէթ, *s.* (գինիով մակարդուած) մածուն։ =*va* մակարդել

Possible բա'սիպլ, *a.* հնարաւոր, հնարին, հաւանական, կարելի։ -bility -պի'լիթի, *s.* -ութիւն։

Possibly բա'սիպլի, *ad.* կարելի է, թերեւս, գուցէ, հաւանականաբար

Post բօսթ, *s.* ձող, ցից, գերան; 2. (զօրա)կայան, հանգոյց, օթեւան; 3. պաշտօն, դիրք; 4. սուրհանդակ, թղթատար; 5. նամակի թուղթ։ =*ad.* սուրհանդակաւ, ճեպ ի ճեպոյ։ =*vn.* սուրհանդակաւ ճանբորդել, արտորալ։ =*va.* կարգել, դնել, կեցնել; 2. թղթատարին յանձնել; 3. (օրհաշիւէն՝ մայրհաշիւը) տանիլ, անցնել; 4. տեղեկացընել, ազդարարել, յայտարարել; 5. խայտառակել։ =է նաեւ մասնիկ յաջողի, որ միայն ի բարդութիւնս վարի յետնագոյն յետին, վերջի նշանակութեամբ։ -boy. սուրհանդակ սիւրիւճի։ -captain. արքունի նաւապետ։ -coach, chaise -շէյզ. ճեպընթաց, ճեպակառք։ --date. *va.* յետնագոյն թուական դնել, յետնաթուել։ =*s.* (փոխ|գրի) յետնաթիւ։ -deluvian. յետ-ջրհեղեղեան։ -entry. յաւելուած ապրանք (մաքսի); յաւելուած ական հաշիւ։ -existence. գալու աշխարհ, հանդերձեալ։ -free. ծախսը վճարուած նամակ։ -graduate. մասնագիտութիւն, լրացուցիչ դասընթացք։ --haste. ճեպ ի ճեպոյ, սուրհանդականի պէս։ -horse, hackney. սուրհանդակի ձի։ -house. նամակատուն։ -man. սուրհանդակ։ -mark.

նամակադրոշմ թուղ; 2. նամակի կնիք ցամղա: -master. նամակատան տեսուչ՝ պաշտօնեայ: -master general. Թղթատարական տեսուչ: — -meridian. յետ-միջաւուր [P. M.]: — -mortem. դիազննութիւն: -note. վճարագիր (դանձատան վրայ): — obeit. (հօրը մահուընէ յետոյ ժառանգութենէն վճարելի) մուրհակ: —office. նամակատուն: -office order. (նամակատան վրայ) վճարագիր: -paid. ծախքը վճարուած: — -script. յետ գրութեան (նամակի), յաւելագիր: -town. սուրհանդակի քաղաք; նամակատուն ունեցող քաղաք

**Postage** բօուսթ'էճ, s. փոխադրողչէք, ուղեգին, սուրհանդակի թըղթատարի՝ բօսդային ծախս: —stamp. նամակադրոշմ:

**Postal** բօուսթ'ըլ, a. Թղթատարա-[կան:

**Poster** բօուսթ'ըր, s. սուրհանդակ; 2. ազդագիր, յայտարարութիւն:

**Posterior** բօսթի'րիըր, s. յետնագոյն, յետագայ, հետեւորդ; 2. pl. ետոյք, ետեւը: —ity, s. յետնութիւն (Թուականի ժամանակի):

**Posterity** բօսթէր'իթի, s. որդիք, Թոռունք; 2. սերունդ, ապագայ:

**Postern** բօս'թըրն, s. (պալատի) գաղտադուռ, գաղտնի անցք, դուռ

**Postfix** բօուսթ'ֆիքս(թ), s. յետադաս, յետավանկ; 2. յաւելական մասնիկ, յետամասնիկ: =va. (վրան՝ մասնիկ) աւելցնել:

**Posthumous** բօսթ'հիումըս, a. հօր՝ մօր մահուընէ ետքը ծնած, որբածին; 2. (հեղինակին) մահուընէ յետոյ տպուած, վերջատիպ; 3. յետ-մահու, ապամահ (գիրք): —ly բօսթ'հիումըսլի, ad. յետ մահու:

**Postilion** բօսթիլ'իըն, s. սուրհանդակ; 2. նախակառավար:

**Postpone** բօսթբօ'ն, va. ուրիշ ատենի Թողուլ, յետաձգել, յապաղել; 2. յետադրել, աւելցնել:

**Postulant** բօսթ'իուլէնթ, s. հայցարկու, հայցորդ, ընտրելի:

**Postulate** բօս'թիուլէյթ, va. Թախանձել, խնդրել, հայցել; 2. պահանջել: =s. խնդրուածք, պահանջք; 2. յառաջադրութիւն է. -tion, s. հայցարկութ., խնդրուածք

**Posture** բօս'չըր, s. դիրք, կացք, կեցուածք (մարմնոյ); 2. վիճակ, կացութիւն: -master. կացավարժիկ:

**Posy** բօ'զի, s. բանավճիռ; 2. նշանաբան, -դրոշմ; 3. ծաղկեփունջ

**Pot** բօթ, s. աման, անօԹ, կուժ, բարչ; 2. պտուկ, սան, պոյտ pkն-ճkrk; 3. դաւաթ մը (գարեջուր); 4. մանրաթերթ Թուղթ: =va. ամանը կոխել, խաւեկել, ամանել; 2. Թաղարել (տունկ): To go to—. կործանիլ, սնանկանալ: —bellied. մեծփոր, գէր, դիրուկ: —belly. մեծփոր: -boy. (գինետան) մանչ: —hanger. կեռ, ճանկ (ձենձեղ); կրակարանի ճանկաւոր շղթայ, կլընպար: —herb. բանջար, անուխ, դալարիք: -hook. կլընպար; սիւն, սիւնակ (m, n, u suurkrnı): —house. գարեջրատուն: -luck. ուտելի ս և է բան: To take pot-luck. դատծն ուտել: -sherd, share. պտուկի կտորուանք: -valiant. գլուխը տաքցած:

**Potable** բօթ'էպլ, a. խմուելիք, ըմպելի: -ness, s. -ըլլալը:

**Potash, Potassa** բօթ'էշ, բօթէս'է, s. անկաղ, բօդաս, խալի տ.

**Potassium** բօթէս'իըմ, s. բօդասիոն, բնատնկաղ, խալիոն:

**Potation** բօթէյ'շըն, s. խմելը, խմուածք; 2. ըմպելիք, խմելիք; 3. դաւաթ պարպելը, կենաց:

**Potato** բօթէյ'թօ, բօթէյ'թը, s. [pl. -toes բօթէյ'թօզ] գետնախնձոր, կլորիկ, ալուղ, շօլիկ:

**Poteen** բօթին', s. իռլանտ. օղի:

**Potency** բօ՛թընսի, *s.* կարողութիւն, զօրութիւն, ազդեցութիւն։

**Potent** բօ՛թընթ, *a.* ուժով, զօրաւոր, կարող; 2. զօրեղ, հզօր, ազդեցիկ։ -ly, *ad.* զօրեղապէս, հզօրապէս, մեծապէս։ -ness, *s.* զօրութիւն, ազդուութիւն։

**Potentate** բօ՛թընթէյթ, *s.* պետ, իշխան, ինքնակալ, վեհապետ։

**Potential** բօթէն՛շըլ, *a.* զօրութենական, կարողական; 2. երկբայական, թէական ։ -ity բըթէնշիէլ՛իթի, *s.* զօրութենականութիւն -ly -՛շըլի, *ad.* զօրութեամբ ։

**Pother** բաթհ՛ըր, *s.* աղաղակ, ժխոր; 2. աղմուկ, շփոթութիւն ։

**Potion** բօ՛շըն, *s.* դեղըմպելի, դեղաջուր ։ [պուր, թան։

**Pottage** բաթ՛էճ, *s.* բանջարա-

**Potter** բաթ՛ըր, *s.* բրուտ, կաւագործ։ =բը՛-, բաթ՛ըր, *vn.* ոչինչ գործերով զբաղիլ, տնտնալ; 2. հոս հոն իյնալ, շարժտկիլ։ [ցանկ։

**Pottern-ore** բաթ՛-, *s.* քարմար.

**Pottery** բաթ՛ըրի, *s.* խեցեղէն անօթք, խեցեղէնք; 2. բրտեղէնք; 3. կաւագործարան, բրուտնոց։

**Pottle** բա՛թլ, *s.* (1½ հոխանոց, 2.27 լիտրանոց) հեղանիւթի չափ մը; 2. աման, սակառ, սակառի (պտղոյ) ։

**Pouch** բաուչ(թ), *s.* կաշեպարկ, տոպրակ, քսակ, գրպան; 2. (խոշոր, մեծ) փոր; 3. խածի, կտնառք (ձուկ.) qnւrսաq ։ =*va.* գրպանը նետել, գրպանել; 2. կլլել, ուռել։

**Pouchong** բաուշանկ՛, *s.* սև թէյ մը

**Poudrette** բուտրէթ՛, *s.* չորցած աղբ. փթիր pĸqĸկ։

**Poult** բօլթ, *s.* վառեակ, հաւ, հաւուկ։ -erer բօլթ՛ըրըր, *s.* վառեկավաճառ։ -ry բօլթ՛րի, *s.* հաւեղէն, հաւք; հաւ։ -house. հաւատուն, հաւնոց, հաւաբին, բին։

**Poultice** բօլ՛թիս(թ), *s.* խիւս, դիլէ, տաք, ծեփելիք շաղխա ։ =*va.* խիւս դնել։ Mustard-. մանանախուտ

**Pounce** բաունս(թ), *s.* գրի աւազ; 2. ջնարէկ; 3. ածխէքսակ նէ; 4. ճիրան, մագիլ։ =*va.* փոշի ցանել, փոշիով յղկել, փոշարկել; 2. ծակել; 3. մագիլներով բռնել, ճանկել; 4. [on, upon] խոյանալ (թըռչունը), յարձակիլ, իյնալ։

**Pouncet-box** բաունս՛էթ պաքս, *s.* խնկանոց, խնկարան, հոտատուփ։

**Pound** բաունտ, *s.* լիրա, ոսկի (£); 2. լիտր, քաշ, լիպրա; 3. փակարան, պահարկոց (ձիանի) ։ =*va.* փակարանը՝ փարախը դնել, փակել; 2. սանդը դնել, ծեծել, փշրել, մանրել, փոշի ընել, լեսուլ։ -avoirdupois. սովորական քաշ, նուկի (142 տրամ, 453.60 կրամ)։ -troy. դեղօրէից՝ ոսկերչաց լիտր (117 տրամ, 373.25 կրամ)։ Half a-. կէս նուկի։ One-and a half. մէկուկէս նուկի։

**Poundage** բաունտ՛էճ, *s.* ոսկի (հակ. բեռ, ծրար) գլուխ առնուած հարկ, բաժ, տուրք; 2. իրաւունք թաթ

**Pounder** բաունտ՛ըր, *s.* ծեծող, լեսող; 2. սանդիտոռ; 3. . . . հոխանոց, ոսկինոց։ A ten-. տասը ոսկինոց տոմս մը։ Fourteen-. 14 լիպրանոց, հոխանոց (հակ, բեռ, ծրար)։

**Pour** բօ՛ր(թ), *va.* վազցնել, պարպել, թափել, լեցնել, հեղուլ; արձակել, ղրկել, բուրել, հանել։ =*vn.* հոսիլ, վազել, թափիլ։ -ing բօ՛րին, *a.* հեղեղանման (անձրեւ)։

**Pourana** բուրա՛նա, *s.* սրբազերթուածք Հնդկաց ։

**Pout** բաութ, *s.* գահուկ, դուռայծ չիղ qnւշnւ; 2. կատուաձուկ, կապուտ; 3. ծռկտուք, խեղուանք։ =*va.* պռկունքը ծռմռտկել, խեղուել, քիթը կախել; 2. թուշերը կարմիր՝ լեցուն ըլլալ։ -er բաութ՛ըր,

s. երեսը կախած, կախերես; 2. ցայտաղաւնի որ եւ Pouter pigeon.

*Poverty բա՛վըրթի, s. աղքատութիւն, խեղճութիւն, չքաւորութիւն։

Powder բաու՛տըր, s. փոշի, մղեղ poq; 2. վառօդ պարուր; 3. հերափոշի, փոշենդոյր բուսրա։ =va. փոշեզօծել (մազերը); 2. փոշիացընել. ծարծատել։ =vn. փոշիանալ, ծարծատիլ։ –box. փոշետուփ։ –flask, horn. վառօդաման։ –mill. վառօդարան, վառօդանոց։

Powdery բաու՛տըրի, s. դիւրափշուր, փոշենման, փոշեղէն, փոշոտ, փոշոտած, փոշի ցանուած։

Power բաուըր, s. [over, on, upon] կարողութիւն, կար; 2. զօրութիւն; 3. պատիւ, ոյժ, ազդեցութիւն; 4. իշխանութիւն, տէրութիւն; 5. փոխանորդագիր եւ. Horse–. ձիու ուժ։ -loom. մեքենական արհեստք։ -press. շոգեգործ մամուլ եւ. –less բաու՛ըրլէս, a. անկարող, անզօր։

Powerful բաու՛ըրֆուլ, a. զօրաւոր, հզօր, ազդեցիկ։ –ly, ad. զօրեղապէս, ազդուաբար; 2. ուժով մը, մեծապէս։ –ness բա՛ուըրֆուլնէս, s. զօրութիւն, իշխանութիւն։

Pow-wow բաու-վաու՛, s. իղձ, գէտ, հարցուկ, գուշակ (հնդիկ Ա.Մ); 2. (շռնդալից) թովչութիւն, կախարդութիւն։

Pox բաքս, s. (պալարալից, տարափոխիկ) ախտ, աթաշակ; (որք են՝ ծաղկախտ, հարսանիք, վառեկախտ գաղ. ախտ)։ Chicken–. ջրծաղիկ, սուտ ծաղիկ սու չիչեկի։ Small–. ծաղիկ, ծաղկախտ, ջեջ։ Cow–. կովու պատուաստ։

Poyou բօ՛յու, s. ջրահան է.

Pozzolana -լա՛նէ, s. քարահող։

Praam բրամ, s. տափանաւ։

*Practicable բրէ՛քթիքէպլ, a. ըլլալիք, գործածելի, գործադրելի, կարելի, երթուելիք։ –bility, s. կարելիութիւն, հնարաւորութիւն։ –ly, ad. գործնականապէս, դիւրաւ։

Practical բրէ՛քթիքըլ, a. գործնական; 2. աշխարհի, շուկայի, շուկայիկ։ –joke. ձեռքի՝ գիւղացիի կատակ։ –ly, ad. գործնականապէս, գործիքով; 2. սովորաբար, առհասարակ։ –ness, s. –ութիւն։

Practice բրէ՛քթիս(զ), s. վարժութիւն, ունակութիւն, փորձառութիւն; 2. սովորութիւն, գործածութիւն, սովորոյթ; 3. գործնական մաս, գործնականը; 4. գործադրութիւն, կատարում; 5. գործողութիւն, կերպ; 6. խօսելավարժութիւն, գրելավարժութիւն; 7. ձեւ, եղանակ, ճանբայ։ =va. ի գործ դնել, ի կիր առնուլ; 2. գործադրել, կատարել, ընել։ =vn. վարժուիլ, փորձով ուսանիլ, (բժշկութիւն) ընել; 2. դաւադրել։

Practicer, –titioner բրէ՛քթիսըր, բրէքթի՛շընըր, s. փորձառու, փորձառական; 2. գործնական (բժիշկ, փաստաբան)։

Pragmatic, –al բրէկմէ՛թիք, a. գործի, գործնական, նիւթական; 2. ձեռներէց, փութկոտ, միջամուխ; 3. ամբարտաւան (ամարդի)։ =s. փորձառու, վարպետ; 2. հրամանագիր, հրովարտակ։ –sanction. արքունի հրովարտակ (յԵւրոպա 1438, 1724)։ –ly, ad. լրբօրէն, ձեռներիցութեամբ։ –alness, –matism բրէկ՛մէթիզմ, s. տաղտուկ պատճառելը, ինքնահաւանութիւն; ամէն բանի մէջ մտնելը

Prairie բրէ՛րի, s. մարգագետին, մարգ։ –dog. դաշտաշուն։ -squirrel. մարգամուկ։ -wolf. դաշտագայլ։

*Praise բրէյզ, s. գովասանք, գո-

վեստ; 2. օրհնութիւն, գովութիւն, պարծանք, փառք։ =va. գովաբանել, գովել, օրհնել, փառաւորել։ -worthy. գովելի, օրհնեալ, պատուական։

Praiser Բրէյզ'ըր, s. գովաբան, փառաբանիչ։

Prakrit Բրաք'րիթ, s. Բալի, Հինտու, Պենկալի եւլն լեզուներու խումբը (ի Հնդիկս)։

Prance Բրէնս(թ), vn. (ձին) վեր կանգնիլ, ծառանալ; 2. կայտռել, ոստել; 3. սիգօրէն քալել, սիգալ։

Prank Բրէնք(թ), va. պճնել, զարդարել, շքել։ =s. արտառոցութիւն, փառք; 2. չարաճճիութիւն, կատակ։ -ish, a. բզէզ, չարաճճի։

Prate Բրէյթ, an. շատախօսել, շաղակրատել; ջարդել, քշել։ =s. ոչնչաբանութիւն, շաղփաղփանք։

Pratique Բրէթ'իք, s. (հնտախտի ատեն նաւու տրուած) մերձենալու հրաման, արտօնագիր։

Prattle Բրէթ'լ, vn. շատախօսել, գլաբանել։ =s. շաղակրատանք։

Pravity Բրէվ'իթի, s. վատթարացում, անկում (բարոյապէս)։

Prawn Բրօն, s. կարիտոս pkfk։

Praxis Բրէքս'իս, s. վարժութ.։

Pray Բրէյ, vn. [for, with] խնդրել, աղաչել, հայցել; 2. մաղթել, աղօթել։ =va. աղերսել, պաղատիլ։

Prayer Բրէյ'ըր, s. աղօթող, խնդրարկու։ =Բրէէ'ր, s. աղաչանք, պաղատանք, խնդրուածք; 2. աղօթք, մաղթանք։ -book. աղօթագիրք։ -meeting. աղօթքի ժողով։

Prayerful Բրէէր'ֆուլ, a. աղօթասէր, աղօթկեր, բարեպաշտ։ -ly, ad. բարեպաշտութեամբ, աղօթքով։

Prayerless Բրէէր'լէս, a. աղօթք չընող, անապաշտ։

Preach Բրիյչ(թ), va. քարոզել, աւետարանել; 2. հռչակել, սորվեցընել, յորդորել։ =vn. քարոզ տալ, խրատ տալ։ -ing -չ'ին, s. քարոզութիւն, քարոզ։ -ment Բրիյչ'մընթ, s. քարոզ հէքն.

Preacher Բրիյչ'ըր, s. քարոզիչ։

Preadamite Բրիէտ'ըմայթ, a. նախամարդեան (բնակիչ)։

Preadmonish Բրիէտմոն'իշ, va. առաջէն իմացնել, ազդարարել։

Preamble Բրի'էմպլ, s. յառաջաբան, կանխաբանութիւն, նախաշաւիղ (օրինագիրքի)։

Prebend Բրէպ'ընտ, s. (կանոնիկոսի) հասոյթ, թոշակ։ -al -պէնտ'ըլ, a. հասութաւոր, հասութի։ -ary Բրէ'պէնտըրի, s. հասուոր կանոնիկոս։

Precant Բրի'քընթ, s. աղօթող։

*Precarious Բրիքէյ'րիըս, a. ուրիշէ կախուած, անհաստատ, անկայուն, անստոյգ։ -ly, ad. թոյլտուութեամբ։ -ness, s. անստուգութիւն; 2. առժամանակութիւն։

Precative, -tory Բրէք'էթիվ, -'թըրի, a. աղաչող, աղերսող, խնդրող։

Precaution Բրիքօ'շըն, s. նախազգուշութիւն, զգուշութիւն, շրջահայեցութիւն =va. կանխաւ զգուշացնել։ -al, -ary Բրիքօ'շընըլ, -շը'նըրի, a. նախազգուշական։ -tious Բրիքօ'շըս, a. զգոյշ, զգուշաւոր։

Precede Բրիսիյտ', va. առջեւէն երթալ, յառաջել, կանխել։

Precedence-cy Բրիսիտ'ընսի, s. առաջնութիւն; 2. նախաթոռութիւն; 3. կարեւորութիւն։

*Precedent Բրիսիտ'ընթ, a. յառաջընթաց, նախընթաց; 2. առջի, նախորդ։ =Բրէս'իտընթ, s. (նախընթաց) օրինակ էր. -ed Բրէս'իտէնտէտ, a. անցեալ ունեցող, օրինակի վրայ հիմնեալ։ -ly -սիտ'ընթլի, ad. կանխաւ, յառաջագոյն։

Preceding Բրի'սիտին, a. նախընթաց, առջի, նախկին։

**Precentor** բրի-սէն'թըր, *s.* երգապետ, դասապետ, դպրապետ ոէլ.

**Precept** բրի'-սէփթ, *s.* պատուէր, կանոն, հրաման, պատուիրան; 2. հրամանագիր էր։ -ive, *a.* վարդապետական, խրատական, հրահանգիչ

**Preceptor** բրի-սէփ'թըր, *s.* դաստիարակ։ -ial -սէփթօ'րիըլ, *a.* ուսուցչական։ -tress, *s.* վարժուհի։

**Preceptory** բրի-սէփ'թըրի, *a.* խրատական, հրահանգիչ։ =*s.* (Տաճարական ասպետաց) մենաստան։

**Precession** բրի-սէշ'ըն, *s.* կանխում (գիշերահաւասարի) աստ.

**Precinct** բրի-սինքթ', *s.* շրջապատ, սահման, կոպար; 2. թեմ։

**Precious** բրէշ'ըս, *a.* թանկագին, պատուական, մեծագին, ազնիւ, անգին։ -ly, *ad.* իբրև թանկագին բան, մասունքի պէս; 2. պատուով, լաւ մը։ -ness, *s.* թանկագնութիւն։

**Precipice** -'իփիս, *s.* գահավէժ, անդունդ, գահաւանդ, խորխորատ։

**Precipitable**, *a.* վայրասուզող, տակը իջնելիք (նիւթեր) ք.

**Precipit'ance**, -cy, *s.* արտորանք, շտապ, հապճեպ, խուճապ։

**Precipitant** բրի-սիփ'իթընթ, *a.* գահավէժ, գլխիվայր, հապճեպ, յախուռն, շուտ շուտ։ =*s.* վայրասուզիչ (հեղանիւթ) ք. -ly, *ad.* արտորնօք, շտապաւ, գահավէժ կերպով, գահավիժաբար, հապշտապ

**Precipitate** բրի-սիփ'իթէյթ, *va.* վար նետել, գահավիժել, գլորել; 2. շտապել, արտորցնել; 3. վայրասուզել ք. =*vn.* ինքզինք նետել, նետուիլ, գահավիժիլ; 2. շտապել, արտորալ; 3. (դիրտը) վայրասուզիլ, ամանին տակ իջնալ, սուզիլ։ =*s.* վայրասուզող (նիւթ), վայրահոսիչ ք.=*a.* գահավէժ, գլխիվայր, շուտ շուտ, արտորնօք, յախուռն; 2. արագ, սաստիկ, շուտափոյթ (մահ)։ -ly, *ad.* շտապաւ, հապճեպով, գահավիժաբար։

**Precipitation** բրի-սիփիթէյ'շըն, *s.* գահավիժում; 2. գահավէժ վազելը, սաստիկ հոսում (ջրի); 3. սաստիկ արտորանք, հապճեպ; 4. վայրասուզում, վայրահոսում ք.

**Precipitous** -սիփ'իթըս, *a.* գլխիվայր, գահավէժ; 2. շուտ շուտ, հապճեպ։ -ly բրի-սիփ'իթըսլի, *ad.* շուտափոյթ, արտորնօք։ -ness, *s.*

**Precise** բրի-սայս', *a.* որոշ, մեկին, ճիշդ, ճշգրիտ, բացայայտ; 2. բծախնդիր, ճշդապահ։ -ly, *ad.* ճշդիւ, ճշդութեամբ, ճշդապահութեամբ; 2. հա՛պա, այո։ -ness, *s.* ճշդապահութիւն, ճշդութիւն։

*Precision բրի-սիժ'ըն, *s.* մեծ ճըշդութիւն, ճշգրտութ., խնամք, հոգ

**Preclude** բրի-քլիուտ', *va.* արգիլել, խափանել, դէմ կենալ, մերժել։

**Preclusion** բրի-քլիու'ժըն, *s.* արգիլելը, մերժում, խափանում։

**Preclusive** բրի-քլիու'սիվ, *a.* արգելիչ, խափանարար։ -ly, *ad.*

**Precocious** բրի-քօ'շըս, *a.* կանխահաս, վաղահաս, կանուխ; 2. վաղհասուկ(պտուղ)։ -ly, *ad.* կանխահաս։ -ness, Precocity բրի-քաս'իթի, *s.* վաղահասութիւն, կանխահասութիւն; 2. կանխահաս աճում։ [կանխամտածել։

**Precogitate** բրի-քաճ'իթէյթ, *va.*

**Precognition** բրի-քակնի'շըն, *s.* նախաճանաչում, կանխագիտութ.։

**Preconceit** բրի-քընսիյթ', *s.* կանխակալ գաղափար; 2. նախընկալ կարծիք, նախապաշարում։

**Preconceive** բրի-քընսիյվ', *va.* առաջուց երևակայել, մտաբերել։

**Preconception** բրի-քընսէփ'շըն, *s.* կանխակալ կարծիք։

**Preconcert** -քընսըրթ', *va.* առա-

ջուց խորհրդակցիլ, կանխաւ միաբանիլ։ =-քան'սըրթ, *s.* նախորոշում։

Precon'tract, *s.* նախադաշն։

Precursive, Precursory փրիքըր'սիվ, փրիքըր'սըրի, *a.* յառաջընթաց, նախակարապետ։

Precursor -քըր'սըր, *s.* յառաջընթաց, կարապետ; սուրհանդակ։

Predaceous, Predatory փրիտէյ'շըս, -տէյ'թըրի, *a.* գիշակեր, գիշատիչ, -խանձ; յափշտակող, անօթի

Predecessor փրիտիսէս'ըր, *s.* նախորդ, նախնի, նախահայր։

Predestinarian -տէս'թինէ'րիըն, *a.* նախասահմանեան (աստուածաբան)

Predestinate փրիտէս'թինէյթ, *va.* ի յաւիտենից սահմանել, նախասահմանել։ =*a.* նախասահմանեալ։ -tion -նէյ'շըն, *s.* նախասահմանում; նախասահմանութիւն։ -tor -տէս'թինէյթըր, *s.* նախասահմանող; 2. նախասահմանեան Ա.։

Predestine -տէս'թին, *va.* կանխասահմանել, նախասահմանել։ -tined, *a.* նախասահմանեալ։

Predeterminate փրիտիթըր'մինէյթ, *a.* նախորոշեալ։-tion փրիտիթըրմինէյ'շըն, *s.* նախորոշում։

Predetermine -տիթըր'մին, *va.* նախորոշել, առաջուց սահմանել։

Predial փրի'տիըլ, *a.* հողային, կալուածոց։

Predicable փրէտ'իքէպլ, *a.* ստորոգելի։ =*s.* ստորոգելի, -գութիւն։

Predicament փրիտիք'ըմէնթ, *s.* դրութիւն, վիճակ, ստորոգութիւն

Predicate փրէտ'իքէյթ, *va.* հաստատել, ըսել։=*s.* ստորոգելի։-tion -քէյ'շըն, *s.* հաստատութիւն, ստորասութիւն։-tory -'թըրի, *a.* հաստատական, ստորասական, դրական։

Predict փրիտիքթ', *va.* գուշակել, առաջէն ըսել, մարգարէանալ, նախաձայնել։ -ion փրիտիք'շըն, *s.* գուշակութիւն, մարգարէութիւն։ -ive փրիտիք'թիվ, *a.* մարգարէական -or -'թըր, *s.* գուշակ, կանխատեսող։

Predilection -տիլէք'շըն, *s.* նախասիրութիւն, նախամեծարութ.։

Predisponent, -posing -փօ'նէնթ, -փօզ'ին, *a.* նախապատրաստող։

Predispose -տիսփօզ', (-posed *to*) նախատրամադրել, նախապատրաստել, առաջուց կարգել։-sition փրիտիսփօզի'շըն, *s.* նախապատրաստութիւն, միտում, տրամադրութ.։

Predominance, -cy փրիտամ'ինընսի, *s.* տիրողութիւն, գերակշռութիւն, գերազանցութիւն։

Predominant փրիտամ'ինընթ, *a.* գերակշիռ, առաւելակշիռ, գերազանց, իշխող, գերակայ։ -ly, *ad.* գերազանցօրէն։

Predominate փրիտամ'ինէյթ, *vn.* իշխել, տիրել, գերակշռել։ -tion -նէյ'շըն, *s.* գերակշռութիւն։

Pre-eminence փրիէմ'ինէնս, *s.* գերազանցութ., նախապատուութ.

Pre-eminent -'ինէնթ, *a.* գերազանց, գերիվերոյ, գերագոյն, նախապատիւ։-ly, *ad.* գերազանցօրէն։

Pre-emption փրիէմփ'շըն, *s.* նախագնման իրաւունք, նախագնում։

Preen փրին, *s.* գերձանի երկժանի յարդարիչ, գնծիկ է. =*va.* (թռչունը) փետուրները յարդարել։

Pre-engage փրիէնկէյճ', *va.* առաջուընէ գրաւ' դաշինք գնել։ -ment, *s.* նախագրաւ։ [տատել։

Pre-estab'lish, *va.* նախհաս-

Pre-exist փրիէկզիսթ', *va.* առաջէն գոյութիւն ունենալ, նախագոյ ըլլալ։-ing,-tent -էկզիս'թէնթ, *a.* նախագոյ։ -ence փրիէկզիս'թէնս, *s.* նախագոյութիւն։

Preface փրէֆ'էս(ը), *s.* յառաջաբան, նախաշաւիղ։ =*va.* յառաջաբան գրել, դնել։

**Prefatory** փրէֆ'ըթըրի, *a.* յառաջաբանի նման։

**Prefect** փրի'ֆէքթ, *s.* կուսակալ, կողմնապետ Հ; 2. գաւառապետ Գող.; 3. ոստիկան; 4. քաղաքապետ *շէհիր էմինի*։ -ship, Prefecture փրիֆէք'չըր, *s.* -ութիւն, գաւառապետութիւն; 2. ոստիկանութիւն, ոստիկանապետութիւն։

**Prefer** փրիֆըր', *va.* [to, before, above] նախամեծար սեպել, նախադասել, նախընտրել, ընտրել; 2. ընծայել, մատուցանել։ -red-stock. առանձնաշնորհեալ բաժնեթուղթ

**Preferable** փրէֆ'ըրէպլ, *a.* [to] նախամեծար, լաւագոյն, ընտրելի։ -ness, *s.* նախապատուութիւն։ -ly, *ad.* նախամեծար, լաւ եւս։

**Preference** փրէֆ'ըրընս, *s.* նախապատուութիւն, նախամեծարութիւն, առաւելութիւն; 2. ընտրութ

**Preferential** փրէֆըրէն'շըլ, *a.* արտօնացեալ. մենաշնորհեալ։

**Preferment** փրիֆըր'մընթ, *s.* պատուոյ հանելը, յառաջացում, բարձրացում; 2. կարգ, աստիճան էն

**Prefiguration** փրիֆիկ-, *s.* խորհրդանշան, օրինակ, տիպար։ -tive, -figuring, *a.* նշանով ցուցուած։

**Prefigure** փրիֆիկ'իուր, *va.* օրինակով ցցնել։ -ment փրիֆիկ'իուր-մընթ, *s.* նախանկար, նախագիծ։

**Prefix** փրիֆիքս'(թ), *va.* [to] բակիզբը՝ ծայրը դնել; 2. որոշել, նախակարգել, հաստատել։ =փրի'ֆիքս, *s.* յառաջադիր՝ վերադիր մասնիկ, նախամասնիկ։ [տերեւում

**Prefoliation** -էյ'շըն, *s.* կանխա-

**Prefulgency** փրիֆըլ'ճընսի, *s.* փողփողում։

**Pregnant** փրէկ'նընթ, *s.* յղի, ծոցւոր; 2. բարեբեր, արգաւանդ, պտղաբեր, զեղուն։ -ly. *ad.* գլխովին, լիովին, առատօրէն։

**Prehensible** -հէն'սիպլ, *a.* ըմբռնելի, գիւրահասկնալի։

**Prehensile** -հէն'սիլ, *a.* բռնող։

**Prehension** փրիհէն'շըն, *s.* բռնելը, կալանում, կալում։

**Prejudge, Prejudicate** փրիճըճ', փրիճու'տիքէյթ, *an.* կանխադատել, նախավճռել; 2. վնաս հասցընել, վնասել։ -judgment, *s.* կանխադատում։

**Prejudice** փրէճ'ուտիս(թ), *s.* նախապաշարում, կանխակալ կարծիք; 2. ահօկ, տոյժ, վնաս, կորուստ։ =*va.* կանխաւ դատել, նախապաշարել, կանխադատել; 2. վնաս հասցնել, վնասել։ -against. հակակրութիւն։ -for. համակրանք։ -to. վնաս։

**Prejudicial** -ճուտի'շըլ, *a.* [to] վնասակար։ -ness, *s.* -ութիւն։

**Prel'acy**, *s.* առաջնորդութիւն։

**Prelate** փրէլ'էյթ *s.* առաջնորդ, մեծաւոր, արքեպիսկոպոս։ -ship, -lacy փրէլ'էյսի, *s.* -ութիւն։ -tic, -al փրիլէթ'իքըլ, *a.* առաջնորդական։ -tist փրէլ'էթիսթ, *s.* կղերամիտ, կղերամոլ որ եւ High churchman.

**Prelection** փրիլէք'շըն, *s.* բանախօսութիւն, ճառախօսութիւն։ -tor -'թըր, *s.* ճառախօս, դասախօս։

**Prelibation** փրիլայպէյ'շըն, *s.* նախաճաշակ, սկզբնաժամիկ։

**Preliminary** փրիլիմ'ինըրի, *a.* նախնական, նախակարգ։ =*s.* նախաշաւիղ, յառաջաբան; պատրաստութիւն, մուտք։

**Prelude** փրէլ'իուտ, *s.* նախերգանք, սկիզբ, մուտ; 2. նախերգութ. էր; 3. ձայնի փորձ։ =փրիլիուտ', *an.* ձայն փորձել, նախերգել, սկսիլ։

**Prelusive, -sory** փրիլիու'սըրի, *a.* յառաջաբանական, ներածական

**Premature** փրիմէչըր', *a.* կանխահաս, վաղահաս, տարաժամ,

տհաս ։ -ly, *ad.* ատենէ առաջ, կանխագոյն; 2. անհիմն, անճապարանօք ։ -ness, Prematurity բրի-մէչիւր'իթի, *s.* կանխահասութ., շուտալ

Premeditate -մէտ'իթէյթ, *an.* առաջուց մտածել, խորհիլ, կշռել ։ -tion բրիմէտիթէյ'շըն, *s.* կանխամտածում, առաջէն մտածելը, յառաջախոհութիւն ։

Premier բրիմ'իըր, *a.* առաջին, գլխաւոր ։ =բրէմ'իըր, *s.* առաջին պաշտօնեայ, նախարարապետ, վարչապետ ։ -ship, *s.* -ութիւն ։

Premise բրիմայզ', *va.* առաջ դնել, առաջարկել, բացատրել ։ =բրէ'միս, *s.* [*pl.* բրէ'միսէզ] նախառաջարկ, յայտարարութիւն; 2. նախագրեալ իր; 3. կալուած, յարամասունք (շէնքի), շրջանակ իր.

Premium բրի'միըմ, *s.* [*pl.* բրի'միըմզ] պարգեւ, մրցանակ; 2. ապահովողչէք, ապահովագին; 3. պարգեւ (բաժանորդի տրուած) ։

Premonish բրիմոն'իշ(տ), *va.* (առաջուց) զգուշացնել, ազդարարել ։

Premonition -մօնի'շըն, *s.* նախազգուշութիւն, ազդարարութիւն

Premonitory բրիմոն'իթըրի, *a.* ազդարարական, նախազեկոյց ։

Premorse բրիմորս', *a.* խածատեալ, ծայրատեալ (տերեւ, արմատ)

Prenatal բրինէյ'թըլ, *a.* ծնանելէն առաջ, նախածննունդ ։

Premunition բրիմիւնի'շըն, *s.* նախապատրաստութ., -զգուշութ.

Prenomen բրինօ'մըն, *s.* առաջանուն անուն, կնքանուն; բուն անուն Հ.

Prenominate -նոմ'ինէյթ, *va.* կանխաւ անուանել ։ -tion -'շըն, *s.* նախանուանում [գիտութիւն ։

Prenotion բրինօ'շըն, *s.* կանխա-

Prentice բրէն'թիս, *s.* աշկերտ ։

Preoccupancy -ակ'քիւ-բընսի, *s.* նախատիրացում ։ -occupied -բայտ, *a.* նախատէր; մտազբաղ ։

Preoccupation -ակքիւ-բէյ'շըն, *s.* նախագրաւութիւն իր; 2. կանխակալութիւն; 3. մտազբաղ վիճակ

Preoccupy բրիակ'քիւ-բայ, *va.* նախագրաւել իր; 2. մտազբաղ ընել, զբաղեցնել ։

Preordain բրիօրտէյն', *va.* նախակարգել, նախասահմանել ։

Preordination -նէյ'շըն, *s.* նախորոշում, կանխասահմանում ։

Prepaid -բէյտ', *a.* կանխավճար

Preparation բրէբըրէյ'շըն, *s.* պատրաստութիւն, հանդերձանք ։ -ive բրիբէր'էյթիվ, *a.* պատրաստող, (նախա)պատրաստական, նախնական ։ =*s.* պատրաստող; 2. հանդերձանք; 3. պատրաստութիւն ։ -ory բրիբէր'ըթըրի, *a.* տարրական, նախնական, սկզբնական, պատրաստական (դասընթաց եւայլն) ։

Prepare բրիբէր', *va.* [for] պատրաստել, հանդերձել; 2. կազմել, շինել, յարդարել; 3. նախակրթել ։ =*vn.* պատրաստ ընել, պատրաստուիլ ։ -dness -'էտնէս, *s.* պատրաստականութիւն ։ -rer -բէր'ըր, *s.* պատրաստող ։

Prepay բրիբէյ', *va.* կանխավճար ընել, առաջուց վճարել ։ -ment, *s.* կանխավճար, փրկանք ։

Prepense բրիբէնս', *a.* յառաջախոհ, կանխամտած ։

Prepollence, -cy բրիբալ'ընս, *s.* գերազօրութիւն ։ -lent -'լընթ, *a.* գերազօր, գերազանց ։

Preponderance, -cy բրիբան'տըրընսի, *s.* առաւելակշռութիւն, աւելի ծանրութիւն ։ -derant -'տըրընթ, *a.* գերակշիռ, առաւելակշիռ

Preponderate բրիբան'տըրէյթ, *an.* աւելի դալ՝ կշռել, ծանրանալ; 2. ծանր կոխել, առաւելուլ, գերակշռել ։ -tion, *s.* առաւելակշռութ

**Preposition** բրեբըզիշ՛ըն, *s.* նախադրութիւն, նախդիր։ -al բրեբըզիշ՛ընըլ, *a.* նախադրական։

**Prepositive** բրեբոզ՛իթիվ, *a.* յառաջադիր, (նախա)մասնիկ։ =*s.* նախդիր, նախամասնիկ։

**Prepossess** բրեբըզէս՛(զ), *va.* նախադրաւել; նախապաշարել, տէր լինիլ։ -ing, *a.* գրաւիչ, սիրուն, հաճոյական։ -or, *s.* (սրտա)գրաւ։

**Prepossession** բրեբըզէշ՛ըն, *s.* կանխադրաւում, նախատառացում; 2. կանխակալութիւն, (հակամիտութիւն, սէր, հակակրութիւն)։

**Preposterous** բրեբոս՛-, *a.* խելքի դէմ, անխելք, այլանդակ։ -ly, *ad.* յիմարաբար։ -ness, *s.* անհեթեթութիւն։ [ծծիկ։

**Prepuce** բրի՛բիուս, *s.* թլփատ.

**Prerequisite** բրիրէք՛ուիզիթ, *a.* նախ և առաջ (պէտք), խիստ անհրաժեշտ։ =*s.* անհրաժեշտ պէտք։

**Prerogative** բրիրոկ՛էթիվ, *s.* բարեշնորհութիւն, առանձնաշնորհութիւն, արտօնութիւն։

**Presage** բրի՛սէճ, բրիս՛էճ, *s.* (գուշակութեան) նշան։ =բրիսէյճ՛, *va.* առաջուց ցնել, նախագուշակել; 2. յայտնել, գիտնալ։

**Presbyter** բրէզ՛պիթըր, *s.* երէց, հովիւ; 2. քահանայ Ան․-ian -պիթիր՛իըն, *a.* երիցական(քրիստոնեայ) Յր. -ianism -թիըր՛իընիզմ, *s.* երիցականութիւն Յր.

**Presbytery** բրէզ՛պիթըրի, *s.* երիցութիւն, երիցունք; 2. երիցաժողով, երիցանի։

**Prescience** բրի՛շիէնս, *s.* կանխագիտութիւն, նախագիտութիւն։

**Prescient** բրի՛շիընթ, *a.* նախագէտ, կանխագէտ, կորովամիտ։

**Prescribe** բրիսքրայպ՛, *va.* պատուիրել, հրամայել; 2. սահմանել։ =*vn.* հրաման՝ պատուէր տալ; 2. դեղագիր գրել; 3. կանխագրաւութիւն շահիլ։

**Prescript** բրի՛սքրիփթ, *a.* պատուիրեալ, հրամայուած։ -ible բրիսքրիփ՛թիպլ, *a.* նախագրելի։

**Prescription** բրիսքրիփ՛շըն, *s.* կանոն, պատուէր, հրաման, դեղագիր; 2. ժամանակ անցնելով տիրացում, ժամանցում; 3. կանխագրաւութիւն, նախագրաւութ.։ -tive, *a.* նախագրաւական։

**Presence** բրէզ՛ընս, *s.* ներկայութիւն, առաջիկայութիւն, առաջք; 2. ժողով, ատեան; 3. կերպարանք դէմք, տեսք։ -chamber. ընդունելի դահլիճ։ -of mind. միտքի արթնութ., պատրաստաբանութ.։

*Present բրէզ՛ընթ, *a.* ներկայ, այժմու, արդի, այն, այս; 2. անմիջական; 3. միտքի մէջ, աչքի առաջ; 4. պատրաստ, առձեռն։ =*s.* ներկայն, ներկայ ժամանակ; նուէր, ընծայ, պարգեւ; 3. կաշառք; 4. մուրհակ, փոխանորդագիր։ -tense. ներկայ ժամանակ +.

**Present** բրիզէնթ՛, *va.* [to] ներկայացնել, տալ, մատուցանել; 2. ցցնել, դնել; 3. կարկառել, երկնցընել; 4. ընծայել, տալ, պարգեւել, շնորհել; 5. (կնունքի) տանիլ էլ; 6. (ուրի ծայր) ցցնել, ուղղել։ To-arms. հրացանով բարեւի կենալ։ -able բրիզէնթ՛էպլ, *a.* գինուց հանելիք, ելլելիք; 2. ներկայանալի; 3. ընծայելի։

**Presentation** բրէզընթէյ՛շըն, *s.* ներկայացում, ներկայացնելը; 2. ընծայում, նուիրում էլ; 3. ներկայացում, հանդէս Եր. -tive բրիզէնթ՛էթիվ, *a.* ընծայման։

**Presentee** բրէզընթի՛, *s.* ընծայացու (միճակաւոր) էլ.

**Presenter** բրիզէնթ՛ըր, *s.* պաշտօնի ներկայացող։

**Presentient** փրէ-սէն'շընթ, *a.* նախազգացող։

**Presentiment** փրէ-սէն'թիմէնթ, *s.* սրտի վկայութ., նախազգացում։

**Presently** փրէզ'ընթլի, *ad.* խոկոյն, մէկէն, անմիջապէս; 2. այժմ, զարդիս, ներկայիւս, նորերս։

**Presentment** փրէզէնթ'մէնթ, *s.* ներկայացում, ընծայում, մատուցում

**Preservable** փրէզըրվ'էպլ, *a.* պահելի, պաշտպանելի։

**Preservation** փրէզըրվէյ'շըն, *s.* պահպանութիւն, ապահովութիւն։ -tive, -tory -'էթըրի, *a.* պահպանողական, ապահովական (միջոց)։

**Preserve** փրէզըրվ', *va.* [from] պահել, պահպանել; 2. (փտելէ) պաշտպանել, ապահովել; 3. համեմել, քաղցրաւենի շինել։ =*s.* քաղցրաւենի, անոյշ, բանդակ ռէչէլ; 2. ձկնաւազան, ձկնարան, որսարան։

**Preserved** փրէզըրվտ', *a.* պահուած; 2. բանդակ, անուշ։

**Preserver** փրէզըրվ'ըր, *s.* պահպանող, պահապան, բանդակագործ

**Preside** փրէզայտ', *va.* [over] նախագահել, նախագահութիւն՝ վերակացութիւն ընել, հսկել։ -ncy փրէզ'իտէնսի, *s.* նախագահութիւն, գահերիցութիւն։

**President** փրէզ'իտէնթ, -'իտընթ, *s.* նախագահ, գահերէց։ -ial -տէն'շըլ, *a.* նախագահական։ -ship -տընթ'շիփ, *s.* նախագահութիւն։

**Presider** փրէզայ'տըր, *s.* նախագահող, ատենապետ։

**Press** փրէս(թ), *va.* [on, upon] ճմլել, ճնշել, քամել, մամլել, սեղմել, սխմել, կոխել; 2. ստիպել, նեղել, թախանձել։ =*vn.* ճնշուիլ, նեղուիլ, խառնուիլ, գիզուիլ; 2. ճմլիլ, տագնապիլ։ =*s.* ճմլելու մեքենայ, ճմլոց, ճնշան; 2. հնձան ăkĕskrk; 3. (տպագ.) մամուլ; 4. տպագրութիւն; 5. լրագրութիւն, մամուլ; 6. բազմութիւն, ամբոխ; 7. մղում, ստիպում; 8. տագնապ, հնհնուք, հոգ; 9. դարակ soղապ։ Liberty of—. մամլոյ ազատութիւն։ -bed. դարակաձև անկողին։ -gang. նաւազահաւաք, նաւազագիր։ -man տպող, մամլավար; նաւազահաւաք։ -money. նաւազավարձ։

**Presser** -'սըր, *s.* հնձանահար։

**Pressingly**, *ad.* ստիպողաբար։

**Pressure** փրէշ'ըր, *s.* ճնշում, ճմլում, սեղմում, մամլում; 2. ըստիպում, բռնադատութիւն, հարկ, բռնութիւն; 3. նեղութիւն, վիշտ։ High—. բարձրաճնշում, բարձրաճնշիկ։ Low—. տկաւաճնշում, խոնաւաճնշիկ (իւրաք. քառակ. մատին 50 լիպրայէ պակաս ճնշում)։—gauge. անգայտաչափ ?. Տե.

**Prestidigitator** փրէստիտիճ'իթէյթըր, *s.* աճպարար։ -tion փրէստիտիճիթէյ'շըն, *s.* աճպարարութիւն

**Prestige** փրէս'թիճ, *s.* պատրանք, կախարդանք; 2. ազդեցութ., փայլ։

**Presto** -'թօ, *ad.* արագագոյներ.

**Presum'able**, *a.* ենթադրելի, համարելի, մօքի մօտ -ly, *ad.*

**Presume** փրէզիում', *an.* ենթադրել, համարիլ, կարծել, միտքը դնել; 2. համարում ունենալ։ -mer, *s.* յանդուգն, ինքնահաճ։

**Presumption** փրէզըմ'շըն, *s.* կարծիք, վարկած, ենթադրութիւն; 2. մեծ հաւանականութիւն; 3. մեծամտութիւն, ինքնահաւանութ.։

**Presumptive** փրէզըմփ'թիվ, *a.* ենթադրական, համարուած, կարծեցեալ։ -ly, *ad.* ենթադրութեամբ

**Presumptuous** փրէզըմփ'չուըս, *a.* յանձնապաստան, յանդուգն, ժպիրհ։ -ly, *ad.* յանդգնօրէն։ -ness, *s.* յանդգնութ., մեծամտութիւն։

**Presupposal**, **Presupposi-**

tion փրիսըփփօզի՛շըն, s. կանխակալ ենթադրութիւն, նախակարծիք։

Presuppose փրիսըփփօ՛զ, va. կանխաւ ենթադրել, համարիլ։

Presurmise փրիսըրմա՛յզ, s. կասկած, կարծիք, կռահում։

Pretend փրիթէնտ', va. [to] պատրուակել, ձեւացնել; 2. կեղծել, նմանցնել։ =vn. հաւակնիլ, թեկնածու ըլլալ։ To–illness. սուտ հիւանդ ըլլալ։ To–ignorance. չգիտնալէն գալ. տգիտութիւն ծախել։ –edly –տ'էտլի, ad. կեղծեօք։ –er փրիթէնտ'ըր, s. հաւակնող, թեկնածու։

*Pretense, –tence փրիթէնս', s. պատրուակ, կեղծիք, բարուրք; 2. երեւոյթ, ցոյց; 3. պահանջ, յաւակնութիւն։

Pretension փրիթէն'շըն, s. թեկնածութիւն, հաւակնութիւն; 2. յաւակնութիւն, պահանջանք։

Pretentious փրիթէն'շըս, a. յաւակնոտ, պահանջոտ։

Preter–: փրիթըր–; [կային։
–human –հիւ'մըն, a. գերմարդ–
–imper'fect, s. անկատար +.
–per'fect, s. անորոշ անցեալ։
–plu'perfect, s. գերակատար։

Preterite, –rit փրէթ'ըրիթ, a. անցեալ ժամանակ, անցեալ։

Preterition փրիթըրի'շըն, s. զանցառութիւն, լռելը, անցում։

Pretermit', va. զանց առնուլ։

Preternatural –թըրնէ'չըրըլ, a. գերբնական, արտակարգ. կարգէ դուրս։ –ly, ad. գերբնապէս։

Pretext –'թէքսթ, s. պատրուակ, պատճառանք; կեղծիք, երեւոյթ։

Pretor փրի'թըր, s. ատենակալ, կուսակալ, պրետոր Հ. –ial, –ian փրիթօ'րիըլ, փրիթօ'րիըն, a. պրետորական, դատաւորական։

Prettily փրիթ'թիլի, ad. սիրուն հաճելի կերպով; 2. վայելչօրէն; 3. աղուոր, լաւ, ազնիւ։

Prettiness փրիթ'թինէս, s. քընքշութիւն, փափկութիւն; սիրուն ձեւեր, սիրունութիւն, շնորհք։

Pretty փրիթ'թի, a. սիրուն, քընքուշ, տեսքոտ; վայելուչ. հաճելի։ =ad. չափաւոր, ըստ բաւականին, սանկ նանկ։ [քըթիկ։

Pretzel փրէց'ըլ, s. քաքար մը,

Prevail փրիվէյլ', vn. [over, against] զօրանալ, յաղթել, շահիլ; 2. բռնանալ, տիրել; 3. [on, upon, with] համոզել, գրաւել; 4. յաճախ տեղի ունենալ։ –ing փրիվէյլ'ին, p. a. իշխող, տիրող; 2. գերակշիռ, ազդեցիկ։

Prevalence փրէվ'ըլէնս, s. ազդեցութիւն, զօրութիւն, ուժգնութ

*Prevalent փրէվ'ըլընթ, a. ազդեցիկ, գերակշիռ; 2. աւելակշիռ, տիրող, յաճախադէպ։ –ly, ad. հզօրապէս, սաստկութեամբ։

*Prevaricate փրիվէր'իքէյթ, vn. խոյս տալ, փախուստ տալ, փոխփըխել; 2. (փաստաբանը) մերժել, ատել։ –tion փրիվէրիքէյ'շըն, s. ճըշմարիտէն խուսափում, փախուստ։ –tor –քէյ'թըր, s. խուսափող (դատախազ); 2. դրժող, ստախօս։

Prevenient փրիվի'նիընթ, a. նախաժաման. յառաջընթաց։

Prevent փրիվէնթ', va. [from] ընդմիջել, արգիլել, խափանել, կասեցնել։ –able, a. խափանելի։ –er փրիվէն'թըր, s. խափանիչ, արգելիչ։

Prevention փրիվէն'շըն, s. [to] արգելում, խափանում; 2. արգելք, խոչ։ –tive փրիվէնթ'իվ, a. արգելիչ, խափանարար։ =s. արգելք, խոչ; կանխարգել, ախտարգել (դեղ)

Previous փրի'վիըս, a. նախընթաց, նախկին, առջի։ –ly, ad. յառաջագոյն, կանխաւ։ –ness, s. ա–

ռաջնութիւն, նախորդութիւն։

**Prevision** Բրիվի՛ժըն, *s.* նախատեսութիւն, կանխագիտութիւն։

**Prey** Բրէյ, *s.* կապուտ, աւար, կողոպուտ; 2. կեր, ճարակ, որս (գազանի)։ =*vn.* աւար ժողվել; 2. յափշտակել, որսալ; 3. ուտանիլ; 4. կրծել, փառատել։ Beast of—. գազան։ [գիշատիչ, շաղղակեր։

**Preyer** Բրէյ'ըր, *s.* կողոպտիչ;

**Price** Բրայս(ս), *s.* գին, արժէք; 2. տրիտուր, փոխարէն, վարձ։ =*va.* գին կտրել, արժեցնել։ -current, -list. ընթացիկ գին, սակ, ցուցակ, նիշ։ -less, *a.* անգին, անգնահատելի

**Priced** Բրայստ, *a.* High—. սուղ, արժէքաւոր։ Low—. աժան։

**Prick** Բրիք(ք), *va.* խայթել, ծակել, խոցել, խթանել; 2. գրգռել, մղրակել, կսկծցնել; 3. թթուեցընել; 4. (ականջ) տնկել; 5. նշան դնել, նշանակել։ =*vn.* (առեղ, փուշ) մտնել, խայթել; 2. (գինին) թըթուիլ, դառնալ; 3. կիտադրել, նիշել; 4. (ձին) գրգռել, մղրակել; 5. պճնիլ, զարդարուիլ։ =*s.* խայթոց, խթան, մղրակ; 2. ծակոտածք, խոց, նշան; 3. կսկիծ, ցաւ։ [խթան։

**Pricker** -ք'ըր, *s.* խայթոց,

**Pricket** Բրիք'էթ, *s.* (երկու տարեկան) մատաղ եղջերու։

**Prick'ing**, *s.* խայթելը, խայթ, խոցոտուկ; (նապաստակի) ոտնահետ

**Prickle** Բրիք'ըլ, *s.* փուշ, խայթ։

**Prickliness**, *s.* փշոտութիւն։

**Prickly** Բրիք'լի, *a.* խայթող, կըծու; 2. փշոտ, փշալից։ -bush. մացառուտ։ -pear. հնդկաթուզ։

*Pride Բրայտ', *s.* գոռոզութիւն, հպարտութիւն, մեծամտութիւն; 2. ազնիւ հպարտութիւն, հպարտանք; 3. շքեղութիւն, պերճանք, փառք, պատիւ։ =*va.* հպարտանալ, ոխգալ, պարծենալ։

**Priedieu** Բրիտ'իը. աղօթարան։

**Prier** Բրայ'ըր, *s.* հետաքրքիր։

**Priest** Բրիյսթ, *s.* քահանայ, երէց, տէրտէր; պաշտօնեայ; 2. քուրմ, մոգ։ —craft. կղերականութիւն, մեքենայութիւն։ —ridden. կղերին ձեռքը մնացած, կղերին գերի։ —hood, *s.* քահանայութիւն, քահանայից դաս, քահանայք։ —liness, *s.* քահանայի ձեւ, կերպ։ —ess, *s.* քրմուհի, քրմանոյշ; երէցկին, իրիցկին։ —ly Բրիյսթ'լի, *a.* քահանայական, քահանայի։ —Code.

**Prig** Բրիկ, *s.* գող, քսակահատ; 2. անճոռնի, թեթեւամիտ։ =*an.* շորթել, թռցնել, գողնալ; 3. սակարկել պազարլաշմագ։ —gish Բրիկ'կիշ, *a.* ինքնահաւան, մեծամիտ։

**Prim**, *a.* բեկբեկ, կոտրտուող, արուեստակեալ։ =*va.* պճնազարդել

**Primacy** Բրայ'մըսի, *s.* առաջնորդական պաշտօն, արքեպիսկոպոսութիւն։ [խերգչուհի։ [It.]

**Prima-donna** -'մատօնը, *s.* նա-

**Primage** Բրայ'մէճ, *s.* նաւապետի տրուած) պարգեւ, նաւողչեայ։

**Primal** Բրայ'մըլ, *a.* առաջին։

**Primarily** Բրայ'մըրիլի, *ad.* ի սկզբան, զառաջինն, առաջները։

**Pri'mariness**, *s.* առաջնութ.։

**Primary** Բրայ'մըրի, *a.* նախնական, սկզբնական, առաջին, գլխաւոր; 2. տարրական, պատրաստական (դպրոց), ծաղկոց։ =*s.* գլխաւոր՝ մեծ (փետուր թռչնոց) -meeting. կուսակցական ժողով։

**Primate** Բրայ'մէյթ, *s.* արքեպիսկոպոս, առաջնորդ, նախեպիսկոպոս -ship, *s.* դերագահութիւն։

**Prime** Բրայմ, *a* առաջին, գըլխաւոր, մեծ; երեւելի, գերազանց, ազնիւ; 2. սկզբնական, կանուխ։ =*s.* սկիզբ, ծագում; 2. արշալոյս; 3. գարուն; 4. մանկութիւն, ծաղիկ հա-

տակ, առաւգութիւն; 5. լաւագոյն մաս, ծաղիկ, սեր; 6. առաջին ժամերգութիւն; 7. տպահովագրութեան գիր, տպահովագիր; 8. պարգեւ, մրցանակ ։ =*va.* (հրազէնին) խանձ դնել; 2. յատակի ներկ տալ ևլ. -meridian. առաջին միջօրէական ։ -minister. նախարարապետ, վարչապետ ։ -mover. գլխաւոր զօրութիւն ևն. -number. նախնական թիւ (5, 7, 11, 13)։ –ness, *s.* առաջնութիւն, գլխաւորութիւն։

**Primer** Բրայմ'ըր, *s.* հրետի փամփուշտը ծակող ասեղ, գնդիկ։ = Բրիմ'ըր, *s.* այբենարան, քերական։ Long–. ինոց բոլորգիր ։ Great–. 16 նոց բոլորգիր ևդ.

**Primeval** Բրայիվ'ըլ, *a.* վաղեմի, նախնի, սկզբնական, առաջին։

**Priming** Բրայմ'ին, *s.* հրազէնի խանձ աղըզ օրու; 2. յատակի ներկ, նախաներկ ևլ; 3. ջրանցում (կաթսայէն՝ գլանին) ևն.

**Primitive** Բրիմ'իթիվ, *a.* հին, վաղեմի, նախնական; 2. հանդիսաւոր, ձեւական; 3. արմատական, բուն, գլխաւոր ։ =*s.* (բառից) արմատ, արմատ բառ ։ –ly, *ad.* ի սկզբան, առաջնեբը։ –ness, *s.* առաջնութիւն։

**Primly** Բրիմ'լի, *ad.* կոտրտուելով, նազուն։ [շանք, սեթեւեթ։

**Prim'ness**, *s.* նազանք, քնքը-

**Primogenial** Բրայմօճի'նիըլ, *a.* նախածին, անդրանիկ; 2. սկզբնական։ –gen'itor, *s.* նախահայր։

**Primogeniture** -մօճէն'իչըր, *s.* անդրանիկ։ –ship, *s.* անդրանկութ

**Primordial** Բրայմօր'տիըլ, *a.* նախնական, սկզբնական; 2. վաղեմի։ =*s.* սկիզբ, ծագում։

**Primrose** Բրիմ'րօզ, *s.* գարնանածաղիկ, կովլացնծուկ ։

**Prince** Բրինս, *s.* վեհապետ; արքայազուն; 2. իշխան, իշխանազուն, բրինձ, պայազատ։ –Rupert's drops. ապակի արցունք ևն. –'s metal. սուտ ոսկի բէնքս ։ –dom Բրինս'տըմ, *s.* վեհապետութիւն, իշխանութիւն ։ –liness -'լինէս, *s.* վեհափառութ., իշխանական շուք, ազնուականութիւն ։

**Princely** Բրինս'լի, *a.* իշխանական, արքայական, վսեմ, տիրական։

**Princess** -'սէս, *s.* իշխանուհի։

**Principal** Բրին'սիփըլ, *a.* գլխաւոր, առաջին; 2. երեւելի, կարեւոր։ =*s.* գլուխ, առաջնորդ, պետ; 2. գլխաւոր էր; 3. բուն խնդիր; 4. պարտքի գումար, մայր։ -ity -սիփէլ'իթի, *s.* վեհապետութիւն, իշխանութիւն; 2. իշխան; 3. իշխանապետութիւն։ –ly, *ad.* գլխաւորաբար, մանաւանդ։

**Principle** Բրին'սիփըլ, *s. s.* ծագում, նախապատճառ, սկիզբ; 2. սկզբունք, տարերք; 3. հիմ, օրէնք, տարր; 4. կանոն, առած; 5. յառաջանիւթ, տարր ֊. =*va.* սկզբունքի վրայ հիմնել, տպաւորել; 2. հաստատել։ A man of–. զօրաւոր՝ սկզբունքի տէր մարդ ։ Of no–. տկար, անսկզբունք։ On–. սկզբունքով կանոնով կարգով ։

**Prink** Բրինք(ք), *an.* պճնել, փերեւեռել; 2. պարդաբուիլ։

**Print** Բրինթ, *va.* տպագրել, տըպել, կոխել; 2. պատկերել, դրոշմել, տպաւորել; 3. նշան դնել։ =*vn.* գիրք տպել, հրատարակել։ =*s.* տպաւորութիւն, դրոշմ, տիպ, հետք, նշան; 2. փորագրութիւն; 3. լրագիր; 4. տպածոյ պաստառ, չիթ։ Out of–. սպառած, հազուագիւտ (գիրք)։ –shop. գրախանութ ։

**Printer** Բրինթ'ըր, *s.* տպագրապետ, տպագրիչ; 2. տպող, կոխող։

**Printing** Բրինթ'ին, *s.* տպագրու-

թիւն, տիպ(գրքի); 2. տպում(կերպարի)։ -house. տպարան։ -ink. տըպագրական մելան։ —press. տպագրական մամուլ։

Prior փրա՛յըր, *a.* [to] յառաջիկայ, գլխաւոր; 2. նախընթաց, նախապատիւ, գերագոյն։ =*s.* վանահայր, մեծաւոր։ —ship, —ate փրա՛յըրէյթ, *s.* մեծաւորութիւն։ —ess փրա՛յըրէս, *s.* վանամայր, մեծաւորուհի, մեծ մայրապետ։

Priority փրայօր՛իթի, *s.* առաջնութիւն, գլխաւորութիւն։

Priory փրա՛յըրի, *s.* մենաստան, վանք, վանատուն։

Prism փրիզմ, *s.* հատուածակողմ, պրիսմակ։ —atic, —al —զմէթ՛իքըլ, *a.* -եան։ —oid փրիզ՛մոյտ *s.* հատուածաձեւ։

Prison փրի՛զն, *s.* բանտ։ =*va.* բանտարկել։ -base. գերաուրկ(խաղ մը)։ —er փրիզ՛նըր, *s.* բանտարկեալ; 2. գերի։ [կան, հին։

Pristine փրիս՛թին, *a.* նախնա-

Prithee փրիտհ՛ի. աղաւաղում I pray thee-ի. շնորհ ըրէք, հաճեցէք։

Privacy փրա՛յվըսի, *s.* գաղտնութիւն, առանձնութիւն։

Private փրա՛յվէթ, *a.* անհատական, առանձնական, առանձին; 2. գաղտնի, թագուն։ =*s.* զինուոր, անհատ [illegible]։ In—. գաղտնի, ըստ ուելեայն։ —ly, *ad.* առանձնապէս, անհատապէս; գաղտնի։ —ness, *s.* առանձնութ., անհատականութ.։ —teer փրայվէթիր՛, *s.* (պատերազմիկ տէրութեան մը հաշուոյն գործող) հինանաւ։

Privation փրայվէ՛յշըն, *s.* զրկում, (պաշտօնէ)զրկութիւն; 2. կարօտութիւն, զրկանք, պակասութ.; 3. բացակայութիւն։ —ive փրիվ՛էթիվ, *a.* զրկողական, պակասական, զրկող; 2. բացասական։ =*s.* ժխտում, բացասութիւն; 2. պակասական մասնիկ որպէս in—, un—.

Privet փրիվ՛էթ, *s.* ձիթենեաց ցեղէն թուփ մը, որնգենի [illegible]։ —hedge. ցանկենի։

*Privilege փրիվ՛իլէճ, *s.* առանձնաշնորհում, առանձնաշնորհ; արտօնութիւն, մենաշնորհ։ =*va.* մենաշնորհ մը պարգեւել։ —ged փրիվ՛իլէճտ, *a.* մենաշնորհեալ, առանձնաշնորհեալ։

Privily փրիվ՛իլի, *a.* գաղտուկ։

Privity փրիվ՛իթի, *s.* (գաղտնի) գիտութիւն, տեղեկութիւն; 2. գաղտնիք; 3. մասնաւոր պայմանագիր; 4. *pl.* ամօթոյք, առականք։

Privy փրայ՛վի, *a.* մասնաւոր, սակական, առանձին, գաղտնի, թաքուն։ =*s.* իրաւատէր էր; 2. ճեմիշ, արտաքնոց։ —Chamber. արքունի դահլիճ Անգ. —Council. պետական խորհուրդ Անգ. —Councillor. ներքին խորհրդական Ան. —purse. արքունի անձնական գանձ; անձնական գանձու նախարար։ —seal. արքունի կնիք; կնքապահ։

Prize փրայզ, *s.* մրցանակ, պարգեւ, բրաբիոն; 2. բռնուած նաւ, աւար; 3. բաղդ, վիճակ (վիճակահանութեան); 4. լծակ [illegible]։ =*va.* գին կտրել, արժեցնել, գնահատել, պատուել։ =*vn.* լծակով վերցնել։ -fighter. կռփամարտիկ։ The highest—. մեծագոյն պարգեւ (վիճակահանութեան)։ [ու դէմ

Pro and con փրօ էնտ քան. թեր

Proa փրօ՛է, *s.* վայրենեաց ծառափոր նաւակ, վայրենակուր։

Probabilist փրապ՛էպիլիսթ, *s.* հաւանապաշտ էիլ։ —lism, *s.* -ութ.

Probable փրապ՛էպըլ, *a.* հաւանական, հաւանելի։ —bility, *s.* հաւանականութիւն։ —ly, *ad.* հաւանականաբար, հաւանօրէն։

**Probate** Բրօ՛պէյթ, *s.* կտակի պաշտօնական վաւերացում։

**Probation** Բրըպէ՛յշըն, *s.* ապացոյց, փաստ, քննութիւն, փորձ, ընծայութիւն։ -al, -ary Բրօպէ՛յշընըլ, -նըրի, *a.* քննութեան, փորձական, քննական։ -er Բրըպէ՛յշընըր, *s.* նորուս, համբակ, նորընծայ։

**Probative, -tory** Բրօ՛պէյթիվ, -թըրի, *a.* քննական, ապացուցական։ -tor Բրըպէ՛յթըր, *s.* քննիչ։

**Probe** Բրօպ, *s.* վիրաղննիչ գործի, վիրաչափ, մուծակ ձեր. =*va.* վիրաչափով քննել; 2. խուզել, փորձել, զննել։

***Probity** Բրա՛պիթի, *s.* առաքինութիւն, ուղղութիւն, անմեղութ.

**Problem** Բրա՛պլըմ, -՛լէմ, *s.* խնդիր, առաջարկութ., առեղծուած

**Problematic, -al** Բրապլըմէթ՛իք, -մէթ՛իքըլ, *a.* երկբայական, չապացուցուած, անորոշ, կեղակարծ։ -ly, *ad.* երկբայութեամբ։

**Proboscis** Բրըպա՛սիս, *s.* [-cides -պա՛սիտիզ] (փղի) պատիճ խօրթում; 2. ծծոց, կնճիթ (միջատաց)։

**Procedure** Բրըսի՛ճուր, *s.* ընթացք, վարք, քայլ; 2. յառաջադիմութիւն, գործ։

**Proceed** Բրըսի՛յտ, *vn.* յառաջ գալ, ծագիլ, ծնանիլ, ելնել, ելլել; 2. (մէկէն միւսին) անցնիլ; 3. գործի սկսիլ, վարել; 4. դատ վարել; 5. Բրօ՛սիտզ, *pl.* հասոյթ, արդիւնք։ Net-. զուտ շահ՝ հասոյթ։

**Proceeding** Բրըսի՛յտին, *s.* ընթացք, վարմունք, գնացք, շարժում, կերպ; 2. ձեռնարկ, գործառնութիւն; 3. ատենագրութ. դատ; 4. դատ (ավարութիւն)։

**Process** Բրա՛սէս, *s.* գնացք, ընթացք, շարք; 2. յառաջդիմութ.; 3. արարք, գործք, եղանակ, կերպ; 4. դատավարութիւն; 5. դատաթուղթք, թուղթք; 6. ցցունք (ոսկրի), արձէն։

**Procession** Բրըսէ՛շըն, *s.* թափոր, հանդէս; 2. շքադիրք, ուղեկիցք; 3. բղխում (Հոգ. Սրբոյ) Աստ. -al, -ary Բրըսէ՛շընըլ, -սէ՛շընըրի, *a.* թափորի, հանդիսաւոր։ =*s.* թափորի երգարան, թափորատետր գրք.

**Procidence** Բրը՛սիտընս, *s.* անկում, թուլութ, թուլացում։

**Proclaim** Բրըքլէ՛յմ՛, *va.* հրատարակել, հռչակել, քարոզել։

**Proclamation** Բրաքլըմէ՛յշըն, *s.* հրատարակութիւն, հռչակ; 2. յայտարարութիւն։

**Proclivity** Բրըքլի՛վիթի, *s.* հակամիտութիւն, միտում; 2. յօժարամտութիւն, դիւրութիւն։

**Proconsul** Բրըքա՛նսըլ, *s.* փոխանակ բդեշխի անթի-հիւպատ Հ. -ar, -ary -՛սիւլըր, -րի, *a.* անթիպատական։ -ate, -ship -՛սըլէյթ, -՛սըլշիփ, *s.* անթիպատութիւն։

**Procrastinate** Բրըքրէս՛թինէյթ, *an.* յետաձգել, յապաղել, ձգձգել, երկնցնել։ -tion, *s.* յապաղանք, ձգձգողութ., յապաղում; 2. յետաձգում, յամուրդ։ -tor Բրըքրէսթինէ՛յթըր, *s.* ձգձգող, յապաղկոտ, երկնցնող, յետնորդ։

**Procreate** Բրօ՛քրիէյթ, *va.* ծընանիլ, արտադրել, սերել։ -tion -քրիէ՛յշըն, *s.* ծնելութիւն, ծնունդ; 2. որդեծնութիւն։ -tive Բրօ՛քրիէյթիվ, *a.* ծնելական; 2. ծնելատէր։ -tor Բրօ՛քրիէյթըր, *s.* ծնանող։

**Procrustean** Բրըքրըս՛թիըն, *a.* դաղափարաձոյլ (բռնի)։

**Proctor** Բրա՛քթըր, *s.* գործակատար, փոխանորդ; 2. (ծով. եւ եկեղ. գործոց) դատական գործակալ. փոխանորդ, պրոկուրոր; 3. վերակացու. վարիչ, կարգապահ համ. -ship Բրաքթըր՛շիփ, *s.* -ութիւն։

-ial բրօքիւ'րիըլ, *a.* գործակալի, գործակալութեան։

Procumbent բրօքըմ'պէնթ, *a.* երեսանկեալ, յորսայս։

Procur'able, *a.* հայթայթելի։

Procu'racy, *s.* փոխանորդութ.

Procuration բրօքիուրէյ'շըն, *s.* հայթայթում; 2. փոխանորդութիւն, գործակալութիւն; 3. փոխանորդագիր; 4. պտղի, իրաւունք էլ. -tor բրօք'իուրէյթըր, *s.* գործակատար, փոխանորդ։

Procure բրօքիուր', *va.* հայթայթել, գտնել, ճարել, հոգալ, շահիլ; 2. բերել, պատճառել։ = *vn.* բոզաւադութիւն ընել։ -ment, *s.* հայթայթում, ճարելը, միջնորդութիւն; 2. ստացում, շահիլը

Procurer -քիուր'ըր, *s.* ստացող, հայթայթիչ; 2. բոզաւադ, կաւատ

-ress բրէքիու'րէս, *s.* կաւատուհի։

Prod բրոդ, *s.* խթան; 2. հերիւն

Prodigal բրոդ'իկըլ, *a.* անառակ, շռայլ, մսխող, չխնայող։ -ly, *ad.* շռայլութեամբ։ -ity -իկէլ'իթի, *s.* շռայլութ., վատնում, մսխում։

Prodigious բրօդիճ'ըս, *a.* հրաշալի, սքանչելի, զարմանալի; 2. ահագին, արտաքոյ կարգի; 3. վիթխարի։ -ly, *ad.* սաստիկ, սքանչելի կերպով։ -ness, *s.* անհնարին մեծութիւն; 2. զարմանալիք։

Prodigy բրոդ'իճի, *s.* սքանչելիք, զարմանալիք, հրաշք։

Produce բրօդիուս'(զ), *va.* յառաջ դնել, ի ցոյց ածել; 2. արտադրել, գոյացնել, ծնանիլ; 3. պատճառ ըլլալ, աւթել, հասցնել; 4. շինել, հանել; 5. երկնցնել, երկարաձգել (գիծ) է =*s.* արտադրութիւն, բերք (երկրի), հասոյթ, արդիւնք։ [արտադրիչ։

Producer բրօդիու'սըր, *s.* ծնող,

Producible բրօդիու'-, *a.* արտադրելի։ -ness, -bility, *s.* -ութ.

Product բրոդ'ըքթ, *s.* արդիւնք, պտուղ, բերք, հասոյթ, արտադրութիւն; 2. արտադրեալ (թիւ) ք. -ile բրօդըք'թիլ, *a.* երկարելի, տարածելի որ եւ Ductile.

Production բրօդըք'շըն, *s.* արտադրութիւն, արդիւնք; բերք, ծընունդ, պտուղ, հասոյթ; 2. երկարում

Productive բրօդըք'թիվ, *a.* [of] արտադրիչ, բուսցնող; 2. պտղաբեր, արգասաւոր։ -ness բրօդըք'-թիվնէս, *s.* արդիւնաւորութ., մուտք

Proem բրօ'էմ, *s.* յառաջաբան։

Profanation բրոֆընէյ'շըն, *s.* պղծութիւն, ամբարշտութիւն։

*Profane բրօֆէյն', *a.* պիղծ, սրբապիղծ, ամբարիշտ, անսուրբ; 2. մարմնական, սրբապիղծ; 3. երդուող ուտող; 4. արտաքին, աշխարհական։ =*va.* պղծել, ապականել, խանգարել, եղծել։ -ly, *ad.* սրբապղծութեամբ։ -ness, Profanity բրօֆէն'իթի, *s.* (սրբա)պըղծութիւն, ամբարշտութիւն, հայհոյութիւն; 2. (կրօնի) անհոգութիւն, ագնոստութիւն։ [պիղծ։

Profaner բրօֆէյն'ըր, *s.* սրբա-

Profess բրօֆէս'(զ), *va.* հրապարակաւ խոստովանիլ, դաւանիլ, յայտարարել; 2. ցոյց տալ, ցցնել; 3. ի գործ դնել, ընել, վարել։ =*vn.* խոստովանանք ընել, խոստովանցնել։

-edly բրօֆէս'էդլի, *ad.* բացէ ի բաց, հրապարակաւ; 2. արհեստով։

Profession բրօֆէշ'ըն, *s.* հրապարակաւ խոստովանութիւն, դաւանանք, ուխտ(ադրութիւն); 2. զբաղում, գործ, պաշտօն; 3. (ուսուցչու)թիւն։ -al, *a.* պաշտօնի, զբաղման, արհեստի; 2. ուխտեալ։

-ally բրօֆէշ'ընըլի, *ad.* արհեստով։

Professor բրօֆէս'ըր, *s.* դաւանող, խոստովանող; 2. (գոլէճի)

վկայեալ՝ մասնագէտ դասախօս, ուսուցչապետ, բրոֆէսոր։ -ship, s. (գոլէճի) դասախօսութիւն, բրոֆէսորութիւն, ուսուցչութիւն։ -ial բրօֆէսօ՛րիըլ, a. ուսուցչական։

Proffer բրա՛ֆըր, va. ընծայել, մատուցանել, տալ։ =s. ընծայ, առաջարկ, մատուցում, փորձ։

Profficience, -cy բրըֆի՛շընս, բրըֆի՛շընսի, s. յառաջադիմութիւն; 2. կարողութիւն, կորով։

Profficient բրըֆի՛շընթ, a. հըմուտ, քաջ, կորովի, յառաջադէմ։

Profile բրօ՛ֆայլ, s. (երեսի) կողմնական տեսք, կիսադէմ; 2. շրջագիծ։ =va. կողմնակի նկարել։

Profit բրա՛ֆիթ, s. շահ, օգուտ; 2. հասոյթ, բերք; 3. օգտակարութիւն։ =vn. [by] օգուտ քաղել, օգտիլ, շահիլ; 2. զարգանալ, յառաջդիմել; 3. օգտակար ըլլալ, ծառայել։ =va. շահեցնել, օգնել։ -less, a. անշահ, անօգուտ։

Profitable բրա՛ֆիթէպլ, a. [to] շահաւոր, օգտակար, շահեկան, պիտանի։ -ness, s. -ութիւն։ -ly բրա՛ֆիթէպլի, ad. -կերպով։

Profligacy բրա՛ֆլիկէսի, s. անառակութիւն, անբարոյութիւն։

Profligate բրա՛ֆլիկէյթ, s. անառակ, լկտի, կրից անձնատուր, անբարոյական; 2. ապիրատ, անըզգամ։ -ly, ad. անբարոյութեամբ։

Profound բրըֆաու՛նտ, a. խորունկ, խոր, խորին, անյատակ; 2. խորիմաց, բազմահմուտ; 3. ամենախոնարհ։ =s. անդունդ, ալք, խորք; 2. ովկէան, ծով։ -ly, ad. խորունկ, ի խոր։ -ness, Profundity բրըֆը՛նտիթի, s. խորութիւն, խորք։

*Profuse բրըֆիու՛ս, a. խիստ առատաձեռն, շռայլ, առատ, յորդ։ -ly, ad. առատապէս, շռայլաբար։ -ness, Profusion բրըֆիու՛ժըն, s. անչափ առատաձեռնութ., շռայլութիւն, վատնում; 2. յորդութիւն, զեղում։

Prog բրակ, vn. մուրալ, ուտելիք ժողվել; 2. շորթել, թռցնել, գողնալ։ =s. ուտելիք, կեր; 2. մուրացիկ։ [խահայր, պապ։

Progenitor բրըճէ՛նիթըր, s. նա-

Progeny բրա՛ճինի, s. սերունդ, ծնունդ, զաւակ, զարմ, ազգ։

Prognathus, -nathic բրակնէյ՛թհըս, s. երկայնածնօտ։

Prognosis բրակնօ՛սիս, s. ախտագուշակութիւն։ -nostic բրակնա՛սթիք, a. (ախտա)ցոյց, (ախտա)գուշակ, կանխացոյց (նշանք) եւ.

Prognosticate -նա՛սթիքէյթ, va. գուշակել, առաջէն գիտնալ։ -tion -քէյ՛շըն, s. կանխացոյց նշան; 2. կանխածանութիւն եւ. -tor -՛թիքէյթըր s. ախտագուշակ, կանխագէտ

Program, -gramme բրօ՛կրէմ, s. յայտագիր, ծրագիր (ուսմանց)։

Progress բրա՛կրէս, s. յառաջադիմութիւն, զարգացում; 2. ճարակում (ախտի), յառաջացում (բանակի), սաստկացում (ջերմի)։ =բրըկրէ՛ս(թ), va. յառաջադիմել, յառաջանալ; 2. սաստկանալ; 3. շարունակել։

Progression բրըկրէ՛շըն, s. (անընդհատ) շարունակութիւն, յառաջատութիւն; 2. յառաջխաղացութիւն, ընթացք։ -al բրըկրէ՛շընըլ, a. յառաջադիմական։

Progressive բրըկրէ՛սիվ, a. յառաջադիմական, յառաջխաղաց; 2. աճեցուն։ -ly, ad. հետզհետէ, յառաջատութեամբ։ -ness, s. -ութ.

*Prohibit բրըհի՛պիթ, va. արգիլել, խափանել։ -er, s. արգիլող։

Prohibition բրօհիպի՛շըն, s. արգելում, խափանում, արգելք։ -ist, s. մաքսապաշտ։ -bitive, -tory

բրըճէգ'երէն,-ճէգ'երըրէ, *a.* արգելիչ։

*Project բրըճէգդ', *va.* արձակել, ձգել (շուք); 2. ծրագրել, գծագրել (ծիր, յատակագիծ); 3. խորհիլ, միտքը դնել, միտք ունենալ ։ =*vn.* դուրս ելնել, դուրս ցցուիլ, ցցկել ։ =բրաճ'էգդ, *s.* խորհուրդ, դիտում, միտք; 2. գաղափար, ծրագիր ։ -or բրըճէգդ'ըր, *s.* խորհուրդ երկնող, ծրագրող ։ -ure բրըճէգ'չըր, *s.* դուրս ցցուած մաս; քիթ, ելուստ

Projectile բրըճէգդ'իլ, *a.* ընկեցիկ, արտաձիգ, օդընկէց ։ =*s.* զօրութենէ մը նետուած մարմին, ձիգ (գնդակ, ռումբ, քար) ։

Projection բրըճէգ'շըն, *s.* արտաձգութիւն, նետելը, արձակում; 2. դուրս ելած մաս, արտամաս, ատրաւանդ, քիթ չըգմա; 3. խորհուրդ, գաղափար; 4. ծրագիր, նկար, քարտէս ։ Powder of—. ոսկեփոխ փոշի ։

Prolate բրօ'լէյդ, *a.* երկարաձիգ

Proleg բրօ'լէկ, *s.* նախասրուն (միջատի) ։

Prolepsis բրըլէբ'սիս, *s.* կանխում մը; 2. նախամանակութիւն ։

Proletaire բրօլէդէր', *s.* ընչազուրկ; 2. անպիտան, սնոտի։ -tariat բրօլէդէյ'րիէդ, *s.* չքաւորք, աղքատ դասակարգ; 2. ընչազրկութ

Prolicide բրալի'սայդ, *s.* մանկասպանութիւն ։

Proliferous բրըլիֆ'ըրըս, *a.* արտադրիչ, ծաղկածին (բոյս) ։

Prolific -լիֆ'իք, *a.* բեղմնաւոր, արգասաւոր, ծննդագործ, պտղաբեր

*Prolix բրըլիքս', *a.* երկայն, երկարատեւ, ձանձրալի ։ -ness, -ity, *s.* երկայնութ., երկայնաբանութ. ։

Prolocutor բրալըք'իուդըր, *s.* ժողովի բերան, ատենապետ ։

Prologue բրօ'լակ, *s.* նախերգան, նախաբան, յառաջաբան ։

Prolong բրըլանկ', *va.* երկնցնել, երկարաձգել, երկարել; 2. յապաղել, ուշացնել ։ -ation բրօլընկէյ'շըն, *s.* երկարում, երկարաձգութիւն ։ -or բրըլան'կըր, *s.* երկնցնող ։

Prolusion բրըլիու'ժըն, *s.* նախափորձ որ եւ Prelude, trial.

Promenade բրամընէյդ', -նատ', *s.* շրջագայութիւն, ճեմ, պտոյտ; 2. ճեմելավայր, ճեմավայր ։ =*vn.* պտոյտ ընել, շրջագայել, հով առ գալ ։

Promethean բրըմի'թիըն, *a.* պրոմեթեան, կենսատու, ներշնչող ։

Prominence, -cy բրամ'ինընս, *s.* ցցուածք, ելուստ, քիթ; 2. արտակարգութ ։

Prominent բրամ'ինընդ, *a.* դուրս ցցուած, ելած, արտակարգ; 2. երեւելի, կարեւոր, ցայտուն, աչքառու ։ -ly, *ad.* գերազանցօրէն, կարկառուն ։

Promiscuous բրըմիս'քիուըս, *a.* խառնիխուռն, խառնակ, խառնաշփոթ; 2. հասարակ ։ -ly բրըմիս'քիուըսլի, *ad.* անհեթեթ կերպով ։

Promise բրամ'իս(դ), *s.* խոստում, խօսք, ուխտ; 2. յոյս ։ =*an.* խօսք տալ, խոստանալ; 2. վստահեցնել, հաստատել; 3. յուսացնել, յոյս տալ ։ The Land of—. Աւետեաց Երկիր ։ To break a—. խոստմնազանց ըլլալ ։ [նաեւ, խոստացեալ ։

Promisee բրամ'իսի, *s.* խոստըմ[illegible]

Promiser, -sor բրա'միսըր, -սօր, *s.* խոստացող ; յանձնառու ։ [սայիք ։

Promis'sing, *s.* յուսատու յու-

Promissory բրամ'իսըրի, *a.* խոստման ։ -note. մուրհակ ի հրամանի ։

Promontory բրամ'ընդըրի, *s.* հրուանդան, սարաւանդ ալբ.

Promote բրըմօդ', *va.* յառաջացնել, պաշտպանել, թեւարկել, քաջալերել; 2. (աստիճանը) բարձրացնել ։

Promoter բրօմօդ'ըր, *s.* յառաջ

վարող, խրախուսիչ, պաշտպան։

**Promotion** բրըմօ՛շըն, *s.* յառաջացում, բարձրացում; 2. աստիճանառ, վերընծայում էլ; 3. յառաջադիմութիւն։ –**tive** բրըմօ՛թիվ, *a.* յուսալից, խրախուսիչ։

***Prompt** բրամթ, *a.* պատրաստ, կազմ; 2. արագ, շուտ; 3. փութկոտ, ճիշտ։ =*va.* թելադրել, ներշնչել, ազդել; 2. օգնել, խրախուսել; 3. միտքը ձգել, յիշեցնել։ –at repartee. պատրաստաբան։ –**ness**,

**Promptitude** բրամ՛թիթիուտ, *s.* արագութ., շուտութ., պատրաստականութ.; 2. փոյթ, աշխուժութիւն։ –**ly** բրամթ՛լի, *ad.* շուտով, փութով։ [բար (թատրոնի)։

**Prompter** բրամթ՛ըր, *s.* յուշա-

**Promulge**, –**mulgate** բրըմըլճ՛, -մըլ՛կէյթ, *va.* հրատարակել։ -**gation**, *s.* հրատարակում, հրատարակութիւն։ –**gator**, -**mulger** բրըմըլճ՛ըր, *s.* հրատարակող։

**Prone** բրօ՛ն, *a.* [to] հակեալ, կոր, գլխիվայր; հակամէտ, դիւրամէտ, ծռած; 2. (ցանկա)սէր։ –**ly**, *ad.* դէպ ի վար։ –**ness** -՛նէս, *s.* հակում, միտում, յօժարութիւն; 2. կորութիւն։

**Prong** բրանկ, *s.* (երկաթանւոյ) արձէն, ժանիք, ծայր, մատ։ -buck, -horn, *s.* կորեղջերուի կ.

**Pronominal** բրընամ՛ինըլ, *a.* դերանունական։ [նուն +.

**Pronoun** բրօ՛նաուն, *s.* դերա-

**Pronounce** բրընաունս՛(թ), *va.* [*against* a person, *on* a thing] արտաբերել, արտասանել, հնչել; 2. յայտարարել, ծանուցանել (վճիռ); 3. ստենաբանել, ճառախօսել; 4. հաստատել։ –**able**, *a.* արտասանելի։ –**nced** -նաունսթ՛, *a.* որոշ, վճռական։ –**cing** բրընաունս՛ինկ, *a.* արտասանական, հնչմամբ, հնչումով

**Pronunciamento**, –**iamiento** բրընընշիէմէն՛թը, բրընունիամիէն՛թօ, *s.* յայտարարութիւն։

**Pronunciation** բրընընշիէյ՛շըն, *s.* արտասանութիւն, հնչում; 2. ըսուածք, խօսուածք։ –**tive** բրընըն՛շիէթիվ, *a.* արտասանական։

**Proof** բրու՛ֆ, *s.* փորձ, նշան, ապացոյց, վկայութիւն, փաստ, ցոյց; 2. անթափանցիկ, կարծր; 3. դիմացող, դիմացկուն, անջրանցիկ, անկիզելի; 3. հաստատամտութիւն։ =*a.* քաջ, արի, կորիճ, անվեհեր։ Water, Damp, Fire–, ջուրի՝ խոնաւի՝ կրակի դիմացող, անջրանցիկ, անկիզելի։ -sheet. գրքի փորձ թղ; 2. փորձակշիռ մ.։ –**less**, *a.* առանց ապացոյցի։

**Prop** բրափ(թ), *va.* նեցուկ՝ մոյթ դնել, մոյթել; 2. ձող դնել։ =*s.* նեցուկ, յենակ, մոյթ; 2. խեչակ։

**Propagable** բրափ՛էկէպլ, *a.* տարածելի, աճեցուն; 2. ծննդական։

**Propaganda** բրափըկէն՛տէ, *s.* հաւատատարած ժողով (ի Հռոմ), ծաւալոց։ –**dism** բրըփակէն՛տիզմ, *s.* (հաւատոյ) ծաւալում, կրօնատարածում։ –**dist**, *s.* կարծիքներ ծաւալող, գաղափարածաւալ։

**Propagate** բրափ՛էկէյթ, *va.* շատցնել, սերել; 2. տարածել, ծաւալել։ –**tion** -կէյ՛շըն, *s.* սերում, աճում; 2. զարգացում; 3. տարածում, ծաւալում։ –**tor** -կէյ՛թըր, *s.* տարածող, գաղափարածաւալ։

**Propel** բրըփէլ՛, *va.* յառաջ մղել, վարել, քշել։ –**ler** բրօփէլ՛ըր, *s.* մղիչ, շարժիչ, յառաջավար; 2. շոգենաւի պտուտակ որ եւ Screw–.

**Propense** բրըփէնս՛, *a.* հակեալ, (չարա)մէտ, յօժար։ –**ness**, –**pension**, –**pensity**, **Propendency** բրըփէն՛տընսի, *s.* միտում, բերում; 2. հակում, հակամիտութիւն։

Proper բրափ'ըր, *a.* յատուկ, սեպհական; 2. բուն, բնիկ, բնական; 3. յարմար, բնական, պատշաճ, ճիշդ; 4. վայելուչ, կոկիկ, ընդունակ: India—. բուն Հնդկաստան: —ly բրափ'ըրլի, *ad.* ըստ պատշաճի, շէնք շնորհք, շնորհքով, կոկիկ; 2. պատշաճապէս; 3. ուղղակի: -ness, *s.* վայելչութիւն, գեղ (եցկութիւն)

Property բրափ'ըրթի, *s.* սեպհականութիւն, յատկութիւն, որպիսութիւն; 2. առանձին հանգամանք, բնութիւն; 3. կալուածք, ինչք, ըստացուածք, կարասի բըրըբըրդը; 4. յարակիցք, կազմածք, մանրաստրք Թատ.

Prophesy բրաֆ'իսի, *s.* մարգարէութիւն, աւետում, աւետելը, գուշակութիւն; 2. ուսուցանելը: —sier բրաֆ'իսայըր, *s.* կանխասաց, կանխագուշակ:

Prophesy բրաֆ'իսայ, *an.* մարգարէանալ, գուշակել; մատը հոտուըտալ; 2. ուսուցանել, քարոզել:

Prophet բրաֆ'էթ, *s.* կանխասաց, մարգարէ, գուշակ; 2. մեկնիչ: —ess —ֆ'էթէս, *s.* մարգարէուհի:

Prophetic, —al բրըֆէթ'իքըլ, *a.* մարգարէական: —ly, *ad.* —րէութեամբ

Prophylactic, —al բրաֆիլէք'-, *a.* նախապահեստ, նախարգել (դեղ):

Propinquity բրըփին'քուիթի, *s.* մերձաւորութիւն, մօտաւորութ.; 2. ազգականութիւն: [քելի:

Propitiable բրըփիշ'իը-, *a.* ամո-

Propitiate բրըփիշ'իէյթ, *va.* սիրտը առնուլ, կակղել, ողոքել; 2. ամոքել, հանդարտեցնել, մեղմել: —tion —փիշիէյ'շըն, *s.* հանդարտում, խաղաղում, ամոքում; 2. քաւութիւն, հաշտութիւն, պատարագ: —tor բրըփիշ'իէյթըր, *s.* հաշտարար: —tory բրըփիշ'իէյթըրի, *a.* քաւչարար, քաւչական, հաշտարար: =*s.* քաւութեան սեղան, քաւութ. Ս. Գ.

*Propitious բրըփիշ'ըս, *a.* նպաստաւոր, հաշտ, հաճ; 2. յաջողակ: —ly բրըփիշ'ըսլի, *ad.* —կերպով:

Propolis բրօ'փոլիս, *s.* ականամոմ (փեթակի) բիրապօղոշ: [ռարկու:

Proponent բրըփօ'նընթ, *s.* ա-

*Proportion բրըփօր'շըն, *s.* համեմատութիւն; 2. ներդաշնակութիւն; 3. բաժին, մաս: =*va.* համեմատութիւնը պահել, համեմատել; 2. յարմարցնել: In—. համեմատութեամբ:

Proportionable բրօփօր'շընէպլ, *a.* համեմատ(ական), ըստ չափու: —ness, *s.* —ly, *ad.* համեմատաբար:

Proportional բրըփօր'շընըլ, *a.* համեմատական, համեմատ, պատշաճ: —ly, *ad.* համեմատաբար, համեմատութեամբ: —ity բրըփօրշընէլ'իթի, *s.* համեմատականութիւն:

Praportionate բրըփօր'շընէյթ, *a.* համեմատական, պատշաճ: =*va.* համեմատել, համեմատութիւնը պահել: —ly, *ad.* համեմատութեամբ —ness —'շընէյթնէս, *s.* համեմատութ

Proposal բրըփօ'զըլ, *s.* առաջարկութիւն, խնդիր:

Propose բրըփօ'զ, *va.* առջեւ դնել, առաջ հանել; 2. առաջարկել; 3. առաջադրել, նպատակ դնել, մտադրել: =*vn.* առաջադրել, խորհիլ, որոշել; 2. (ամուսնութիւն) առաջարկել, ուզել, ձեռքը խնդրել:

*Proposition բրափըզի'շըն, *s.* առաջարկութիւն, նախադասութիւն —al —զի'շընըլ, *a.* նախադասութեան:

Propound բրըփաունտ', *va.* առաջարկել, առջեւ դնել:

Proprietary բրըփրայ'էթըրի, *s.* տէր, ստացիչ; 2. (կալուածոյ) տէր, հողատէրք: =*a.* հողատիրոջ:

Proprietor բրըփրայ'էթըր, *s.* տէր, ստացող: —ship, *s.* սեպհա-

կանուԹիւն, տիրուԹիւն ։ -tress բրըբրայ՛ըտրէս, s. Հողատիրուհի։

Propriety բրօբրայ՛էթի, s. յարմարուԹիւն, պատշաճուԹիւն, վայելչուԹիւն ։

Propugn բրըբիուն՛, va. պաշտպանել, ջատագովել ։ -er, s. -ող։

Propulsion բրըբըլ՛շըն, s. յառաջմղում, յառաջվարում, մղում։ -sive -բըլ՛սիվ, a. մղիչ, վարիչ։

Prorogation բրօրըկէյ՛շըն, s. ընդհատում, յետաձգում (խորհրդրնի.)

Prorogue բրըրօկ՛, va. (նիստը) յետաձգել, ընդհատել ; 2. ժողովը դադրեցնել (աաչափ ատեն)։ [քում։

Proruption -րըբ՛շըն, s. ժայԹ-

Prosaic,-al բրըզէյ՛իքըլ, a. արձակային; 2. ձանձրալի, հետեւակ, անշուք ։ -ly, ad. հետեւակ կերպով։ -saism բրօզէյ՛իզմ, s. արձակ(ագրուԹիւն)։ -saist -՛իսթ, s. արձակագիր ։

Proscenium բրըսի՛նիըմ, s. նախատեսարան, բեմ հ. ժ. Թ.

Proscribe բրըսքրայպ՛, va. ի կորուստ մատնել, դատապարտել ; 2. մերժել, տարագրել, աքսորել, քշել։

Proscription -քրիբ՛շըն, s. տարագրուԹիւն, աքսոր; 2. (անդատաստան) ի մահ դատապարտելը։ -tive բրըսքրիբ՛թիվ,a.տարագրական

Prose բրօզ, s. արձակ (շարադրուԹիւն); 2. հետեւակ՝ տափակ խօսք։=va. արձակ շարադրել՝գրել; 2. ձանձրացնել։ [հալածելի։

Prosecutable -՛իքիութըպլ, a.

Prosecute բրոս՛իքիութ, va. հետեւէն լինալ, հալածել ; 2. (բանի մը) աշխատիլ, հետամուտ ըլլալ; 3. դատի քաշել, դատախազել ։ -tian բրոսիքիու՛շըն, s. ետեւէ իյնալը, հետամտուԹիւն; 2. դատական ձեռնարկք ւլն. -tor, s. հետամուտ; 2. դատախազ։

Proselyte բրոս՛իլայթ, s. նորահաւատ, նորադարձ ։ =va. նորահաւատ ընել, դարձնել։

Proselytism բրոս՛իլիթիզմ, s. մարդորսուԹիւն։-tize -թայզ, va. հաւատքի բերել, դարձնել, շահիլ։

Proser բրօ՛զըր, s. արձակագիր; 2. անշահ, հետեւակ(գրող)։ [ընէն։

Prosily բրօ՛զիլի, ad. հետեւակօ-

Prosiness, s. հետեւակուԹիւն

Prosla'very, a. գերեվարական

Prosody բրոս՛ըտի, s. առոգանուԹիւն; 2. տաղաչափուԹիւն։ -dial,-dical բրըսօ՛տիըլ, բրըսոտ՛իքըլ, a. առոգանուԹեան, առոգանական ։ -dian, -dist բրըսօ՛տիըն, բրոս՛ըտիսթ s.առոգանուԹեն հմուտ

Prosopopœia բրոսըբըբի՛իը, s. դիմառնուԹիւն գր.

Prospect բրոս՛բէքթ, s. տեսարան, տեսիլ, երեւոյԹ ; 2. բնավայր, դաշտանկար; 3. հեռանկար; 4. ակնկալուԹիւն, յոյս =an. քննել, խուզել, փնտռել։-ion բրըսբէք՛շըն, s. նախատեսուԹիւն, հեռատեսուԹիւն։ -ive բրոսբէք՛թիվ, a. նախատես , հեռատես; 2. ապագայ , գալիք, յետագայ։ =s. հեռանկար; 2. դիտակ ։ -us բրըսբէք՛թըս, s. յայտարարուԹիւն, յայտագիր։

Prosper բրոս՛բըր, vn. յաջողիլ, ղարգանալ; 2. առաջ երԹալ, բարգաւաճիլ, ծաղկիլ ։ =va. յաջողցնել։ -ity բրըսբէր՛իթի, s. յաջողուԹիւն, բարգաւաճում, զարգացում։

Prosperous բրոս՛բըրըս, a. յաջող, բարգաւաճ, բարեբաստ։ -ly, ad. յաջողուԹեամբ, բարեբաղդաբար։ -ness, s. բարեյաջողուԹիւն

Prosthesis բրոս՛թհիսիս, s. յարադրուԹիւն; 2.շինծու անդամ բժ

Prostitute բրոս՛թիթիութ, va. պոռնկուԹեան մատնել, պոռնկել;

2. ծախել, անարգօրէն անձնատուր ըլլալ։ =*a.* պոռնիկ, բոզ; 2. ծախուած, վարձկան, անպատիւ։

**Prostitution** փրասթիթիու'շըն, *s.* պոռնկութիւն; 2. անպատուութ., ապականութիւն; անարգօրէն թողուլը։ –tor փրա'սթիթիու-թըր, *s.* շնացող։

**Prostrate** փրա'սթրէյթ, *a.* գետնատարած, երեսանկեալ։ =*va.* տարածել, պառկեցնել; 2. տապալել, զգետնել, կործանել; 3. իջեցնել, խոնարհեցնել; 4. ժամ ընել՝ կենալ, երկրպագել նամազ գըլմագ։ To–one's self. երկրպագել, ի գուճս իյնալ։ –tion փրըսթրէյ'շըն, *s.* երկրպագութիւն, գետնատարածութ.; 2. լքում, պարտասում; 3. կթոտութիւն, կործանում; 4. ուժասպառութիւն ել.

**Prostyle** փրօ'սթայլ, *s.* սիւնաշար սրահ, սիւնազարդ։

**Prosy** փրօ'զի, *a.* արձականման; 2. տաղտկալից, ձանձրալի, հետեւակ

**Prosyllogism** փրըսիլ'ըճ, *s.* հաւաքաբանութ., նախադասութ. ևլ.

**Protasis** փրա'թէսիս, *s.* միջանկեալ նախադասութիւն։ [փոփոխ

**Protean** փրօ'թիըն, *a.* յարա-

**Protect** փրըթէքթ', *va.* [*others* from, *ourselves* against] պաշտպանել, պահպանել, պատսպարել, հովանաւորել, թեւարկել։ –ion –թէք'շըն, *s.* հովանաւորութիւն, թեւարկութիւն, պաշտպանութիւն; 2. հովանի, պաշտպան, թիկունք; 3. խնամակալութ.։ –ionist փրօթէք'շընիսթ, *s.* պաշտպանական, (մաքսա) պաշտպան, մաքսապաշտ։ –ionist, *s.* մաքսապաշտ դրութիւն, մաքսապաշտպանութիւն։ -ive փրօթէք'թիվ, *a.* պաշտպանողական։

**Protector** փրօթէք'թըր, *s.* պաշտպան, հովանաւոր, թեւարկու, պահպան, կռնակ; 2. խնամակալ; 3. (ի Հռոմ) հոգատար։ –ate, –ship –'ըրէյթ, –թ'ըրշիփ, *s.* խնամակալութիւն (Քրոմուէլի)։ –ess, *s.* խնամակալ թագուհի; 2. խնամակալուհի, պաշտպանուհի։

**Protégé** փրօթէժէ', *s.* պաշտպանեալ; 2. անչափահաս։

**Protest** փրըթէսթ', *vn.* [against] բողոքել, հանդիսապէս՝ հրապարակաւ յայտարարել։ =*va.* հրապարակաւ խոստանալ, հաւատել, ապահովել։ =փրօ'թէսթ, *s.* բողոքագիր, բողոք։ To–a bill *or* note. փոխ/գրին չընդունուելուն դէմ բողոքել։ –ation փրաթէսթէյ'շըն, *s.* բողոքում, բողոքագիր; 2. յայտարարութիւն։ –er փրըթէս'թըր, *s.* բողոքարկու։

**Protestant** փրա'թէսթընթ, *a.* բողոքող, բողոքական։ –ism –'էսթընթիզմ, *s.* բողոքականութիւն։

**Prothonotary** փրըթհօ'նըթըրի, *s.* նոտարապետ Հ; դիւանապետ։

**Protocol** փրօ'թըքալ, *s.* ատենագրութիւն, արձանագիր, պատշէր։

**Protomar'tyr,** *s.* նախավկայ։

**Protoplasm** փրօ'թըփլէզմ, *s.* նախահիւթ, նախախմոր։ –plast –'թըփլէսթ, *s.* նմոյշ, օրինակ։

**Prototype** փրօ'թըթայփ, *s.* նախատիպ, սկզբնատիպ, նախատիպար

**Protozoan** փրօթըզօ'ըն, *s.* նախակենդանի, կենսապարզիկ։ –zoic, *a.* նախակենդանական։

**Protract** փրըթրէքթ', *va.* երկարաձգել, երկարել; 2. յապաղել, յետաձգել։ –tion փրըթրէք'շըն, *s.* երկարաձգում, յապաղում։ –tive, *a.* երկարող; 2. յամեցնող։ –ter, –tor փրըթրէք'թըր, *s.* յապաղող, երկարող; 2. անկիւնաչափ գործի մը, վերածիչ; վիրամաքրիչ Գ.

**Protrude** փրըթրու'տ, *va.* յա-

ռաջ քշել, երկնցնել, դուրս հանել։ =vn. ելլել, քշել։

**Protrusion** փրօթրու՛ժըն, s. մըղում, քշելը, ցցուիլը, տնկուածք։ -sive -՛սիվ, a. ցցուած, ցռկած։

**Protuberance** փրօթիու՛պըրընս, s. ուռոյց, դարաւանդ; 2. ցցուածք զապարթը։ -rant փրօթիու՛պըրընթ, a. դուրս ելած, կարկառուն; 2. ցռկուն, ցցուած, արտածիգ։

**Protuberate** փրօթիու՛պըրէյթ, va. դուրս ելնել, ցցուիլ, ցռկիլ։ -tion -՛շըն, s. դուրս ցցուիլը։

**Proud** փրաուտ՛, a. [of] հպարտ, գոռոզ, ամբարտաւան, սնափառ; 2. կտրած, ջերմնդամ (կենդ.)։-flesh աւելորդ միս (յարգանդի)։ -ly, ad. -ness, s. [ցուցանելի։

**Provable** փրու՛վէպլ, a. ապա-

**Prove** փրու՛վ, va. ապացուցանել, փորձով ցնել, յայտնել; 2. ստուգել, հաստատել, վկայել։ It was -ved. հաստուեցաւ, իմացուեցաւ (որ)։

**Provençal** փրօվանսա՛լ, s. Բրովանսի, Միջին Գաղղիոյ լատիներէն։

**Proven** փրու՛վըն, p. a. փորձուած

**Provender** փրա՛վէնտըր, s. բուսաճարակ, խար, յարդ. ալիք։

**Proverb** փրա՛վըրպ, s. առակ. ասացուած, առած; 2. առակախաղ։ The Book of-s. Գիրք Առակաց (Սողոմոնի) Ս.Գ.

**Proverbial** փրօվըր՛պիըլ, a. առակաւոր, առակ դարձած; 2. առակաց։ -ism, s. առակաբանութիւն։ -ist, s. առակախօս։ -ly, ad. առակի կարգ անցած, առականման, աշխարհածանօթ։

**Provide** փրօվայտ՛, va. [with, for, against] հայթայթել, հոգալ, պատրաստել; 2. կազմել, յարդարել։ =vn. հոգ տանիլ, նայիլ; 2. պէտքերն հոգալ, ամբացնել։

**Provided** փրօվայ՛տէտ, con. [-that.] հերի՛ք է որ, միա՛յն թէ, պայմանա՛ւ որ։ =a. հոգացուած։

**Providence** փրա՛վիտընս, s. նախատեսութիւն, հեռատեսութիւն; 2. Նախախնամութիւն Ա.Ծ.

**Provident** փրա՛վիտընթ, a. նախատես, հեռատես; 2. զգուշաւոր, խոհեմ։ -ly, ad. կանխատեսութեամբ, զգուշութեամբ։

**Providential** -տէն՛շըլ, a. նախախնամական։-ly, ad. -նամաբար

**Province** փրա՛վինս, s. նահանգ, գաւառ; 2. կողմ, աշխարհ; 3. իշխանութիւն, երկիր; 4. վիճակ; 5. պաշտօն, գործ։

**Provincial** փրօվին՛շըլ, a. գաւառական, նահանգային; 2. գաւառացի, գաւառաբնակ; 3. գեղջուկ, անպաճոյճ։ =s. գաւառացի; 2. գաւառապետ, վիճակահայր ղղ.-ism, s. տեղական ասացուածք, շեշտ, գաւառաբարբառ։ -ity -շիէ՛լիթի, s. գաւառաբանութիւն, գաւառական ոճ՝ շեշտ։

**Provision** փրօվի՛ժըն, s. նախապատրաստութիւն; 2. նախատեսութիւն, նախահոգութիւն; 3. pl. ուտելիք պաշար մթեր, համբար։ =va. պէտքերը հայթայթել, պաշար լեցնել, մատակարարել։ -al, -ary փրօվի՛ժընըլ, -վիժը՛ընըրի, a. առժամանակեայ, առժամեայ։ -ally փրօվի՛ժընըլի, ad. առժամապէս, առժամայն։

**Proviso** փրօվայ՛զօ, s. [pl. -զօզ.] թէական պայման, դաշինք։

**Provisor** փրօվայ՛զըր, s. վերակացու, հոգաբարձու։ -sory -՛զըրի, a. թէական, առժամանակեայ։

**Provocation** փրավօքէյ՛շըն, s. գրգիռ; 2. գրգռում, գրգռութիւն։ -tive փրօվօ՛քէյթիվ, a. գրգռիչ, սիրաշարժ, զարթուցիչ։ =s. գրգիռ, պատճառ։

**Provoke** բրըվօ՛ք(դ), *va.* գրգռել, շարժել, դրդել; 2. զայրացընել, բարկացնել։ To be -d. զայրանալ, բարկութեան բրդիլ։ -king բրըվօք՛ին, *a.* գրգռիչ, զայրացուցիչ։

**Provost** բրավ՛ըսդ, *s.* վերատեսուչ, տնօրէն (գոլէճի); 2. դատաւոր, քաղաքապետ (ի Սկովտիա); 3. ոստիկանութեան բանտ։ -martial բրըվօ՛մարշըլ. բանակի քննիչ-դատաւոր։ -ship, *s.* -ութիւն։

**Prow** բրաու, *s.* ցռուկ, նաւացռուկ, առաջք, նաւառաջք proվա, կեմինին սպաշը։

**Prowess** բրաու՛էս, *s.* քաջագործութիւն, քաջութիւն, շահատակութիւն որ եւ Gallantry.

**Prowl** բրաուլ, *va.* դառնալ, թափառիլ, ոլորտալ։ =*vn.* թափառիլ, որսի պտտիլ; 2. աւարել, թալլել որ եւ Pray, plunder.

**Proximate** բրաքս՛իմէյդ, *a.* մօտիկ, մերձաւոր, անմիջական։ -ly, *ad.* անմիջական կերպով, -ջապէս։

**Proximity** բրըքսի՛միդի, *s.* մերձաւորութիւն, մօտիկութիւն։

**Proximo** բրաքս՛իմօ, *s.* գալ ամիս

**Proxy** բրաքս՛ի, *s.* փոխանորդութիւն, փոխանորդ; 2 փոխանորդագիր

**Prude** բրու՛դ, *s.* պարկեշտ ձեւացող կին, սուտ-զգաստ, համեստունակ, շնորհունակ։

**Prudence** բրու՛դընս, *s.* խոհեմութիւն, խոհականութիւն, խելք։

**Prudent** բրու՛դընդ, *a.* խոհեմ, խոհական, իմաստուն։ -ly, *ad.* խոհեմութեամբ, խոհեմաբար, խելքով։

**Prudential** բրուդէն՛շըլ, *a.* խոհական, զգուշական; 2. ընդհանրական, գործադիր, վարչական (ժող)

**Prudery** բրու՛դըրի, *s.* սուտ ըզգաստութիւն, ամօթխածութիւն։

**Prudish** բրու՛դիշ, *a.* սուտ ըզգաստ, շնորհունակ, կեղծհամեստ։

**Prune** բրու՛ն, *va.* ծառը մաքրել, յոտել, ճիւղհատել, քշտել; 2. (փետուրները) յարդարել։ =*vn.* փերեւետել, պճնել, յարդարել։ =*s.* չորցած սալոր, դամոնչիր։ Pruning-bill, -hook. յատոց, յոտոց սրբչքը։ -knife, -shears. հատոցիկ, ոստահատ գ.

**Prunella, -nello** -նէլ՛լը, -նէ՛լօ, *s.* պաստառ մը; 2. սալոր մը, մամխի

**Prurience, -cy** բրու՛րիընսի, *s.* սաստիկ փափաք, մարմաջ; 2. եռք, մարմաջախտ։ -rient բրու՛րիընդ, *a.* մարմաջոտ, ցանկացող, եռքոտ։

**Prurigo** բրուրայ՛կօ, *s.* քոտինքխաշ, եռք բժ. -ginous, *a.* եռքոտ։

**Prussian** բրա՛շըն, բրըշ՛ըն, *a.* բրուսիական; 2. բրուսիացի։ -blue. երկաթախաժուկ դ. -siate բրու՛սիէյդ, *s.* բրուսիատ դ. -sic բրու՛սիք, *a.* բրուսիական (թթու)։

**Pry** բրայ, *va.* հետաքօտել, քըննել, լրտեսել, որոնել; 2. լծակով շարժել, վերցնել։ =*s.* լծակ։ -ing բրայ՛ին, *a.* հետաքրքիր։

**Psalm** սամ, *s.* հոգեւոր երգ, սաղմոս։ -ist, -odist սա՛միսդ, սէլ՛մըդիսդ, *s.* սաղմոսերգող, երգասաց, տիրացու, դպիր; 2. սաղմոսերգու, Դաւիթ մարգարէ։ -ody սէլ՛մըդի, *s.* սաղմոսերգութիւն, սաղմոսարան; 2. երգասացութիւն։ -ography սէլմաք՛րըֆի, *s.* սաղմոսագրութիւն, երգաշինութիւն։

**Psalter** սօլ՛դըր, *s.* սաղմոսարան, սաղմոս։ -tery սօլ՛դըրի, *s.* նուագարան մը, սաղմոսարան։

**Pseud-, Pseudo-,** սիուդ-, սիու՛դօ. մասնիկ սուտ, կեղծ։

-æsthesia սիուդէսթի՛զիա, *s.* կեղծզգացում, սուտզգացում։

-odip'teral, *a.* ստաերկթեւ։

-onym սիու՛դօնիմ, *a.* սուտ անուն, կեղծ անուն։

-onymous -ան'իմըս, *a.* կեղծանուն, սուտանուն։ [կացոյց։

-oscope -իսա՛-բասքօբ, *s.* ներհա-

-oprophet -իսա-բօֆըթ՛ֆիթ, *s.* սուտ մարգարէ։

Pshaw շօ՛, *int.* վա՛հ, օ՛ն, անդր

Psora սօ՛րէ, *s.* քոս աղտ.

Psychic, -al սայ՛քիք, սայ՛քիքըլ, *a.* (մարդկային) հոգւոյ, հոգեկան։

Psychologic, -al սայքըլա՛ճիքըլ, *a.* հոգեբանական։ -logist սայքա՛լըճիսթ, *s.* հոգեբան, հոգեխօս։

Psychology սայքա՛լըճի, *s.* հոգեբանութիւն։ [հմայութիւն։

Psychomancy -՛մէնսի, *s.* հոգե-

Ptarmigan թար՛միկըն, *s.* լեռնաբնակ թռչուն մը, ձիւնակաքաւ։

Ptero-, թէր՛օ-։ -dactyl թէրօտէք՛թիլ, *s.* թռչնամողես, մաշկամատն է. -podes -բօտ, *pl.* մաշկոտունք, թեւատունք։ -phylle թէր՛ըֆիլ, *s.* թեւատերեւ էջ։ -phorus -ֆ՛ըրըս, *a.* փետրաբեր (թիթեռն)։

Ptolomaic թալըմէյ՛իք, *a.* պտղոմեան (դրութիւն) աստ.

Ptyalism թայ՛ըլիզմ, *s.* բազմաթքքութիւն բժ.

Puberty բիու՛պըրթի, *s.* չափահասութիւն, արբունք, լի հասակ։

Pubescent բիուպէս՛ընթ, *a.* չափահաս; 2. աղուամազոտ (բոյս)։ -cence բիուպէս՛ընս, *s.* արբունք, չափահասութիւն; 2. աղուամազք։

Public բըպ՛լիք, *a.* հանրային, հասարակաց, ժողովրդական, հրապարակային։ =*s.* հասարակութիւն, ժողովուրդ; 2. հանրութիւն։ In-. հրապարակաւ; 2. առ հասարակ։ -house. պանդոկ, գինետուն։ -Law. միջազգային օրէնք։ -mind. հասարակաց՝ հանրային կարծիք։

Publican բըպ՛լիքըն, *s.* հարկահան, մաքսաւոր Հ; 2. պանդոկապետ, գինեպան։

Publication բըպլիքէյ՛շըն, *s.* հրատարակութիւն, գիրք։

Publicist բըպ՛լիսիսթ, *s.* ազգաց օրինաց վրայ գրող։

Publicity բըպլի՛սիթի, *s.* հանրականութիւն, հրապարակութիւն

Publicly բըպ՛լիքլի, *ad.* հրապարակաւ, պաշտօնապէս, բացէն։

Publish բըպ՛լիշ, *va.* հրատարակել, ի լոյս ընծայել՝ ածել; 2. ծանուցանել, հռչակել, քարոզել, տարածել։ -er բըպ՛լիշըր, *s.* հրատարակիչ, տպող։ -ment, *s.* հրատարակութիւն; 2. (ամուսնութեան) ծանուցում։

Puce բիուս, *s.* լուագոյն։

Puceron -՛ըրօն, *s.* լուիճ փիsան պիրի, որթալուիճ փիլօքսեռա, խաղողի որթ, քաղպի։

Puck բըք, *s.* չար ոգի, պայ; 2. ցայգոգի։ -ball. փոշետունկ։

Pucker բըք՛ըր, *s.* փոթ, կնճիռ, խորշոմ, ծալք; 2. չփոթութիւն, խառնակութիւն։ =*an.* փոթ փոթ ըլլալ, խորշոմիլ; 2. քաշուիլ, կծկիլ։

Pudder բըտ՛ըր, *s.* աղմուկ, ժըխոր, վայնասուն։

Pudding բուտ՛ին, *s.* կարկանդակ մը, արմշաղ; 2. երշիկ սուճուգ; 3. խճուղ կօshկն։ -stone. չեղջաղօդ, ղօդաքար երկ. -time. ճաշաժամ

Puddle բըտ՛լ, *s.* ջրակոյտ, եղտիւր, ջրաշեղջ; 2. (ջուր բռնելու) կաւծեփ։ =*va.* ցեխոտել, պղտորել; 2. ջուրին ակը ծեփել, օկել; 3. (ձոյլ երկաթը հնոցին մէջ) զտել; 4. կարծրացնել, պուտլել։ A-in a storm. սափորին մէջ փոթորիկ։

Puddler բըտ՛լըր, *s.* պուտլող։

Puddling, *s.* անջրանցիկ ընելը, օկի ծեփ; երկաթը կարծրացնելը։

Puddly բըտ՛լի, *a.* տղմուտ, ցեխոտ; 2. պղտոր, աղտոտ։

Pudicity բիուտի՛սիթի, *s.* պար-

կեշտութիւն, ամօթխածութիւն։

**Pueblo** փու-էյպ'լօ, *s.* սպանիական աւան (ի Հար. Ամերիկա)։

***Puerile** փիու-'ըրիլ, *a.* մանկական, տղայական ։ -ness, -rility փիու-րիլ'իթի, *s.* տղայութ., մանկութ

**Puerperal** փիու-ըր'փըրըլ, *a.* տըղաբերքի, ծննդականի (ջերմ)։

**Puff** փըֆ(ֆ), *s.* փչում (բերնի, հովի); 2. շունչ, շնչելը; 3. յորձանք, ամպ (մուխի), փուք; 4. ձուեւկոգի (հաստատեայ մը); 5. փքոցուռոյց, ուռուցիկ (գովեստ)։ =*vn.* փչել, շնչել; 2. մուխի յորձանք տալ, մուխ փչել; 3. ուռիլ, ուռենալ։ =*va.* փչել, ուռեցնել; 2. փքացնել, գովաբանել։ -bird. թաւարծի թռ. որ եւ Barbet, -adder. փժ. -ball. գայլափուք, փոշեսունկ, լաքսին։

**Puffer,** *s.* փչող; գովաբանող։

**Puffin** փըֆ'ին, *s.* մրրկահաւ թռ.

-ess փըֆ'ինէս, *s.* ուռոյց, ուռ։

**Puffy** փըֆ'ի, *a.* ուռուցիկ, պոռոտախօս, փքացեալ; 2. ուռած։

**Pug** փըկ, *s.* կապիկ; 2. շնիկ։

**Pugh** փու, *int.* թո՜ւհ, բո՜ւ։

**Pugil** փիու-'ճիլ, *s.* պտղունց ։ -ism փիու-'ճիլիզմ, *s.* կռփամարտութ.

**Pugilist** փիու-'ճիլիսթ, *s.* կռփամարտիկ։ -ic, *a.* կռփամարտի։

**Pugnacious** փըկնէյ'շըս, *a.* կըռուազան, կռուասէր։ -ness, -acity փըկնէս'իթի, *s.* կռուազանութիւն։

**Puisne** փիու-'նի, *a.* կրտսեր դատ.

**Puissance** փիու-իս'էնս, *s.* կարողութիւն, ոյժ, զօրութիւն։

**Puissant** փիու-իս'էնթ, *a.* կարող, հզօր. զօրաւոր; 2. ուժեղ, ազդեցիկ։ -ly, *ad.* զօրեղապէս, ուժով։

**Puke** փիու-ք(գ), *an.* ործալ, փսխել, դուրս տալ։ =*s.* ործացուցիչ, փսխեցնող (դեղ)։

**Pulchritude** փըլ'քրիթիու-տ, *s.* գեղեցկութիւն, վայելչութիւն; 2. գեղ, շնորհ։

**Pule** փիու-լ, *vn.* ճչել, լալ։

**Pull** փու-լ, *va.* քաշել, քաշկըռտել, քաշքշել, հանել; 2. փրցնել, քաղել, կորզել, ժողվել; 3. (ծովը) պատռել, թի քաշել։ =*vn.* թի քաշել, թիավարել։ =*s.* քաշելը, թիավարելը; 2. ճիգ, ջանք; 3. ցնցում, պայքար։ To-apart. (թիավարելով) զատուիլ, հեռանալ; 2. (չուանը) բրցնել։ To-down. տապալել, կործանել; վար քաշել։ To-foot. վազել, ընթանալ։ To-up. վեր քաշել; արմատէն խլել, կորզել; սանձը քաշել, կեցնել (ձին)։ -back. արգելք, խոչ, խափան ։

**Puller** փու-'լըր, *s.* (թիա)վար։

**Pullet** փու-'լէթ, *s.* վառեակ։

**Pulley** փու-'լի, *s.* [*pl.* -leys -'լիզ] ճախարակ, ծիծեռնիկ, լիսեռնիկ մագարա։ Cone-. Fast, Loose-.

**Pullicat, -cate** փըլլի'քէթ, փըլ'լիքէյթ, *s.* մետաքսէ թաշկինակ։

**Pulmonary, -monic** փըլ'մընըրի, -մոն'իք *s.* թոքախտի դեղ; թոքախտաւոր։ =*a.* թոքային։

**Pulp** փըլփ, *s.* (պտուղի) միս, թամբ; 2 (թուղթի) զանգուած, խմոր

**Pulpit** փու-'լփիթ, *s.* ամպիոն, բեմ; 2. բեմբասացութիւն, սրբազան պերճախօսութիւն, քարոզ։

**Pulpous, Pulpy** փըլ'փըս, փըլ'փի, *a.* մսուտ, կակուղ։ -ness փըլ'փըսնէս, փըլ'փինէս, *s.* կակղութիւն։

**Pulque** փու-'լքէ, *s.* ակաւօղի։

**Pulsate** փըլ'սէյթ, *vn.* (սիրտը) զարնել, տրոփել, բաբախել։

**Pulsatile** -'սէթիլ, *a.* նուագելի։

**Pulsation** փըլսէյ'շըն, *s.* զարկ, բազկազարկ, բաբախում; 2. թընդիւն, տրոփում։ -tive, -tory փըլսէյ'թիվ, -'թըրի, *a.* տրոփուն, թընդական որ եւ Throbbing.

Pulse բըլս, s. (չնչերակի)զարկ, երակազարկ; 2. տրոփում, ճօճում, թրթռում;3.կանանչեղէն,ընդեղէն

Pul'verable, a. փոշիանալի։

Pulverize բըլ'վըրայզ, va. փոշիացնել, ծարծատել. լեսել ։ =vn. փոշիանալ։ -zation բըլվըրիզէյ'շըն, s. փոշիացում, ծարծատում։

Pulverulent-վէր'իուլընթ,a.փոշեստեսակ, փոշոտ, փոշելից։-lence բըլվէր'իուլէնս, s. փոշոտութիւն։

Puma բիու'մը, s. կատուառիւծ

Pumice բը'մ'իս,s.չեչաքար։-ous բըմի'շըս, a. ծակոտկէն, չեչանման։

Pummace, Pummel, *See* Pomace, Pommel.

Pump բըմբ(փ), s. ջրհան բուղուղմպա; 2.նրբամուճակ սֆարբին։ =va. (ջրհանով՝ ջուր) վեր հանել, ջրհանել; 2. պարպել, քաշել; 3. բերնէն խօսք խլել, քաշքշել։ -brake, -handle. ջրհանի լծակ, թեւ սրըղ։

Pumpion, Pumpkin բըմբ'իըն, բըմփ'քին, s. դդում գապպազ։

Pun բըն, s. բառախաղ, համանունութիւն։=va. բառախաղ ընել։

Punch բընչ(ը), s. պարուբիչ, դրոշմահայր, հայր նշանագիր; 2. կնքոց, դրոշմահար, կնքահար զըմպա, մարզապ; 3. ջերմօղի բուն; 4. հոպիտ, խեղկատակ սօյթարի բուդ; 5. կարճուկլոր ձի՝մարդ; 6.կռուփ, բռունց։ =va. կնքահարել, դրոշմահարել,ծակել; 2. կռփել, բռնցի զարնել։ -bowl -'պօլ. բոնչի գաւաթ

Puncheon բըն'չըն, s. կնքահար, դրոշմահար, կնքոց զըմպա; 2. տակառաչափ, տակառ (3.18 և 3.33 հարիւրալիթր=250-360 հոխանոց); 3. (ձեղունի) ուղղագերան, կառնագերան։

Puncher բըն'չըր,s. դրոշմագործի; 2. կտրող գործի, պարուբիչ։

Punchinello բընչինէ'լօ,s. խեղկատակ, միմոս, հոպիտ ։ [գեր։

Punchy բըն'չի, a. կարճ կլոր,

Punc'tate, -ted, a. կէտ կէտ ։

Punctilio բընկթիլ'իօ, s. չափազանց մեծարանք՝ ձեւեր; 2. ձեւազանցութիւն, կեղծ ձեւեր։

Punctilious բընկթիլ'իըս , a. խծբծող, բծախնդիր, նրբասէր։-ly -'իըսլի, ad. բարակ բարակ։ -ness -'իըսնէս, s. բծախնդրութիւն։

Puncto բընկ'թօ, s. բարակ ձեւեր,բծախնդրութիւն; 2. ծայրանկիւն (մրցակոցի); 3. թրածայր։

Punctual բընկ'չուըլ, a. ճշդապահ, ճիշդ , ժամանակապահ; 2. ամենաճիշդ, ճշգրիտ, նրբախնդիր։ -ity -չուէլ'իթի,s. ճշդապահութ., ճշդութ.։-ly, ad. ճշդապահ կերպով, մեծ ճշդութեամբ, անվրէպ։

Punctuate բընկ'չուէյթ,va.կէտ դնել, կէտադրել։-tion -չուէյ'շըն, s. կէտադրութիւն։

Puncture բընկ'չըր(ը), s. խայթուածք , ծակուածք; 2. ծակ , բացուածք։=va. խայթել,ծակծկել, ծակել։ [բանձին, կարդացող։

Pundit բըն'տիթ, s. գիտուն պը-

Pung բընկ, s. լեռնակառք։

Pungency բըն'ճընսի,s. կծուութիւն, դառնութիւն, թթուութ.։

Pungent բըն'ճընթ, a. ծակող , խայթիչ; 2. կծուհամ,կծու, բարկ, լեղի; 3. սաստիկ, կսկծագին, աղեկէզ; 4. խիստ, խայթող։ -ly բըն'ճընթլի, ad. կծու՝ խիստ կերպով։

Punic բիու'նիք, a. կարքեդոնական, պունիկեան։ -faith. դրժողութիւն ։ [կութիւն։

Puniness բիու'նինէս, s. փոքրը-

Punish բըն'իշ(ը), va. պատժել, պատուհասել; 2. ծեծել, խրատել, դանել։-able, a. պատժելի, պատժոյ արժան,պատժապարտ։-ment,

s. պատուհաս, պատիժ; 2. ծեծ, տանջանք որ եւ Chastisement.

Punitive փիւ՛նիթիվ, a. պատժական, պատժողական։

Punk փընք, s. բոց, պուտիկ; 2. աբեթ, ծառի կեղեւ։

Punner, Punster փըն՛ըր, -՛սթըր s. բառախաղ շինող, երկդիմաբան։

Punt փընթ, s. հարթանաւ։

Puny փիւ՛նի, a. ոչինչ, խեղճ, տկար; 2. փանաքի, չնչին, փոքրիկ որ եւ Inferior, petty.

Pup փըփ(դ), vn. (շունը) ձկնիլ, ձագ բերել։ =s. լակոտ, քոթոթ։

Pupa փիւ՛փէ, s. [pl. Pupæ -՛փի.] հարսնեակ (միջատի), ճճիճին։

Pupil փիւ՛փիլ, s. աչքի բիբ; 2. աշակերտ, սան։ -age փիւ՛փիլէճ, s. աշկերտութիւն; անչափահասութիւն եւ. -lary փիւ՛փիլըրի, s. աչաց բբի, բբային; 2. աշակերտի։

Puppet փըփ՛էթ, s. պուպրիկ, պաճուճապատանք գուգլա։ -show, -play. պատանեացոյց, լիկիդոնի գուգլա օյունու։ -valve. փաբանակ։

Puppy փըփ՛ի, s. լակոտ, շանձագ, կուլիկ, կուտիկ; 2. յաւակնոտ, մորոս; 3. ինքնահաւան, թեթեւսոլիկ գէվզէկ։ -ism -փ՛իիզմ, s. ինքնահաճ յիմարութիւն, մորոսութիւն; 2. անմիտ անձնագոյութիւն, զէվզէկութիւն։

Pur փըըր, vn. կատուն մռմռալ։ =s. մռմռուք, խորդում (կատուի); 2. անձայն հաւանութիւն, հը՛մ։

Purblind փըր՛պլայնտ, a. կարճատես, կոյր։ -ness, s. -ութիւն։

Pur'chasable -չ՛էսը-, a. գնելի։

Purchase փըր՛չէս(դ), va. գնել, ծախու առնուլ; 2. ստանալ, առնել։ =s. գնում, ստացում; 2. գընած բան, գնած, գնածոյ, ստացք; 3. տարողութիւն, զօրութիւն մէք; 4. կազմած, սարքած մէք. -ser փըր՛չէսըր, s. գնող, գնորդ, յաճախորդ, ծուխ մուշթէրի։

*Pure փիւր, a. [com. փիւ՛րըր, sup. փիւ՛րէսթ.] մաքուր, յստակ, զուտ, պարզ; 2. անարատ, անմեղ, սուրբ, ողջախոհ; անապակ; միմիայն

Purely փիւր՛լի, ad. անխծօրէն, սրբութեամբ, յստակութեամբ; 2. միմիայն, էապէս, պարզապէս, կոկիկ

Pureness փիւր՛նէս, s. մաքրութիւն, յստակութիւն; պարզութիւն, անարատութ. [բանկերտել

Purfle փըր՛ֆլ, va. բանիլ, նկա-

Purgation փըրկէ՛յշըն, s. զտում, մաքրում; 2. արդարացումն եւ. -tive, a. մաքրողական, լուծողական (դեղ)։

Purgatory փը՛րկէթըրի, s. քաւարան դժ. =a. քաւչական, մաքրական։ -torial, -torian փըրկէթօ՛րիըլ, -՛րիըն, a. քաւարանի։

Purge փըրճ՛, va. [of, from] մաքրել, զտել, սրբել, քաւել; 2. արդարացնել եւ; 3. ներսը մաքրել, քակել։ =vn. պարզուիլ, զտուիլ; 2. ներսը մաքրուիլ։ =s. մաքրում, զտում; 2. մաքրողական դեղ։

Purification փիւրիֆիքէ՛յշըն, s. մաքրում, զտում; 2. օրինական մաքրութիւն Եկ; 3. սրբութիւն, քաւութ. -tory, a. մաքրող, -ական

Purifier փիւ՛րիֆայըր, s. մաքրող, զտիչ; 2. սրբող, քաւող։

Purify -՛րիֆայ(դ), va. մաքրել, զտել; սրբել, քաւել; =vn. մաքրուիլ։

Purism փիւ՛րիզմ, s. լեզուի մաքրութիւն, վայելչաբանութիւն։

Purist փիւ՛րիսթ, s. վայելչաբան, վայելչախօս, նրբախօս։

Puritan փիւ՛րիթըն, s. մաքրակրօն Յր; 2. խստակրօն, խստակեաց։ =a. մաքրակրօնի։ -ism փիւ՛րիթընիզմ, s. մաքրակրօնութիւն։

Puritanic, -al փիւրիթէն՛իք, -թէն՛իքըլ, a. մաքրակրօնի; 2. խըս-

տակրօն, մոլեռանդ, կրօնամոլ։

Purity բիու՛րիթի, s. մաքրութիւն, պարզութիւն; 2. զտութ., անխառնութիւն, յստակութիւն; 3. անբծութիւն, սրբութիւն; 4. յստակախօսութիւն։

Purl բըրլ, s. (աղնագործի) եզերազարդ, Թլիփ; 2. ծածանում, ծփանք, ծուփ; 3. մրմունջ, խոխոջ (առուակի); 4. կաակաջուր, գինօղի =vn. խոխոջել, մրմնջել (առուակը) փրփրիլ։ =va. եզրազարդել։

Purlieu բըր՛լիու, s. շրջակայ, արուարձան որ եւ Environs.

Purlin, -line բըր՛լին, s. առաստաղի հեծան մը, ծպեղակալ։

Purloin բըր՛լօյն, բըր՛լօյն, va. շորթել, խորել, յափշտակել։ -er բըրլօյն՛ըր, s. յափշտակիչ, գող։

Purple բըր՛բըլ, s. ծիրանի ներկ; 2. ծիրանի, կարմիր գոյն; 3. կայսերական իշխանութիւն; 4. արքայական պատիւ, ծիրանի Հ; 5. pl. ծիրանախտ հաւապա։ =a. ծիրանեգոյն, ծիրանի, կարմիր; 2. կայսերական, արքայական։ =va. ծիրանի՝ կարմիր ներկել։

Purport բըր՛բօրթ, s. նպատակ, գիտում; 2. իմաստ, նշանակութիւն, արժէք։ =va. նշանակել, իմաստ տալ։

Purpose բըր՛բըս, s. նպատակ, դիտաւորութիւն, գիտում; 2. միտք, մտադրութիւն, խորհուրդ; 3. ձեռնարկ։ =va. առաջադրել, միտք ընել, կամենալ; 2. նպատակ դնել, որոշել, ուղել։ =vn. նշանակել, իմաստ ունենալ։ On-. նպատակաւ, դիտմամբ։ -less, a. աննպատակ։ -ly, ad. նպատակաւ։ [Ն+.

Purpure բըր՛բիուր, s. ծիրանի

Purr բըր, vn. (կատուն) մրմռալ։

Purse բըրս(ս), s. քսակ; գանձ; 2. ելումուտ; 3. (ձիարշաւի) մրցանակ։ =va. քսակին մէջ դնել; 2. քսակը գոցել, կծկել, պատել։ -net. (բերանը քաշուելով գոցուող) քըսակաձեւ ուռկան; 2. ցանցկէն քսակ։ -proud. հարստութեանը հպարտ որ եւ Proud of wealth.

Purser բըրս՛ըր, s. գանձապետ, ծախսարար Ն-; 2. հաշուակալ։

Pur'siness, s. կարճաշնչութ.։

Purslain, -lane բըրս՛լէն, s. ծնեփեկ, փրփրեմ սեմիզ օթու։

Pursuable բըրսիու՛էպլ, a. հալածելի, հետապնդելի։

Pursuance բըրսիու՛ընս, s. [of] հետապնդում; 2. հետեւանք, հետեւութիւն։ In-of. ըստ։

Pursuant բըրսիու՛ընթ, a. [to] համեմատ, ըստ, նման, իբրեւ։

Pursue բըրսիու՛, va. ետեւէն իյնալ, քաշել; 2. հալածել, ետեւէ ըլլալ, հետամտիլ; 3. հետեւիլ, աշխատիլ; 4. յառաջ վարել, շարունակել; 5. նմանելու ջանալ։ =vn. շարունակել; 2. դատախազել, դատի քաշել։

Pursuer բըրսիու՛ըր, s. հալածող, հետապնդող; 2. դատախազ։

Pursuit բըրսիութ՛, s. հետապնդում, հալածում; 2. հետամտութիւն, հետամտութ.; 3. փոյթ, ջանք, աշխատանք, երկունք; 4. գործ, զբաղում։

Pursuivant բըր՛սիուիվընթ, s. Թղթատար, բանբեր; 2. (սուրհանդակի) հետեւորդ։

Pursy բըրս՛ի, a. մեծփոր, գեր; 2. ծանրաշունչ, դժուարաշունչ։

Purulent բիու՛րիուլէնթ, a. Թարախային, Թարախատեսակ։

Purvey բըրվէյ՛, va. հոգը տանիլ, հոգալ; 2. պաշարը լեցնել, մատակարարել; 3. ստանալ։ =vn. պաշար լեցնել, հայթայթել, նպարակել։ -ance -վէյ՛ընս, s. պաշար

ելնելը, ամբարում, նպարակում։

**Purveyor** բըրվէյ՛ըր, *s.* մատակարար, հայթայթող, համբարարածու

**Purview** բըր՛վիու, *s.* իմաստ, նշանակութիւն; 2. մարմին (հրովարտակի); 3 սահման, ընդարձակութիւն որ եւ Scope, extent.

**Pus** բըս, *s.* թարախ, շարաւ։

**Push** բուշ(դ), *va.* մղել, հրել, վարել, քշել; 2. խթել, մշտել; 3. ստիպել, ճնշել։ =*vn.* հրել, կըռթընիլ; 2. (կոտոշով) մշտել, զարնել; 3. յարձակիլ, դուրս ելնել։ =*s.* մղում, հրելը, կոխելը, ճնշում; 2. խթում, մշտուք; 3. յարձակում, ջանք; 4. հարկ, պէտք; 5. էլուկ, խաղաւարտ բժ. At a—. ի հարկին։

**Pushed** բուշդ, *a.* մղուած, ըստիպեալ։

**Pushing** բու՛շին, *a.* շահամոլ։

**Pusilanimity** բիուսիլէնիմ՛իդի, *s.* երկչոտութիւն, վախկոտութիւն։

**-nimous** բիուսիլէն՛իմըս, *a.* երկչոտ, վախկոտ, վատասիրտ, տկար։

**Puss, Pussy** բուս, բու՛սի, *s.* կատուիկ, բիսիկ; նապաստակ։ [նալ։

**Pustulate** բըսդ՛-, *va.* պալարա-

**Put** բուդ, *va.* [Put, Putting.] դնել, հաստատել, կարգել, սահմանել; 2. հարցում ընել, առաջարկել, առաջադրել; 3. արտասանել, ըսել; 4. ստիպել, ճնշել։ =*vn.* յառաջանալ, երթալ; 2. շարժիլ, ուղղուիլ։ =*s.* սակարանի արտօնութիւն; 2. գեղացի, շինական։ —-and-call. արժէթղթոց առուտուրի արտօնութիւն։ To—about. դառնալ, ընթացքը փոխել նո—; դարձնել։ To—away. ճանբել, արձըկել; 2. ետ դարձնել։ To be—to it. դժուարութիւն ունենալ։ To—back. (նաւը) դառնալ; 2. ետ դարձնել։ To—by. պահել, մէկդի դնել, խնայել; 2. հեռացնել։ To—down. վար դնել, իջեցնել; 2. լռեցընել, գոցել; 3. գրել, նշանակել։ To—forth. տարածել, երկնցնել, բանալ, ցցնել; 2. բացուիլ։ To—forward. յառաջ քշել, դնել։ To—in. ներս դնել, պարունակել; 2. ներկայացնել; 3. մէջ մտնել; 4. (նաւը) ներս մտնել։ To—off. ճանբել, հեռացնել; 2. ձգձգել, յապաղել; 3. հանդերձը հանել; 4. եզերքէն զատուիլ (նաւ)։ To—on, upon. վրան դնել; 2. հագնիլ; 3. կեղծել, նմանցնել։ To—out. դուրս դնել, տալ, քշել; 2. (կրակը) մարել; 3. կուրացնել; 4. սխալեցնել; 5. շահու տալ, գործածել; 6. վըռընտել։ To—over. վրայ դնել, վըրան դնել։ To—to. հարցնել, հարցում ընել; 2. կառքին լծել; 3. աւելցնել; 4. ժողվել; 5. ենթարկել; (*—death.*) մեռցնել, (*—it.*) նեղել, ճնշել, դժուարեցնել։ To—up. վեր վերցնել, կարգել, հաստատել; 2. սուրը պատեանը դնել; 3. ճամբու պատրաստուիլ; 4. հրատարակել; 5. պահել, միտքը դնել։

**Putative** բիու՛դէդիվ, *a.* կարծեցեալ։ [տի դերանու

**Putlog** բուդ՛լոկ, *s.* լաստակեր-

**Put-off** բուդ՛օֆ, *s.* պատրուակ։

**Putredinous** բիուդրէտ՛ինըս *a.* ապականած, նեխեալ, հոտած։

**Putrefaction** բիուդրիֆէք՛շըն, *s.* նեխութիւն, նեխ, փտութիւն։ -tive -ֆէք՛դիվ, *a.* նեխիչ, փտեցնող։

**Putrefy** բիուդ՛րիֆայ, *va.* փտեցընել, նեխել։ =*vn.* նեխիլ, փտիլ։

**Putrescent** բիուդրէս՛ընդ, *a.* փտելի, նեխելի։ -cence բիուդրէս՛ընս, *s.* —ութիւն; 2. փտութիւն։

**-scible** -րէս՛իպլ, *a.* փտելի։

**Putrid** բիու՛դրիդ, *a.* փտած, նեխական, ապականած, հոտած։

**-ness, Putridity** -րիդ՛իդի, *s.* փը-

տաճուՍթիւն, ապականութիւն։
Putter փըտ'թըր, vn. ոչինչ բաներով ժամանակ անցնել։
Puttock փըտ'ըք, s. ցին չայլազ։
Putty -'ի, s. խմոր, մածիկ, (ապակեգործի)։ =va. խմորել, փակցնել։
Puzzle փըզ'լ, va. շփոթել, խըռովել, վարանեցնել։ =vn. շփոթիլ, շուարիլ; 2. վարանիլ, նեղը մընալ։ =s. խառնակութիւն, շփոթութիւն; 2. վարանք, տագնապ; 3. հանելուկ, խաղ։ [շուարած։
Puzzled փըզ'լտ, a. շփոթեալ,
Puzzling փըզ'լին, a. խառնակիչ, շփոթցնող; 2. հանելուկ։
Pye փայ, See Pie.
Pygarg փայ'կարկ, s. յամուրի տեսակ մը, վերջապետ; 2. արծուի մը, եփինէ, եպինուկ։
Pygmy, Pygmean փիկ'մի, փիկմի'ըն, a. կարճուկ, թզուկ, գաճաճ։
Pyloric փայլար'իք a. ստրային։
Pylorus փայլօ'րըս, s. ստամոքսի ստորածակ, ստր ծոր.
Pyramid փիր'ըմիտ, s. բուրգ, յուրան։ -al, -ic, -ial փիրեմ'իտըլ, a. բրգաձեւ, բրգաձեւ։
Pyre փայր, s. փայտակոյտ։
Pyretology փիր'-, a. տանձաձև
Pyrites փայրայ'թիզ, s. հրաքար
Pyri'tic, -al -րիթ'-, a. հրաքարի

Pyro- փի'րօ-, փայ'րօ-
-graphy, s. հրագրութիւն։
-lignic, -ligneous փիրլիկ'նիք, a. հրափայտային (թթու)։
-logy փայրա'-, s. հրաբանութ.։
-mancy փիր'ը-, s. հրահմայութ.
-meter փայրա'-, s. հրաչափ գ.
-phorus փիրաֆ'ը-, s. հրակիր ա.
-scope, s. հրադետ գ. [կան։
-technic, -al, a. հրարուեստա-
-technics, -techny -թեք'նիքս, s. հրարուեստք, հրարուեստութ.։
-xene փիր'ըքսին, s. հրանտ հնք.
Pyrrhic փիր'իք, s. սղավերջ, անգայտ բոտ; 2. զինակաքաւ, զինապար, զինուորական պար մը։
Pyrrhonism փիր'ընիզմ, s. երկբայութիւն, սկեպտականութիւն, պիւռոնականութիւն։ -nist, s. ըսկեպտական, պիւռոնական։
Pythagorean փիթհեկը'րիըն, a. պիւթագորեան (փիլիսոփայ)։
Pythian փիթհ'իըն, a. պիւթեան (խաղք, հարցուկ)։
Python փիթհ'ըն, s. վարազոծ։
Pythoness փիթհ'ընէս, s. պիւթեան հարցուկ, գուշակուհի, պիգոնիս
Pyx փիքս, s. ըրբատուփ պղ; 2. կողմնացոյցի արկղիկ ն; 3. դրամափորձ արկղ Անգ.



Qua քուա, con. իբրև, նման։
Quab քուապ, s. լողաձուկ։
Quack քուէք(ը), s. (սագի) կռինչ; 2. սուտ բժիշկ, բուժակ որ եւ Quacksalver; 3. շաղակրատ շարլաթան։ =vn. կռնչել, կրկռալ, կարկաչել; 2. մեծաբանել։ -ery քուէ'քըրի, s. խաբեբայութիւն։
Quad abb. of. Quadrat.
Quadragesima քուատրըճէս'իմը, s. աղուհացք, մեծ պահք։ -Sunday. նախակիրակի Մեծ Պահոց։ -mal քուատրըճէս'իմըլ, a. քառասնորդաց, մեծի պահոց։

**Quadrangle** գուօտ՛րէնկլ, *a.* քառանկիւն ։ -gular գուօտրէն'կիուլըր, *a.* քառանկիւնի։

**Quadrant** գուօտ՛րէնթ, *s.* (բոլորակի) քառորդ, 90 աստիճանի աղեղ, քառորդակ; 2. ութնեակ (գործի) ու. Hadley's—. բոլորակին ութերորդ մասն ունեցող գործի, որով աստեղաց բարձրութիւնն ու իրարմէ ունեցած հեռաւորութիւնը կչափուի։ —of altitude. աստեղագիտական գործի պնդեալ յորմն, որմաչրջանակ։ -al գուօտրէն'թըլ, *a.* քառորդակի, 90 աստիճանոց։

**Quadrat** գուօտ՛րէթ, *s.* կապար անջրպետ, զատական գաւրա տող.

**Quadrate** գուօտ՛րէյթ, *a.* քառակուսի; 2. չորսով բաժանելի; 3. ճիշդ կարուկ, յարմար։ =*vn.* յարմարիլ, պատշաճիլ, վրան երթալ

**Quadratic** -րէյ'թիք, *a.* քառակուսի։-equation. հաւաս. Բ. աստիճ

**Quadrature** գուօտրէյ'չըր, *s.* քառակուսելը, քառակուսի; 2. քառորդական դիրք՝ հեռաւորութ. ասող

**Quadrennial** գուօտրէն'իըլ, *a.* չորեքամեայ, քառամեայ։

**Quadri-, Quadra-, Quadru-** գուօտ՛րի-, գուօտ՛րա-, -րու-, նախդիր նախադիր. քառա-, չորեք- -lateral -րիլէթ'ըրըլ, *a.* քառակողմեան, չորեքկողմեան։ -literal գուօտրիլիթ'ըրըլ, *a.* չորեքգրեան, քառատառ (արմատ)։

**Quadrille** գուօ-էտրիլ՛, քէտրիլ՛, *s.* քառապար, խմբապար; 2. քառանուագ, պարերգ, քարտիլ; 3. Թղթախաղ մը, քառախաղ ։ -llion գուօտրիլ'իըն, *s.* քառիլիոն -partite գուօտրիփ'ըրթայթ, *a.* քառամասնեա. -syllable -սիլ'էպլ, *a.* քառավանկ։ -vium գուօտրիվ'իըմ *s.* քառուսմունք (Թուաբանութիւն, երաժշտութիւն, երկրաչափութիւն, աստեղագիտութիւն) -valve գուօտ՛րիվէլվ, *a.* չորեքփեղկեան, քառախիփ

**Quadroon** գուօտրուն՛, *s.* (ճերմակէ ու սեւէ ծնած) խառնածին Ա. որ եւ Quarteron, Quarteroon; Quateron.

**Quadrumane, Quadrumanous** գուօտ՛րումէյն, -րու՛մընըս, *a.* քառաձեռնի, չորեքձեռնեայ ։

**Quadruped** գուօտ՛րուբէտ, *s.* չորքոտանի, քառոտանի։

**Quadruple** գուօտ՛րուբլ, *a.* քառապատիկ, չորեքպատիկ, քառեակ =*va.* քառապատկել ։

**Quadruplicate** -րուբ՛լիքէյթ, *a.* քառապատիկ; 2. 4րդ կարողութ. եղած։ =*va.* քառապատկել։ -tion -քէյ՛շըն, *s.* քառապատկում։

**Quære, Query** գուի'րի, *s.* հարցում, տարակոյս։

**Quæstor** գուէս'թըր, *s.* դատաւորապետ; 2. համարակալ, գանձապետ Հ. որ եւ Questor.

**Quaff** գուօֆ(թ), *va.* խմել, կըլլել, կուլ տալ, կոնծել, պարպել։-er, *s*

**Quag, -mire** գուէկ՛, գուէկ՛մայր, *s.* ճահիճ, մօրտ, ճախին, մօրուտ։

**Quagga** -'կէ, *s.* կուակ (վագրծի)

**Quaggy** գուէկ'ի, *s.* ճախճախուտ, լպրծուն, մօրուտ, սկռուկ։

**Quahaug, -ahog** գուօհօկ՛, *s.* մեծ սանտրամիջատ։

**Quail** գուէյլ՛, *s.* լորամարգի Լո; 2. տապետահաւ (յԱմ.) որեւ Bob-white, Ruffed grouse.=*vn.* (կաթը, մածունը) մակարդել, խախացել, կապել; 2. ընկճիլ, նկուն ըլլալ, վհատիլ։

*****Quaint** գուէյնթ', *a.* զարդարուն, չնորհալի; 2. նրբիմաց, ճարտար, չքնաղ; 3. հին, արտառոց, արտակարգ, անսովոր։ -ly գուէյնթ'լի, *ad.* արուեստական՝ եզական կերպով։ -ness, *s.* նորութ., այլանդակութ.

Quake քուէյք', vn. երերալ, շարժիլ, սարսռալ, դողալ։ =s. սարսուռ, դող, սասանում։

Quaker քուէյք'ըր, s. սրսփող; 2. երերական, Քուէյքր; 3. երերուհի, Քուէյքրուհի Յր. -gun. կեղծ հրացան։ -ish քուէյ'քըրիշ, s. Քուէյքրի պէս՝ նման։ -ism, s. Քուէյքրութիւն։

Qualifiable քուօլ'իֆայէպլ, a. որակելի; 2. մեղմելի, բարեփոխելի։

Qualification -լիֆիքէյ'շըն, s. անուանում, իշխանութիւն; 2. հանգամանք, որպիսութիւն; 3. բարեփոխութիւն; 4. նուազեցնելը։

Qualify քուալ'իֆայ, va. անուանել, յորջորջել, որակել; 2. բարեփոխել, չափաւորել, նուազեցնել; 3. յարմարցնել։ =vn. բարեփոխիլ, չափաւորուիլ։

*Qualified քուալ'իֆայտ, a. անուանեալ; 2. բարեփոխեալ, չափաւոր։ -lifier քուալ'իֆայըր, s. բարեփոխիչ, չափաւորող։ -litative քուալիթէյ'թիվ, a. որակական։

Quality -օլ'իթի, s. որակ, հանգամանք, որպիսութիւն, յատկութիւն; 2. բարելաւութիւն, բարեմանութիւն, արժանապատուութիւն; 3. ազնուականութիւն։

Qualm քուամ', s. սիրտ խառնուք, նողկանք, պժգանք, թալուկ; 2. խղճի խայթ։ -ish քուամ'իշ, a. փոխողական; 2. խղճահար; մանրակրկիտ; 3. նողկալի։

Quandary քուան'տէյրի, s. տարակոյս, կնճիռ, դժուարութիւն։

Quantity քուօն'թիթի, s. քանակութիւն, որքանութիւն; 2. չափ, կշիռ, քանակ; 3. գումար։ -itative քուան'թիթէյթիվ, a. քանակական։

Quantum քուէն'թըմ, s. թիւ, մաս, գումար, որչափութիւն։

Quarantine քուօ'րընթին, s. քառասունք, քառասնապահ; 2. մաքրանոց, արգելանոց կարանթինա։

Quarrel քուար'ըլ, s. գժտութիւն, հակառակութիւն; 2. կռիւ, վէճ, բանակռիւ; 3. քառասլաք (նետ); 4. աղիւսաձեւ ապակի; 5. ապակեգործի ադամանդ; 6. աղիւսաձեւ սալքար՝ պատուհանի։ =va. [with] վիճիլ, գժտիլ; 2. կռուըտիլ, կռուիլ։ -some քուար'ըլսըմ, a. կռուարար, կռուազան։

Quarry քուար'ի, s. քարահանք, քարհան; նետ քառասլաք; բազէի որս։ =va. քար կտրել, հանել։

Quart քուօրթ', s. 280 տրամնոց չափ՝ աման, գալոնի չորրորդը (1.1359 լիտր)։ -bottle. գալոնի վեցերորդ մասը։

Quartan քուօր'թըն, s. քառորդական, քառօրեայ (ջերմ)։

Quarter քուօր'թըր, s. չորրորդ քառորդ (չափի, լուսնի, ժամու, աշխարհի); 2. (դպրոցական) շրջան, եռամսեայ; 3. կողմ, թաղ, նահանգ; 4. բնակութիւն, կայան; 5. pl. զօրանոց, զինուորանոց; բնադիրք, զինուորաց բանակետղ; 6. (պարտելոց) շնորհ, կեանքը խնայել; 7. չորրորդ մաս վահանի, քառեակ։ =va. [on, upon] չորսի բաժնել; 2. բանակեցնել, իջեւան տալ։ To cry—. շնորհ խնդրել։ To give—. կեանքին խնայել։ An hour and a—. մէկ ժամ մէկ քառորդ։ —past ten. տասը քառորդ անցած։ Two pounds and a—. $2\frac{1}{4}$ ոսկի։ —day, -session. եռամսեայ; եռամսէի վերջին օր։ —deck. խելաց տախտակամած Ն—. -foil. քառաթեւ, քառաթերթ (զարդ. կոթական ոճի) ճ. -master. համարակալ (բանակի) ալայ էմինի; 2. յիմնապետ (հեծելազօրաց); 3. տանապետ (նաւազաց)։ —session. (հաշտարար դատաւորաց) եռամսեայ

նիստ։ -staff. կարճ՝ հաստ գաւազան, բիր։ -ly քուօր'թըրլի, a. եռամսեայ (վարձ, թոշակ, հանդէս) s. եռամսեայ՝ պարբերական հանդէս

Quartern քուօրթ'ըրն, s. 35 տրամոնոց=0.1419 լիտրնոց հեղանիւթի չափ; 2. 550 տրամոնոց=2.2717 լիտրնոց հացի կշիռ՝ քար։

Quartet -թէթ', s. քառեակ եր.

Quartile քուօր'թիլ, s. քառորդական նայուածք աստ.

Quarto քուօր'թօ, a. քառածալ։

Quartz քուօրց, s. բուն գայլախազ, գաւարզ, կարծրաքար մը։

Quartzy, Quartzous, -tzose քուօրց'ի, -ցըս, -ցօս, a. գաւարզային

Quash քուօշ(թ), va. նուաճել, ջնջել, ոչնչացնել; 2. ճզմել, ճմլել։

Quasi քուէյ'սայ, ad. գրեթէ, գրեթէ, իբրև թէ։

Quassia քուօշ'իէ, s. կակժիբակենի, ժմբրակ անը աղամ։

Quaternary, -ternion -թըր'-, քուօթըր'նիըն, s. քառեակ, չորս։

Quatrain քուօթ'րէյն, s. քառատող, քառեակ բնս.

Quaver քուէյ'վըր, vn. գեղգեղել, թրթռացնել։ =s. գեղգեղ, թրթռում; 2. 8րդ խազ։

Quay քի', s. քարափ որխքըմ; 2. գետափ, ղարափ; 3. ափնուղի եր. -age քի'էճ, s. քարափի տուրք, քարափի վրայ ապրանք հանելու բաժ որ եւ wharfage.

Queachy քուիչ'ի, a. խախուտ։

Quean քուին', s. անպարկեշտ, բոզ, քըցքփըփի կին։

Queasy քուիզ'ի, a. սիրտը խառնուող, փափուկ; 2. ործացուցիչ։

Queen քուին', s. թագուհի, դշխոյ։ =vn. թագուհւոյ հովեր առնուլ։ -consort. իշխող թագաւորի կին։ -dowager. այրի թագուհի։ -Regent. խնամակալուհի։ -post. ձեղնայարկի սիւն։ -'s apple, Queening. մորթախնձոր։ -'s bench, -court. Բարձրագոյն Ատեան Անգ. -like, Queenly քուին'լայք, քուին'լի, a. թագուհիական, դշխոյանման

Queer քուիր, a. այլանդակ, եզական, զարմանալի։ -ly քուիր'լի, ad. այլանդակօրէն, եզական։

Quell քուէլ, va. ճնշել, կոխել; 2. հանդարտեցնել, զսպել, նուաճել։ -er, s. նուաճող։

Quench քուէնչ', va. (մոմ) մարել, հանգցնել, անցնել; 2. ջնջել; 3. խաղաղցնել։ -able -'էպլ, a. շիջանելի։ -less քուէնչ'լէս, a. չմարելու, անշէջ; 2. աննուաճ։

Quercitron քուըր'սիթրըն, s. դեղնակաղնի, ներկակաղնի։

Querimonious -մօ'նիըս, s. դեգ, կառուարար։ -ly, ad. -ness, s.

Querist քուի'րիսթ, a. հարցասէր։

Quern քուըրն, s. երկան, երկանքի քար (ձաւար աղալու)։

Querulous քուէր'ուլըս, a. դըժգոհ, գանգատող, տրտնջող։ -ness, s. -ութիւն։ -ly քուէր'ուլըսլի, ad. դժգոհութեամբ։

Query քուիր'ի, s. հարցում, տարակոյս։ =va. հարցում ընել, հարցնել, տարակուսիլ; 2. խնդրել։

Quest քուէսթ', s. խնդիր, հարց, հարցուած; 2. հետազօտութիւն։

*Question քուէս'չըն, s. հարցում, հարց, խնդիր; 2. վէճ, տարակոյս; 3. հարցափորձ; 4. տանջանք։ =va. [-ed on, upon] հարցաքննել, խնդրոյ տակ ձգել; 2. տարակուսիլ։ In-. խնդրոյ՝ վէճի տակ։ Beyond all-. անտարակոյս, անվիճելի։ Out of the-. անարժէք, անպիտան; անհընարին, անկարելի։ -able քուէս'չընէպլ, a. անստոյգ, երկբայելի; 2. խնդրական։ -er քուէս'չընըր, s. հարցասէր, խնդրող, քննող։

Questor տես Quæstor.

Quhair. Quair քուէյր, s. գիրք։

Quib քուիպ', s. երգիծաբանութ

Quibble քուիպ'լ, s. փախուստ, խուսափանք; 2. իմաստակութիւն, նրբախօսութիւն, բառախաղ։ vn. խուսափիլ, խծբծել; 2. նրբախօսել, զուեհաբանել։

Quick քուիք', a. կենդանի, վառվռուն, կրակուբոց, տաքարիւն, առոյգ, աշխոյժ; 2. արագաշարժ, շուտ, երագ; 3. զգայուն, ցաւկոտ; 4. սրամիտ, յաջողակ։ =s. ողջ կենդանի, բոյս; 2. սրափուշ, տատասկ; 3. խոր, ողջ միս մարմնոյ։ =ad. արագ, շուտ, շոգեպինդ, փութանակի։ -eyed, -sighted. սրատես, խորաթափանց։ –grass. սէզ, արուանտակ այրըգ օթու որ եւ Quitch-grass. -lime. չմարած կիր։ -match. հրաձգէնքի պատրոյգ։ -sand. աւազուտք։ –set. դալարագեղ (ցանկ); դալար բոյսերով՝ թուփերով՝ ծառերով ցանկ շինել։ -silver. սնդիկ, վիժակ ճիվա։ –step. արագ արագ էջ. –with child. (ծնանելու մօտ) յղի։ –witted. սրամիտ, նրբախօս։

Quicken քուիք'ն, va. կենդանացնել, ոգեւորել; 2. փութացընել; 3. զօրացնել։ =vn. կենդանանալ, ոգեւորիլ։ [րէն, շուտ։

Quickly քուիք'լի, ad. արագօ-

*Quickness քուիք'նէս, s. արագութիւն, աշխուժութիւն։

Quid քուիտ, s. ծամելիք, ծիդ․ սագըզ; 2. ծխախոտի տերեւ, ծամոն, ծխածամոն։

Quiddity քուիտ'իթի, s. ինկութ., զինչութիւն, էութիւն էից։

Quidnunc քուիտ'նընք, s. լրտես, հետաքրքիր։

Quiesce քուայէս'(տ), va. (գիրք) համր մնալ, ձայն չհանել։

Quiescence, -cy քուայէս'ընս, s. (տառի) անձայնութիւն, համրութիւն, լռութիւն; 2. անշարժութիւն, դադար։ -cent -էէս'ընթ, a. անձայն, համր; հանդարտ, լուռ։

Quiet քուայ'էթ, a. հանդարտ, խաղաղ, հեզ; 2. անշարժ, լռիկ, անխռով։ =s. հանգիստ, համրութ., անշարժութիւն։ =va. լռեցնել, հանդարտել, խաղաղել։ -ly, ad. լռին, լռիկ, հանդարտօրէն։ -ness, s. հանդարտութիւն, խաղաղութիւն։ To keep–. հանդարտիլ, լռել; տիտիկ ընել։

Quietism քուայ'էթիզմ, s. միտքի հանդարտութիւն; 2. հանգստականութիւն Յր. -tist քուայ'էթիսթ, s. հանգստականոն։

Quietude քուայ'էթիուտ, s. հանդարտութիւն, հանգիստ։

Quietus քուայ'էթըս, s. հանգիստ, քուն; 2. մահ, յաւիտենական քուն; 3. ստացագիր; 4. լռութիւն, լռեցնելը։

Quill քուիլ', s. փետուր; գրիչ; 2. (ոզնիի) փուշ; 3. մասուրա; 4. կնտնտոց։ =va. փողաձեւ փոթել, փողափոթել; 2. մասուրա փաթթել։ -driver. մրագիր, մրոտէր։ –wort. բրամխոտ բս.

Quilt քուիլթ, s. վերմակ, քընքշարկ։ =va. վերմակի նման կարել, շուլլել։ -ing քուիլթ'ին a. թելկապ սուզէնի; 2. (աղքատաց համար ընկերովի) վերմակ կարել, կար կարել, գործել; 3. բամպակեայ լաթ մը բիքէ։

Quinary քուայն'ըրի, s. հնգեակ

Quince քուինս, s. սերկեւիլ։

Quincunx քուին'քընքս, s. (իւրաքանչիւր կարգը հինգ ծառէ) ծառաստան, հնգեստան, հնգեծառավայր։ [ընաքինա, սոլֆաթօ։

Quinine քուինայն', քուայ'նայն, s.

Quinquagesima քուինքուէճէ'սիմէ, s. Բուն Բարեկենդանի կիրակի։ -angular քուինքէն'կիուլըր, a. հնգանկիւնի։

Quinque-, [ամեայ։
-ennial քուինքուէն'իըլ, a. հընգ-
-foliate, -ted, a. հնգաճեղիկ։
-literal -լէր'-, a. հնգատառ։
-valve,-valvular. հնգափեղկ։

Quinsy քուին'զի, s. փողացաւ։

Quint, s. հնգեակ (բիքէդի)։

Quintain, -tel, -tin քին'թէյն, քին'թըլ, -'թին, s. ձիավարժոցի մէջ գետինը անկուած ցից՝ արդնընկեցներու և նետաձգութեան նըպատակի համար, կէտ նպատակի, գեանացից։

Quintal քուին'թըլ, s. կենդինար, 100 կամ 112 լիպրանոց կշիռ մը=50.8 քիլոկրամի; 2. մեդրական դրութեան մէջ 100 քիլօկրամ= 220.46 լիպր qամpար։

Quintan քուին'թըն, s. հնգօրեայ։

Quintet, -tette, -tetto քին'թէթ, քինթէթ'օ, s. հնգեակ եր.

Quintessence քուինթէս'ընս, s. ուղեւծուծ, ազնուագոյն՝ նըրբահիւթ մաս։ [30 զրօ Գուղ. 18 զրօ։

Quintill'ion, s. հնգիլիոն։ Անգ;

Quin'tuple, a. հնգապատիկ։

Quip քուիփ(թ), s. նրբախօսութիւն։ =va. ծաղրել, քաշկռտել։

Quire քուայ'ր, s. դպրաց դաս, երաժշտախումբ, տիրացուք, խըմբերգ; 2. դաս (ժամի մէջ); 3. տրցակ (պուրակի $^1/_{20}$ը)։

Quirk քուըրք', s. նրբախօսութիւն, կատակ, բառախաղ; 2. ալացում, թռիչք (երեւակայութեան); 3. փախուստ, դարձ; 4. շրջապատ, ծիր (պատի); 5. փորուք, փորուածք ճ.

*Quit քուիթ, a. անպարտ, արձակուած, ազատ։ =va. ձգել, թողուլ; 2. լքանել, հրաժարիլ, վազանցնիլ, թող տալ; 3. կատարել, լնուլ; 4. արձակել, ազատել, ազատագրել (պարտքէն); 5. յանձնել։ To be-s with one. զիրար գոհացընել, հաշտ ապրիլ։ -claim, va. իր բոլոր իրաւունքներէն հրաժարիլ; փոխանցել փկրաղ կրմկֆ։ =s. ստացուածք մը բոլորովին ուրիշի թողուլը, փոխանցելը, փոխանցում։ -rent. պայմանաժամեա վարձ։

Quite քուայթ, ad. բոլորովին, լիովին, գլխովին։ -young. մատղաշ։ -recent. մօտաւոր։ -warm. տաքուկ

Quittance քուիթ'ընս, s. անդորրագիր, անպարտագիր մագպուզ ուկմկսի; 2. վճարում, հատուցում։

Quiver քուի'վըր, vn. դողալ, սարսռիլ; թրթռալիլ =s. կապարճ

Qui vive! քի'վիվ. ո՞վ է։ To be on the-. զգոյշ՝ արթուն կենալ։

Quixotic քուիքսոթ'իք, a. Տոն Քիշոդական, յիմարական, արկածախնդիր։ -tism քուիքսոթ'իզմ, s. Տոն Քիշոդութիւն։

Quiz քուիզ, s. կատակ, խաղաբարութիւն; 2. ծաղրիչ, պլլիչ; 3. այլանդակ մարդ։ =va. պլլել, քաշկռտել, ծաղրել; 2. զուարթացընել։ -er քուիզ'ըր, s. պատրող, խաբող։ -zical քուիզ'իքըլ, a. խըրտղական, գրգռիչ; 2. զուարճացուցիչ, հեգնական։ Quizzing glass. միակնի՝ միապակի ակնոց; պատրանաց հայլի կնսամ այնկսի։

Quod քուոտ, s. բանտ; բանտարկութիւն։ -libet քուոտ'լիպէթ, s. զուեհաբանութիւն։

Quoif քուայֆ, s. գլխանոց։

Quoin քուայն, քօյն, s. անկիւն, սուրծայր; 2. երկու պատի անկիւն, որմնանկիւն, առուք; 3. սրածայր քար՝ փայտ, երկաթ։

Quoit քուայթ, s. խաղալու բըռ-

գունդ, գունդ աշայ (հեծելագունդ, հետեւակագունդ, հրետագունդ եւն.)։ -al րէճիմէն'թըլ, *a.* զօրագընդային, վաշտային։ -als րէճիմէն'թըլզ, *pl.* (զինուորական, վաշտային) համազգեստ։

Region րի'ճըն, *s.* ընդարձակ աշխարհ, երկիր, գաւառ, սահման; 2. կողմ, մաս, վայր, դրացնութիւն։

Register րէճ'իսթըր, *s.* արձանագրութեան գիրք, տոմար, տետրակ, արձանագիրք; 2. դիւան; դիւանաթուղթ; արձանագրութ., պատշիր, ատենագրութիւն; 3. արձանագրող պաշտօնեայ, դիւանադպիր; 4. ջերմաստիճան, աստիճանացոյց (ջերմաչափի); 5. (երեսի էջերու) համդիպութիւն տպ; 6. փոփոխմունք երգաձայնի, փոխերգաձայն; 7. փակաղակ, քանոն (երգեհոնի, փողերու); 8. (նաւուն ազգայնութիւնը ցցնող՝ մաքսատան կողմէ տրուած) վկայաթուղթ։=*va.* արձանագրել, անցնել, գրել; 2.(նամակը) ապահովագրել, յանձնարարել pkakirs kpdkf։ Parish–. մըկրտութիւն, ամուսնութիւն, մահ արձանագրուած տոմար, ծխատետր, ծխատումար։ –office. գործակալութիւն ծառայից։ –ship րէճ'իսթըրշիփ, *s.* –ութիւն։

Resistrar, –rary րէճ'իսթրըր, –րըրի, *s.* դիւանադպիր, արձանագրող, արձանագիր(պաշտօնեայ); 2.(համալսարանի) դիւանակալ, դիւանադպիր Ան; 3. դիւանապետ kiվruiq osuup ilpusirh; 4. ծխատետրը գրող։–ship, *s.* դիւանակալութիւն։

Regist–:–ration րէճիսթրէյ'շըն, *s.* արձանագրում, արձանագրելը։ –ry րէճ'իսթրի, *s.* արձանագրութ., արձանագիր; 2. դիւանատուն, դիւան kiվruq՝ quijs osuup; 3. արձանագրական տեսչութիւն։

Reg'let, *s.* գծիկ; 2. քանակ տ.

Regnant րէկ'նընթ, *s.* իշխող։

Regorge րէկորճ', *va.* դուրս տալ, փսխել; 2. կրկին կլլել, կուլ տալ։

Regrate րէկ'րէյթ, *va.* (շէնքին) սեւցած քարերը քերել։ –ter րէկ'րէյթըր, *s.* մանրավաճառ։

Regress րի'կրէս, *s.* վերադարձ, վերստանձնում։ –ion րիկրէշ'ըն, *s.* յետադնացութիւն, վերադարձում, յետադարձութիւն։–ive րիկրէս'իվ, *a.* յետադարձիկ, վերադարձող։

*Regret րիկրէթ', *va.* վշտանալ, ցաւիլ, ցաւ զգալ; 2. աւաղել, ափսոսալ։=*s.* սրտի ցաւ, մորմոք, վիշտ, ապաշաւ, զիղջ, ցաւ; 2. հեծութիւն, տհաճութիւն, տրտմութիւն –ful, –table րիկրէթ'ֆուլ, րիկրէթ'թէպլ, *a.* աւաղելի, ցաւալի, խղճալի։

Regular րէկ'իուլըր, *a.* կանոնաւոր, բարեկարգ, շէնք շնորհք, կարգաւոր, կարգով; 2. կանոնական, ճշգրիտ, ճիշդ։ =*s.* կարգաւոր, կրօնաւոր, վանական ղպ. –ly, *ad.* կանոնաւորապէս, շնորհքով, բստ օրինի։ –ity րէկիուլէր'իթի, *s.* կանոնաւորութիւն, կանոնապահութիւն; 2. կանոն, ուղղութիւն։

Regulate րէկ'իուլէյթ, *va.* կանոնաւորել, ուղղել; 2. կարգադրել, կարգի դնել։ –tion –լէյ'շըն, *s.* կանոնաւորութիւն, կարգադրութ.; 2. կարգ, կանոն։ –tor րէկիուլէյ'թըր, *s.* կանոնաւորող; 2. կանոնիչ մաս՝ ապրուած, ուղղիչ, կանոնիչ մեք.

Regulus րէկ'իուլըս, *s.* անտարբծուն՝ զուտ մետաղանիւթ։

Regurgitate րիկըր'ճիթէյթ, *va.* փսխել, դուրս տալ։ =*vn.* դուրս թափել։ –tion րիկըրճիթէյ'շըն, *s.* արծում, փսխելը; 2. կրկին կլլելը։

Rehabilitate րիհէպիլ'իթէյթ, *va.* վերահաստատել, վերատակել, պատիւը շտկել։–tion –պիլիթէյ'շըն, *s.*

վերահաստատում, վերատակում։

**Rehear** րէհիիր՛, *va.* կրկին լսել; 2. (դատը) վերաքննել։

**Rehearsal** րէհըրս՛ըլ, *s.* երկրորդում, կրկնութիւն; փորձ ներ; 3. պատմութիւն, ճառ; 4. արտասանութիւն որ և է Recital.

**Rehearse** րէհըրս(տ), *va.* երկրորդել, կրկնել; 2. պատմել, ըսել; 3. փորձ ընել (առանձին)։

**Reichsrath** րայխս՛րաթ, *s.* կայսերական խորհրդարան Աւստրիոյ, աւագաժողով։

**Reichstag** րայխս՛թաք, *s.* Գերմանիոյ կայսերական խորհրդարան, աւագաժողով։

**Reigle** րէ՛կլ, *s.* խուռուշ, մամանէք։

**Reign** րէյն, *s.* իշխանութիւն, տէրութիւն, թագաւորութիւն; զօրութիւն։ =*va.* թագաւորել, իշխել, տիրել; 2. ուղղել։

**Reimburse** րիիմպըրս՛(տ), *va.* ետ դարձնել, վճարել; 2. հատուցանել, փոխարինել։ -ment րիիմպըրս՛մընթ, *s.* վճարում, հատուցում։

**Rein** րէյն, *s.* սանձ, երասանակ։ =*va.* սանձել, սանձահարել; զսպել։

**Reindeer** րէյն՛տիիր, *s.* հիւսիսային եղջերու, կորեղջերու, վերջապետ։

**Re-inforce**, *See* Re-enforce.

**Reins** րէյնզ, *pl.* երիկամունք, պողոճիկ; 2. գուրգուրանք, կիրք։

**Reinstall, Reinstate** րիինս-թօ՛ըլ, *va.* վերահաստատել։

**Reinsure** րիինշու-ր՛, *va.* կրկնակի ապահովագրել։

**Reintegrate** րիին՛թիկրէյթ, *va.* վերահաստատել, նորէն դնել։

**Reissue** րիիշ՛շու, *va.* վերստին հրատարակել։ =*s.* երկրորդ տպագրութիւն; 2. երկրորդ հանում։

**Reiterate** րիիթ՛ըրէյթ, *va.* կրկնել, երկրորդել։ -tion րիիթըրէյ՛շըն, *s.* կրկնութ., կրկնում, երկրորդում։

**Reject** րէճէքթ՛, *va.* մէկդի ձգել, նետել; 2. մերժել, չընդունիլ; 3. զլանալ։ -able, *a.* մերժելի։

**Rejection** -՛շըն, *s.* մերժում։

**Rejoice** րէճօյս՛(տ), *vn.* [at, in] ուրախ ըլլալ, ուրախանալ; 2. բերկրիլ, ցնծալ։ =*va.* ուրախացնել, ուրախ ընել; 2. խնդացնել, զուարթացնել։

**Rejoin** րէճօյն՛, րէճայն՛, *va.* նորէն միացնել, միաւորել, վերակցել; 2. պատասխանել, պաշտպանել։ -der -՛տըր, *s.* պատասխան; 2. ինքնապաշտպանութիւն դատ.

**Rojuvenate, -nize** րէճու-վ՛ընէյթ, -վ՛ընայզ, *va.* երիտասարդանալ։

**Rekindle** րէքայն՛տլ, *va.* նորէն վառել, վերարծարծել, հրահրել։

**Relapse** րէլէփս՛(տ), *va.* նորէն իյնալ; 2. կրկին մոլորիլ, խոտորիլ; 3. վրիպիլ, ետ դառնալ; 4. իյնալ, մեղանչել։ =*s.* վերանկում, անկում; 2. մոլորում, մեղանչում։ Relapsing-fever. սովատենդ (Իռլանտա, Ռուսիա)։ -ser րէլէփ՛սըր, *s.* նորէն ինկած, վերանկեալ։

**Relate** րէլէյթ՛, *va.* [to] պատմել, ըսել; 2. ճառել, յիշատակել։ =*vn.* վերաբերիլ, յարաբերիլ, պատկանիլ։

***Relation** րէլէյ՛շըն, *s.* պատմելը, յիշատակութիւն, զրոյց, պատմութիւն; 2. վերաբերութիւն, վերաբերում, պատկանում, յարաբերութիւն, առնչութիւն, կապակցութիւն; 3. ծանօթութիւն; 4. խնամութիւն, ազգականութիւն։ In -of. մասին։ -ship, *s.* ազգականութիւն, խնամութիւն։ -al րէլէյ՛շընըլ, *a.* ազգականութեան, խնամութեան։

**Relative** րէլ՛ըթիվ, *a.* վերաբերեալ, պատկանեալ, առնչական, վերաբերական; 2. յարաբերական (դե-

բանուն)։ =s. ազգական, խնամի, պարագայ; 2. յարաբերական ։ -ly, ad. վերաբերութեամբ, յարաբերաբար, համեմատաբար, վերաբերմամբ։ -ness րէլէթիվնէս, s. յարաբերութիւն։

Relax րիլէքս՛(տ), va. թուլցնել, թող տալ, հանգիստ տալ, մեղմել, թեթեւցնել; 2. կակուղցնել, ցանցառել, բանալ։ =vn. կակուղնալ, թեթեւնալ; 2. մեղմանալ, թուլնալ, տեղի տալ; 3. իջնել։ -able, a. թուլնալիք։ -ation րիլէքսէյ՛շըն, s. թուլցնելը, թուլութիւն, մեղմութիւն; 2. տկարութիւն, նուաղութիւն; 3. անհոգութիւն։ -ative րիլէքսէյ՛թիվ, a. կակղիչ, լուծողական

Relay -լէյ՛, s. փոխնորդ (ձիան)։ =va. [pp. Relaid] նորէն պառկեցնել։

Releas'able, a. արձակելի։

Release րիլիյս՛(տ), va. [from] անպարտ թողուլ, արձակել, թող տալ, (բանտէն) հանել։ =s. արձակում, զերծում; 2. ներում, թողութիւն; 3. բանտաթողութիւն; 4. փոխանցում, ուրիշի թողուլ, անցունել; որ եւ Releasement; 2. To Free, to Liberate; Freedom.

Relegate րէ՛լիկէյթ, va. զրկել, քշել, արտաքսել; 2. աքսորել, վտարել։ -tion րէլիկէյ՛շըն, s. արտաքսում, աքսոր։

Relent րիլէնթ՛, vn. մեղմանալ, կակուղնալ, թուլնալ; 2. գութը շարժել։ -less, s. անգութ, անողորմ

Relevance, -cy րէ՛լըվընսի, s. վերաբերութիւն, յարմարութիւն, պատշաճութիւն։ -vant րէ՛լըվընթ, a. պատշաճ, յարմար։

Reliable րիլայ՛էպլ, a. արժանահաւատ, վստահելի, հաւատարիմ։ -ness, -bility, s. -ութիւն։

Reliance րիլայ՛ընս, s. վստահութիւն, յոյս; 2. հաւատք, համարում։

Relic րէ՛լիք, s. նշխար, մասունք; մարմին, մաս; մնացորդ, յիշատակ։

Relict րէ՛լիքթ, s. այրի (կին)։

Relief րիլիյֆ՛, s. բարձում (վըշտաց), թեթեւութիւն; 2. օգնութիւն, նպաստ, մխիթարութիւն; 3. դարման, ճար; 4. պահակափոխքն—; 5. քանդակ, բարձրաքանդակ; 6. արտացայտք նկ. Demi—. կիսաքանդակ։ High—. բարձրաքանդակ Out door—. դունէն բաշխուած ողորմութիւն։ In—. արտաքանդակ գապարդիմ։ [մանալու

Relievable րիլիյվ՛էպլ, a. մեղ-

*Relieve րիլիյվ՛, va. [from] վերցնել, բարձրացնել, ազատել, հանել; 2. օգնական՝ ձեռնտու ըլլալ, օգնել; 3. մխիթարել, սփոփել, ամոքել; 4. պահակը փոխել, պահակ ըլլալ որ եւ Alleviate, Assuage.

*Religion րիլի՛ճըն, s. կրօնք, հաւատք; 2. բարեպաշտութիւն, աստուածպաշտութ.։ -ism րիլի՛ճընիզմ, s. կրօնամոլութիւն։ -ist րիլի՛ճընիսթ, a. կրօնամոլ, մոլեռանդ; 2. բարեպաշտ սօֆու։

Religious րիլի՛ճըս, a. կրօնային, կրօնական, կրօնքի; 2. բարեկրօն, երկիւղած, կրօնասէր; 3. վանական, կրօնաւոր; 4. ճշգրիտ, հաւատարիմ։ -ly, ad. աստուածպաշտութեամբ, սրբութեամբ; 2. խղճմտօրէն, ճշգիւ։

Relinquish րիլին՛քուիշ(տ), va. ձգել, թողուլ, լքանել, հրաժարիլ, մերժել։ -ment րիլին՛քուիշմընթ, s. հրաժարում, լքում։

Relinquary րէլի՛քուըրի, s. մասունքի տուփ, մասնատուփ։

Relish րէ՛լիշ(տ), va. [for, of] համը նայիլ, ճաշակել; 2. վայելել։ =vn. անուշնալ, քաղցրանալ։ =s. ճաշակ, համ, ախորժակ, սէր։ -able, a. ախորժելի, քաղցրահամ։

**Reluct** րիլըքթ', *vn.* ընդդիմանալ, հակառակիլ, մարտնչիլ։

**Reluctance, -cy** րիլըք'թընս, -սի, *s.* դժկամակութիւն, չկամութիւն։

**Reluc'tant,** *a.* դժկամակ, ակամայ։ -ly, *ad.* յակամայս, բռնի։

**Relume** րի'-, *va.* նորէն վառել։

**Rely** րիլայ', *vn.* [on, upon] ապաւինիլ, վստահիլ, հաւատալ, յոյս դնել; Trust, depend, confide.

**Remain** րիմէյն', *vn.* [in, at] մնալ, կենալ; 2. կալ, բնակիլ։ =րիմէյնզ', *pl.* խեշերանք, աւելորդ, մնացորդք; 2. նշխար, դիակ, աճիւն; 3. գործք։ *-der. Remaining րիմէյն'տըր, րիմէյ'նին, *s.* մնացած մաս, մնացորդ։

**Remake** րիմէյք', *va.* վերաշինել։

**Remand** րիմէնտ', *va.* ետ ղրկել; 2. յետս կոչել; 3. նորէն բանտ ղրկել։

*****Remark** րիմարք'(ք), *va.* [on, upon] դիտել, ուշ տալ, միտ դնել; 2. նշանակել, մատնանիշ ընել, մատնանշել; 3. նշմարել, զանազանել։ =*vn.* դիտողութիւն ընել։ =*s.* դիտողութիւն; 2. ծանօթութիւն; 3. մեկնութիւն։

**Remarkable** րիմարք'ըպլ, *a.* նշանաւոր, երեւելի, կարեւոր, արտասովոր։ -ness, *s.* -ութիւն։ -ly, *ad.* նշանաւոր կերպով, մեծապէս։

**Reme'diable,** *a.* դարմանելի։

**Remedial** րիմի'տիըլ, *a.* բուժիչ։

**Remediless** րէմ'ըտիլէս, րիմիտ'-, *a.* առանց դեղի, անդարմանելի; 2. անազդեցիկ, անզօր։

**Remedy** րէմ'ըտի, *va.* [for, to, against] դեղ ընել, բժշկել; 2. դարմանել, դեղ տալ; 3. նորոգել, նորել։ =*s.* դարման, դեղ; 4. ճար, հնարք, կերպ։

**Remember** րիմէմ'պըր, *va.* յիշել, յիշատակել; 2. միտքը բերել։

**Remembrance** րիմէմ'պրընս, *s.* յիշատակ, յուշիկ; 2. յիշում, յիշատակութիւն։ -rancer -'պրէնսըր յիշատակ, յուշարար, յուշիկ։

**Rem'igrate,** *va.* վերագաղթել։

**Remind** րիմայնտ', *va.* յիշեցնել, միտքը բերել։ -er րիմայնտ'ըր, *s.* յիշեցընող, յուշարար։

**Reminiscence** րէմինի'սընս, *s.* յիշում, յիշատակ; 2. յիշողութ., յուշաւորութ.; 3. յուշք, յուշիկք։

**Remise** րիմայզ', *va.* շնորհել։

**Remiss** րիմիս', *a.* դանդաղ, թոյլ, տկար; 2. անհոգ, անփոյթ։ -ly, *ad.* անհոգաբար, հարեւանցի։ -ness, *s.* անփութութիւն, դանդաղութիւն։

**Remis'sible,** *a.* ներելի, թողլի։

**Remission** րիմի'շըն, *s.* թողուլը, շնորհում, շնորհելը; 2. վերջ, վերջում; 3. թեթեւացում, նուազում։

**Remit** րիմիթ', *va.* տալ, դարձնել; 2. աւանդել, յանձնել; 3. ղրկել; 4. անցնել, փոխանցել; 5. շնորհել, ներել; 6. թուլցնել։ =*vn.* թուլնալ, մեղմանալ; 2. թեթեւնալ։ -ment, Remittal րիմիթ'մընթ, րիմիթ'ըլ, *s.* տալը, յանձնում; 2. թողութիւն; 3. բանտարկում։ -tance րիմիթ'ընս, *s.* (դրամի) փոխանցում հավալէ; 2. փոխանցեալ (դրամ)։ -tent րիմիթ'ընթ, *a.* ատեն ատեն պակսող, մեղմընդհատ ել. -ter րիմիթ'ըր, *s.* առաքող էն; 2. վերահաստատութիւն (իրաւունքի) էր. -tor րիմիթ'ըր, *s.* վերահաստատող էր.

**Remnant** րէմ'նընթ, *s.* մնացած մաս, մնացած, մնացորդ; 2. նշխար, բեկոր, կտոր։

**Remodel, Remold, Remould** րիմատ'ըլ, րիմօլտ', *va.* վերաձեւել, վերաշինել։

**Remonstrance** րիմոն'սթրընս, *s.* դիտողութիւն, ազդարարութիւն;

2. յանդիմանութիւն, խրատ; 3. ճաճանչ (Սրբութեան) պղ. -rant -'ստրընթ, a. խրատական։ =s. խրատող, յանդիմանող։

Remonstrate րէմոն'ստրէյթ, vn. [*with* a person, *against* a thing] դիտողութիւն ընել, դիտել; 2. խրատել, առարկել; 3. յանդիմանել։

Remorse րէմորս', s. խղճի խայթ, տագնապ։ -ful -'ֆուլ, a. խղճահար -less, a. անգութ, անխիղճ։

Remote րէմօ'թ, a. հեռաւոր; 2. հեռու, օտար։ -ly, ad. հեռուէն, ի հեռուստ; 2. թեթեւօրէն։ -ness րէմօթ'նէս, s. հեռաւորութիւն։

Removable րէմու'վէպլ, a. շարժելի, փոխադրելի; պաշտօնանկելի։ -bility, s. -հանգամանք։

Removal րէմու'վըլ, s. տեղափոխութիւն, շարժում; 2. հեռացում, արտաքսում; 3. պաշտօնափոխութիւն; 4. բարձում, վերջացնելը։

Remove րէմու'վ, va. [from] տեղափոխել, փոխադրել, շարժել; 2. պաշտօնանկ ընել; 3. հեռացնել, աքսորել; 4. վերջացնել, վերցնել։ =vn. տեղափոխութիւն ընել, մեկնիլ; 2. հեռանալ, գաղթել; 3. թիկունք դարձնել։ =s. շարժում, տեղափոխութիւն; 2. մեկնում, հեռացում; 3. պաշտօնանկութիւն; 4. միջոց, հեռաւորութիւն; 5. աստիճան որ եւ Removal.

Remunerable րէմիու'նըրէպլ a. վարձատրելի։ -nerate րէմիու'նըրէյթ, va. վարձատրել; 2. փոխարինել, փասը տալ, տուժել։

Remuneration -միունըրէյ'շըն, s. վարձատրութիւն, վարձ, փոխարէն։ -tive, -tory -միու'նըրէյթիվ, -'թըրի a. փոխարինական; 2. շահաւէտ։

Renaissance րէնէսանս', s. վերածնութիւն — Եւրոպայի (1453-1610)։

Renal րի'նըլ, a. երիկամային։

Renard րէն'ըրտ, s. աղուէս, աղուէս անուար (վէպերու մէջ միայն)։

Renascence, -cy րէնէս'ընսի, s. նորոգում, վերաբուսում, վերկենդանացում; 2. վերածնութիւն։ -cent -'ընթ, a. վերածնեալ, վերաբուսեալ, վերանորոգեալ, վերկենդանացեալ։

Rencounter, -countre րէնքաուն'թըր, րէնքուուն'թըր, s. պատահում, հանդիպում; 2. բախում, յանկարծական կռիւ։ =va. պատահիլ, հանդիպիլ; 2. բախիլ, ընդհարիլ։

Rend րէնտ va. [Rent, -ding.] պատռել, պատռտել; 2. ճեղքել, բաժնել։

Render րէն'տըր, va. դարձնել, վերադարձնել, տալ, ետ տալ; 2. հատուցանել; 3. մատուցանել, ընել, ընծայել; 4. յանձնել; 5. թարգմանել; 6. իմացնել; 7. շինել։ -able րէն'տըրէպլ, a. հատուցանելի։ -ing րէն'տըրին, s. պատի ծեփ; 2. թարգմանութիւն։

Rendezvous րէն'տէվու, va. ժամադրել, միանալ։ =s. ժամադրութիւն; 2. ժամադրավայր, ժամավայր

Rendition րէնտի'շըն, s. անձնատուութիւն, անձնատրութիւն; 2. յանձնում, վերադարձնելը; 3 թարգմանութիւն։

Renegade, -gado րէն'իկէյտ, -կէյ'տօ, s. ուրացող, ուրացեալ, հաւատուրաց; 2. դասալիք, փախստական; 3. դատարկապորտ։

Renew րէնիու', va. նորոգել, նորել; 2. նոր կեանք տալ; 3. վերսկսիլ, կրկնել; 4. վերահաստատել (ուխտ)։ -able, a. նորոգելի, նորոգուելիք։ -edly րէնիու'էտլի, ad. դարձեալ, անգամ մ'ալ, կրկին։

Renewal րէնիու'ըլ, s. նորոգում; 2. նորոգուած իր։ [ըեւ]։

Ren'iform. a. երիկամաձեւ (տե-

Renitent րէն'իթէնթ, րէնի'թընթ, a.

դիմացկուն, տոկուն, դիմադրող, ընդդիմակաց; 2. ընդդիմահար բնդ.

Rennet րէն'էթ, s. որոճայնոց 4րդ ստամոքսը, խախացոց գիրգ պայրը։

*Renounce րէնաուն'(թ), va. հրաժարիլ, քաշուիլ, ձգել, թողուլ; 2. ուրանալ, ժխտել։ *-ment րէնաուն'մէնթ, s. հրաժարում, ձգելը։

Renovate րէն'օվէյթ, va. նորոգել։ -tion, s. նորոգում, նորոգութ.

Renown րէնաուն', s. համբաւ, անուն, հռչակ։ Renowned րէնաունտ', a. հռչակաւոր, համբաւաւոր, անուանի։ -ly, ad.

Rent րէնթ, imp. & pp. of Rend. =s. պատառուած, ճեղք, հերձ, բաժանում; 2. վարձ, եկամուտ, հասոյթ; 3. հասութաթուղթ (տէրութեան), ռանդ Գր. =an. վարձու տալ կամ բռնել, վարձել; 2. վարձու տրուիլ։ -roll. հասատոմար։ -able, a. վարձելի։ -al րէն'թըլ, s. հասատոմար։ -er րէնթ'ըր, s. վարձակալ, վարձաբնակ։

Renter րէն'թըր, va. յարեւմած կարել, միաւորել, հիւսել։

Renunciation րէնընսիէյ'շըն, s. հրաժարում, հրաժեշտ, ձգելը; 2. անձնուրացութիւն։

Reorganize րէօր'կընայզ, va. նորէն կազմակերպել, վերակազմել։ -zation, s. վերակազմութիւն։

Rep րէփ, a. չուանային, -նման։

Repair րէփէէր', va. նորոգել, կարկտել; 2. հատուցում տալ՝ ընել; 3. դարմանել, շինել, տեղը բերել։ =vn. վերադառնալ, երթալ, դիմել։ =s. նորոգում, հատուցում, դարմանում։ -able, Reparable րէփէէր'էպլ, a. նորուելիք, նորոգելի; 2. հատուցանելի, դարմանելի։

Reparation րէփէրէյ'շըն, s. նորոգութիւն; 2. հատուցում, տոյժ; 3. դարման։ -tive րէփէէ'րէթիվ, s. նորոգութիւն, հատուցում։ =a. նորոգիչ, դարմանիչ, յարդարող։

Repartee րէփարթէ', s. (պատրաստ) պատասխան։ =vn. շուտով՝ կծու պատասխանել։

Repass րէփէս', an. նորէն անցնիլ, նորէն դառնալ։

Repast րէփէսթ', s. հացկերոյթ, սեղան; 2. կերակուր, ուտեստ։

Repay րէփէյ', va. կրկին վճարել, վերադարձնել, հատուցանել, վճարել; 2. փոխարինել; 3. վարձատրել; 4. գոհացնել։ -able րէփէյ'էպլ, a. (յետոյ) վճարելի։ -ment րէփէյ'մէնթ, s. վճարում, հատուցում։

*Repeal րէփէլ', va. յետս կոչել; 2. խափանել, ջնջել։ =s. յետս կոչում; 2. խափանում, ջնջում։

Repeat րէփէթ', va. կրկնել, երկրորդել։ =s. կրկնում, կրկնութ.; 2. կրկնանիշ եր. -edly րէփէէթ'էտլի, ad. կրկին կրկին, իրարու ետեւ։ -er րէփէէթ'ըր, s. կրկնող, կրկնիչ; 2. կրկնահար ժամացոյց։

Repel րէփէլ', an. ետ մղել, ետ հրել; 2. ետ քշել, վանել; 3. ընկճել; 4. դիմադրել; 5. մերժել, չընդունիլ։ -lence, -cy րէփէլ'լընսէ, s. վանողական զօրութիւն։ -lent րէփէլ'լընթ, a. վանողական, վանիչ (ոյժ); 2. խոտորիչ (դեղ)։

Repent րէփէնթ', vn. [of] զղջալ, զեղջի գալ։ =րէփ'ընթ, a. գետնասող, սողկագնաց։ -ance րէփէնթ'ընս, s. ապաշաւ, ապաշխարութիւն, զեղջ, ստրջանք։ -ant, -er րէփէնթ'ընթ, րէփէնթ'ըր, a. զղջացող, ապաշխարող։ [մարդել։

Repeople րէփէ'փըլ, va. բազմա-

Repercussion րէփըրքըշ'ըն, s. յետամղում, անդրադարձում, ներքսավարութիւն։ -sive -քըս'իվ, a. ետ հրող, ներքսավար, ետ մղուած։

Repertory րէփ'ըրթըրի, s. ցանկ,

ցուցակ, ադիւսակ, տօմար։

Repetend րէփէթէնտ', s. անվերջ կոտորակի միացորդ թիւ, շրջան։

Repetition րէփէթիշ'ըն, s. կրկնաբանութիւն, կրկնում, կրկնութիւն; 2. խօսիլը (դասը), կրկնում, փորձ (դասի)։ -titous րէփէթիշ'ըս, a. կրկնուող։

Repine րէփայն', vn. [at] քրթմընջել, մռմռալ, տրտնջել, դժգոհիլ; 2. նախանձիլ։ -er րէփայն'ըր, s. քրթմնջող; 2. տրտրացող։

Replace րէփլէյս'(դ), va. նորէն դնել, տեղաւորել, զետեղել; 2. մէկուն տեղը դնել; 3. յաջորդել, փոխանորդել; 4. վերստին վճարել։

Replant րէփլէնթ', va. նորէն տնկել; 2. (տունկը) փոխադրել։ -ation րէփլէնթէյ'շըն, s. (տնկոց) փոխադրութիւն։

Replenish րէփլէն'իշ(դ), va. լեցնել։ [ցուն, լեցուն։

Replete րէփլիյթ', a. [with] լեփլե-

Repletion րէփլի'շըն, s. լիութ., առատութիւն; 2. արիւնաշատութիւն, խուկում եւն. -tive, a. լեցնող։

Replevin, Replevy րէփլէ'վին, s. բարձում; արգել. ք. վերցնող գիր էր

Replica'tion, s. պատասխան։

*Reply րէփլայ', an. պատասխանել, պատասխան տալ։ =s. պատասխան։

Repolish րէփո'լիշ, va. վեր. յղկել

Report րէփօրթ', an. տեղեկութիւն տալ, պատմել; 2. տեղեկագրել; 3. ներկայանալ, գտնուիլ։ =s. տեղեկագիր, տեղեկութիւն, տեղեկատուութիւն; 2. զրոյց, լուր, համբաւ; 3. ձայն, ճայթիւն (հրազինուց) որ եւ Account.

Reporter րէփօր'թըր, s. տեղեկագիր, լրաբեր, տեղեկաբեր; 2. սղագիր, գրագիր։ -ting րէփօր'թին, s. տեղեկաբերութիւն; 2. տեղեկագիր, -գրութիւն։

Reposal րէփօ'զըլ, s. դնելը, զետեղելը; 2. հանգչիլը, հանգիստ։

Repose րէփօ'զ, va. [on, upon] դնել, նստեցնել, հանգչեցնել, հանգըստացնել; 2. հանգիստ տալ, պառկեցնել; 3. աւանդ տալ, դնել։ =vn. հանգչիլ, քնանալ, հանգիստ առնուլ, հանգստանալ; 2. կանգ առնուլ, կենալ; 3. վստահիլ; 4. (բան մը) ձգել։ =s. հանգիստ, հանգըստութիւն; 2. քուն, հանդարտութիւն, անդորրութիւն; 3. հանգըստավայր (նկարի)։ -dness րէփօ'զէտնէս, s. հանդարտութիւն։

Reposit րէփո'զիթ, va. վստահիլ, աւանդ դնել։ -ory րէփո'զիթ'ըրի, s. շտեմարան, մթերանոց, պահարան։

Repossess րէփըզէս'(դ), va. վերըստին ստանալ, տիրել, վերստանալ։ -ion -զէ'շըն, s. վերստացում։

Reprehend րէփրէհէնտ', va. կշտամբել, յանդիմանել; 2. մեղադրել։ -er -հէնտ'ըր, s. յանդիմանող։

Reprehensible րէփրէհէն'սիբլ, a. պարսաւելի, եպերելի։ -ness, s. -ութիւն։ -ly, ad.

Reprehension րէփրէհէն'շըն, s. պարսաւանք, եպերանք, դարով։ -sive, -sory րէփրէհէն'սիվ, -հէն'սըրի, a. յանդիմանական։

Represent րէփրէզէնթ', va. նորէն առջև հանել, ներկայացնել; 2. ներկայացում ընել, ցուցնել; 3. նկարագրել; 4. ներկայացուցիչ ըլլալ, փոխանորդել, ներկայել։

Representation -զէնթէյ'շըն, s. ներկայացում, ցցնելը; 2. ձեւացում; 3. պատկեր, օրինակ, ձեւ; 4. նկարագրութիւն; 5. երեսփոխանութ., ներկայացուցիչք։ -tive -'թէթիվ, a. ներկայացնող, փոխանորդող։ =s. ներկայացուցիչ; 2. փոխանորդ, երեսփոխան։ House of -s. երեսփոխանական ժողով Ա.Մ.

**Repress** րիփրէ՛ս(ս), *va.* ճնշել, զսպել։ -ion րիփրէ՛շըն, *s.* արգիլում, զսպում։ -ive րիփրէ՛սիվ, *a.* զըսպողական, ճնշիչ; 2. կասեցուցիչ։

**Reprieve** րիփրի՛վ, *va.* յապաղել, ի կախ ձգել; 2. ուշացնել, յետաձգել։ =*s.* յամբերդ, յետաձըգում (մահապատիժի); 2. դուլ, դադար։

**Reprimand** րէփ՛րիմէնտ, *va.* սաստել, կշտամբել, յանդիմանել։ =*s.* սաստ, կշտամբանք, յանդիմանութ

**Reprint** րիփրի՛նթ, *va.* վերատըպել, նորէն տպել։ =րի՛փրինթ, *s.* վերատպում, նոր տպագրութիւն։

**Reprisal** րիփրայ՛զըլ, *s.* փոխարէն, վնաս, վրէժխնդրութիւն։

**Reprise** րիփրայ՛զ, *s.* վարձ էր.

***Reproach** րիփրօ՛չ(ս), *va.* [for] մեղադրել, երեսը զարնել; 2. չեխել, յանդիմանել։ =*s.* մեղադրանք, ստգտանք, պարսաւ, եպեր։ -able. *a.* մեղադրելի, պարսաւելի։

***Reproachful** -չ՛ֆուլ, *a.* նախատալից, թշնամական, անգոսնելի։ -ly, *ad.* նախատանօք։

**Reprobate** րէփ՛րօպէյթ, *va.* մերժել, անարգել, դատապարտել, խոտել։ =*a.* խոտեալ, խոտան, վատթար։ =*s.* ամբարիշտ, չար, սրիկայ։ -ness. **Reprobation** րէփրօպէյթ՛նէս, -պէյ՛շըն, *s.* պարսաւ, դատապարտութիւն, խոտում, մերժում։

**Reproduce** րիփրօտիու՛ս. *va.* արտադրել, օրինակը հանել; 2. նորէն յառաջ բերել, բուսցնել; 3. վերարտադրել։

**Reproduction** րիփրօտը՛քշըն, *s.* արտադրութիւն, արտատպում; 2. վերարտադրութիւն, ծնողագործութիւն; 3. արգասաւորութիւն, սերում։ -tive. -tory րիփրօտը՛քթիվ, -թը՛րի, *a.* վերարտադրիչ, արգիւնաբեր։

**Reproof** րիփրու՛ֆ, *s.* կշտամբանք, պարսաւ։

**Reprovable** րիփրու՛վէպըլ, *a.* մեղադրելի, պարսաւելի։

**Repro'val**, *s.* յանդիմանութ.։

***Reprove** րիփրու՛վ, *va.* [of, for] յանդիմանել, կշտամբել; 2. պարսաւել, մեղադրել։

**Reptile** րէփ՛թիլ, *a. s.* զեռուն, սողուն (կենդանի) hաշkrաp; 2. ստորացող; 3. գետնաքարշ; 4. չարաճճի, գձուձ։

**Republic** րիփըպ՛լիք, *s.* հասարակապետութիւն, հանրապետութիւն։ -of letters. գրագիտաց դաս։ -ation -քէյ՛շըն, *s.* վերատպում։

**Republish** րիփըպ՛լիշ(ս), *va.* վերհրատարակել, վերատպել (ուրիշ երկիր)։ [ժելի, հրաժարելի։

**Repudiable** րիփիու՛-, *a.* մեր-

**Repudiate** րիփիու՛տիէյթ, *va.* թողուլ, մերժել, հրաժարիլ; 2. (կին) արձակել։ -ation րիփիուտիէյ՛շըն, *s.* հրաժարում; 2. կնաթողութիւն, ապահարզան։ -tor -էյ՛թըր, *s.* կնաթող։

**Repugnant** րիփըկ՛նընթ, *a.* [to] հակառակ, դժկամակ; 2. ներհակ, թշնամի։ -ly, *ad.* -nance, -cy րիփըկ՛նընսի, *s.* խորշում, դժկամակութիւն։

**Repulse** րիփըլ՛ս(ս), *s.* յետս մղում, վանում; 2. մերժում, զլացում։ =*va.* ետ մղել, քշել, վանել, ի բաց մղել; 2. մերժել, զլանալ։

**Repulsion** րիփըլ՛շըն, *s.* վանելը, վանողութիւն։ -sive րիփըլ՛սիվ, *a.* վանողական, մերժողական; 2 ցուրտ, այլամերժ; 3. խորշող, քաշուող։

**Repurchase**, *va.* նորէն գնել, կրկին ծախու առնել, վերագնել։

**Reputable** րիփիու՛թէպըլ, *a.* յարգելի, մեծարգոյ։ -ly, *ad.* պատուաւոր կերպով, պատուով։

Reputation րէփիու-թէ'շըն, s. համբաւ, բարի անուն, պատիւ։

Repute րէփիու-թ', va. համարել, կարծել, ճանչնալ; 2. տեղ դնել։ =s. կարծիք, համարում; 2. պատիւ, համբաւ։ -dly րէփիու-թ'էտլի, ad. առհասարակ, տարաձայնութեամբ։

Request րէքուէսթ', s. հայցըւած, խնդրուածք, խնդիր, խընդրանք; 2. շնորհ; 3. աղաչանք։ =va. հայցել, խնդրել, ուզել; 2. աղերսել, աղաչել։ -er րէքուէսթ'ըր, s. աղերսարկու, աղերսող։

Requiem րէքուիէ'մ, s. հոգեհանգիստ, հանգստեան (պաշտօն) էջ.

Requirable րէքուայր'էպլ, a. խնդրելի, պահանջելի, ուզելի։

Require րէքուայր', va. ուզել, խնդրել, պահանջել; 2. կարօտիլ։ -ment րէքուայր'մէնթ, s. պահանջանք, պահանջում; 2. հարկ, պէտք; 3. պահանջոտութիւն։

Requisite րէք'ուիզիթ, a. պահանջուած, հարկ եղած; 2. հարկաւոր, անհրաժեշտ էր. -ness րէք'ուիզիթնէս, s. պէտք, հարկ։

Requisition րէքուիզի'շըն, s. պահանջանք, պահանջում; 2. խնդիր, խնդրանք; 3. հրաւիրագիր ։

Requital րէքուայ'թըլ, s. փոխարէն, հատուցում, տրիտուր։

Requite րէքուայթ', va. փոխարէնը հատուցանել, փոխարինել; 2. վարձատրել որ եւ Reward.

Rereward, *See* Rearguard.

Reredos րէյր'տօս, s. պըշտակ՝ շըրջապարդ խորանի; 2. խորանի ծածկոյթ; 3. վառարանի կռնակ, ետընըրուր որ եւ Alter-piece.

Resail րէ'սէյլ, an. ետ երթալ, կրկին նաւել։ [ճառում։

Resale րէսէյլ', s. վերստին վա-

Rescind րէսին'տ, va. ջրել, ջընջել; 2. խափանել; 3. յետս կոչել։

Rescission րէսիժ'ըն, s. ջնջում, դաշնեղծութիւն, խափանում։ -sory րէս'իժըրի, s. դատի ջնջումը պահանջելու գլխաւորութիւն, ջընջման պատճառ։

Rescript րէ'սքրիփթ, s. հրովարտակ, (կայսերական) հրաման; 2. (պապական) կոնդակ։ -ion -րիփ'շըն, s. նամակի դէմ, պատասխան ։

Rescu'able, a. ազատելի։

Rescue րէս'քիու, s. [from] օգնութեան հասնիլ, օժանդակել, փրկել։ =s. փրկութիւն։

Research րէսըրչ'(թ), s. խուզարկութիւն, հետազօտութ., խոյզ, վերախոյզ, խնդիր։ =va. նորէն փընտըռել, հետազօտել; 2. խուզարկել, փնտռել; 3. քննութիւն կատարել որ եւ To search again.

Reseat րէսիյթ', vn. նորէն նըստեցընել, հաստատել, վերահաստատել որ եւ To seat again.

Reseda րէսի'տէ, s. յափրուկ, սիրածաղիկ։ Wild–. կանչխոտ։

Reseize րէսիյզ', va. նորէն գրաւել, բռնել; 2. համակել, ձեռք անցնել (արտ, պարտէզ, հող)։

Reseizure րէսիժ'ըր, s. վերագրաւում, նորէն ձեռք անցնելը։

Resell րէսէլ', va. առնել՝ ծախել, նորէն ծախել, վաճառել։

Resemblance րէզէմ'պլէնս, s. [to, between] նմանութիւն; 2. երեւոյթ, կերպարան ։

Resemble րէզէմ'պլ, va. նման լինիլ, նմանիլ; նմանցնել, բաղդատել [հայցական կուզէ եւ ոչ տրական։ It–s a rose. վարդի կնմանի։]

Resent րէզէնթ', va. զգալ; ըզգածուիլ, սիրտը մնալ; 2. ցաւիլ, սրդողիլ; 3. քէն՝ վրէժ պահել։ -er րէզէն'թըր, s. դիւրազգրգիռ, դիւրազգած, զգայուն ։ -ful րէզէնթ'ֆուլ, a. զգայուն, ոխակալ։ *-ment

րէզըրվ'ձնդ, s. զգայնութիւն; 2. դժ. քինապահութ.; 3. տհաճութ.

Reservation րէզըրվէյ'շըն, s. վերապահութիւն, վերապահում; 2. զգուշութիւն, խոհականութիւն; 3. սեղմում, ամփոփում։ —tory րէզըրվէյթըրի, s. պահելու տեղ, պահարան, ընդունարան։

Reserve րէզըրվ', va. ետ բռնել, պահել; 2. սահմանել, վերապահել. =s. վերապահութ., վերապահում; 2. պահեստի գունդ՝ բանակ, պահեստազօր, պահեստագունդ խնիխեար ասկերի; 3. վերապահեալ որսարան, պահեստ; 4. պահեստի բանակ, պահեստագրամ; 5. ամփոփութիւն, խոհականութիւն, զգուշութիւն, խոհեմութիւն, մտային վերապահում, զգուշաւորութիւն; 6. արգելք։

Reserved րէզըրվդ', a. վերապահեալ; 2. զգոյշ, խոհական, պաղ, ինքնամփոփ։ —ly, —'էդլի, ad. զգուշութեամբ, խոհեմ կերպով։ —ness րէզըրվ'էդնէս, s. խոհականութիւն, շրջահայեցութիւն։

Reservoir րէզըրվուար', s. ջրշտեմ, ջրամբար սարնիճ, ջլամպոլ։

Reset րիսէթ', va. նորէն դնել՝ շարել; 2. զետեղել, տեղաւորել։

Resettle րիսէ'թլ, va. նորէն հաստատել, վերահաստատել։ —ment րիսէթ'լմէնթ, s. հանդարտեցնելը, վերահաստատում։

Reside րէզայդ', va. բնակիլ, նստիլ, կենալ։ —nce, —ncy րէզ'իտընս, s. բնակութիւն, կայան, նըստոց; 2. պաշտօնատեղի, պաշտօնավայր; 3. բնակարան, բնակատեղի։

Resident րէզ'իտընթ, a. բնակեալ, բնակող, հաստատուած։ =s. բնակիչ, բնակող; 2. երկրորդական տեղակալ, պատուիրակ nr ևւ Residenter. —iary րէզիտէն'շըրի, a. բընակող, կեցող, բնիկ։ =s. (օտար արքունիքի քով) նախարար, (հիւր) պատուիրակ; 2. փոխ-աւաքնորդ։

Resider րէզայ'տըր, s. բնակող։

Residual րէզիտ'իուըլ, a. մնացորդ, մնացած; 2. աւելորդ։

Residuary րէզիտ'իուըրի, a. յաւելուածոյ, յաւելուածական։ —legatee. ժառանգութեան մնացորդին կտակակատար, հրիտակառու։

Residue րէզ'իտիու, s. մնացորդ (հաշուի), մնացած մաս։

Residuum րէզիտ'իուըմ, s. մնացորդ, մնացած; 2. դիրտ ս.

*Resign րէզայն', va. թողուլ, ձըգել, հրաժարիլ; 2. յանձնել, տալ։

*Resignation րէզիգնէյ'շըն, s. թողուլը, հրաժարում; 2. համակերպութիւն, համակամութիւն, հըպատակութիւն։

Resigned րէզայնդ', pa. համակամ, հնազանդ; 2. հպատակ, հլու։

Resilience, Resilition րէզիլ'իընս, րէզիլիշ'ըն, s. ետ նետուիլը, ոստնում։ —lient րէզիլ'իընթ, a. ետ նետուող, ոստուն, ետ ցատկող։

Resin րէզ'ին, s. ռետին։ —ous րէզ'ինըս, a. ռետինային։ —electricity. ժխտական ելեկտրականութիւն։

Resist րէզիսթ', va. դիմանալ, դիմադրել, հակառակիլ, ընդդիմանալ; 2. տոկալ։ —ance րէզիսթ'ընս, s. դիմադրութիւն, դիմակալութիւն, դիմադարձութիւն; 2. արգելք, դժուարութիւն։ —ant րէզիսթ'ընթ, a. դիմադրող, ընդդիմակաց; 2. դիմացկուն, տոկուն։ —er րէզիսթ'ըր, s. ընդդիմակաց։ —less, a. անընդդիմադրելի։

Resis'tible, a. հակառակելի։

Resoluble րէզ'օլիուբլ, a. դիւրալոյծ, լուծելի, հալելի։

Resolute րէզ'օլիութ, a. խիզախ, անվեհեր; 2. քաջ, հաստատամիտ։

-ly, *ad.* աներկիւղ, համարձակ։ -ness, *s.* -ութիւն։

*Resolution րէզօլիու՛շըն, *s.* լուծում, բաժանում, որոշում; 2. խորհուրդ, միտք; 3. հաստատամտութ.; 4. մեկնութիւն, լուծում ꜰ.

Resolvable րէզօլ՛վէպլ, *a.* լուծելի, հալելի։

Resolve րէզօլվ՛, *va.* [on, upon] լուծել, հալեցնել; 2. կակղցնել, բաժնել; 3. վերլուծել, բացատրել; 4. տեղեկութիւն տալ; 5. համոզել, սահմանել, որոշել; 6. իջեցընել, փարատել (ուռեցք) բժ. =*vn.* հալիլ, լուծուիլ; 2. որոշել։ =*s.* դիտաւորութիւն, որոշում; 2. վճիռ; 3. տեղեկութ., բացատրութ.

Resolved րէզօլվտ՛, *a.* հաստատամիտ; 2. որոշուած, վճռուած։ -ly, *ad.* հաստատամտութեամբ։ -ness, *s.* -տութիւն։

Resolvent րէզօլ՛վընթ, *a.* փարատիչ, լուծիչ (ուռի) բժ.

Resonance րէզ՛ընէնս, *s.* հնչականութիւն եւ; 2. հնչիւն։ -nant, *a.* հնչուն, սաստկաձայն; հնչական։

Resorbent րէսօրպ՛ընթ, *s.* ներծծիչ, կլլող, ներս քաշող։

Resort րէզօրթ՛, *vn.* դիմել, երթալ, յաճախել; 2. ապաւինիլ։=*s.* դիմում, յաճախում, այցելութիւն; 2. ժամադրավայր, ժողովատեղի; 3. ապաստան, -տանարան (ատեանի)

Resound րէզաունտ՛, *an.* ձայն տալ, արձագանգել, անդրադարձել; 2. գովաբանել։ =րի՛սաունտ, *va.* նորէն ձայն հանել, հնչել։

Resource րէսօրս՛, *s.* յոյս, ապաւէն; 2. ճարճարակ, ճամբայ, միջոց, ճար, աղբիւր; 3. ինչք; 4. (դրամական) միջոց, դրոշմ։ -less, *s.* ճարճարակ չունեցող, անճարակ։

Respect րէսփէքթ՛, *va.* մեծարել, յարգել, ակնածիլ; 2. խնայել; վերաբերիլ։ =*s.* ակնածութիւն, յարգանք, մեծարանք, պատկառանք; 2. անուն, համբաւ; 3. վերաբերութիւն; 4. շարժառիթ, նպատակ, պատճառ; 5. նկատում, հայեցուած; 6. խոհեմութ.։ In-of. նկատմամբ։

Respectable րէսփէքթ՛էպլ, *a.* յարգելի, յարգոյ, մեծարելի, պատկառելի; 2. բաւական (տգեղ)։ -ness, -bility, *s.* -ութիւն։ -ly րէսփէքթէպ՛լի, *ad.* յարգանօք; 2. ըստ բաւականին, ձեռք տալու չափ

Respectful րէսփէքթ՛ֆուլ, *a.* յարգելի, յարգանք; 2. ակնածական։ -ly, *ad.* պատկառանօք, մեծարանօք։ -ness, *s.* -ութիւն։

Respecting րէսփէքթ՛ինկ, *ad.* նըկատմամբ, վերաբերեալ; գալով։

Respective րէսփէքթ՛իվ, *a.* փոխադարձ, ամէն մէկն իր, անձնիւր; 2. պատկանեալ, վերաբերեալ։ -ly, *ad.* վերաբերութեամբ; 2. փոխադարձաբար իւրաքանչիւրը; 3. յարաբերաբար, համեմատաբար։

Respell րէսփէլ՛, *va.* վերահեգել։

Respirable -փայր՛-, *a.* շնչելի։

Respiration րէսփիրէյ՛շըն, *s.* շնչառութիւն, շունչ, շնչում։ -tor -րէյ՛թըր, *s.* շնչատու գ. -tory րէսփայ՛րէթըրի, *a.* շնչառական, շնչական

Respire րէսփայր՛, *an.* շունչ առնել, տալ, շնչել; 2. շունչ առնուլ, հանգչիլ որ եւ To breathe.

Respite րէս՛փայթ, *s.* դուլ, դադար, հանգիստ, թոյլ; 2. ժամանակ; 3. պայմանաժամ, յետաձգում (պատժոյ)։ =*va.* ի կախ թողուլ, առկախել, կախակայել։

Resplendence, -cy րէսփլէն՛տէնս, *s.* լուսափայլութիւն, փողփողում։ -dent -լէն՛տընթ, *a.* լուսափայլ, փայփլուն, շողշողուն։

Respond րէսփոնտ՛, *vn.* պատաս-

խան տալ, պատասխանել ; 2. յարմարիլ, համապատասխանել ; 3. փոխարինել։ -ent րէսբոնտ'ընթ, *a.* համապատասխանող, համաձայն։

Response րէսբոնս', *s.* պատասխանելը, պատասխան։

Responsible րէսբոն'սըպլ, *a.* երաշխաւոր, պատասխանատու ; 2. վստահելի։ -ness, -bility, *s.* պատասխանատուութիւն ։

Responsive րէսբոն'սիվ, *a.* պատասխանող, -նական, -նատու ; 2. համեմատ, պատշաճ, փոխադարձ ընթերցում ; 3. փոխասաց, փոփոխ (սաղմոսասացութիւն) ։ -reading, փոխասացութիւն։ -sory րէսբոն'սըրի, *a.* պատասխանական ։

Rest րէսթ, *s.* հանգիստ, հանգստութիւն; 2. հանդարտութիւն, անդորրութիւն; 3. դադար, դուլ; 4. յենարան, բուն; 5. հանգստարան; 6. լռութիւն, հանգիստ քառ. էր. (նշան); 7. մնացորդ, մնացած մաս, մնացած։ =*vn.* [in, at, on, upon] հանգչիլ, դադար առնուլ ; 2. հանդարտիլ ; 3. հանգստանալ ; 4. կռթնիլ, յենուլ ; 5. քնանալ, ննջել ; 6. մեռնիլ, վախճանիլ ; 7. ապաւինիլ, յուսալ։ =*va.* հանգչեցընել, դնել ; 2. հանգստացնել, հաճեցնել։

Restaurant րէսթօրան', րէս'թըրէնթ, *s.* ճաշարան ։ -rateur, -torator րէսթօրաթըր',րէս'թօրէյթըր, *s.* ճաշարանապետ րօգանիստոն։

Restiff, Restive րէս'թիֆ, րէս'թիվ, *a.* խեռ, յամառ (ձի); 2. ըմբոստ, անհամոզ։ -ness, *s.*

Restitution րէսթիթիու'շըն, *s.* վերահաստատում ; նորոգութ. հատուցում ; վերադարձնելը (բան մը)

Restless րէսթ'լէս, *a.* անդուլ, անդադար, մշտաշարժ ; 2. անհանգիստ; խռովեալ, տատանեալ ; 3. անհանգստ ։ -ly, *ad.* -ness, *s.* շարժում, յուզում։ [գելի։

Restorable րէսթօ'րըպլ, *a.* նորո-

*Restoration րէսթօրէյ'շըն, *s.* վերահաստատութիւն (ազգի մը ճակին մէջ); 2. դարձ, նորոգութիւն։ -ist, *s.* վերանորոգական Ա.Ժ.

Restorative րէսթօրէյ'թիվ, *a.* կազդուրիչ, զօրացուցիչ, զօրեղ (դեղ)։ -tor -'թըր *s.* ճաշարանապետ

Restore րէսթօ'ր, *va.* [to](վերա)-դարձնել, ետ տալ,տալ ; 2. (վերա)-հաստատել ; 3. զօրացնել, (առողջութիւնը) շտկել ; 4. նորոգել ; 5. ուղղել, սրբագրել ; 6. յարութիւն տալ։ [կազդուրիչ։

Restorer -թօ'րըր, *s.* նորոգիչ,

Restrain րէսթրէյն', *va.* [from, at] արգիլել, զսպել, կեցնել ; 2. սեղմել, սահմանափակել ։ -able րէսթրէյն'ըպլ, *a.* զսպելի, խափանելի։ -edly -րէյն'էտլի. *ad.* սահմանափակ։ -er րէսթրէյն'ըր, *s.* արգելիչ, խափանող, խափանարար։

Restraint րէսթրէյնթ', *s.* սեղմում, ճնշում ; 2. բռնադատում, արգելք, խափան, խոչ ; 3. բանտ։

Restrict րէսթրիքթ', *va.* չափաւորել, սահմանափակել, սեղմել ; 2.սահմանը նեղցնել։ -ion րէսթրիք'-շըն, *s.* ամփոփում, սեղմում ; 2. արգելք։ -ive րէսթրիք'թիվ, *a.* սեղմիչ։

Restringent րէսթրին'ճընթ, *a.* պնդացնող, պրկիչ (դեղ)։

Result րիզըլթ', *vn.* [in] յառաջ գալ, հետեւիլ ; 2. մակաբերել։=*s.* հետեւանք, ելք; 2. արգասիք, արդիւնք։ -ance րիզըլթ'ընս, *s.* հետեւութիւն։ -ant րիզըլթ'ընթ, *as.* յառաջ եկած; 2. արտադրյալ Ֆզ.

Resum'able, *a.* վերսկսելի։

Resume րիզիում', *va.* ետ առնուլ, առնուլ տանիլ ; 2. ձեռք առնուլ, վերսկսիլ։

**Résumé** ռէզիւմէ', *s.* համառօտութիւն, ամփոփում։

**Resumption** ռիզըմփ'շըն, *s.* նորէն առում, վերադնում։ -tive ռիզըմփ'թիվ, *a.* վերսկսող։

**Resupinate** ռիսիու'փինէյթ, *a.* ձկնուսաձև պայլըգ սըրբը; 2. շըր-ջուն, դարձած։

**Resurrection** ռէզըռռէք'շըն, *s.* յարութիւն, վերակենդանութիւն; 2. վերստին կենդանացում։ -ist ռէզըռռէք'շընիսթ, *s.* մեռելագող բժ.

**Resurvey** ռիսըրվէյ', *va.* վերաչափել, (վերա) քննել։

**Resuscitate** ռիսըս'սիթէյթ, *va.* յարուցանել, ողջնցնել; 2. հոգի՝ կեանք տալ։=*va.* յարութիւն առնուլ, կենդանանալ։ -tion ռիսըսսիթէյ'շըն, *s.* յարութիւն; 2. վերանորոգում։

**Retail** ռիթէյլ', *va.* քիչ քիչ փոքրաքանակ ծախել; 2. մանրավաճառել։ =*s.* փոքրաքանակ վաճառում։ -er ռիթէյլ'ըր, *s.* մանրավաճառ որ եւ Retail-dealer.

**Retain** ռիթէյն', *va.* քովը պահել, վար դնել; 2. վարձել, բռնել; 3. պահել։ -er ռիթէյն'ըր, *s.* ստորակայ, հետեւակ, ծառայ; 2. կանխավճար (փաստաբանի)։

**Retake** ռիթէյք', *va.* վերստանալ։

**Retaliate** ռիթէլ'իէյթ, *an.* հատուցանել, փոխարինել, վրէժ լուծել։-tion ռիթէլիէյ'շըն, *s.* փոխվրէժ, ակն ընդ ական, փոխարէն; 2. վրիժառութիւն, փոխարինութիւն։ -tive, -tory ռիթէլ'իէյթիվ, -'թըռի, *a.* փոխարինական, վրէժխնդրական

**Retard** ռիթարդ', *va.* յապաղել, ուշացնել, երկայնել; 2. արգիլել, վար դնել։ -ation ռիթարդէյ'շըն, *s.* յապաղանք, դանդաղանք; 2. յամրացում; 3. արգելք։ [նիլ,ործալ։

**Retch** ռէչ(թ), *vn.* փսխելու ճըգ-

**Retell** ռիթէլ', *va.* կրկնել։

**Retention** ռիթէն'շըն, *s.* իրեն պահելը, վերապահում, պահեստ; 2. արգել; բանտ; 3. ըմբռնում, յիշողութիւն։ -of urine. դժուարամիզութիւն մէզ.-tive -թէն'թիվ, *a.* յիշողական; 2. (միտքը) բռնող, պահող; 3. խելամուտ։

**Reticent** ռէթ'իսընթ, *a.* լռակեաց։ -cence, -cy ռէթ'իսընս, -սի, *a.* չխօսիլը, պահելը, լռակեցութիւն։

**Reticle, Reticule** ռէթ'իքլ, ռէթի'քիուլ, *s.* ցանցեակ (հեռադիտակի); 2. ձեռնապարկ, շմբրոց (կանանց)։

**Reticular, -late, -lated, Retiform** ռէթիքի'ուլըր, -լէյ'թէթ, -'ֆորմ, *a.* ցանկակերպ, վանդակակերպ։

**Reticulation**, *s.* ցանկակերպութիւն։ [(աչքի)։

**Retina** ռէթ'ինա, *s.* ցանցենի

**Retinue** ռէթ'ինիու, *s.* հետեւորդք, արբանեակ. շքադիր։

**Retire** ռիթայր', *vn.* հեռանալ, ձգել երթալ; 2. քաշուիլ, հրաժարիլ, թողուլ; 3. առանձնանալ, մեկուսանալ։=*va.* նորէն՝ ետ՝ դուրս քաշել; 2. հրաժարեցնել։ -tired ռիթայր'էթ, *a.* գործէ քաշուած։-dly ռիթայրթ'լի, *ad.* առանձին, քաշուած, մեկուսի։ -edness, Retirement ռիթայրէթ'նէս, ռիթայր'մէնթ, *s.* առանձնութիւն, միայնութիւն, մենութիւն, մենակեցութիւն; 2. մենարան որ եւ Seclusion, Privacy.

**Retiring** ռիթայր'ինկ, *pa.* քաշուող; 2. ամչցող, չինկնող։-pension. հանգստեան թոշակ pkqաhւs։

**Retort** ռիթորթ', *va.* ետ դարձընել՝ ծռել, շրջել; 2. ետ՝ տեղը դրկել; 3. (փաստը՝ հակառակորդին) դէմ դարձնել; 3. ետ զարնել, ցոլացնել։ =*s.* պատրաստ պատասխան; 2. անդրադարձ, պատասխան; 3. եղջիւր, փունդ։ =*s.* -ion ռի-

թօր'շըն, s. դէմ՝ ետ դարձնելը։

Retouch րէթըչ'(թ), va. վերյարդարել, վերհպել, սրբագրել; 2. կրկին նայիլ՝ քննել. աչքէ անցնել։

Retrace -րէյս'(թ), va. նորէն գծել; 2. սկսիլ, բանել; 3. ելնել; 4. հետազօտել։

Retract րէթրէքթ', va. քաշել, կծկել; 2. ետ առնուլ, յետս կոչել։

Retractible, -tile, -tive րէթրէքթ'իպըլ, րէթրէք'թիլ, -'իվ, a. ներս ամփոփուող, ներքսաձիգ։

Retraction րէթրէք'շըն, s. յետս կոչում, վերակոչում; 2. կծկիլը, ամփոփուած; 3. ներքսաձգութիւն։

Retreat րէթրիյթ', s. քաշուիլը, առանձնութիւն; 2. նահանջում; 3. առանձնոց, թաքստոց; 4. զօրադարձ, նահանջ։ =vn. քաշուիլ, մեկուսանալ որ եւ To withdraw.

Retrench րէթրէնչ'(թ), an. յապաւել, կտրել, կրճատել, պակսեցնել (ծախքը)։ -ment, s. կրճատում, յապաւում; 2. ղակիչ, ամրացում զէն. որ եւ Lessening.

Retribute րէթրիպ'իուդ, va. վարձքը տալ՝ հատուցանել։

Retribution րէթրիպիու'շըն, s. վարձատրութիւն, վճարում, վարձ։ -tive, -tory րէթրիպ'իուդըրի, a. վարձատրական, փոխարինական։

Retriev'able, a. վերստանալի։

Retriev'al, s. վերստացում։

Retrieve րէթրիյվ', va. նորէն գտնել, վերստանալ; նորոգել; վերաշահիլ, նորէն շահիլ, ինչ որ հանել։ -vable րէթրիյ'վըպըլ, a. վերստանալի, վերաշահելի։ -val րէթրիյ'վըլ, s. վերստացում։ -ver րէթրիյ'վըր, վերստացող; 2. որսորդի շուն, որսագիւտ, որսաբեր (շուն)։

Retroact րի'թրօ-, րէթրօ'էքթ, va. յետս ազդեցիկ լինել։ -ion -էք'շըն, s. յետս ազդեցութիւն։ -ive րէթրօէք'թիվ, a. յետսազդեցիկ։

Retrocede րի'-, րէթ'րօսիյտ, an. ետ ետ երթալ, յետադիմել; 2. ետ դարձնել, շնորհել, ետ տալ, դարձնել, վերադարձնել։

Retrocession րէթրօսէշ'ըն, s. յետախաղաց շարժում, յետադարձութիւն; 2. շնորհում։

Retroflex, -ed; -fract, -ed րէթրօ'ֆլէքս, րէթրօ'ֆլէքսթ, րէթրօ'ֆրէքթէտ, a. ետ ծռած՝ դարձած, կոտրած բ. որ եւ Refracted.

Retrograde րէթ'րօկրէյտ, a. յետախաղաց, յետադարձ, յետադէմ։ -dation -կրէտէյ'շըն. s. յետախաղաց շարժում, յետադարձութիւն; 2. յետադիմութիւն, յետաշրջում.

Retrogression րէթրօկրէ'շըն, s. յետադարձութիւն, յետադիմութիւն։ -sive րէթրօկրէս'իվ, a. յետախաղաց, յետադարձ։

Retrospect րէթ'րօսփէքթ, vn. ետ նայիլ, ակնարկ նետել (անցելոյն)։ =s. անցելոյն ակնարկ։ -ion րէթրօսփէք'շըն, s. յետահայեաց ակնարկ, յետահայեցութիւն։ -ive րէթրօսփէք'թիվ, a. յետահայեաց, յետադարձ (նայուածք)։

Ret'rovert, vn. ետ դարձնել։

*Return րիթըրն', vn. [to] վերադառնալ, դառնալ; 2. վերսկսիլ; 3. պատասխանել; 4. վերայցելել։ =va. դարձնել, առաքել, յղել; 2. զրկել (առ որ անկ է); 3. վճարել; հատուցանել; 4. տեղեկագրել։ =s. վերադարձ, դարձ; 2. վճարագիր; 3. պաշտօնական տեղեկագիր; 4. առաքում (վճռի, տեղեկագրի); 5. շահ, վարձ։ -able, a. դարձնելիք, դարձուելիք; 2. վերադառնալի։

Retuse րէթիուզ', a. տափկցած։

Reunion րիյուն'իըն, s. միացում, հաւաքում; 2. միաւորում, միութիւն; 3. (բարեկ.) հաւաքոյթ։

Reunite ռիիւնա՛յթ, *va.* կրկին միացնել, միաւորել, ժողվել։

*Reveal ռիվի՛յլ, *va.* երեւան հանել, վեր հանել, յայտնել։

Reveille ռիվե՛յլիը, ռիվեյլ՛, *s.* զարթուցիչ թմբուկ, այգազարթոյց

Revel ռեվ՛ըլ, *vn.* [on, upon] ուտել, խմել, շուայտիլ, անառակիլ, զուարճանալ։ =*s.* կերուխում, շուայտութիւն, զուարճութիւն։ —rout. կերուխում, շուայտանք; 2. խառնիճաղանճ, ամբոխ։ —er ռեվ՛ըլըր, *s.* շուայտ, անառակ։ —ry ռեվ՛ըլրի, *s.* հարկինք, կոչունք; 2. շուայտութիւն, գինարբուք։

Revelation ռեվըլէյ՛շըն, *s.* յայտնութիւն; 2. վեր հանելը, յայտնելը

Revenge ռիվէնճ՛, *va.* վրէժ առնուլ՝ հանել՝ լուծել, վրէժխնդիր ըլլալ։ =*s.* վրէժխնդրութիւն, վրիժառութիւն։

Revengeful ռիվէնճ՛ֆուլ, *a.* քինայոյզ, ոխակալ, վրէժխնդիր։ —ly, *ad.* —ness, *s.* —ութիւն։

Revenue ռեվ՛ընիու, *s.* եկամուտ, հաս, մուտք։ —cutter. մաքսանաւակ, պատաշ։ —stamp. (մուրհակի, մուրհակի վրայ) դրոշմ, դրոշմաթուղթ տամղա, տամղա քուղըտ, սէնէտ քուղըտ։

Reverberent ռիվըր՛պըրընթ, *a.* հնչող, հնչական, թնդացող։

Reverberate ռիվըր՛պըրէյթ, *va.* հնչեցնել, արձագանգ տալ, կրկնել; 2. անդրադարձնել, ցոլացնել։ =*vn.* հնչել, արձագանգել; 2. ցոլանալ, անդրադառնալ։ —tion -պըրէյ՛շըն, *s.* ցոլացում, անդրադարձութիւն։ —tory -էյ՛թըրի, *a.* ցոլացիկ, ցոլացական, 2. ցոլացնող, լուսացոյց։

Revere ռիվի՛ըր, *va.* մեծարել, յարգել, պատուել; 2. ակնածիլ։

Reverence ռեվ՛ըրընս(ս), *s.* յարգութիւն, յարգանք, մեծարանք, պատիւ, ակնածութիւն; 2. խոնարհութիւն, բարեւում; 3. մեծարգութիւն, արժանապատուութիւն, գերապատուութիւն։ =*va.* յարգել, պատուել; 2. մեծարել։

Reverend ռեվ՛ըրընտ, *a.* արժանապատիւ, գերապատիւ; պատուելի, գերյարգոյ, գերաշնորհ, գերապատիւ, վերապատուելի; սրբազան, հոգեշնորհ։ Most— ամենապատիւ (արքեպիսկոպոս)։ Right—. գերարգոյ, գերապատիւ(եպիսկ.)։ Very—. վերապատուելի։ Rev. J. F. Smith, D. D. Պատ. Տոք. Սմիթ։

Reverent, -ial ռեվ՛ըրընթ, ռեվըրէն՛շըլ, *a.* անչափ մեծարող, յարգամեծար, ակնածու։ —ly, *ad.* ակնածութեամբ, մեծարանօք, յարգանօք որ եւ Submissively.

Reverie, Revery ռեվ՛ըրի, *s.* ցնորք, խոհանք, երազ, անուրջք։

Reversal ռիվըր՛սըլ, *s.* վճռաջնջում; 2. փոփոխութիւն, փոխելը։

Reverse ռիվըրս՛(ս), *va.* շրջել, գլխիվայր դարձնել; 2. խափանել, կործանել; 3. տապալել, տակնուվրայ ընել; (վճիռը) ջնջել եւ. =*s.* հակառակ կողմ, յետակողմ, կռնակ, ետեւ, հակառակ; 2. ձախողանք, ձախորդութիւն։ =*a.* կռնկի վրայ, գլխիվայր, շրջուն թէրս։ —ly, *ad.* կռնակի վրայ, պորտն ի վեր; 2. ընդհակառակն; 3. կործուած։

Revers'ible, *a.* շրջելի։

Reversion ռիվըր՛շըն, *s.* վերադարձ, յետադարձ (ժառանգութիւն); 2. յաջորդելու իրաւունք, վերջամնացութիւն եւ.

Revert ռիվըրթ՛, *an.* ետ դարձնել, շրջել; 2. ետ դառնալ, վերադառնալ։ —er ռիվըրթ՛ըր, *s.* շրջող, յետադարձ եւ. —ible ռիվըրթ՛իպլ, *a.* կրկնելի։ —ive ռիվըրթ՛իվ, *a.* շրջող; 2. փոխող; 3. դարձող։

Revest րէվէ՚ստ՛, *an.* (կրկին) հագցնել, հագուեցնել, հագնիլ; 2. աւանդել, տալ (պաշտօն); 3. վերստանձնել, ստանձնել ։

Revetment րէվէ՚թ՛մընթ, *s.* (փոսի, հողերու) պատուած, շիրիշակ ևլն.

Review րէվիու՛, *va.* նորէն քննել, վերաքննել; 2. կարդալ, աչքէ անցնել, սրբագրել; 3. դատել; 4. զօրահանդէս, քաղուածք ընել ։ =*s.* (մանր) քննութիւն, քննադատութիւն, դիտողութիւն; 2. հանդէս; 3. (պարբեր.) թերթ, հանդիսաթերթ, հանդիսարան, հանդէս; 4. զօրահանդէս; 5. վերընթերցում, սրբագրութիւն ։ –of Reviews. հանդէս հանդիսից, հանդիսարանն ։ =er րէվիու՛ըր, *s.* քննադատ, գրադատ; 2. վերաքննիչ, վերաքննող ։

Revile րէվայլ՛, *va.* նախատել; 2. թշնամանել, զրպարտել ։

Revisal րէվայզ՛ըլ, *s.* վերաքննութիւն; 2. վերընթերցում ևլ.

Revise րէվայզ՛, *va.* նորէն քննել՝ աչքէ անցնել; 2. սրբագրել, վերաքննել ։ =*s.* երկրորդ փորձ ևլ.

Reviser րէվայզ՛ըր, *s.* սրբագրիչ ։

Revision րէվիժ՛ըն, *s.* վերաքննութիւն; 2. վերընթերցում ։

Revisional, -nary, -sory րէվիժ՛ընըլ, -՛ընըրի, րէվայզ՛ըրի, *a.* վերաքննութեան, սրբագրութեան ։

Revisit րէվիզ՛իթ, *va.* նորէն տեսնել՝ այցելել ։ -ation -էյ՛շըն, *s.* վերատեսութիւն, վերայց ։

Revival րէվայվ՛ըլ, *s.* վերակենդանացում, ոգեւորութիւն; արթնութիւն, վերազարթնում (հոգեւոր); 2. նորոգութիւն ևր. –ist րէվայ՛վըլիսթ, *s.* (հոգեւոր) արթնութիւն քարոզող պաշտօնեայ; 2. վերազարթնումի կուսակից ։

Revive րէվայվ՛, *va.* վերակենդանացնել, նոր կեանք տալ, ոգեւորել, նորոգել, արթնցնել, վերազարթուցանել ։ =*vn.* կենդանանալ, վերկենցաղիլ; 2. վերածնիլ, նորոգուիլ ։

Revivification րէվիվիֆիքէյ՛շըն, *s.* վերակենդանացում, -դանութ. ։

Revivify րէվիվ՛իֆայ, *va.* վերակենդանացնել, ոգեւորել; 2. վերածրնել տ. nr եւ To re-animate.

Reviviscence, -cy րէվիվիս՛ընս, -սի, *s.* վերակենդանութիւն, վերակենդանացում ։

Revocable րէվ՛ըքէպլ, *a.* յետակոչելի, նահանջելի ։ -ness, -bility, *s*

Revocation րէվօքէյ՛շըն, *s.* յետս կոչում, նահանջում; խափանում ։

Revoke րէվօ՛ք(ս), *va.* յետս կոչել, ետ առնուլ, ջնջել; 2. այլագոյն թուղթ նետել (թղթախաղի մէջ) ։

Revolve րէվալվ՛, *an.* թաւալիլ, դառնալ, գլորիլ; 2. դարձնել, գլորել ։ –ncy -՛ընսի, *s.* թաւալում -ving book-case. շրջուն գրադարան

Revolver րէվալվ՛ըր, *s.* բազմահարուածեան, վեցհարուածեան, շրջահար (ատրճանակ) ։

Revulsion րէվըլ՛շըն, *s.* յետաշրջում, խոտորում –sive -՛սիվ, *a.* դարձուցիչ, խոտորցնող ։

Reward րէուորտ՛, *s.* փոխարէն, վարձ, հատուցում, վարձատրութիւն; 2. պատիժ ։ =*va.* փոխարինել, հատուցանել, վարձատրել ։ –able, *a.* վարձատրելի; փոխարինելի

Rewrite րէրայթ, *va.* նորէն գրել ։

Reynard րէյ՛նըրտ, *s.* աղուէս ։

Rhabdology, -mancy *See* Rab-

Rhapsody րէփ՛սըտի, *s.* հագներգութիւն, դաւազաներգութ.; 2. կարկատուն ճառ՝ քերթուած ։ –dic, –al րէփսատ՛իքըլ, *a.* կարկատուն (ճառ) ։ –dist րէփ՛սըտիսթ, *s.* հագներգու, հագներգող ։

Rhenist րէն՛-, *a.* Հռենոսեան ։

**Rhetoric** րէթ՛ըրիք, s. հռետորութիւն, ճարտասանութիւն, գրագիտութիւն ։ -al րէթար՛իքըլ, a. ճարտասանական -ally, ad. ճարտասանօրէն։ -ian րէթօրի՛շըն, s. ճարտ. ուսուցիչ, հռետոր; 2. ճարտասան, հռետորաբան; 3. ճոռոմաբան։

**Rheum** րու՛մ, s. ախտաւոր հոսում լորձնաթաղանթից, հոսախտ, հարբուխ; 2. (քթի) հոսանք, հոսում

**Reumatism** րու՛մըթիզմ, s. հօդ, յօդացաւութիւն, յօդացաւ։

**Rheumatic** րումէթ՛իք, a. յօդացաւի, յօդացաւական։

**Rheumy** րու՛մի, a. հոսախտի, հոսում պատճառող, հարբխոտ ուղեղի; 2. (քիթը) վազող, հոսող։

**Rhino** րայ՛նօ, s. արծաթ, ստակ։

**Rhinoceros** րայնաս՛օսէրըս, s. ռընգեղջիւր կերկերսան։ -plasty րայնօբ՛լէսթի, s. քթակերտութիւն։

**Rhizoma** րայզօ՛մա, s. ընդհողեայ բուն, կոճղարմատ (տունկ)։

**Rho'dium**, s. վարդամետաղ ա.

**Rhododendron** րօտօտէնտ՛րըն, s. կոմար, վարդածառ, լաշի սարը աղու աղանը ։ -ponticum. եղրի, ըղրի, մրտավարդ ։

**Rhomb, Rhombus** րամ, րամ՛պըս, s. շեղանկիւն, տարանկիւն պագլավա տիլիմի շեկլի։

**Rhomboid** րամ՛պօյտ, s. տարանկիւնակերպ։ -al րօմպօյ՛տըլ, a. -ձև։

**Rhubarb** րու՛պարպ, s. գաբ, խաւարծիլ, խաշնդեղ ռավէնտ (արմատը); 2. գաբծիլ, քիշխուն (բոյսը)

**Rhumb, -line** րըմ՛լայն, s. հողմագիծ նաւու, հողմաշաւիղ։

**Rhyme** րայմ, s. ոտանաւոր, տաղ, բանաստեղծութիւն; 2. յանգ, նոյնավերջութիւն գաֆիէ։ =va. ոտանաւոր գրել, նոյնայանգել; 2. ներդաշնակել ։ =vn. (բառերը) յանգաւորիլ։ Without-or reason. առանց պատճառի, առանց իմաստի։

**Rhymer, Rhymster, Rhimist** րայմ՛ըր, -՛սթըր, -՛իսթ, s. յանգամոլ, յանգաստեղծ; անհամ բանաստեղծ։

**Rhytm** րիթհմ, րիթհմ, s. կշռութիւն, դաշնակութիւն; չափ։ -ic, -ical րիթհ՛միքըլ, a. կշռական, դաշնակաւոր; 2. չափական (տաղ)։

**Rib** րիպ, s. կողոսկր, կող, քով էյէկիւ քէմիյի; 2. կողակից, կին; 3. նաւու ամոլք զօրգա; 4. փայտամիյթ ։; 5. միջնդեր, միջնաջիղ (տերեւի); 6. անցենք, ջիլ (հանդերձի վրայ) չըպուգ, եօլ ։ =va. (նաւը) ամոլել, կողել։ -roast. լաւ մը ծեծել։ -bed րիպտ, a. ջլազարդ եօլեօլ, չըպուգլու; 2. կողալից։

**Ribald** րի՛պըլտ, a. անառակ, լկտի; 2. պիղծ, յայրատ, խայտառակ։ -ry րի՛պըլտրի, s. լկտութիւն; 2. լկտի բան, խայտառակ խօսք, գռեհիկ լեզու որ է Obscenity.

**Ribbon, Riband, Ribband** րիպ՛ըն, րիպ՛ընտ, s. ժապաւէն; 2. pl. երասանակ ւսր սիգկինի։ =va. ժապաւինել, ժապաւինազարդել։

**Rice** րայս, s. որիզ, բրինձ -bird, -bunting. որիզահաւ, սեւասարիկ ։ -milk. կաթնապուր։ -paper. որիզաթուղթ ։ -weevil. ցորենորդ

**Rich** րիչ, a. [in] հարուստ, ունեւոր, մեծատուն; 2. առատ, յորդ, լեցուն; 3. ճոխ, բեղուն, (ցորենա) շատ, արգաւանդ, բերրի; 4. պատուական, փառաւոր, շքեղ; 5. պարարտ, իւղոտ (միս, կերակուր)։ -ly, ad. ճոխ՝ շքեղ կերպով, առատօրէն։ -ness, s. հարստութիւն, ճոխութիւն, առատութիւն։

**Riches** րիչ՛էզ, pl. հարստութ., ինչք, ստացուածք; 2. ճոխութիւն, առատութիւն։

**Rick** րիք, s. խոտի՝ յարդի դէզ, ցորենի դէզ, բարդ; 2. մարագ,

յարդանոց։ =va. բաց օդին մէջ՝ ցորենի որաները, խոտը բարդ շինել, դիզել, բարդել, դեղնել։

Rickety -'էթի, a. ոսկրախտեք, ողնախտեք, քամակակոր; 2. ճռզած, տկար։ -kets րէք'էց, s. -ութիւն։

Ricochet րէք'օշէթ, s. (գնդակի) ոստոստիւն, ոստոստում, ցատկտելը; 2. հրացանաձգութիւն։

Rid րէտ, va. [Rid, Rid] արձակել, փրկել, մաքրել։ To get-of. ճողոպրիլ, պրծիլ, (ձեռքէն) ազատիլ

Riddance րէտ'ընս, s. զերծում։

Riddle րէտ'լ, s. փոկէ մաղ, խարբալ, կալմաղ; 2. հանելուկ, առեղծուած։ =an. կալմաղէ անցնել, մաղել; 2. մաղ դարձնել, ծակծկել; 3. մեկնել, լուծել; 4. հանելուկ ըսել; 5. երկդիմի խօսիլ։

*Ride րայտ, vn. [Rod, Ridden] (ձի, կառք) հեծնել; 2. ձիավարել; 3. մտնել (նաւ), նաւարկել; 4. թիավարել, 5. երկաթի վրայ ըլլալ ն–. =va. հեծնել. վարժել; 2. մըտնել, նստիլ (նաւ); 3. հեծցնել։ =s. ճեմ, պտոյտ, շրջագայութ. (ձիով)

Rideau րէտօ', s. հողակոյտ [F.]

Rider րայտըր, s. ձի հեծնող, ձիավարժ, հեծելուհի; 2. յաւելուած, ծայրագիր, երկայնորդ (կտակի են); 3. շրջուն գործակատար, շրջադպիր

Ridge րէճ, s. ող, թիկունք, կըռնակ, քամակ; 2. գագաթ, կատար, ծայր։ =va. ակօսներ բանալ, ակօսել; 2. հողագօտի շինել; 3. ակօսներ՝ խորշոմներ թողուլ, հետք ձգել։ -pole, -plate, -piece. ձեղունի ողնափայտ։

Ridgy րէճ'ի, a. ակօսաւոր։

Ridicule րէտ'էքյուլ, s. ծաղր, կատակ, երգիծանք; 2. ծաղրաբանութիւն։ =va. ծաղրելի ընել, ծաղրել; 2. ծաղրի առնուլ։

Ridiculous րէտէք'յուլըս, a. ծաղրելի, ծաղրասէր, ծիծաղելի։ -ly. ad. -կերպով։ -ness, s. ծաղրանք, քաշկռտուք։

Riding րայտ'էնկ, s. ձի հեծնելը, ձիավարութիւն; 2. հեծելուղի; 3. գաւառ, նահանգ։ -habit. հեծելհանդերձ, ամազոնակ (կին.) -hood. հեծելագդակ (կին.) -school. հեծելարան, հեծելավարժոց։

Ridot'to, s. խաղալական պարերգ

Rife րայֆ, a. յորդ, առատ, ճոխ, լի։ -ly, ad. լիուլի, առատօրէն։ -ness, s. -ութիւն։

Riffle, Riffler, s. ծակի խարտոց

Riffraff րէֆ'րէֆ, s. անպիտան բան, թափթփուք; 2. խուժան։

Rifle րայ'ֆլ, va. յափշտակել, կողոպտել; 2 աւարի առնուլ, թալլել; 3. ակօսել, մատնեքել; 4. սրել, յեսանել (մանգաղ)։ =s. խորշաւոր հրացան, կարբին շէշխանէ; 2. յեսան պիչէյի բաշը։ -man. կարբնաւոր, հրացանակիր, արձակամարտ։ [գօղիաթ։

Rifler րէֆ'լըր, s. ուրագակ, հէն,

Rift րէֆթ, s. ճեղքուած, ճաթուք; 2. սահանք։ =an. ճեղքել; 3. ճեղքուիլ որ եւ Split.

Rig րէկ va. հագուեցնել, պճնել, զարդարել; 2. կազմել, հանդերձել, պատրաստել ն–; =s. կազմածք, սարուած (նաւու); 2. վրայ գլուխ, հագուստ, փերեւեթ; 3. անառակութիւն։ To run a–. կատակել, մէկուն խաղ խաղալ։ -er րէկ'ըր, s. ձեւող, յարդարող; 2. նաւայարդար; 3. փոկանիւ մք.

Regging րէկ'էնկ, s. կազմածք, սարուածք բազըմ ն–. [մը։

Rigadoon րէկէտուն', s. պարերգ

Right րայթ, a. ուղիղ, շիտակ, (ողորդ, զորդ), ուղղորդ; 2. արդար, իրաւացի; 3. վայելուչ, կանոնաւոր, յարմար; 4. աջակողմեան, աջ

(ձեռք), աջակողմ; աջողակ, աջ ձեռքով; 5. շիտակ, ուղղութեամբ, ճշդութեամբ, ճշգրիտ, ճշմարիտ; 6. յայժ, շատ (պատուական)։ =s. աջակողմ, աջ ձեռք; 2. օրէնք, կանոն; 3. իրաւունք, արդարութիւն, ճշմարտութիւն։ =va. ուղղել, շտկել; 2. իրաւունք ընել, կարել; 3. ուղղուիլ, շտկուիլ։ To set to-s, to put to-s. շտկել, յարդարել, կանոնաւորել։ --angled. ուղղանկիւնի։ -handed. աջաձեռնի։ The-man in the-place. յարմար մարդը բուն իր (յարմար) գործին վրայ։ -side. աջ կողմը, խէջը։

**Rightous** րայ'չըս, a. ուղիղ, արդար, առաքինի; 2. արդարացի, իրաւացի։ -ly, ad. արդարութեամբ; 2. իրաւամբ; 3. ուղղութեամբ։ -ness րայ'չըսնէս, s. իրաւունք, արդարութիւն; 2. ուղղութիւն; 3. սրբութիւն; 4. օրէնք, կանոն։

**Rightful** րայթ'ֆուլ, a. օրինաւոր, արդարացի, իրաւացի։ -ly, ad. -կերպով, օրինաւորապէս։ -ness, s.

**Rightly** րայթ'լի ad. ուղղութիւնով, արդարութեամբ; 2 վայելչօրէն; 3. իրաւամբ, ստուգիւ; 4. ճշդութեամբ։

**Rightness** րայթ'նէս, s. ուղղութիւն, շիտակութիւն, ճշդութիւն

**Rigid** րիճ'իտ, a. չծռող, անճըկուն, կարծր; 2. անաչառ, խիստ, խստապահանջ, ճշդապահանջ; 3. խստակրօն, խիստ։ -ly, ad. խստիւ; 2. անխնայ։ -ness, -ity րիճ'իտնէս, րիճիտ'իթի, s. կարծրութիւն, անճըկունութիւն; 2. խստութիւն, անողոքութիւն։

**Rigmarole** րիկ'մըրօլ, s. ոչնչաբանութիւն, կրկնաբանութ.; 2. Ցանախ իբրեւ ածական կգ. րծած-ուի։ A-story. անպիտան' ոչինչ պատմութիւն մը։

**Rigor** րիկ'ըր, s. կարծրութիւն, բրտութիւն; 2. անաչառութիւն, խստութիւն; դժնդակութ., սաստկութիւն; 3. ճգնութիւն, խստամբերութիւն, անձնահարութիւն; 4. ջերմնադողութեան բժ.

**Rigorouse** րիկ'ըրըս, a. խիստ, անաչառ, ճիշդ, դժնդակ։ -ly, ad. -ness, s. -ութիւն։

**Rig-veda** րիկ'վէտա, s. սանսքրիտ լեզուաւ գրուած վետական չորս օրհներգներու հնագոյնը։

**Rile** րայլ, va. բարկացնել։

**Rill** րիլ, s. առուակ, վտակ։

**Rim** րիմ, s. եզր, շուրթ, եզերք, շրթունք; 2. հեց, խեց, հեւան, անուոյ շրջանակի մէն մի կտոր փայտը; 3. ներքէն փորը պատող մաշկ, որովայնամաշկ, չճաթաղանդ; 4. գծազարդ, թելազարդ շիշէ, բkrվազ։ =va. եզերել, եզերք շինել, եզերազարդել։

**Rime** րայմ, s. եղեամ։

**Rimose** րիմօս', a. ճեղքրտած։

**Rimple** րիմ'փլ, s. ծալք, փոթ։

**Rimy** րայմ'ի. a. եղեմնապատ։

**Rind** րայնտ, s. կեղև, փեճեկ, պատեան; 2. մորթ, գրպի երես։

**Rinderpest** րին'տըրփէսթ, s. տարափոխիկ պաճարախտ մը ։ r եւ Cattle-plague, Steppe-murrain.

**Rindle**, s. (փղցի)ուխ, առուակ

**Ring** րինկ, s. օղակ, մանեակ, շրջանակ; 2. մատանի; 3. մրցարան, կռուարան; 4. թնդիւն, հնչիւն, հունչ, ձայն; 5. հնչական կազմած, հնչատարք։ -bolt. մանեկաձեւ նետ։ -dove. հաւբալ, վայրի աղաւնի։ -finger. մատանեմատ։ -formed, -shaped. օղակաձեւ, մանեկաձեւ։ -leader. խռովարար, պարագլուխ։ -streaked. օղակ օղակ։ -tail. յարդատառուն։ -worm. որքին։

**Ring**, *an.* [Rang *or* Rung, Rin-

հետազօտել, խըլ ծխըլ քննել: -sion սքէն'շըն, s. անդամատում քնն., անդամատութիւն:

Scandal սքէն'տըլ, s. գայթակղութիւն, գայթակղանք; 2. անուանարկութիւն; 3. շշուկ, շշնկոց; 4. խայտառակութիւն, նախատինք, ամօթ: -ize սքէն'տըլայզ, va. գայթակղեցնել; 2. նախատել, աղարտել, նշաւակել; 3. վատահամբաւել, անուանարկել, անպատուել, անարգել:

Scandalous սքէն'տըլըս, a. գայթակղական, -ղալից; 2. խայտառակ, ամօթալից, վատ: -ly, ad. անամօթաբար: -ness -'նէս, s.

Scandent -'տընտ, a. վեր մագլող:

Scansores սքէնսօ'րէզ, pl. մագլողք թռ. -sorial սքէնսօր'իըլ, a. մագլող (կկու, փայտփոր եւլն):

Scant սքէնտ, va. սեղմել, ամփոփել; 2. չափաւորել, կարճել: =vn. թուլնալ, քիչնալ: =a. պզտի, գոյզն, հազիւ: -ily, -ly սքէն'տիլի, սքէնտ'լի, ad. խեղճօրէն, գձուձ; հազիւ, դժուարաւ; խեղճ: -iness, -ness սքէն'տինէս, սքէնտ'նէս, s. նեղութիւն, անձկութիւն, նուազութիւն: -ling սքէնտ'լին, s. նուրբ տախտակ:

Scanty սքէնտ'ի, a. նեղգծուկ, նեղկեկ; 2. հազուագիւտ; 3. նըւազ, քիչ; 4. կծծի:

Scape սքէյփ, s. կոթ, ծիղ, ցօղուն: -goat. ժողովրդեան մեղքերը շալկող՝ մեղաւոր նոխազ, քաւութեան նոխազ (Ղեւ. ԺԶ. 8) -grace, -gallows. անշնորհք, մորը մանածը ծախող, չէք ըլլալիք, անպիտան: -ment, s. *See* Escapement. [կանման:

Scaphoid սքէյ'ֆօյտ, a. նաւա-

Scapula սքէփ'իուլէ, s. ուսոսկր: -lar -'իուլէր, a. ուսոսկրի: -lary -լէրի, s. կրօնաւորաց ոմանց զգեստի մաս, փորուրար:

Scar սքար, s. սպի, երաշխէպ, վէրքի նշան: =vn. սպիանալ:

Scarab, Scarabee, Scarabæus սքէր'էպ, -պի'ըս, s. բզէզ:

Scaramouch սքէր'էմաուչ, s. մեչուխէչա, սեւ հագիտ Իտ. Թատ.

Scarce սքէէրս, a. հազուագիւտ, հազուադէպ, նուազ, սուղ: -ly, ad. քիչ անգամ, հազիւ, գունուրեք: -ness, Scarcity -'սիտի, s. -ութիւն:

Scare սքէէր, va. վախցնել, ահաբեկ ընել: -crow. խրտուիլակ, խուխ

Scarf սքարֆ(տ), s. խլամտեռ, վզգնոց, վրանոց, ուսնոց, շալ; 2. թեւակալ (կապ) ձեռ.; 3. ագուցիկ փորուած (տախտակ) կնկ եւրի; 4. լանջագեղ կամար, լանջակամար, քուշկին: =va. իրար անցնել, ղօդել (տախտակ); 2. վրան առնուլ, վրան ձգել (շալը): -skin. վերնամորթ, վերնամաշկ մրդ.

Scarification սքէրիֆիքէյ'շըն, s. ցտում, շառատում, շառատած համամար: -tor, -rifier -'տըր, սքէր'իֆայըր, s. շառատիչ, շառատագործի, նշդրակ համամար զենպերեյի; 2. շառատատուփ; 3. ցաքանակ (երկրագործի) է.

Scarify սքէր'իֆայ, va. շառատել, ցտել, մաղտել համամար երմեֆ:

Scarlatina սքարլէտի'նա, s. կարմրախտ, հարսանիթ, շառատենդ գըզըլ հիւմմա որ եւ Scarlet-fever.

Scarlet սքար'լէտ, s. ծիրանի, հիր, փուռփուռակ իսֆերղեր, այ: =a. նարնջագոյն, շիկակարմիր, ծիրանագոյն, ծիրանափառ, -թոյր, կարմրազարդ:

Scarp սքարփ, s. շեպ, լեփ խենտեքի երեյի ամր. =va. վերէն վար ուղղորդ կտրել, սեպացնել:

**Scath, Scathe** սքէթհ, սքէյթհ, [scathed սքէթհտ, սքէէյթհտ; scathing սքէթհին, սքէյթհ՛ին,] *s.* կորուստ, վնաս, աւերում։ =*va.* վնասել, աւրել; 2. կորսնցնել, վատնել։ -ful սքէթհ՛ֆուլ, *a.* վնասակար։ -less, *a.* անվնաս։

**Scatter** սքէթ՛ըր, *a.* ցիրուցան ընել, տարտղնել, ցրուել, ցանել; 2. սփռել, տարածել։ =*vn.* ցրուիլ, ցիրուցան ըլլալ։ -brain. անուշադիր, մոռամոլոր, մոռցնոր։ -ed –՛տըրտ, *a.* ցիրուցան, տարտղնած; 2. անկանոն, անկարգ (տերեւ) ևն.

**Scaur** սքօըր, *s.* ապառաժ։

**Scavenger** սքէ՛վէնճըր, *s.* աղբամաքիր, աղբահաւաք (չէօփճի)։

**Scene** սին, *s.* թատերաբեմ, տեսարան; 2. տեսարանի զարդ, (կողմնա)վիճակ; 3. տեսիլ, հանդէս; 4. պատկեր, երեւոյթ; տեսարան; 5. (հանդիսա)վայր, թատրոն։ -ry սին՛ըրի, *s.* թատերանկարք, զարդարանք; 2. վայրերու ներկայացում, տեսարան; 3. վիճակ, դաշտանկար։

**Scenic,-al** սէն՛իք, սին՛իք, սէն՛իքըլ, *a.* թատերական, թատրոնական

**Scenography** սինօկ՛րէֆի, *s.* տեսարանագրութիւն, թատրանկարչութիւն, հեռանկարութ.։ -phic, -al սինըկրէֆ՛իքըլ *a.* տեսլագրական

**Scent** սէնթ, *va.* հոտուըտալ, հոտոտել, հոտ առնուլ; 2. բուրել հոտիլ; 3. նախազգալ։ =*s.* բուրում, հոտ; 2. հոտոտելիք, հոտառութիւն; 3. բուրանիւթ, հոտեղէն; 4. ոտնահետ, շաւիղ որսի։ -less, *a.* անհոտ։

**Scepter, -tre** սէփ՛թըր, *s.* արքայական գաւազան, մական; 2. թագաւորութիւն։ =*va.* գաւազան մական առնուլ, տալ։

**Sceptic,-al** սքէփ՛թիք, *a.* սկեպտական, երկբայական, կասկածոտ։ -ism սքէփ՛թիսիզմ, *s.* սկեպտականութիւն, պիւռհոնութիւն ֆէլ.

***Schedule** սքէտ՛իուլ, սքէճ՛ուըլ; (Անգլիա) շէտ՛իուլ, *s.* (մագաղաթի, թուղթի) պատառ; 2. կահացուցակ, ցանկ, ցուցակ; 3. ծրագիր, ժամանակացոյց, դասացուցակ; 4. (ուրիշ գրութեան մը կցուած) յարացանկ, յարացուցակ։ =*va.* ցուցակագրել; 2. ծրագրել, ծրագիրը՝ ցուցակը շինել։

***Scheme** սքիմ, *s.* յատակագիծ, ձեւ, ծրագիր; 2. գաղափար, պատկեր։ =*an.* ծրագրել, յօրինել, գծել; 2. ստորաձգել է; 3. մեքենայել, նիւթել։ -mer,-mist սքի՛մըր, սքի՛միսթ, *s.* ծրագրող, գծող; 2. գաղափարող։

**Schism** սիզմ, *s.* պառակտում, հերձուած էջ; 2. երկպառակութ.։ -atic, -al սիզմէթ՛իքըլ, *a.* հերձուածող, -ծական; 2. հերետիկոս։

**Schist** շիսթ, *s.* թերթաքար էջ. -ose, -ous շիսթօս՛, շիս՛թըս, *a.* թերթաքարային, թերթահերձ։

***Scholar** սքա՛լըր, *s.* ուսանող, աշակերտ, դպրոցական; 2. (քաջա) հմուտ, գիտնական, գիտուն, (արեւելագէտ, հելլենագէտ, -բան, տաճկաբան, եբրայագէտ, անգլիագէտ); 3. վարժապետ, պատուելի հետ. -like, -ly սքա՛լըրլայք, սքա՛լըրլի, *a.* գիտնականի վայել, հոյակապ, հմտալից; 2. ուսանողական, աշակերտավայել։ -ship, *s.* -ութ.; 2. գիտութիւն, հմտութիւն; 3. (դպրոցի մէջ՝ աղքատ աշակերտի շնորհեալ) թոշակ, հուռգ, քսակ հմմ.

**Scholastic, -al** սքօլէս՛թիք, *a.* դպրոցական, դպրոցականի; 2. պատուելիական, վարժապետական; 3. միջնադարեան Ած. ֆէլ; 4. տիրացուական, պատուելի, իմաստակ։ -ly,

ad. ոճով, ձեւով: –ticism սքօլէս՛-թիսիզմ, s. –ութիւն:

Scholium սքօ՛լիըմ, s. [pl. -lia, -liums սքօ՛լիէ, -՛լիըմզ] պարապում, մեկնութ., մեկնաբանութիւն (Հոմերոսի); 2. ծանօթութիւն որ եւ Foot-note. –liast սքօ՛լիէսթ, s. մեկնիչ, մեկնաբան: –liastic, a.

School սքուլ, s. դպրոց, վարժարան; 2. կրթարան, ծաղկոց, մանկարան; 3. աղանդ, վարդապետութիւն (Քանդի); 4. ոճ, դպրոց (Նկարչաց եւայլն) ին; 5. աշակերտք, դպրոցականք; 6. խումբ (ձկանց): -board. ուսումնական խորհուրդ, (դպրոցի) հոգաբարձու: -boy, -girl. աշակերտ, -ուհի: –dame, –mistress. վարժուհի, տնօրինուհի: –fellow, –mate. աշակերտակից, ընկերակից: –house. դպրատուն, վարժարան; դասարան: -man. (Թ-Ժ'Ի դարուց) գիտնական, սկոլաստիք; հին գլուխ, տիրացու, պատուելի: -master, mistress. վարժուհի, վարժապետ, տնօրէն: -ship. դպրոց-մրցանակ:

Schooner սքու՛նըր, s. երկկայմ պզտի նաւ մը, թեթեւ նաւ:

Schorl շօրլ, շորլ, s. մոխրաքարի տեսակ մը, տրմաքար որ եւ Black tourmaline.

Scia-, Sciagraphy սայէկ՛-, սայէկ՛րէֆի, s. ստուերագրութիւն; 2. շէնքի ուղղահայեաց հատում, կտրածք (ձեւ) ն.

Sciatic սայէթ՛իք, a. զստային, ճռնային: =s. լայնաջիլի ցաւ, զստացաւ, ճռանցաւութիւն որ եւ Sciatica սայէթ՛իքա. –nerve. զստային ամոլաջիլ, լայնաջիլ, վարազաջիլ:

*Science սայ՛ընս, s. գիտութիւն, մակացութիւն; 2. հմտութիւն, տեղեկութիւն:

Scientific, –al սայընթիֆ՛իքըլ, a. ուսումնական, գիտնական, գիտական: –ly, ad. գիտապէս, գիտնականօրէն:

Scilicet սիլ՛իսեթ, s. այսինքն, որ է. յաճախ կհամառօտուի ss. կամ sc. որ եւ To wit, namely.

Scimiter, –itar սիմ՛այթըր, s. ծայրը՝ ծուռ՝ կարճ՝ լայնաբերան թուր քալա բրչագ:

Scintillate սին՛թիլէյթ, vn. շողշողալ, փայլատակել; 2. պլպլալ (աստղ): –tion, s. շողիւն; 2. կայծարձակութիւն: –lant, a. լուսաճաճանչ, շողշողուն:

Sciolist սայ՛ոլիսթ, s. իմաստակ, կէս գիտուն: –lism, s. –ութիւն:

Sciomachy սայօմ՛էքի, s. ըստուերամարտութ.: –mancy սայօ՛մէնսի, s. ստուերահմայութիւն:

Scion սայ՛ըն, s. բողբոջ, մորճ; 2. պատուաստի ճիւղ, մատաղ; 3. զարմզաւակ, ժառանգորդ:

Scioptic, –tric սայոփ՛թիք, s. ուրուացոյց, ուրուադէտ գ. բնգ.

Scirrhus սքիր՛ըս, [pl. -hi -ր՛այ], s. անցաւ կարծր ուռեցք, զկեռ, քարաղալ: –hous սքիր՛ըս, a. զկեռային; պինդ, կարծր: –hosity սքիրօս՛իթի, s. խույլ, պինդ, այտոյց:

Scissel սիս՛ըլ. s. մետաղի խարտուք՝ տաշուք, քերուք:

Scissile սիս՛իլ, a. հերձելի, հերձանելի, դանակով տաշուելիք:

Scission սիժ՛ըն, s. հերձում:

Scissor սիզ՛ըր, va. մկրատել, կտրել: =pl. սիզ՛ըրզ, մկրատ:

Scissure սիժ՛ըր, s. ճեղք (ուած)

Sclerotic սքլերօթ՛իք, a. կարծր, կոշտ պինդ: =s. կարծրենի, բըբիտակուց աչաց:

Scobs սքօպզ, pl. սղոցուք, փոշի; 2. մետաղի աղտ, խարամ:

Scoff սքօֆ(թ), an. [at] հեգնել,

ծաղրել, քաշկռտել։ =s. հեգնու-
թիւն, ծաղր։ -er սգօֆ'ըր, s. ծաղ-
րասէր, ծաղրող։ -ingly սգօֆ'ինկլի, ad. հեգնօրէն, ի նախատինս։

Scold սգօլտ, an. [at] սաստիկ յանդիմանել, կշտամբել, չեխել, սաստել; 2. պակսութիւն գտնել։ =s. կատաղուհի, կռուազան կին; 2. չեխ, կշտամբանք, յանդիմանութ

Scollop սգալ'ըփ. See Scallop.

Scon, Scone սգօն, s. կասկարայի վրայ եփած եռանկիւնի հաց։

Sconce սգանս, s. ամրութիւն, ամրոց; 2. սաղաւարտ, գլխանոց; 3. գլուխ, գանկ, ուղեղ; 4. ճրագարան, ճրագկալ (պատի); 5. ճրագակերան, ըկնտիռ (որ մոմը կամ պատրոյգը կըռնէ)։

Scoop սգու՛-բ(պ), s. մեծ շերեփ, կոտալ չkօմչk; 2. (նպարավաճառի) թիթեղեայ թի; 3. կրկիտ (գործի) ձեւ; 4. ջուրը նաւէն դուրս պարպելու թիականման փոսամին, մնկոշ, գոգաթի; 5. սակարանի գիներուն յանկարծական անկում = va. (շերեփով) պարպել՝ հանել; 2. մաքրել, փորել, կրկտել։ -net. գետուակոն։

Scope սգօ՛բ, s. տեսութեան սահման կkօզ իrիմի; 2. տարածութիւն, միջոց, մեծութիւն; 3. նպատակ, կէտ, դիտաւորութիւն; 4. համարձակութ .։ -of fire. ռմբընկէց

Scorbutic, -al սգօրպիուդ'իք'ըլ, a. լնդագարային, լնդահար։

Scorch սգօրչ, an. (երեսը) այրել, խարկել, խանձել; զսվnzr-մազ, եազմազ; 2. խանձիլ, չորնալ։

Score սգօ՛ր, s. փայտանիշ, խազ չkրkյk ֆkrpիյի; 2. (փայտ)հաշիւ, հաշուեցուցակ, պարտք; 3. շարժառիթ, պատճառ; 4. քանակ, քան (թիւ); 5. ամբողջ մասունք, համած (օրերայի)։ =va. (փայտառ) նիշել, կտրել, նշանակել; 2. յարմարագրել, համագրել եւ. Three-. 60. Four-. 80. To pay off old-. հին հաշիւները մաքրել, վրէժ լուծել

Scoria, -riæ սգօ'րիէ, pl. -րիի, s. հալած մետաղի աղտ, խարամ; 2. (հրաբխի) կղկղանք։ -ceous սգօ'րիէյ'շըս, a. խարամային։

Scorify սգօ'րիֆայ, va. հալածատեն մետաղը իր կղկղանքէն զատել, խարամատել։ -fication սգօրիֆիքէյ'շըն, s. խարամատում, կըղկըղում, կղկղացում, զտում։-form, a. խարամակերպ։

Scorn սգա՛րն, s. քամահանք, արհամարհանք, անարգանք; 2. նշաւակ, ծաղրածանակ։ =va. արհամարհել, նշաւակել։ -er սգա՛րնըր, s. արհամարհող, անփոյթ; 2. ծաղրասէր։ Scoffer, derider.

Scornful սգօրն'ֆուլ, a. քամահական, ամբարտաւան, սէգ։ -ly սգօրն'ֆուլլի, ad. խրոխտաբար։ [կոր։

Scorpion սգար'բիըն, s. կարիճ,

Scorta'tory, a. պոռնկական։

Scot սգադ, s. սկովտացի; 2. տուրք, հարկ; 3. տուգանք; 4. բաժին։ -free. անհարկ, անտուրք; 2. անվնաս։

Scotch, Scots, Scottish սգաչ, սգաց, սգադ'իշ, a. սկովտական, ըսկովտացւոց։ [տացի, սկովտուհի։

Scotchman, -woman. սկով-

Scotch սգաչ(պ), s. ցտած, կըտրած, խազ ֆkrpիf։ =va. կապել, արգիլել (անիւը՝ դարվար տեղ); 2. կեղեւը հանել; 3. ցտել, նիշել, կտրել։ -ed-collops. եզի պառակ, կոզիկ։

Scotomy սգադ'ըմի, s. աչքի ըղծաստեաութիւն, բծաքորութիւն; 2. գլխու պտոյտ, թալուկ։-tograph սգադ'ոկ'րէֆ, s. մութին մէջ առանց տեսնելու գրող գործի, մթագիր։

**Scotticism** սքօթ'իսիզմ, *s.* սկովտական ոճ, սկովտաբանութիւն։

**Scoundrel** սքաունտ'րըլ, *s.* սրիկայ, սրիկաբեան։=*a.* ցած, նուաստ, թշուառական։ -ism, *s.* -ութիւն։

**Scour** սքաուր, *an.* շփել, խողովակել, սրբել, մաքրել; 2. քերել, աւրել, ջնջել; 3. ճերմկցնել; 4. (ծով)ասպատակել, ծովահենել; 5. կարել անցնիլ, վազել։ =*s.* թանչք (անասնոց)։

**Scourge** սքըրճ, *s.* մտրակ, խարազան; 2. պատիժ, ձաղկանք։=*va.* խարազանել, մտրակել; 2. ձաղկել, գանակոծ ընել, ծեծել; 3. երգիծանել nr եւ To lash, afflict.

**Scout** սքաուտ, *s.* լրտես, դիտազօր; 2. ռահվիրայ, յառաջապահ; 3. պահանաւ զաւաղօյ։ =*va.* լրտեսել, դիտել, խուզարկել; 2. արհամարհել, մերժել։

**Scow** սքաու, *s.* տափանաւ։

**Scowl** սքաուլ, *vn.* յօնք, պռստել, կնճռել; 2. դէմքը խոժոռել, խոժոռիլ։ =*s.* խոժոռ նայուածք; 2. պռստում, խոժոռութիւն։

**Scrabble** սքրէ'պլ, *va.* անշահ գրել, ձաբռտել; 2. մագլել, ճանկել, ճանկռտել։

**Scrag** սքրէկ, *s.* (մորթուած) հորթու վիզ; 2. ոսկորները անկըռուած, կմախք։ -ged, -gy սկրէկ'կէտ, սկրէկ'կի, *a.* խորտուբորդ, անհարթ; 2. վտիտ, նիհար։-giness, *s.* -ութիւն։

**Scramble** սքրէմ'պըլ, *vn.* ոգորել, մրցել, կռուիլ, խլշտել; 2. չորս ոտքով քալել, մագլել։ =*s.* մագլում; 2. կռիւ, պայքար; 3. խլշտելը

**Scrap** սքրէփ, *s.* փշուր, պատառ; 2. կտոր, փշրանք (հացի); 3. տաշեղ, խարտուք, քերթուք, կտրուանք; 4. ճարպը, գմուկը հալելէն յետոյ մնացած մասը, խարխուղի, 5. գրական փշրանք, հատուածներ, ծայրաքաղ, յուշատետր։

**Scrape** սքրէյփ(տ), *va.* քերել, քերթել; 2. մաքրել, ջնջել։ =*vn.* գէշ զարնել, չարչրկել (ջութակ); 2. կոպտօրէն խոնարհիլ։ =*s.* գերծում, քերթուք; 2. անճարակ խոնարհութիւն pkմbkiliա; 3. ոտքի տրփիւն։ To–acquaintance. ծանօթանալ ու քաշուիլ։ -per սքրէյ'փըր, *s.* քերոց, քերթոց; 2. քերթիչ; 3. ադմահան, ադմավրձին; 4. անշահ ջութակահար; 5. անպիտան, կծծի (մարդ)։ -ping սքրէյ'փինկ, *s.* քերած, քերթուք։

**Scratch** սքրէչ(տ), *an.* քերել, ճանկռտել; 2. քերոցել; 3. փորել, պրպտել (գետինը); 4. մրոտել, գծել։ =*s.* ճանկռտած, ճանկըռտուք; 2. քերուած, քերուըտուք; 3. գրչով տարուածք; 4. անշահ կեղծամ; 5. (ձիու) ճախանոցի ճեղք; 6. փոքր, նշան (խաղի)։ To –out. քերել հանել։

**Scrawl** սքրօօլ, *va.* մրոտել, աղտոտել; 2. անշահ՝ անճոռնի գրել։ =*s.* անշահ գրուածք, գէշ գիր, մրոտած, մուրկուր, ձաբըռտուք։ -'er սքրօօ'լըր, *s.* մրոտէր, ձաբռտող։

**Screak** սքրիյք(տ), *vn.* ճռնչել, գլգլալ (անիւ, դուռ), ճռճռալ; շառաչել; 2. պոռալ, պոռչտալ։ =*s.* ճռինչ, շռինդ։

**Scream, Screech** սքրիյմ, սքրիյչ *vn.* (ցաւէն, վախէն) պոռալ, կանչել, կանչըռտել, ճուալ, ճչել, գոչել, հեծել; 2. (թռչունը) ողբաձայն ճչել։=*s.* ճիչ, ճռինչ, կռինչ, 2. աղաղակ, հեծ(եծանք)։ -owl. ողբաձայն ճչող բու մը, կատուաբու։

**Screed** սքրիյտ', *s.* ծեփիչի քանակ; 2. ձանձրալի՝ երկայնաձիգ ճառ։

**Screen** սքրին, *s.* հողմարգել, հրարգել, ջերմարգել, պահպանակ, աչապահ; 2. լուսարգել վարագոյր; 3. ստահիւս վանդակ, աչապահ; 4. կալմաղ, խարբալ։ =*va.* պահպանել, պահել, ստուեր գնել, պահպանակել, պատսպարել; 2. մաղել։

**Screw** սքրու, *s.* պտուտակ վիտա; 2. պտղուտակ, մամուլ մէնկէնէ, պուրղու; 3. շոգենաւի պտուտակաւոր անիւ; 4. անիւի տեղ պտուտակով շարժող՝ գացող շոգենաւ, պարուրաւոր՝ պտուտակաւոր շոգենաւ; 5. ժղժղոր (ծխախոտ); 6. կծծի, ճղճիմ (մարդ); 7. խիստ քննիչ (դասերու); 8. գէշ՝ անպիտան ձի։=*va.* պտուտակով պնդել, հաստատել; 2. ստիպել, բռնադատել; 3. խստիւ քննել, նեղել; 4. (երեսը) ծռմռտկել; 5. գին կոտրել։ Adjusting, set, thumb—. ճնշիչ պտուտակ, ճնշապտուտակ։ Cork—. խցահան։ Endless, perpetual—. անեզր պտուտակ։ Female, hollow—. էգ պտուտակ։ -bolt. գունդ գլուխ խոշոր պտուտակ, բեղոյս, հեղոյս վիտայը ճիվաթա։ -driver. պտուտավար, դարձիկ, բանալի վիտա անախթարը, պօրվօ։ -jack. պտուտակաւոր բեռնամբարձ։ —nut. էգ պտուտակ վիտա սօմունու։ —pine. արմաւենեաց ցեղէն շատակեաց բոյս մը, խատար։ —plate. պտուտակալ։ —propeller. (շոգենաւի) պտուտանիւ։ —top. գայլիկոն։ -tree. մոլոշաստուից տոհմէն երկպրուկ տունկ մը, ծանրարեգ։

**Scribble** սքրիպ'լ, *va.* մրոտել, շուտ շուտ գրել։ =*s.* ոչինչ՝ անպիտան՝ անճոռնի գրուածք։

**Scribe** սքրայպ, *s.* գրագիր, քարտուղար, օրինակիչ; 2. (Հրէից) օրինաց վարդապետ, դպիր։ =*va.* իրար անցնել, զօդել (տախտակ); 2. նշան դնել (կարկինով, քանակով) ճ.

**Scrimmage** սքրիմ'էճ, *s.* կռուըտուք, հրմշտուք; անկանոն շարք։

**Scrimp** սքրիմփ'(թ), *va.* կարճել, ամփոփել, համառօտել։

**Scrip** սքրիփ', *s.* մախաղ, բակեղէդ որ եւ Wallet, satchel.

**Script** սքրիփթ, *s.* բուն՝ իսկական վաւերաթուղթ; 2. տպագրութեան տառ մը, շեղագիր։

**Scriptural** սքրիփ'չըրըլ, *a.* ըստ Սուրբ Գրոց, սուրբ գրական; 2. Սուրբ Գրոց, Աստուածաշունչի։

**Scripture** սքրիփ'չըր, *s.* գրութիւն, գրուածք; 2. Աստուածաշունչ, Սուրբ Գիրք որ եւ Scriptures. -turist սքրիփ'չըրիսթ, *s.* Ս. Գրոց հմուտ; 2. Ս. Գրոց տառին փակչող։

**Scrivener** սքրիվ'նըր, *s.* նօտար, գրագիր, օրինակող; 2. շահու դըրամ տուող։

**Scrofula** սքրաֆ'իուլը, *s.* խոյլ, խուլագաւ, խողախտ, խողատան ձսըրաճա։ -fulous սքրաֆիուլըս, *a.* խըլնոտ, խոյլային, խոյլաւոր սըրաճալը

**Scroll** սքրօ'լ, *s.* (թուղթի՝ մագաղաթի) պատատ, գալար թումար; 2. գրոց հիւսակ, պատուածք; 3. գալարաձեւ զարդ, գալարակ։

**Scrotum** սքրօ'թըմ, *s.* ամորձիքի պարկ, փոշտ, աղափ։ -tiform սքրաթ'իֆօրմ, *s.* փոշտաձեւ։

**Scrub** սքրըպ, *va.* վրձինով շփել, կարծր բանով մը քերել, լուալ։ =*vn.* տանջուիլ, նեղուիլ։ =*s.* ծանրաշխատ՝ կծծի մարդ; 2. խեղճ, ճռզած (մարդ); 3. մաշած վրձին; 4. անտառի փշուտք։ -bed, -by սքրըպ'էտ, սքրըպ'ի, *a.* խեղճ, ճռզած, ողորմելի, խեղճ ու կրակ։ -ber սքրըպ'պըր, *s.* քորիչ, վրձին, խոզանակ

**Scruple** սքրու'փլ, *s.* հին չափ Հռովմէացւոց, կուտ; 2. տրամի $^1/_3$ը, մէտ, 20 ցորեն (1.294 կրամ);

3. վայրկեանի 18րդ մաս, մանրամասնակ ևայլն; 4. կտոր մը, քիչ մը, պուտ մը (բան); 5. խղճահարութիւն, խղճմտութիւն, խիղճ, երկբայութիւն ։ =*va.* տարակուսիլ, խղճահարիլ, խղճել, վարանիլ։ -ler սքրու՛բըլըր, *s.* խղճահար, վարանոտ, խղճամիտ, վարանող։

Scrupulous սքրու՛բիուլըս, *a.* խիղճ ընող, խղճահար, դգուշաւոր, խղճամիտ, երկբեղած; 2. ճիշդ, մանրակրկիտ ։ -ly, *ad.* խղճահարութեամբ, խղճմտօրէն, խղճիւ։ -ness, Scrupulos'ity սքրուբիուլա՛սիթի, *s.* խղճմտութիւն, զգուշաւորութիւն, խղճահարութիւն։

Scrutinize սքրու՛թինայզ, *va.* հետազօտել, իլր ծիլր քննել։

Scrutiny սքրու՛թինի, *s.* հետազօտութիւն, խոյզ ու խնդիր։

Scrutoire սքրիութուար՛, *s.*(գրելու) ծռասեղան, գրակալ ։

Scud սքըտ, *vn.* խուսափիլ, փախուստ տալ; 2. հովէն քշուիլ ևն. =*va.* աչքէ անցնել։ =*s.* հողմամղալ ամպ; 2. փախուստ, խուսափ։

Scuffle սքըֆըլ՛, *vn.* ծեծկուիլ, կռուըտիլ, զարնուիլ։ =*s.* կռիւ, կռուըտուք; 2. աղմուկ, ծեծկտուք։

Sculk սքըլք, *See* Skulk.

Scull սքըլ, *s.* նաւակիկ; թիակ, թեւ ճակ ևն. =*va.* թիավարել, թի քաշել (ետևյաց կողմէն՝ մէկ թեւ ճակով)։ -er սքըլ՛ըր, *s.* մակուկավար; 2. մակոյկ։ -ery սքըլ՛ըրի, *s.* խոհանոցի լուացարան։ -ion սքըլ՛իըն, *s.* խոհեակ, սպասիկ աշխատ ևայլն։

Scul'pin, *s.* փշատուտն ձկ.

Sculptor սքըլփ՛թըր, *s.* քանդակագործ, անդրիագործ օյմակ։

Sculpture սքըլփ՛չըր, *s.* քանդակագործութիւն, արձանագործութիւն, անդրիագործութիւն; քանդակ, քանդակուած, դրօշուած ։ =*va.* քանդակել, փորագրել։ -tural սքըլփ՛չուրըլ, *a.* քանդակածոյ։

Scum սքըմ, *s.* փրփուր, գիրտ, կղկղանք, տիղմ։ =*va.* փրփուր առնուլ, փրփրաքաղել։ -mer սքըմ՛ըր, *s.* գիրտ, կղկղանք; 2. փրփրաքաղ *fkp;k nr br* Skimmer.

Scumble սքըմ՛պլ, *va.* (թափանցիկ գոյնով մը) փայլ տալ գոյնի։

Scupper սքըփ՛ըր, *s.* ջրծակ, նաւակողածակ։ -hose. (ջրծակի) ջրարգել խողովակ։ -nony. Ամերիկեան մէկ ձուկ։ -nail. լայնգլուխ գամ ևն.

Scurf սքըրֆ, *s.* գլխու թեփ, փառ; 2. գոնջութիւն; 3. մորթի թեփոտում; 4. աղի։ -iness, *s.* թեփոտութիւն։ -y սքըր՛ֆի, *a.* քոսոտ, քաջալ, գոնջ։

*Scurrile, -lous սքըր՛իլ, սքըր՛իլըս, *a.* գռեհիկ սորին, ցած, անպիտան, խեղկատակ; 2. անարգալից, նախատական։ -ness.

Scurrility սքըրիլ՛իթի, *s.* կոշտ խօսք, գռեհիկ՝ կոպիտ լեզու, խեղկատակութիւն ։

Scurvy սքըր՛վի, *s.* լնդադարութիւն, լնդահարութիւն։ =*a.* գծուծ, ցած, գարշելի; 2. թեփոտ, քոսոտ (շուն)։ -grass. դգալախոտ։

Scut սքըթ, *s.* (նապաստակի կամ ուրիշ կենդանեաց) կարճ պոչ։

Scutch սքըչ, *va.* տփել, ծեծել (կտաւ)։ 2. կանեփը կեղեւել՝ ծեծել; 3. լեսել (կտաւ)։

Scutcheon սքըչ՛ըն, *s.* վահան (կնիքի, զինանշանի), վահանակ *nr br* Escutcheon ևն; 2.(բանալիի ծակի) փայլաթիթեղ աղիւսակ։

Scu'tiform, *a.* վահանաձեւ։

Scuttle սքըթ՛լ, *s.* ածխակողով; 2. *nr br* Coal-scuttle; 3. խորշաստակառ; 4. դռնակ, դուռ, իջանելիք ևն. =*va.* յատակը ծակել, ընկղմել;

2. շուտ շուտ վազել՝ փախչիլ։ —fish. մելանաձուկ, սիպէ։

**Scymetar**, *See* Cimetar.

**Scythe** սայդհ, *s.* գերանդի թըր-բան։ —man. արտհունձ, հնձող։

**Scythian** սիդհ'իըն, *s. a.* սկիւ-թացի, սկիւթերէն, սկիւթական։

**Sea** սի, *s.* ծով ; 2. ովկէան, ով-կիանոս ; 3. կոհակ, ալիք ; 4. ծով, ալեկոծութիւն։ Half seas over. կէս գինով։ On the high seas. ծովուն բացերը, բացաստանը ։ -anemone. ատողակառարոյս, պոլպ, փենուայ է. -bank. ծովեզերք; թումբ։ -board. ծովեզերք; 2. *ad.* դէպ ի ծովեզրը։ -boat. դիմացկուն նաւ։ -born. ծո-վածին; ծովային։ -breach. ծովա-կոխութիւն։ -breeze. ծովու հով՝ զեփիւռ, հիւսիսակ ։ -calf. փոկ, ծովհորթ։ -captain. նաւապետ։ -coal հանքածուխ ։ -coast. ծովափ, ծո-վեզր։ -convolvulus. առապուղան բռ. -cow, -elephant. ծովափիղ, մեծ փոկ։ -eagle. ծովարծուի, ոսկրկուլ։ -fairy. ընդղայ, պարիկ դէյ. -farer սիֆէ'րըր. նաւաստի, նաւազ։ -faring նաւարկու, նաւական, ծովային։ -fight. ծովամարտ, նաւամարտ ։ -fish. ծովու՝ աղի ջուրի ձուկ։ -fowl. ծովային թռչուն ։ -gage. (նաւի) սուզաչափ։ -god. ծովու աստուած, Պոսիտոն։ -going. ծովագնաց, ով-կիանոսի (նաւ) ։ -grass. ծովեղէգ։ -green. կապուտակ, ծովագոյն։ -gull տարմորոր, ամար բռ. -hog. ծովա-խոզ։ -horse. ձիաձուկ։ -kale. վայրի կաղամբ։ -king. գլխաւոր հէն, ա-ւազակապետ։ -legs. անսասան ոտք (ալեկոծութեան ատեն) ։ -lettuce. կաղամբաշան, ափասրփի սրւչյիւյկլի բռ. -level. ծովու երես։ -lion. ծո-վառիւծ ։ -maid. համբարու սու գըզը դէյ. -man սի'մէն, սի'մըն, *s.* ծովայածուկ, ծովագնաց; նաւազ, նաւաստի ։ -manship. —ութիւն ։ -mark. (ծովու մէջ) ձողանշան, տա-կառանիշ։ -mew, mall, mell, mule. ամար բռ. -monster. ծովահրէշ։ -moss. բուսաս։ -navel. ծովամամաշ բռ. -nettle. ծովեղինճ, խոզ բռ. -nymph. յաւէրժահարս։ -otter. ջրասամոյր։ -pad. ծովաստղ է. -panther. թիւ-նոս ձկ. -piece. ծովանկար։ -port. շա-հաստան, նաւահանգիստ, իսկելէ։ -room. ծովամէջք, բաց ծով։ -ser-pent. ծովօձ։ -shell. խեցեմորթ, ծո-վախեցի։ -shore, side. ծովեզր, ծո-վափ։ -sick. ծովէն բռնուած, ծո-վահար։ -sickness. —ութիւն, ծո-վախտ։ -spider. ծովասարդ։ -term. նաւաստեաց լեզու՝ ոճ։ -town. նա-ւահանգիստ։ -unicorn. միաժանի (կէտ) ։ -urchin. եզինոս, կողնի։ -ward. դէպ ի ծով ։ -weed. ծովա-թուք, ջրիմուռ, ծովագաղձ, գոր-տընբուրդ։ -worthy. դիմացկուն, յաւ

**Seal** սիյլ. *s.* ծովահորթ, փոկ այը բալըղը; 2. կնիք, մատնի, կըն-քոց; 3. կնքամոմ։ =*va.* կնիք՝ դրոշմ զարնել, մատնեհարել, կնքել ; 2. հաստատել, վաւերացնել ; 3. դրոշ-մահարել, գոցել, խցել, կղպել ; 4. (մորմոններու մէջ) երկրորդ կամ երրորդ կին առնել ։ Solomon's—. գոհարուկ, մատնիկ բռ. —ed սիյլտ, *a.* կնքուած, մատնեհարած ։ —er սիյլըր, *s.* կնքահար, դրոշմահար (պաշտօնեայ)։ —ing սիյ'լին, *s.* կըն-քելը, մատնէհարութիւն; 2. փո-կորսութիւն։ —wax. կնքամոմ

**Seam** սիյմ, *s.* կարուածք, կա-րան, կար; 2. կցուած, զօդ, կիցք; 3. վէրքի նշան, սպի; 4. խաւ, երակ էրկ.; 5. խոզի հալած ճարպ, խոզ-տի; 6. չափ, ութը (8 գրիւ ցորեն, 43 հոխա ապակի, 108 հոխանոց ձիու բեռ փայտ)։ =*va.* կարել, կից կարել ; 2. յօդել, կցել ; 3. սպիտել։

—rent. կարի քակուած, քակուածք։ **—less,** *a.* առանց կարի, անկար։ **—stress** սի՛մսթրէս, սիմս՛թրէս, *s.* դերձակուհի, կարուհի։

**Seam'y,** *a.* կար ունեցող, ներսի։

**Seance** սէանս՛, *s.* նիստ, ժողով, գումարում; 2. հոգեշրջման, տաբեննիստ որ եւ Session. [F.]

**Sear** սիյր, *va.* ցամքեցնել, չորցնել; 2. տաղել, խարել, խանձել; 3. խարկել, աւրել։ =*a* չոր (ցած) դեղնած, չոր, չիր, թառամեալ։ —cloth. բուժական մոմլոր. -edness սիյր՛էտնէս, *s.* այրածութիւն, անզգայութիւն; 2. կոշտութիւն։

**Search** սըրչ(շ), *va.* [for, after] քննել, զննել, հետազօտել; 2. փնտռել, որոնել, նայիլ։ =*vn.* փնտրըտուքի ելլել, որոնել։ =*s.* խուզարկութիւն, փնտրըտուք, խոյզ ու խնդիր, հետազօտութիւն։ To—out. փնտռել, գտնել։ To—for. փնտռել։ **—able** սըրչ՛ըպլ, *a.* որոնելի, խուզարկելի։ **—er** սըրչ՛ըր, *s.* փնտռող, խուզարկու, քննիչ։

**Season** սիյ՛զն(ը), *s.* եղանակ; 2. (յարմար) ժամանակ; 3. դիպուկ, առիթ; 4. (ժամանակա)միջոց։ =*va.* պատրաստել; 2. սովորեցնել, ընտելել; 3. (տաղձը) պահել, չորցնել; 4. աղել, համեմել; 5. համակցնել; 6. ամոքել, չափաւորել, բարեխառնել։ =*vn.* (տաղձը) չորնալ, յարմարիլ։ In—. ժամանակին Out of—. շատ ուշ, անդէպ, տարաժամ։ **—ed** սիյ՛զնտ, *a.* չորցած; 2. աղած, համեմեալ։ Highly—. համեմը շատ, ավճարուն։ **—er** սիյ՛զնըր, *s.* համեմող, համեմ։ **—ing** սիյ՛զնինկ, *s.* համեմ, համեմունք։

**Seasonable** սիյ՛զնըպլ, *a.* յարմար, պատշաճ, դիպող։ **—ness,** *s.* —ութիւն։ **—ly,** *ad.* ի դէպ ժամու, յարմար առթիւ։

**Seat** սիյթ, *s.* աթոռ, բազմոց, նստարան; 2. բնակութիւն, բնակարան, վայր, կայան, (գիւղա)տուն; 3. (ձիու վրայ) նստուածք; 4. նըստոց, յատակ, նստոտեղ։ =*va.* բազմեցնել, նստեցնել; 2. զետեղել, դնել, հաստատել; 3. (աթոռը) յատակել [յին, ճրագուի նման։

**Sebaceous** սեպէյ՛շըս, *a.* ճարպա-

**Secant** սէ՛քընթ, *a.* կտրող, հատանող։ =*s.* հատագիծ, հատիչ է.

**Secede** սիսիյդ՛, *vn.* զատուիլ, բաժնուիլ։ [հել։

**Secern** սիսըրն՛, *va.* զատել, պա-

**Secession** սիսէշ՛ըն, *s.* անջատում, զատում, բաժանում։

**Seckel** սէքլ, *s.* մուտ տանձ, դիճ

**Seclude** սիքլիուտ՛, *va.* անջատել, բաժնել, մեկուսացնել; 2. դուրս ձգել՝ հանել, արտաքսել։

**Seclusion** սիքլիու՛ժըն, *s.* քաշուիլը, հրաժարում։

**Second** սէ՛քընտ, *a.* երկրորդ; 2. ստորին, պակաս, վար։ =*s.* օգնական, երկրորդ; 2. (մենամարտի) վկայ; 3. մանրերկրորդ; 4. ձայնի երկրորդ ոլորում, երկրորդակ; 5. մերձաղիլ, աղդո էր. =*va.* երկրորդել, հաճիլ, հետեւիլ; 2. օգնել, սատարել։—hand. բոպէացոյց(ժամ.) 2. գործածուած միւսպամէկ, ձեռքէ, աժան; 3. ուրիշէ առնուած։ —rate. երկրորդ կարգի։ —sight. ըղբատեսութիւն, գուշակութիւն, հեռատեսութիւն։ **—er** սէ՛քընտըր, *s.* երկրորդող; 2. հաստատող, առաջարկող։ **—ly** սէ՛քընտլի, *ad.* երկրորդ, երկրորդ անգամ։

**Secondary** սէ՛քընտըրի, *a.* երկրորդական, ստորադաս; 2. արբանեակ ա.; 3. երկրորդական, միջնակարգ; 4. ստորին; 5. հետագայ։ **-rily** սէ՛քընտէրիլի, *ad.* երկրորդաբար, երկրորդ։ **—riness** սէ՛քընտէրինէս, *s.*

**Secrecy** սի'քրըսի, *s.* գաղտնիք, գաղտնիութ., գաղտնապահութ.։

***Secret** սի'քրէթ, *a.* գաղտնի, գաղտուկ, ծածուկ, ներքին, թաքուն։ =*s.* ծածուկ բան, գաղտնիք; 2. *pl.* առականք։ In—. գաղտուկ, գողտուկ, գաղտագողի, գաղտնի, առանձին։ -ly, *ad.* -ness, *s.*

**Secretary** սէ'քրէթէրի, *s.* քարտուղար, դպրապետ; 2. ատենադպիր; 3. նախարար, պաշտօնեայ; 4. գրասեղան; 5. օձաքաղ, վարազաքաղէ (Աֆրիկէի)։ —of embassy, legation. դեսպանատան քարտուղար, խորհրդական։ —for Foreign affairs. արտաքին գործոց նախարար։ —of State. նախարար։ —of war. պատերազմական նախարար։ —'s office. նախարարատուն, պետական պաշտօնատուն։ Home—. ներքին գործոց նախարար Ա.մ. —ship սէ'քրէթէրիշիփ, *s.* քարտուղարութիւն։

**Secrete** սիքրիթ', *va.* պահել; 2. զատել, հիւթ ազատել, հիւթահոսել, տարրորոշել մրդ. —tion սիքրի'շըն, *s.* հիւթանջատում, հիւթահոսում, արտաւորում; 2. անջատահիւթք, հիւթ ահոսանք։ -titious սիքրիթի'շըս, *a.* հիւթահոս, հիւթանջատ (քրտինք)։ -tory սիքրի'թըրի, *a.* հիւթանջատական։

**Secretive** սիքրիթ'իվ, *a.* գաղտնապահ, խորհրդապահ։ -ly, *ad.* գաղտնի, գաղտուկ, ծածուկ։

**Sect**, *s.* աղանդ, դեն, կեշտ, հերձուած; 2. յարանուանութիւն։ —ary սէ'քթէրի, *s.* աղանդաւոր; հերձուածող; 2. այլադաւան։

**Sectarian** սէքթէ'րիըն, *a.* հերձուածող, յարանուանական, աղանդական (ոգի, գաղափար), դաւանական, այլամերժ; 2. աղանդաւոր, հետեւող, աշակերտ։ -ism սէքթէ'րիընիզմ, *s.* -ութ. աղանդապաշտութ.

**Sectile** սէ'քթիլ, *a.* հատանելի։

***Section** սէ'քշըն, *s.* կտրելը, հատում; բաժանում; 2. բաժին, մաս, ճիւղ, հատուած; 3. հատած (գրքի §); 4. հատած է; 5. կիսադէմ, կտրուածք (շէնքի)։ -al սէ'քշընըլ, *a.* մասնական, հատուածական։

**Sector** սէ'քթըր, *s.* (բոլորակի) հատած; 2. համեմատութեան կարկին

**Secular** սէ'քիուլըր, *a.* հարիւրամեայ, դարաւոր; 2. բազմամեայ, բազմադարեան, հնամի; 3. աշխարհային, աշխարհիկ; 4. աշխարհական, ոչ-եկեղեցական։ =*s.* ոչ-վանական, աշխարհական; 2. երգեցիկ, տիրացու է։ -ly, *ad.* ըստ աշխարհի, աշխարհօրէն։ -ness, -larism, -ity սէ'քիուլըրնէս, սէ'քիուլըրիզմ, սէքիուլէ'րիթի, *s.* աշխարհականացում, աշխարհականութիւն։ -ist սէ'քիուլըրիսթ, *s.* կրօնամերժ, հաւատամերժ, դպրապաշտ; 2. կրօնական դաստիարակութեան հակառակող, ծայրայեղական։

**Secularize** սէքիու'լըրայզ, *va.* աշխարհային՝ աշխարհական ընել, աշխարհականացնել։ -zation -լըրէյզէ'յշըն, *s.* աշխարհականացում; 2. կրօնական ուխտը ձգելով աշխարհական ըլլալը։

**Secundine** սէ'քընտայն, *s.* սերմի ցանկ, շապիկ; 2. տղընկեր, աղտ, ցանկ էջ, սօլի։

**Secu'rable**, *a.* ապահովելի։

**Secure** սիքիուր', *a.* [of, from, against] ապահով, վստահ, ստոյգ։ =*va.* վստահեցնել, հաւաստել, ապահովել; 2. պնդել, հաստատել, ամրացնել; 3. տէր ըլլալ, ստանալ, բռնել։ -ly, *ad.* ապահովապէս, հաւաստեաւ, անվեհեր։ -ness, *s.*

**Security** սիքիու'րիթի, *s.* ապահովութիւն, վստահութիւն; 2. երաշխաւոր, -ութիւն; 3. գրաւական

Sedan սի՛տէն, *s.* դեսպան, գահաւորակ uksեա որ և Sedan-chair.

Sedate սիտէյթ՛, *a.* խաղաղ, -ծել; 2. հանդարտ, անխռով։ -ly, *ad.* խաղաղիկ, հանդարտիկ։ -ness, *s.* ծանրութիւն, լրջութիւն, հանդարտութիւն։ -tive սէտ՛էթիվ, *a.* ցաւամոք, հանդարտիչ (դեղ)։

Sedentary սէտ՛էնթըրի, *a.* դուրս չելլող, տուն նստող, նստողական, նստուկ։ -riness սէտ՛էնթըրինէս, *s.* նստուկ կեանք։

Sedge սէճ, *s.* ճղեմ, ճիլ, բոլոր ցուլ օրու որ և Water-iris, River-flag. Sedged, Sedgy սէճտ, սէ՛ճի, *a.* ճղեմուտ։

Sediment սէտ՛իմէնթ, *s.* մրուր, դիրտ։ -ary -մէն՛թըրի, *a.* մրրային։

*Sedition սիտի՛շըն, *s.* խռովութ.

Seditious սիտի՛շըս, *a.* խռովայոյզ, խռովարկու։ -ly, *ad.* -կերպով։

*Seduce սիտիուս՛(զ), *va.* մոլորցընել, հրապուրել, խաբել; 2. աւրել, գլխէ հանել։ -ness, Seduction սիտըք՛շըն, *s.* հրապուրանք, մոլորութիւն; 2. հրապոյր, քաղցրութիւն; 2. փորձութիւն, պատրանք։

Seducer սիտ՛իուսըր, *s.* մոլորցընող, հրապուրիչ, գլխիչ։ -cible սիտ՛իուսիպլ, *a.* հրապուրելի, դիւրախաբ։

Seductive սիտըք՛թիվ, *a.* յանկուցիչ, հրապուրիչ, մոլորցնող։

Sedulous սէտ՛իուլըս, *a.* ուշադիր, ջանասէր, մշտաջան։ -ly, *ad.* անձանձիր, յարատեւութեամբ։ -ness, Sedu'lity սիտիու՛լիթի, *s.* յարատեւութիւն, ջանք, խնամք։

See սի, *va.* [Saw, Seen սօ, սին] տեսնել, նշմարել; 2. դիտել, զննել, զգալ, իմանալ, հասկնալ; 3. տեսութիւն ունենալ, այցելել; 4. ծանօթանալ; 5. ուշադիր ըլլալ։ =*s.* աթոռ, թեմ (եպիսկ.); 2. պապական աթոռ, Սուրբ Աթոռ։ Let us-, Let me-. տեսցուք, բան մը կընենք։

Seed սիյտ, *s.* սերմ, հունտ; 2. սերմնիք, ցան; 3. սերունդ, ցեղ, զարմ; 4. աղբիւր, սկիզբ։ =*an.* ծլիլ, բողբոջել; 2. հունտ կապել, սերմանել։ A grain of-. հատիկ, կուտ, ունդ։ -bud. ձուիկ, սերմնածիլ։ -cake. անխմոր գաթայ։ -coat. վերնամեղն։ -corn. ցանքի ցորեն։ -grain. սերմնիք, ցան։ -leaf, -lobe. բլթակ (սերմի)։ -plot. սերմնարան, ածու։ -time. վարուցան, ցանք։ -vessel. սերմնակրանք, հունտի պատիճ։ -trade. ցորենավաճառութիւն, հնտավաճառութիւն։

Seed'ling սիյտ՛լին, *a.* հունտէն հասած (ծառ)։

Seedsman սիյտզ՛մէն, *s.* ցորենավաճառ, հնտավաճառ զախirkáh։

Seedy սիյտ՛ի, *a.* հատայից, առատ (հատիկ), սերմնաբեր; 2. սատրիկ մաշած, ցնցոտապատ, խեղճ։

Seeing սի՛ին, *con.* որովհետեւ, ըստ որում, նկատելով որ; քանզի որ։

Seek սիյք, *an.* [Sought սօթ] *[to, after, for]* փնտռել, պտռել, որոնել, խուզել; 2. *(out)* փնտռտուքի ելլել, փնտռտել, հետախոյզ ըլլալ։ -er սիյք՛ըր, *s.* փնտռող, յուզարկ; 2. խնդրակ, հարցուփորձող։

Seel, *va.* աչքը կարել; կուրցնել։

*Seem սիյմ, *vn.* թուիլ, երեւիլ; 2. ձեւանալ, ձեւացնել, ծախել (դինքը); կերպարանիլ։ It seems. թուի թէ, կերեւի թէ։ -er սիյմ՛ըր, *s.* ձեւացնող; 2. կեղծաւոր; 3. ձեւանածու։ -liness, *s.* ձեւ, վայելչութիւն, պատշաճութիւն։ -ly սիյմ՛լի, *a.* պատշաճ, վայելուչ։

Seeming սիյմ՛ին, *p. a.* առերեւոյթ, արտաքին, երեւութական; 2. խաբուսիկ, փայլուն։ =*s.* երեւոյթ, նմանութիւն, կերպարանք։ -ly,

*ad.* առերեւոյթս ։ -ness, *s.* տեսք, կերպարանք, (հաճելի) երեւոյթ։

Seen *pp. of* See. =*a.* հմուտ։

Seer սիյր, *s.* տեսանող, գուշակ։

Seesaw սի'սօ, *s.* տատանելի խաղ, տունկուլա, հեծանախաղ չօջջէլի-ջիւզ, պախփարճըխայըր; 2. հեծանափայտ; 3. ճօճում ։ =*vn.* օրօրիլ, որորուիլ։ =*a.* որորուող, ելեւէջող։

Seethe սիյթհ, [Seethed, Sodden] եռացնել, եփ հանել, խաշել։ =*vn.* եփ ելլել, պճպճալ, եռալ, եփիլ։

Segment սէկ'մէնթ, *s.* մաս, հատուած; 2. հատուածումն (բոլորակի); -of a sphere. գնդական հատուածում։ -ation սէկմէնթէյ'շըն, *s.* հատուածանում։

Segregate սէկ'րիկէյթ, *va.* անջատել, բաժնել, զատել։ -tion -'շըն, *s.* անջատում, բաժանում, զատում։ -ting-կէյ'թինկ, *a.* զատ. անջատ

Seigneurial սինիօ-'րիըլ, *a.* տանուտերական, աւատապետական։

Seignior սին'եըր, *s.* հողական, հողատէր, տանուտէր, կալուածատէր, աւատապետ; 2. տէր, պարոն, իշխան։ -age սին'եըրէճ, *s.* դրամահատքէ իրաւունք արքային; 2. (յԱնգլիա) հեղինակի իրաւունք։

Seigniory սին'եըրի, *s.* իշխանութիւն; 2. հողատիրութիւն, հողականութիւն, աւատապետութ.։

Seine սէյն, *s.* մեծ վարմնուական։

Seizable սիյզ'էպլ, *a.* գրաւելի։

Seize սիյզ, *va.* [on, upon] կորզել, յափշտակել; 2. գրաւել, տիրել; առնուլ; 3. բռնել, ձեռբակալել; 4. պարանով կապել, կառանել (նաւը)։

Seizin սիյզ'ին, *s.* տիրութիւն, գրաւում; 2. ստացուածք։

Seizor սիյզ'ըր, *s.* գրաւող, բռնացող էր. [զոյգ։

Sejugous սի'ճու'կըս, *a.* վեցա-

Seizure սի'ժըր, *s.* գրաւում, տիրում, առում, ունենալը; 2. գրաւեալ ինչք, ստացուածք։ [եր.

Selah սի'լա, *s.* հանգիստ Սբ.Գ.

Seldom սել'տըմ, *ad.* դուն ուրեք, քիչ անգամ, հազիւ թէ։

Select սիլէքթ', *va.* ընտրել, որոշել; 2. ջոկել, զատել։ =*a.* ընտրեալ, նախընտրելի, (հատ) ընտիր, ազնիւ nr եւ Selected, Chosen. -ion սիլէք'շըն, *s.* ընտրականութիւն, ընտրութիւն; 2. ընտրանք, որոշում։ -man, *s.* երեցփոխան Ամ. -ness սիլէքթ'նէս, *s.* ազնուութիւն, ընտիր ըլլալը, պատուականութիւն։ -or սիլէքթ'ըր, *s.* ընտրող։

Seleniate սէլի'նիէյթ, *s.* սելենային թթուէ կազմեալ աղ. սելենիկ թ. -lenite սէլէ'նայթ, *s.* լուսնաքար։ -nography սէլինօկ'րէֆի, *s.* լուսնագրութիւն։

*Self սէլֆ, *s.* [*pl.* Selves սէլվզ] ինք, ինքն իսկ; 2. անձ, անհատ; 3. նոյն, նոյնը։ The-same thing. նոյն բանը։ My self. ե'ս, ես ինքս։ Thy-, your-; himself, herself, itself. դո'ւ, դո'ւք; նա ինքն, նա', ա'ն։ A man's -. մարդուն անձը՝ անհատականութիւնը։ Your royal-. ձեր վեհափառութիւնը։ Thy gracious-. ձեր շնորհափայլութիւնը, ազնուութ.ը Beside one's-. ինքնիրմէ ելած, յիմար։ By one's-. միայնակ, ինքնիրեն։ Of one's-. ինքնիրմէ։ Self-:-abuse. անձնաղարտութ.։ -conceit. ինքնահաւանութիւն, անձնասիրութիւն։ -conceited. ինքնահաւան, մեծամիտ։ -confident. յանձնապաստան։ -confidence. -ութիւն։ -conscious. ինքնաճանաչ; ամբարտաւան։ -control, -government. ինքզինք զսպելը, պաղարիւն, պաղարիւնութ.։ -defence, -defense. ինքնապաշտպանութիւն։ -denial.

անձնուրացութիւն, անձնուիրութիւն։ –esteem, –ation. անձնահաճութիւն, ցուցամոլութիւն։ –evident. ինքնայայտ, քաջայայտ։ –existent. ինքնագոյ։ –homicide, –murder. անձնասպանութիւն։ –interest. շահախնդրութիւն։ –*love. անձնասիրութիւն։ –made. ինքնաբոյս (հանճար)։ –made man. ինքնաշխատութեամբ յառաջացող մարդ, ինքնակերտ։ –moving. ինքնաշարժ։ –mastery. անձը զսպելը, անձնազսպութիւն։ –possession. հանդարտութիւն, պաղարիւնութիւն։ –praise. անձնագովութիւն։ –reproach. անձնահարութիւն։ –sufficient. յանձնապաստան, գոռոզ։ –will. կամակորութիւն։ –willed. կամակոր, յամառ։ Self-reverence, self-knowledge, self-control; These three alone lead life to sovereign power.

Selfish, *a.* շահասէր, -խնդիր, -մոլ, անձնասէր, եսամոլ։ –ly, *ad.* անձնասիրաբար։ *–ness, *s.* -ութ.

Sell սէլ, *va.* [Sold, Selling] վաճառել, ձեռքէ հանել, ծախել; 2 մատնել; խաբել։ =*vn.* առուտուր ընել; 2. ծախուիլ։ =*s.* պատրանք, խաբ։ –er սէլ'ըր, *s.* վաճառող, (գրա)վաճառ։

Selvage, –vedge սէլ'վէճ, *s.* (չուխայի) եզերք, զիկ որ եւ List.

Sellanders, –lenders սէլլէն'-տըրզ, *s.* (ձիու) կարթախտ պրճրղաև

Semaphore սէմէյ'ֆօր, *s.* նաւու հեռագիր, նիշ-հեռագիր։ –phoric, –al սէմէֆօր'իքըլ, *s.* հեռագրական։

Sematology սիմէթօլ'ըճի, *s.* գիտութ. նշանաց, նշանակախօսութ.։

Semblance սէմ'պլէնս, *s.* նմանութիւն, կերպարանք; 2. երեւոյթ, պատկեր։

Semen սի'մէն, *s.* սերմ։

Semester սիմէս'թըր, *s.* վեցամսեան, վեցամսեայ (միջոց, շրջան) համ

Semi սէմի'-, կէս, կիսա-

–amplexicaul -ամփլէքսիքօլ, *a.* ցօղունը կիսով չափ պատող (տերև), կիսացօղնապատ։

–annual, *a.* կիսամ (վեցամս) եայ

–annular, *a.* կիսամանեակ։

–breve -պրիվ, *s.* կիսատ, բոլոր (խազ) 𝅝 որ եւ Whole note.

–chorus -քօր'ըս, *s.* կիսապար։

–circle -սըրքըլ, *s.* կիսաբոլորակ։

–circular, *s.* կիսաբոլորաձեւ։

–colon, *s.* միջակէտ (;)։

–diameter. կիսատրամագիծ է.

–diaphanous. կիսաթափանց։

–flexed, *s.* կիսահակ։

–flascular, *a.* կիսածաղկուտ։

–fluid -ֆլու'իտ, *s.* կիսածորան։

–lunar, –lunate. մահիկաձեւ։

–official, *s.* կէս-պաշտօնական։

–ordinate, *s.* կիսա-հակահատ։

–pedal, *s.* կիսոտն։

–quaver, *s.* երկոր (խազ, գիծ)

–spheric, –al, *a.* կիսագնդաձև

–steel, *s.* թերապղինձ։

–tone, *s.* կիսաձայն, կիսոլորակ։

–tonic, *a.* կիսաձայնի։

–vowel. կէս-ձայնաւոր *w, y*; ե, ւ

Seminal սէմ'ինըլ, *a.* սերմնական; 2. նախնական, տարրական։

Seminary սէմ'ինըրի, *s.* ժառանգաւորաց դպրոց, դպրեվանք, աստուածաբանական վարժարան, դըպրանոց, կղերանոց; 2. համալսարան, ուսումնարան, վարժարան, ճեմարան։ –narian, –rist սէմինէյ'րիըն, սէմ'ինըրիսթ, *s.* կղերանոցէ ելած, ժառանգաւոր։

Semination սէմինէյ'շըն, *s.* սերմանում, սերմանացութիւն։ –nific, –al սէմինիֆ'իքըլ, *a.* սերմնաբեր։

Semitic սէմիթ'իք, *a.* սեմական

(աղգ. լեզու՝ Եբրայեցիք, Ասորիք, Փիւնիկեցիք, Եթովպիացիք, Արաբք եւլն.) որ եւ Shemitic.

Semolina, Semoul սէմօլի'նա, սէմու'լ, s. երեմուկ, գաւաւթ սիմիջիմա; 2. կորկոտ:

Sempiternal սէմփիթըր'նըլ, a. մշտատեւ, անվախճան, անվերջ, անդրաւ:-nity -թըր'նիթի, s. -ութ.

Sempstress սէ'մփսթրէս, s. դերձակուհի որ եւ Seamstress. [եակ.

Senary սէն'էրի, a. վեցաւոր, վեց-

Senate սէն'էյթ, s. օրէնսդիր ժողովն, աւագանոյն ծերակոյտ որ եւ Legislative body, State council. 2. օրէնսդրական եւ վարչական ժողով Քէյմպրիճի համալսարանին:-chamber. ծերակուտական դահլիճ-house ծերակոյտի պալատ՝ սրահ, ծերակուտարան:

Senator սէնէ'թըր, s. ծերակոյտի՝ աւագանոյի անդամ, ծերակուտական, -կուտորդ:-ial -թօ'րիըլ, a. ծերակուտական: -ially, ad. -ship սէնէթօ'րըլշիփ, s. ծերակուտի անդամութիւն:

Send սէնտ, va. [Sent] [to, for] ղրկել, յղել, առաքել; 2. արձակել, նետել; 3. պարգեւել, շնորհել: =vn. մարդ՝ լուր ղրկել:

Senescence սինէս'էնս, s. մաշում, ծերացում:-cent, a. մաշած:

Seneschal սէն'էշըլ, s. պալատի հազարապետ, սենեկապ:

Senile սի'նայլ, a. ծերութեան:

Senility սինիլ'իթի, s. ծերութիւն

Senior սի'նըր, a. մեծ, տարեց; 2. աւագ, երէց (կարգի): =s. ծեր, ծերունի; 2. աւագ կարգի ուսանող, երէց: -optime -օփ'թիմի, s. ուսողութեան երկրորդ մրցանակին առացող ի Քէյմպրիճ. երրորդ առացողները Junior optime, իսկ առաջին առացողները Wranglers. կկոչուին -teacher. աւագ վարժապետ: կրտսերք կկոչուին Junior. -ity սինիօր'իթի, s. երիցութիւն, հնութ., կանխութ.

Senna սէն'է, s. աճալ սինամաքի

Sennight սէն'այթ, s. եօթնեակ:

Senocular -նօք'-, s. վեցաչեայ:

Sensate սէնս'էյթ, a. զգացեալ:

*Sensation սէնսէյ'շըն, s. զգացութիւն, զգացողութիւն, ազդում: -al սէնսէյ'շընըլ, a. մեծ տպաւորութիւն յառաջ բերող, բազմադղեցիկ; 2. զգայական: -alism, s. -ութ.

*Sense սէնս, s. զգայութիւն, զգացում; 2. զգայարան; 3. զգացում, ճանաչում; 4. իմացութ., խելք; 5. դատողութիւն; 6. իմաստ, միտք, նշանակութիւն; 7. կարծիք: The five-s. հինգ զգայարանք: The -s of feeling, hearing, seeing, smelling, tasting. շօշափելիք, լսելիք, տեսանելիք, հոտոտելիք, ճաշակելիք: Common-. խելք, միտք, ողջամտութիւն, ուղղախոհութիւն (խելացի, մտացի, ողջամիտ): Moral -. խիղճ: In a good-. բարի մտքով նպատակով: In a bad-. չար մտքով: -less սէնս'լէս, a. անմիտ; 2. անիմաստ; 3. անզգայ:

*Sensible սէն'սիպլ, a. [of] զգալի; 2. զգալի, ըմբռնելի; 3. զգածուող, շուտ առնուող, դիւրազգած; 4. քնքուշ; 5. խելացի, մտացի, խելահաս, խելօք, ողջամիտ: -ness, -bility սէնսիպի'լիթի, s. զգայութ., զգայականութիւն; 2. դիւրազգածութիւն; 3. զգայուն սիրտ; 4. մեծ ճշդութիւն (կշռի): -ly սէն'սիպլի, ad. զգալի կերպով, զգալապէս; 2. ակներեւ; 3. խելքով, խելացօրէն:

Sensitive սէն'սիթիվ, a. զգայուն, դիւրազգած; 2. զգայական: =s. զգայնիկ, պատկառուկ բոյս. -ly, ad. զգալաբար: -ness, s. զգայնութիւն, զգայականութիւն; 2.

գիւրազգածութիւն, -զրգռութիւն

Sensorium, -sory սէնսօ'րիըմ, սէն'սըրի, s. զգայանոց, զգայատեղ, ազդարան։ -ry, -rial սէնսօ'րիըլ, a. զգայատեղի, զգայարանական։

Sensual սէն'շուըլ, a. զգայական, զգայասէր; 2. հեշտասէր, ցանկասէր, մարմնասէր, ռամկական։ -ism սէն'շուըլիզմ, s. հեշտասիրութիւն; 2. զգայապաշտութիւն փիլ. -ist սէն'շուըլիսթ, s. հաճոյամոլ, հեշտասէր, զգայական, շնական; 2. զգայապաշտ փիլ. -ity սէնշուէլ'իթի, s. -ութիւն, տռփ։ -ize սէն'շուըլայզ, va. ցանկասէր ընել։ -ly սէն'շուըլլի, ad. հեշտասիրաբար։

Sensuous սէն'շուըս, a. զգայարանական, զգայնական; 2. զգայարանքներու ազդող, ազդեցիկ; 3. սրտաշարժ, գորովալի; 4. տռփական։

Sentence սէն'թէնս(թ), s. վճռագիր, (դատաւ) վճիռ, (մահու) վճիռ 2. դատականիք, դատապարտութ.; 3. առած, վճիռ; 4. պարբերութ., խօսք։ =va. դատապարտել, վճռել։

Sentential սէնթէն'շըլ, a. վճռական; 2. պարբերութեան։

Sententious սէնթէն'շըս, a. վճռական, ազդու, կարճ, իմաստալից։ -ly, ad. -կերպով, վճռաբար։ -ness, s. -ութ., խելամտութ

Sentient սէն'շիընթ, a. զգայուն, զգայական, զգայաւոր, ազդելի։

*Sentiment սէն'թիմէնթ, s. զգացողութիւն, զգացում, զգայականութիւն; 2. միտք, կարծիք, դատում

*Sentimental սէնթիմէն'թըլ, a. զգացում յայտնող, զգայուն, զգայական; 2. զգայնոտ, գորովալից, վիպական; 3. սուտ, զգայուն, շինծու։ -ism, -ity սէնթիմէն'թըլիզմ, սէնթիմէնթէլ'իթի, s. զգայականութիւն; 2. զգայունութիւն; 3. ցընորք, կեղծիք։ -ist սէնթիմէն'թըլիսթ, s. զգայնական, զգայուն, դիւրազգած։ -ize սէնթիմէն'թըլայզ, vn. զգայուն ձեւանալ։ -ly սէնթիմէն'թըլլի, ad. զգայունօրէն։

Sentinel, Sentry սէն'թինէլ, սէն'թրի, s. պահանորդ, պահապան զինուոր, պահակ զին. գարաղօլ, նէօպէթճի; 2. պահանորդութիւն, պահակերութ.։ Sentry-box. (պահանորդի) հիւղակ գուլիպէ։ [բօ.

Sepal սի'փէլ, s. (բուսակ.) փերթ

Separable սէփ'ըրէպըլ, a. բաժանելի, զատելի, անջատելի։ -ness, -bility սէփըրէպիլ'իթի, s. -ութիւն։

Separate սէփ'ըրէյթ, va. զատել, բաժնել, անջատել։ =vn. իրարմէ զատուիլ, բաժնուիլ։ =a. որոշ, անջատ, զատ; 2. բաժանեալ; 3. անմարմին. -ly, ad. զատ զատ, առանձին։ -ness, s. մենակեցութ.։

*Separation սէփըրէյ'շըն, s. անջատում, բաժանում; 2. քիմիական վերլուծութ.; 3. արձակում, ամուսնալուծութիւն։ -tism սէփ'ըրէյթիզմ, s. հերձուած, բաժանում։ -tist սէփ'ըրէյթիսթ, s. հերձուածող, բաժանող որ եւ Non-conformist, Dissenter, Sectary. -tor սէփ'ըրէյթըր, s. բաժնող, զատող, անջատող։ -tory սէփ'ըրէյթըրի, s. տարրանջատ վերլուծիչ անօթ։ -trix սէփըրէյ'թրիքս, s. (տառանորդականի ամբողջը կատարակէն զատող) կէտ։

Sepawn, Sepon սիփօն', սէ'փըն, s. լազուտ ապուր։

Sepia սիփի'ը, s. [pl. -piæ սէփի'ի] գլխոտանի փափկամորթ մը, կաղամարաձուկ, մելանաձուկ; սպին, սիպէ որ եւ Cuttle-fish; 2. սեպիանիւթ, սեպաթայր, չինական մելան; 3. սեպիանկար։

Sepoy սի'փօյ, s. հնդիկ զինուոր

(անգլիական), ապայիկ, սեւաղօր։

Sept, s. (իռլանտ.) տոհմ, ցեղ։

September սէփթէմ'պըր, s. Սեպտեմբեր, Հոռի։

Sept-, սէփ'թ-, եօթն, եօթնա-։

-an'gle, s. եօթնանկիւն։

-an'gular, a. եօթնանկիւնի։

-enary, a. 7 ամեայ; եօթնաւոր

-en'nial, a. եօթնամեայ։

-ent'rion, s. փոքր արջ; 2. հիւսիսակողմ, հիւսիս։ -al -թէն'թրիըն-նըլ, a. հիւսիսային։

-ila'teral, a. եօթնակողմեան։

-ilions, s. եօթնիլիոն։

-insular, s. եօթնակղզեան։

Sep'tic, -al, a. փտեցնող։

Septicæma, -tæmia սէփթիսի'միը, -թի'միը, s. նեխարիւնութիւն, նեխատենդ։

Septua-:-genarian, -genary սէփթիւըճինէ'րիըն, a. եօթանասնամեայ, -ամենի։ -gesima -ճէս'իմը s. առաջաւորաց բարեկենդան. այսպէս կկոչուի կիրակին որ Զատկէն ճիշդ 63 օր առաջ է։ -ges'imal, a. 70 նեկի; 70 ամեայ։

Septuagint սէփ'թիւըճինթ, s. եօթանասնից թարգմանութիւն Ս. Գրոց, որմէ թարգմանուած է գրաբառ Աստուածաշունչը։

Septum սէփ'թըմ, s. [pl. -ta սէփ'թը] միջնորմ, խտրոց; 2. խորշափակ բս. մրդ.

Septuple սէփ'թիւփլ, a. եօթնապատիկ, -նեկին։ =va. -ապատկել։

Sepulcher, -chre սէփ'ըլքըր, s. գերեզման, շիրիմ։ =va. թաղել։ -chral սէփըլ'քրըլ, a. գերեզմանական, դամբանական

Sepulture սէփ'ըլչըր, s. թաղում։

Sequacious սիքուէյ'շըս, a. հետեւող; 2. հլու, ճկուն, դիւրահամբոյր։

Sequel սի'քուըլ, s. շարունակութիւն, շարք; 2. հետեւորդ, արբանեակ; 3. հետեւանք, արդիւնք, ելք, վախճան; 4. դիպուած։ -la սիքուի'լը, s. [pl. -læ սիքուի'լի] հետեւութիւն, եզրակացութիւն; 2. հետեւանք (ախտի) բժ.

Sequence սի'քուընս, s. յաջորդութիւն, շարունակութիւն, շարք։

Sequent սի'քուընթ, a. յետագայ, յաջորդ։

Sequester, -trate սիքուէս'թըր, -էսթրէյթ, va. արգելեալ դնել, արգիլել, արգելքի տակ դնել; 2. պատանդել կալանք՝ սեփականութիւն երկել; 3. մեկուսի դնել, զատել, անջատել, երրորդի մը քով դնել։ =vn. իր ամուսնոյն ստացուածքէն ետ կենալ, հրաժարիլ։ -able, a. պատանդելի; 2. արգիլելի։

Sequestra'tion սիքուէսթրէյ'շըն s. պատանդում, գրաւում սեփականութեան, կալանք; 2. արգիլելը, արգելում, մեկուսացում։ -tor -թրէյ'թըր, s. պատանդապահ; 2. գրաւառու։

Sequin սի'քուին, s. վենետկեան հին ոսկեդրամ մը (54 դհ.), ֆլորին՝ հայերէն ոսկի։

Sequoia սիքուօ'յը, s. Քալիֆորնիոյ կոնաբեր՝ վիթխարի ծառ մը, վարադենի որ է։ Red-wood, Big tree.

Seraglio սէրէյ'լիօ, սէրա'լիօ, s. պալատ; 2. կանանի, կանանոց։

Seraph սէր'էֆ, s. [pl. -raphs սէր'էֆս, -aphim սէր'էֆիմ] սերովբէ Սէ. -phic, -al սէրէֆ'իքըլ, a. սերովբէից, սերովբէական, հրեշտակային։ -phine սէր'էֆին, s. երգեհոնիկ

Serapis սիրէյ'փիս, s. կուռք Եգիպտացւոց, սերապիս, սրովբէ։

Seraskier սիրէս'քիր, s. սպարապետ սերասքեր։ -rate սիրէս'քիրէյթ, s. սպարապետութիւն; 2. Դուռ սպարապետի։ [տար։

Serdar սըր'տար, s. հրամանա-

Sere սիր, *a.* չոր, ցամաք, չիր։

Serenade սէրէնէյտ՛, *s.* ցայգանուագ։ =*va.* ցայգանուագ տալ։

Serene սիրին՛, *a.* պայծառ, պարզ, անամպ, բաց այսպ (օդ); 2. խաղաղ, լռիկ, զուարթ, հանդարտ։ -ly, *ad.* պարզութեամբ; անխռով։ -ness, Serenity սիրէն՛իթի, *s.* պարզութիւն, պայծառութիւն; 2. հանդարտութիւն։

*Serf սըրֆ, *s.* գիւղացի, ստրուկ։

Serge սըրճ, *s.* ցփոր սօֆ։

Sergeant, -jeant սար՛-, սըր՛-ճընթ, *s.* բարապան, նուիրակ մուհզիր, գավաս; 2. յիսնապետ սըրայ չավուշու; 3. (յԱնգլիա) վարդապետ օրինաց, օրէնսգէտ։ -at arms. ստիկան, ապահովութեան պաշտօնեայ։ -at mace. գաւազանակիր, ատյակիր նուիրակ հմմ. -major. (բանակի) համարակալ պաշ չավուշ։ -ship, Sergeancy սըր՛-, սար՛ճէն-սի, *s.* յիսնապետութիւն։

Serial սի՛րիըլ, *a.* դասաւոր; 2. պարբերական, յաջորդական ։ =*s.* պարբերական՝ թերթ առ թերթ հրատարակութիւն (հանդէս, վէպ)։

Seria'tim -էյ՛-, *ad.* դաս դաս։

Sericeous -րի՛շըս, *a.* մետաքսէ։

Series սի՛րիզ, *s.* կարգ, շարք (արժէթղթոց) սէրի; 2. յաջորդութիւն, ընթացք; 3. դաս, բաժին; 4. թուաշարք [7, 10, 13]։

Serio-comic, -al սիրիօքամ՛իքըլ, *s.* լրջակատակ։

Serious սի՛րիըս, *a.* ծանր, լուրջ, լրջաբարոյ, ծանրաբարոյ, -գլուխ, անկատակ; 2. ծանրակշիռ, կարեւոր; 3. վտանգաւոր, սաստիկ մեծ։ -ly, *ad.* լրջօրէն, ծանրութեամբ, առանց կատակի։ -ness, *s.* լրջութիւն, վսեմութիւն, ծանրութիւն; 2. հանդիսաւորութիւն։

Sermon սըր՛մըն, *s.* քարոզ, ճառ; 2. խրատ, յանդիմանութիւն։ Collection of -s. քարոզագիրք, ժողովածոյ ։ -ize սըր՛մընայզ, *va.* քարոզ կարդալ՝ գրել, քարոզել; 2. ձանձրալի խրատներ տալ, գայլու՝ կաղնիի աւետարան կարդալ։

Seroon, -ron սիրու՛ն, *s.* բեռնակ պաշէս, պատատ սէպէտ; 2. մորթապատ հակ, մորթահակ հճ.

Serosity սիրաս՛իթի, *s.* շիճուկ, շճուկ, շճահայզ; 2. շտուկ, արեան ջրային մասը որ է Serum.

Serous սի՛րըս, *a.* ջրոտ, ջրային; 2. շճային, շճալից, շճախառն։

Serpent սըր՛փընթ, *s.* օձ; 2. օձաբարոյ (մարդ); 3. հիւս. աղթարատուն աստ.; 4. օձափող փ. ե. -ine -՛փընթայն, *a.* ծուռիկ մուռիկ եղջանգալի, օձաձեւ, օձապատյատ։ =*s.* օձակուռ հնք. -aria սըրփընթէ՛րիէ, *s.* բարձրաօրուն մեծ թռչուն, օձակալ; 2. օձարմատ բս.

Serrate, -ted սըր՛րէյթէտ, *a.* սղոցաձեւ (տերեւ)։ -ture սըր՛րէյչըր, *s.* սղոցաձեւ զարդ, սղոցակերպ

Serum սի՛րըմ, *s.* արիւնաջուր, շիճուկ, արենաշիճ սէրում որ է Serosity; 2. շիճադեղ։

Serval սէր՛վըլ, *s.* վագրակատու

Serried սէր՛րիտ, *a.* հոծ, կուռ, սեղմ; 2. թանձրախիտ։

Servant սըր՛վընթ, *s.* սպասաւոր, ծառայ; 2. ստրուկ, խեղճուկ։

Serve սըրվ, *va.* (հայց. սեռի խնդիր կուզէ եւ ոչ տրական) ծառայել, սպասաւորել; 2. գործի մէջ ըլլալ, գործել; 3. երկրպագել (զԱստուած), պաշտել; 4. տալ, հրամցնել, բաժնել (կերակուր); 5. օգնել, նպաստել; 6. գոհացնել, գործի գալ։ =*vn.* գերի՝ ծառայ ըլլալ, ծառայել; 2. սպասել, սպասարկել, սպասաւորել; ի սպաս դնել; 3. բանի մը գալ, գործածուիլ;

4. տեղ լինիլ՝ բռնել ; 5. զինուորութիւն ընել։ To—an attachment, execution *etc.* տուգանք առնուլ։ To—a process *or* writ. կոչնագիրը՝ կալանագիրը ներկայացնել են. To—a warrant. ձերբակալել, կալանել։ To—a rope չուանով բոլորել Ն—.

Service սըր'վիս, *s.* ծառայութիւն; 2. մատուցում, սպասարկութիւն (սեղանի); պաշտօն, գործ; 3. պաշտամունք, պաշտօն, ժամասացութիւն, պատարագ, ժամերգութիւն էլ; 4. զինուորութիւն; 5. նաւաստիութիւն, ծառայութիւն; 6. երախտիք՝ վարձ ծառայութեան, վաստակ; 7. պիտանութիւն, շնորհ, օգուտ; 8. սեղանի սպաս (կտաւ՝ սփռոց, անձեռոց); 9. սեղանի բաժակ(պնակ՝ սկաւառակ, ամաններ); 10. հագորան, սին խուփեզ(պտուղը); 11. նեքքին, աղիւսի (ծառը) որ եւ European mountain-ash, Roan-tree. 12. կառանի սեռվիսա Ն—.

Serviceable սըր'վիսէպըլ, *a.* պիտանի, օգտակար, շահաւէտ; 2. գործունեայ, ծառայասէր, ծառայել սիրող։ —ness սըր'վիսէպլնէս, *s.* պատրաստականութիւն, օգտակարութիւն։ —ly, *ad.* —կերպով։

Servile սըր'վիլ, *a.* նուաստ, ցած, ստրկական, անարգ, ծառայ(ական); 2. ստրկական, բառ առ բառ; 3. արմատականչեղող, յաւելական(տառ) —ly, *ad.* ստրկօրէն։ —ness, Servility սըրվիլ'իթի, *s.* ծառայականութիւն, ստորնութ., ստրկութ.։

Serving-maid սըր'վինկմէյտ, *s.* աղախին, աղջիկ, սպասուհի։

Servitor սըր'վիթըր, *s.* ծառայ, սպասարկու, սպասիկ, սպասեակ; 2. հետեւող, արբանեակ; 3. թոշակառու ուսանող (յՕքսֆորտ)։

Servitude սըր'վիթիուտ, *s.* ծառայութիւն, ստրկութիւն։

Sesame սէ'սէմի, *s.* շուշմայ, կնճիթ քունջութ, սուսամ։ Oil of—. շիրեկ շըրըղդամ։

Sesqui— սէս'քուի—, սէս'քուայ—, յաւ. մասնիկ որ տարրագիտական բաղադրութեանց մէջ կնշանակէ մէկուկէս։ —alter —ըլթըր, *a.* միուսին 1 1/2ը, միակիսայ։ —oxide —աք'սայտ, *s.* միակիսաթթուիդ, մակթթուիդ։ —pedal սէսփէտ'ըլ, *a.* մէկուկէս ոտք (երկայն՝ բառ); 2. երկայն բառեր գործածող(հեղինակ)

Sessile սէս'իլ *a.* անկոթուն, անկոթ(ծաղիկ, պտուղ):-leaves, flower.

Session սէշ'ըն, *s.* նստիլը, նիստ; 2. նիստ, գումարում, ժողով, ատեան; 3. նստաշրջան, տարենիստ; 4. խորհրդարանի աննիստ՝ ընդհատ միջոց, երկարաձգում, շրջան (յԱնգլիա); 5. (եկեղ. եկեղ.) հոգաբարձուաց ժողով (Սկովտիա); 6. սեղանի՝ խաղի՝ այցելութեան անցուցած ժամանակ։ The college, school is in—. գոլէճը՝ դպրոցը կշարունակուի (արձակուած չէ)։ The court is now in—. ատեանը գումարուած է։ Court of—. արդարութեան գերագոյն ատեան(Սկովտիա) Quarter—. հաշտարար դատաւորաց եռամսեայ նիստ ։ —clerk. (եկեղ. հոգաբ.) քարտուղար, ատենադպիր։ —al սէշ'ընըլ, *a.* ատենական, ժողովի; 2. (եկեղ. հոգաբ.) նստաշրջանի

Sess-pool սէս'բուլ, *s.* կոյուղի, ականի, կղանոց որ եւ Cess-pool.

Sestalit սէս'թըլիթ, *s.* տանաջերոց

Sesterce սէս'թըրս, *s.* 40 բարայի արժէքով դրամ, դահեկան Հ.— tertium սէսթըր'շըմ, *s.* 1000 դհկն. Հ

Set սէթ, *va.* (Set, Setting) դնել, զետեղել, տեղաւորել, հաստատել; 2. կարգել, որոշել, սահմանել; 3. յարդարել, կանոնաւորել; 4. ճշդել, շտկել; 5. տնկել, սերմանել,

ցանել ; 6. սրել, յեսանել ; 7. հագցընել, անցնել, ընդելուզել ; 8. եղանակագրել եւ. =*vn.* 1. խոնարհիլ, մայր մտնել ; 2. արմատ կապել, ծլիլ ; 3. պնդանալ, հաստատուիլ, խտրանալ ; 4. ուղղութիւն բռնել, դառնալ ; 5. (շունը) որսի հոտ առնուլ ։ =*p. a.* 1. հաստատուն, պինդ, յամառ ; 2. միաձեւ, կանոնաւոր ; 3. հաստատեալ, օրինաւոր ։

Set: To–about. սկսիլ, ձեռնարկել ։ To–against. կռթնցնել ; հակառակիլ ; կռուեցնել ։ To–apart, aside. վերապահել, յատկացնել, զատել ։ To–a saw. սղոցին բերանը ծռել չաբrաաp վkrմkf ։ To–at defiance. դիմագրաւել, խրոխտալ ։ To–at ease. հանդարտեցնել ։ To–at naught. անարգել, չնեպել ։ To–a trap, snare. որոգայթ լարել ։ To–before. ներկայացնել ։ To–by. զատել, մէկդի դնել ։ To–down. վար դնել ; իջեցնել, հանել ; գրել ։ To–eyes on. աչք տնկել, սեւեռել ։ To–forth. յառաջ բերել, յիշել ; ցուցընել, հրատարակել ։ To–forward. յառաջ մղել, քշել ։ To–free. արձակել ։ To–in. զետեղել, դնել ։ To–in order. կարգի դնել ։ To–off. զարդարել, պճնել ; երեւելի ընել ։ To–on, upon. գրգռել, յորդորել ։ To–one's cap at *or* for. ուշադրութիւն գրաւելու ջանալ, կոտրտուիլ, պչրել ։ To–one's self against. հակառակիլ ։ To–on fire. կրակ տալ ։ To–on foot. ճամբայ հանել ։ To–out. նշանակել, որոշել, յայտնել, զարդարել ; սկսիլ ։ To–over. ընտրել, կարգել, դնել ։ To–right. շտկել ։ To–sail. առագաստ բանալ, ճամբայ ելլել ։ To–value on. արժէք՝ կարեւորութիւն տալ ։ To–the fashion. ձեւատիպար ըլլալ ։ To–the teeth on edge. ակռան առնուլ ։ To–to. ինքզինք տալ, նուիրել ։ To–up. կանգնել, տնկել ; գովել ; տեղաւորել ; գործի սկսիլ ; ներմուծել ։

Set սէթ, *s.* (արեւա) մայր, (արև) մարք, արեւամուտ, մայրամուտ ; 2. մատաղատունկ փիsuն; 3. ձեւազեղծութիւն ձէ+. ; 4. հաւաք, դաս, կարգ, խումբ, խմբակ ; 5. հաւաքածոյ, շարք, կազմած, ձեռք (հագուստի, գրքի եւայլն) բագրմ; 6. գոյգ ; 7. ուղղութիւն (հովի) ։ Dead–. յարձակում ; դաւ, խար (խաղի մէջ) ։ To be at a dead–. դադարիլ, կենալ ։ To make a dead–upon. յարձակիլ ; նենգել ։ –back. հարթադրուագ (պատի վրայ) ։ –bolt. հեղոյս, գլխանի երիթ չարկէ չիr ճ. –down. յանդիմանութիւն ։ A–speech. խնամեալ ճառ ։ –to. կռփամարտութիւն ; կագ, կռիւ ։ The set for 15 L.T.. (դին) ամբողջը 15 ոսկի

Setaceous, Setose, –tous սիթէյ'շըս, սիթօս', սի'թըս, *a.* ձարաւոր, ձարուտ, մետաքսանման, մազոտ, թաւ ստեւ ։ [ւաձեւ ։

Setiform սի'թիֆօրմ, *a.* ստե-

Setigerous –'ճըրըս, *a.* ստեւալից ։

*Set-off սէթ'օֆ, *s.* փոխարինութիւն ; փոխարէն ; 2. (դատախազի դէմ) հակապահանջք, հակադատ եւ. ; 3. զարդարանք, զարդ, դըրուագ ; 4. պատի թանձրութեան նուազում, նուազած մասը ճ.

Seton սի'թըն, *s.* վէրքի պատրոյգ, խիծ (ձիու մազէ, մետաքսէ) ։

Settee սէթի', *s.* լայն նստարան ։

Setter սէթ'ըր, *s.* (նուագա) յարդար ; 2. (որմնա) դիր ; 3. (հոտ առնելուն) կանգառիկ շուն, յուզաշուն

Setting սէթ'ինկ, *s.* դնելը, հաստատում, հաստատելը, զետեղում ; 2. արեւամուտք, խոնարհում ; 3. յեռուած, ընդելուզած (գոհար) ;

ճիգ, տագնապ, մրցում; 2. հոգեվարք։ —for life. կենաց պայքար, կենսապայքար։

Strum ստրըմ, *an.* (անճոռնի կերպով) նուագել, չալել։

Struma ստրու՛մա, *s.* խոզախտ, խուլ որ եւ Scrofula. -mose, -mous ստրու՛մըս, *a.* խուլային։

Strumpet ստրըմ՛փ-, *s.* պոռնիկ։

Strut ստրըտ, *vn.* սիգօրէն քալել, սիգալ, սոնքալ։ =*s.* սիգաճեմ ընթացք, սոնք; 2. (պատի) գօտի, դիմանեցուկ, ենակ sիrkf sիrukյի, մագաս որ եւ Strutting, Strutting-piece. -tingly ստրըտ՛թինկլի, *ad.* սիգօրէն, հպարտութեամբ։

Strychnia, -nine ստրիք՛նիա, ստրիք՛նին, *s.* թունաւոր կալաքար մը, ծրորին, բնամորմ -nos ստրիք՛նոս, *s.* շնխաղողի տեսակ մը, ժանտընկուզենի, ծրորենի։

Stub ստըբ, *s.* թուփի բուն, արմ; 2. (կտրուած՝ հողին մէջ մնացած) ծառի բուն; 3. (տոմարի, փոխ/գիրի տետրակի) արմ, արմատ skfpkr գօչանը; 4. կարճուհատ բան մը; 5. (սիկառի) ծայր։ =*va.* արմատէն խլել՝ հանել; զարնել, քշտել։ -nail. ծայրը կրճատուած՝ կտրուած գամ; կարճ հաստ գամ։ -pen. ծայրը կըտրուած՝ հաստ գրչածայր, բթածայր։ -bed, -by ստըբ՛պըտ, ստըբ՛պի, *a.* կարճ ու կլոր; բթածայր (գրիչ, գամ); 2. արմաշատ։

Stubble ստըբ՛պլ, *s.* հնձած ցորենի խոզան, խզօն; 2. խոզանալից արտ անրզ։

*Stubborn ստըբ՛պըրն, *a.* կամակոր յամառ, խստապարանոց; 2. կամապաշտ, հաստատամիտ, անդրդուելի, անյողդողդ; 3. կարծր, բիրտ, անճկուն, չծռող; 4. կրակի դիմացող, դժուարահալ, անկէզ (մետաղ)։ -ness, *s.* -ութիւն։ -ly, *ad.* -կերպով։ [մkrմkr սուվա։

Stucco ստըք՛քօ, *s.* կճապ, կճածեփ

Stud ստըտ, *s.* (մեծգլուխ) գամ; զարդագամ, հեղոյս; 2. (շապկի) կոճակ; 3. նեցուկ ծ; ձիաստան, ձիանք։ =*va.* բեւեռազարդել։ -bolt. կրկնածայր նիգ։ -book. ազգագիր, տոհմագիր (ձիերու)։ -ding-sail. մանրառագաստ։

Student ստիու՛տընտ, *s.* ուսանող, ուսանողուհի; 2. գիտուն, ուսումնական, գիտնական։

Studied ստըտ՛իտ, *a.* ուսումնասիրեալ, խնամով քննուած; 2. ուսեալ, սորվուած։ [տանոց։

Studio ստիու՛տիօ, *s.* արուես-

Studious ստիու՛տիըս, *a.* [of] ուսումնասէր, աշխատասէր, ջանադիր։ -ly, *ad.* -ness, *s.* -ութիւն։

Study ստըտ՛ի, *s.* ուսում, ուսմունք, պարապում, սերտողութիւն; 2. քննութիւն, ուսումնասիրութիւն (խնդրի մը); 3. սերտելու՝ սորվելու բան; մտածմունք փոյթ, խնամք; 4. աշխատութեան սենեակ, գրասենեակ; 5. դաշտանկար, սորվելու օրինակ ն։. =*vn.* ուսանիլ, սերտել, աշխատիլ; 2. բան գործ ընել։ =*va.* ուշադիր քննել, հետազօտել, ուսումնասիրել; 2. բերնուց սորվիլ; 3. մտածել։ [շոգի։

Stufa ստիու՛ֆա, *s.* գետնաբուխ

Stuff ստըֆ(ֆ), *s.* նիւթ, տաղձ խnrâ, fkrkupk; 2. (բուրդէ) պաստառ, ստոյն, կտաւ, նիւթ qnւմաշ, բուօֆա; պաստառ, կտաւ; 3. անշահ՝ անպիտան բան; 4. կատակ, զրաբանութիւն; 5. դեղ, դեղանիւթ; 6. խեկութիւն, ոգի, ոգելից ըմպելի; 7. (նաւու ողնափայտի եւ կողերու) ներկ։ =*va.* փորը՝ մէջը լեցնել, խծկել; 2. խճողել, խակել; 3. խճուղել soլմա krմkf։ =*vn.* խաղի պէս ուտել, փորը լցնել։ -ing ստըֆ՛

էֆ, *s.* խոշրտուք, խծուծ, մթել ; 2. (հաւի) փորը լեցուած միս, լիցք: —box. ճնշախծուծ, խծծատուփն—.

**Stuffy** ստըֆ'ի, *a.* յամառ, դէգ

**Stultify** ստըլ'թիֆայ, *va.* ապուշ դարձնել, բթացնել: [ցու շիrա:

**Stum** ստըմ, *s.* մրմրուկ, քաղ-

**Stumble** ստըմ'պըլ, *vn.* ոտքը սահիլ, գթել, գայթել, սայթաքիլ; 2. (on, upon] գլորիլ, իյնալ; 3. սխալիլ, մոլորիլ: =*s.* սխալ քայլ, սահում; 2. գլորում, սխալանք: —ling-block. խոչընդոտ, քար գայթակղութեան:

**Stump** ստըմփ(ս), *s.* կոճղ, մարմին, իրան, մնացորդ fիւթիւf; 2. թղթ ամատիտ ադօւմը; 3.*pl.* սրունք: =*va.* ոտքով զարնել; 2. ծայրատել, կնտել; 3. ընտրական արշաւ ընել: To take the—. ընտրական ճառ խօսիլ: —speaker, orator. (բացօդեայ՝ կոճղի վրայ կենալով) ճառախօս:

**Stumpy** -փ'ի, *s.* կարճ ու գէր:

**Stun** ստըն, *vn.* (գլուխը) հարուածով սասանել, թնդացնել; պայթեցնել, անզգայացնել, խելքը գլխէն առնել:

**Stung, Stunk** ստընկ', ստըք, *pp. of* Sting, Stink. խածած, խայթեց:

**Stunt,** *va.* աճումը արգիլել: —ed ստընթ'թէտ, *a.* ճռզած, արուգ, ազաղուն; 2. նիհար:

**Stupe** ստիու-փ, *s.* տաք, դիլէ բծ.

**Stupefy** ստիու-փ'իֆայ, *va.* ապշած ձգել, ապշեցնել ընդարմացնել:

**Stupefaction** -իֆէք'շըն, *s.* ապշում, թմրութիւն, ընդարմացում: —tive ստիու-փիֆէք'թիվ, *a.* ապշեցուցիչ

**Stupendous** ստիու-փէն'տըս, *a.* սխրալի, հիանալի: —ly, *ad.*—ness, *s.*

**Stupid** ստիու-'փիտ, *a.* ապուշ, թարձրամիտ, բթամիտ, տխմար միւrթիւf: —ly, *ad.*—ness, *s.* —ութ.

**Stupor** ստիու-'փըր, *s.* ապշանք; 2. թմրութիւն, ընդարմացում, ապշութ:

**Stupration** ստիու-փրէյ'շըն, *s.* կուսապղծութիւն nr եւ Rape.

**Sturdy** ստըր'տի, *a.* կամակոր, կոպիտ, ժպիրհ, բիրտ; 2. զօրաւոր: —dily, *ad.* —diness, *s.* ժպրհութ.

**Sturgeon** ստըր'ճըն, *s.* թուխու, թառափ մէrւuին պալըղը:

**Stutter** ստըթ'ըր *vn.* թոթովել, կմկմալ: =*s.* կակազելը, թոթով:

**Sty** ստայ, *s.* խոզանոց; 2. գարիկ կkօq արքանըղը բծ. =*vn.* գոմը դնել

**Stygian** ստիճ'իըն, *a.* ստիւքսեան; 2. դժոխային, դժոխա(յուր):

**Style** ստայլ, *s.* (մոմի վրայ գրելու) սլաք, երկաթ գրիչ, գրոց; 2. սլաք, կնիք բծ; բ.; 3. քիստ (ծաղկանց); 4. խօսելու՝ գրելու՝ երգելու ոճ, կերպ; խօսելակերպ, գրելակերպ, ոճ; 5. եղանակ, կերպ, ձեւ; 6. արեւաժամացոյցի սլաք, ստուերացոյց, սլաք; 7. տիտղոս, մականուն; 8. տոմար (հին, նոր): =*va.* անուանել, տիտղոս տալ:

**Stylar** ստայ'լըր, *a.* ստուերացոյցի, սլաքային: —let ստայ'լէտ, *s.* դաշնակ, սլաք խանձkr: —lish ստայ'լիշ, *a.* վայելուչ, գեղեցիկ, սահուն: —list ստայ'լիստ, *s.* իրեն յատուկ ոճ ունեցող, ոճական; 2. օրինակելի, սահուն (գրող):

**Styptic,—al,** *a.* պնդեցնող (դեղ) —ity ստայփթիս'իթի, *s.* պնդութիւն:

**Suable** սիու-'էպըլ, *a.* դատավարելի:

**Suasion** սու-էյ'ժըն, *s.* համոզում: —sive,—sory -է'սըրի, *a.* համոզիչ:

**Suavity** սու-էվ'իթի, *s.* քաղցրութ

**Sub—,** սըպ—. ենթ—, տակ.

—acid սըպէս'իտ, *a.* թթուաշ:

—acrid -էք'—. կծուհամ, քիչ կծու

—alpine -էլ'փայն, *a.* ստորալպեան:

**Subaltern** -օլ'թըրն, *a.* ստորա-

կարգեալ, ստորադաս, ստորակարգ, երկրորդական։ -ate -տըր՛նէյթ, *a.* ստորակարգեալ, ստորակայ։ [կայ։
-astral. ընդ աստեղօք. երկրա-
-astrin′gent. քիչ պնդացնող։
-base, -bass -սըպ՛պէյս, *s.* երգեհոնի ամենացած ձայնը որ են Fundamental base.
-audit′ion. լսելեայն իմացում։
-chanter, *s.* տիրացու, դպիր։
-committee. գեր յանձնախումբ
-cutaneous. ենթամորթային։
-deacon-տի՛քն, կիսասարկաւագ
-divide, *va.* ստորաբաժանել։
-division, *s.* ստորաբաժանում։
Subdue սըպտիու՛, *va.* հնազանդեցնել, տիրել; 2. նուաճել, ենթարկել, սանձել; 3. կակղցնել, համոզել, ընտանեցնել։
Subdued սըպտիուտ՛, *a.* նուաճեալ, ենթարկեալ։
Su′beric, *a.* ծնկային, սունկէ։
Subito, *ad.* ճեպով, յանկարծ։
-fam′ily, *s.* ենթատոհմ բս.
-genus -ճի՛նըս, *s.* ենդացեղ բս.
-ja′cent. տակի. ենթա(հիւսք)։
Subject սըպ՛ճէքթ, *a.* [to] ենթարկուող, ենթարկ, ենթարկեալ; 2. ներքեւ, տակ, ենթակայ, գերի; 3. հակամէտ, յօժար, անձնատուր։ =*s.* հպատակ, ծառայ; 2. առարկայ, նիւթ; 3. առիթ, նշաւակ (վէճի); 4. ենթակայ, տէր բայի ք. եր; 5. վախճան, նպատակ (բժշկութեան); 6. առարկայ, եղանակ, նիւթ էր; 7. հերձելի (դիակ); 8. դարմանեալ հիւանդ՝ մարդ, անձ; 9. ենթակայ, մագնիսացու։ =սըպճէքթ՛, *va.* ենթարկել; 2. նուաճել, հնազանդեցնել, ստորադասել։ -matter. վիճելի նիւթ։ -tion սըպճէք՛շըն, *s.* հնազանդութիւն, հպատակութիւն, հլութիւն։
Subjective սըպճէքթ՛իվ, *a.* ենթակայական; 2. ներքին։ -ly, *ad.* -աբար։ -ness, -tivity սըպճէքթիվ՛իթի, *s.* ենթակայութիւն։
Subjoin′, *va.* յարել, աւելցնել։
Subjugate սըպ՛ճուկէյթ, *va.* նուաճել, տիրել։ -tion սըպճուկէյ՛շըն, *s.* նուաճում; 2. հնազանդութիւն։
Subjunction -ճընք՛շըն, *s.* յաւելում, կցելը։ -tive, *a.* յաւելական։ =*s.* ստորադասական (եղանակ)։
Sublimate սըպ՛լիմէյթ, *va.* ջերմութեամբ շոգիացնել, հրացնդել, վերացնել (ոնդիկը); 2. վսեմացնել։ =*s.* հրացնդած, հրացնդակ, վերացոյթ ք. -tion -մէյ՛շըն, *s.* հրացընդում, վերացում ք; 2. վսեմացնելը։
Sublime սըպլայմ՛, *a.* բարձր, վերին, բարձրագոյն, գերագոյն; 2. վսեմապանծ, վսեմ, վեհ, վսեմական։ =*s.* վսեմութիւն, վսեմ ոճ։ =*va.* վերացնել ք; 2. վսեմացնել, ազնուացնել։ =*vn.* (թուչական մասերը) վերացնել, ջերմութեամբ շոգիացնել, հրացնդել։ -ly, *ad.* վսեմաբար։ -ness, *-ity -լիմ՛իթի, *s.* բարձրութիւն, վսեմութիւն։ [Աստ.
-lapsa′rian, *s.* յետադասնցական
-linea′tion, *s.* ենթագիծ։
-lin′gual, *a.* ընդ լեզուեան։
-lunar, -ry սըպլիուն՛ըրի, *s.* ենթալուսնային; 2. երկրաւոր։
-marine սըպմէրին՛, *a.* ընդծովեայ, ենթածովային (նաւ)։ =*s.* ընդծովեայ։
Submerge -մըրճ՛, *va.* ընկղմել, մխրճել, խոթել; 2. հեղեղել, ողողել։ -gence, -mersion սըպմըր՛ճընս, -մըր՛շըն, *s.* ընկղմում, -միլը, մխրճում, ընկլուզում; ողողում։
Submerse, -ed սըպմըրստ, *a.* ջրարոյզ (ջրային բուսոց տերեւ)
Submission -միշ՛ըն, *s.* հնազանդութիւն, հլութիւն; 2. խոստովանութիւն; 3. մեծարանք։

Submissive -մի՛սիվ, *a.* [to] հըպատակ, հլու։ -ly, *ad.* -ness, *s.*

Submit սըպմի՛թ, *va.* [to] ընդունիլ, զիջանիլ; 2. տակ դնել, ենթադրել։ =*vn.* ենթարկիլ; յանձնուիլ, հպատակիլ։ -multiple -մըլ՛-, ստորապատիկ։ -nascent -նէ՛սընթ, *a.* ենթաբոյս -ordinary, *s.* ստորակարգութ.։

Subordinate սըպօր՛տինէյթ, *va.* ստորակարգել, ստորադասել, տակ դնել, կախեալ ընել; 2. հնազանդեցնել։ =*a.* ստորադաս, ստորակայ, -կարգ։ -ly, *ad.* իբր երկրորդ, տակ։ -tion, -ordinacy սըպօրտինէյ՛շըն, -օրտ՛ինէյսի, *s.* ստորադասութիւն, կախում, հպատակութ.։

Suborn սըպօրն՛, *va.* սուտ երդում ընել տալ; 2. հրապուրել, որսալ։ -ation, *s.* ստերդմնութիւն։

Suboval սըպօ՛վըլ, *s.* ձուակերպ է

Subpœna, -pena սըպփի՛նէ, *s.* դատակոչութիւն։

Subrector, *s.* փոխտեսուչ հմմ.

Subreption, *s.* նենգատաց (շնորհ)։

Subsalt սըպ՛սօլթ, *s.* դերաղ ք.

Subscribe սըպսքրայպ՛, *va.* ստորագրել; 2. (դրամ) ստորագրուիլ; 3. խոստանալ։ =*vn.* հաւանիլ, հաճիլ; (թերթի մը) բաժանորդագրիլ։ -ber սըպսքրայպ՛ըր, *s.* ստորագրեալ; 2. (լրագրի) բաժանորդ։

Subscription սըպսքրիփ՛շըն, *s.* ստորագրութիւն; 2. հանգանակութիւն, գրուածք, տուրք; 3. բաժանորդագին։

Subsequent սըպ՛սիքուէնթ, *a.* յետագայ, գալիք, յաջորդ։ -to the war. -մէն յետոյ։ -ly, *ad.* յետոյ, յետ որոյ։ -sequence, -cy սըպ՛սիքուընսի, *s.* հետեւողութիւն, յաջորդութիւն։

Subserve սըպսըրվ՛, *vn.* հրամանի տակ ըլլալ, ստորակարգուիլ, ծառայել; 2. օգտակար ըլլալ։ -servient սըպսըր՛վիէնթ, *a.* ստորակարգեալ. օգնական, օժանդակ; 2. օգտակար։ -servience, -cy սըպսըր՛վիընսի, *s.* -ութիւն։

Subside սըպսայտ՛, *vn.* [into] տակը իջնել, նստիլ, չոքիլ, մըրիլ; 2. հանդարտիլ, իջնել, կակղիլ։ -nce, -cy սըպսայ՛տէնսի, *s.* մըրիլը, իջնելը; 2. նստում։

Subsidiary -սիտ՛իըրի, *a.* նպաստաւոր, օգնական, օժանդակ։ -sidize սըպսի՛տայզ, *va.* նպաստել։

*Subsidy սըպ՛սիտի, *s.* (դրամական) նպաստ։

Subsist սըպսիսթ՛, *vn.* [on, upon] գոյ ըլլալ, կենալ, կանգուն ըլլալ; 2. շարունակել, կենալ; 3. ապրիլ։ =*va.* սնուցանել։ -ence սըպսիս՛թընս, *s.* էութիւն, գոյութիւն; 2. ապրուստ; 3. ուտեստ, պարէն։ -ent սըպսիսթ՛ընթ, *a.* գոյ եղող; 2. յարակից; 3. կեցող, գտնուող։

Subsoil սըպ՛սօյլ, *s,* ներքնահող։

Subspecies, *s.* ենթատեսակ։

Substance սըպ՛սթէնս, *s.* գոյացութիւն, հիւթ; 2. էական՝ կարեւոր մաս; 3. բուն միտք, հոգի; 4. նիւթ, մարմին; 5. զօրութիւն, հիւթ *koq*; 6. հարստութիւն, ինչք։

Substantial սըպսթէն՛շըլ, *a.* գոյացական, նիւթի; 2. էական, իրական; 3. նիւթեղէն, մարմնական; 4. ամնդարար, հիւթեղ; 5. =*pl.* կարեւոր մասունք։ -ity -շիէլ՛իթի, *s.* նիւթեղինութիւն, գոյացականութիւն։ -ly, *ad.* իրապէս, համառօտիւ, էապէս։ -ness, *s.* հաստատութիւն, զօրութիւն; 2. տեւականութիւն։

Substantiate սըպսթէն՛շիէյթ, *va.* ապացուցանել, հաստատել; 2. ի գոյ ածել, արտադրել։

Substantive սըպ՛սթէնթիվ, *a.*

գոյական(անուն), էական (դերանուն, բայ)։ -ly, *ad.* իբրեւ գոյական, գոյականաբար; 2. էապէս, իրապէս։

Substitute սըպ'սթիթիութ, *va.* [for] բան մը՝ անձ մը ուրիշի տեղ դնել, փոխանակել, տեղը դնել։ =*s.* փոխանորդ, տեղապահ։ -tion սըպսթիթիու'շըն, *s.* փոխանակութիւն; 2. փոխանորդականութիւն, Քրիստոսի մեղաւորաց փոխանորդաբար չարչարուիլը Ա.Ժ.

Substrate, -tum սըպ'սթրէյթ, սըպսթրէյ'թըմ, *s.* (հողի) ենթախաւ; 2. փուռ, ներքնահող; 3. ստորանիւթ ։էէ. որ եւ Substance.

Substruction, -ture -ք'շըր, *s.* ենթաշինուած, ներքնակառոյց՝ ըստորերկրեայ շէնք; հիմնարկութիւն

Subtan'gent, *s.* ենթաշօշափ։

Subtend', *va.* ստորաձգել։

Subtense', *s.* ստորաձիգ(գիծ)։

Subterfuge սըպ'թըրֆիուճ, *s.* նրբաբանութիւն, ճարտարանք; 2. փախուստ, խուսափանք։

Subterranean, -neous սըպթըրրէյ'նիըն, սըպթրէյ'նիըս, *a.* ստորերկրեայ, գետնափոր, հողին տակի։

*Subtile սըպ'թիլ, *a.* նուրբ, բարակ, անօսր; 2. փափուկ, գիրգ; 3. նրբին, խորամանկ; 4. սրամիտ; 5. սուր, ընդմուտ, ծակող։ -ly, *ad.* -կերպով, ճարպիկութեամբ։ -ness, Subtility սըպթիլ'իթի, *s.* -ութիւն։

Subtle սըթլ, *a.* խորամանկ, վարպետ; 2. սրամիտ։ -ness, Subtlety սըթ'լթի, *s.* -ութիւն։

Subtly սըթ'լի *ad.* խորամանկօրէն; 2. փափկութեամբ։

Subtilize սըպ'թիլայզ, *va.* նրբացնել, բարակցնել։ =*vn.* նրբաքննել։ -zation սըպթիլիզէյ'շըն, *s.* նրբացում, նրբաքննութիւն։

Subtract սըպթրէքթ', *va.* [from] վերցնել, բառնալ; 2. հանել։ -ion -թրէք'շըն, *s.* բարձում, հանում թ; 2. վերցնելը, տարուիլը։ -ive -'թիվ, *a.* հանման նշան ունեցող, բառնալի (—)։ [հանելի՝ փոքր թիւ։

Subtrahend սըպ'թրըհէնտ, *s.*

Suburb սըպ'ըրպ, *s.* արուարձան որ եւ Outskirts. -an սըպըր'պըն, *a.* արուարձանաբնակ։

Subvene սըպվին', *vn.* պատահիլ։

Subvention սըպվէն'շըն, *s.* դրամական օգնութ., նպաստ(տէրութ.)

Subversion -վըր'ժըն, *s.* կործանում, տապալում, քանդում -sive սըպվըր'սիվ, *a.* աւերիչ։

Subvert -վըրթ', *va.* կործանել, տապալել; 2. մոլորցնել, գլխէ հանել

Succedaneum սըքսիտէյ'նիըմ, *s.* փոխանորդ։ -neous, *a.* -ական։

Succeed սըքսիյտ', *va.* յաջորդել, տեղը անցնիլ։ =*vn.* [to] հետեւիլ, ետեւէն գալ; 2. յաջորդել, գահը ելլել; 3. յաջողիլ, գլուխ հանել (իրմէ յետոյ ամենեւին չը գար)։ -er սըքսիյտ'ըր, *s.* յաջորդ։

Success սըքսէս', *s.* յաջողիլը, յաջողութիւն։

Successful -'ֆուլ, *a.* յաջող, յաջողակ; երջանիկ։ -ly, *ad.* -ness, *s.*

Succession սըքսէշ'ըն, *s.* յաջորդութիւն, անընդհատ շարք, կարգ; 2. ժառանգութիւն։

Successive սըքսէս'իվ, *s.* յաջորդական։ -ly, *ad.* յաջորդաբար։

Successor -սէ'սըր, *s.* յաջորդ։

Succinct սըքսինքթ, *a.* հակիրճ, համառօտ։ -ly, *ad.* կարճառօտ։ -ness, *s.* -ութիւն։

Succin'ic. սաթական (թթու)։

Succor սըք'ըր, *s.* օգնութիւն; 2. օգնական։ =*va.* օգնել, օժանդակել։

Succotash սըք'օթէշ, *s.* կանանչ լաղուտ։

Succory սըք'ըրի, *s.* եղերդ։

Succulent-էօ–'լէնդ, *a.* հիւթեղ, ջրոտ։ -lence, -cy, *s.* -ութիւն։

Succumb -ըքքըմ', *va.* ընկճիլ, հնազանդիլ; 2. չդիմանալ, յաղթուիլ

Succussion -ըքըշ'ըն, *s.* ցունց, ցնցում, շարժում։

Such -ըչ, *a.* այսպէս, այսպիսի; 2. սատանկ, սանկ։ -as. իբրև, պէս, զորօրինակ։ -and-. այսինչ փիլանն։ -as it is. ինչպէս որ է։

Suck -ըք(դ), *va.* ծծել, քաշել; 2. կաթ ծծել։ =*vn.* ծիծ ծծել։ =*s.* ծծելը, ծծում; 2. (ծծուած) կաթ։ -ling -ըք'լին, *s.* ծիծ ծծող, երախայ, չաղա։

Sucker -ըք'ըր, *s.* ծծող; 2. (ջըրհանի) մխոց; 3. (ծառի) ստուերես քիճ; 4. գոգոշ (ձուկ); 5. Իլլինոյցի Ա. =*va.* (ճղիկները) յօտել, բրցնել։

Suckle -ըքլ, *va.* ծծցնել։

Suc'tion, *s.* քաշելը, ծծում։

Sucto'rial, *a.* ծծող, քաշող։

Sudatory -էօ–դ'-, *a.* քրտնցնող։ =*s.* շոգեբաղնիք, քրտնարան։

Sudden -ըդ'ըն, *a.* անակնկալ, յանկարծ, -ական, -ադէպ, -աճաս; 2. արագ, աճապարանօք։ =*s.* յանկարծադէպք։ -ly, *ad.* յանկարծակի, շուտ մը, մէկէն ի մէկ։ -ness, *s.*

Sudorific -էօ–-, *a.* քրտնաբեր։ -riferous -էօ–դօրէֆ'ըրըս *a.* քրտնաբեր։ -riparous -ըէբ'էյըըս, *a.* քրտնածին (անօթ) մրդ.

Suds -ըծ, *s.* սապոնջուր։

Sue -էօ–, *va.* դատախազել, դատի քաշել։ =*vn.* ուզել, խնդրել; 2. աղերսել, ետեւէն իյնալ։ To-out. հրաման ձեռք բերել դով.

Suet -էօ–'էդ, *s.* ճարպ իջ եաղը։

Suety -'էդէ, *a.* ճարպային, -ուտ։

*Suffer -ըֆ'ըր, *va.* թողուլ, ձգել; 2. քաշել, կրել; 3. համբերել, դիմանալ, տանիլ։ =*vn.* չարչարուիլ, նեղուիլ; 2. պատիժը կրել' վնասուիլ։ -able, *a.* տանելի, կրելի, ներելի։ -ance -ըֆ'ըրէնս, *s.* չարչարանք, վիշտ, տառապանք; 2. համբերութիւն; 3. թոյլտուութ.։ -er -ըֆ'ըրըր, *s.* թոյլատու; 2. հիւանդ, վշտակիր, տառապեալ։ -ing -ըֆ'ըրէն, *s.* ցաւ, տանջանք, նեղութիւն։ =*a.* վշտակիր։

Suffice -ըֆայզ', *an.* հերիք ըլլալ, ձեռք տալ, բաւել, գոհացնել։

Sufficiency -ըֆէշ'ընսէ, *s.* բաւականութիւն, բաւականը; 2. կարողութիւն։

Sufficient -ըֆէշ'ընդ, *a.* բաւական, հերիք։ -ly, *ad.* բատ բաւականի

Suffix -ըֆ'էքս, *s.* վերջադիր (մասնիկ), վերջամասնիկ։ =-ըֆէքս', *va.* (բառին) վերջը աւելցնել։

Suffocate -ըֆ'ֆօքէյդ, *an.* խեղդել, խեղդուիլ։ -tion -ըֆֆօքէյ'շըն, *s.* շունչը բռնուիլը, խեղդելը, խեղդուիլը։ -tive -ըֆֆօքէյ'դէվ, *a.* հեղձուցիչ, հեղձում, շունչը բռնուիլը։

Suffossion -ըֆֆա'շըն, *s.* ընդհողեայ բրում որ եւ Undermining.

Suffragan -ըֆ'րէկէն, *s.* քորեպիսկոպոս; 2. օգնական, փոխանորդ։

Suffrage -ըֆրէճ', *s.* ձայն, քուէ; 2. հաւանութիւն; 3. աղօթք էջ.

Suffimigate -ըֆֆէօ–'մէկէյդ, *va.* ծխել, հականեխել։ -tion -կէյ'շըն, *s.* ծխելը, հականեխում, ծխում բիւրախ։

Suffuse -ըֆէօ–զ', *va.* տարածել, քսել, ներկել։ -sion -ըֆէօ–'ժըն, *s.* ոփռում, ծաւալում; 2. պտղելը, ծծում; 3. կարմրութիւն, շիկնում։

Sugar շու–'կըր, *s.* շաքար։ =*va.* շաքար դնել՝ ցանել, շաքարել։ Brown-, coarse-, moist-, raw-. մէկ անգամ զտուած՝ խամ շաքար, շաքրոն։ -candy. վանաշաքար նեպար շեքերի, աքիսք։ -cane. շաքարեղէգ։ -loaf. կոնաշաքար ֆեյլե

—plum. նշաշաքար պաշկմ շէֆէրի։

**Sugary** շու՛կըրի, *a.* շաքարախառն, շաքարային, անուշ։

**Suggest** սըճճէսթ՛, սըկճէսթ՛, *va.* թելադրել, ազդել, միտքը ձգել, առիթ տալ, առաջարկել։ *—**ion** սըկճէս՛չըն, *s.* թելադրութիւն, ազդում; ներշնչութիւն, առիթ տալը։ —**ive** —ճէս՛թիվ, *a.* [of] թելադրիչ։

**Suicidal** —սայտ՛ըլ, անձնասպանութեան [նուլ.]; 2. անձնասպան։

**Suicide** սու՛իսայտ, *s.* անձնասպանութիւն։

**Suit** սիութ, *s.* աշխատանք, ջանք; 2. աղջիկ ուզելը, հետամտութիւն որ եւ Courtship; 3. հետեւորդներ, շքախումբ (խումբ); 4. դատական խնդրանք, պահանջք; 5. համադասութիւն, համախմբում, ժողով, ակումբ; 6. ամբողջ, լման, ձեւք մը (զգեստ) բազմ, գոյն։ =[with] յարմարցնել, համեմատել; 2. յարմարիլ, բալ, վայլել (վրան) երթալ։

**Suitable** սիութ՛էպլ, *a.* [to] յարմար, վայելուչ, վայելեալ, համաձայն։ —**ness**, *s.* —ութիւն։ —**ly**, *ad.* վայելչութեամբ։

**Suite** սուիթ, *s.* (իշխանի) մարդիկ, հետեւորդք, կցորդ մայէր, շքախումբ, յաջորդութիւն, շարք, կարգ; տողան, (սենեակ) շարք, յարկաբաժին; լման, ամբողջ ձեւք մը (հանդերձ)։

**Suitor** սիութ՛ըր, *s.* դատախազ; 2. աղերսարկու; 3. հետամուտ, սիրահար։

**Sulcate, —ted** սըլ՛քէյթէտ, *a.* խորշոմաւոր, ճառանէքաւոր, grooved

**Sulk** սըլք, *vn.* երեսը կախել՝ թթուել, դէմքը կնճռել։ —**ily**, *ad.* կախերես։ —**iness**, *s.* —ութիւն։

**Sulks** սըլքս. երեսը կախելը։

**Sulky** սըլ՛քի, *a.* թթուերես, կախերես; խոժոռ, —ադէմ, ժանտատեսիլ։ =*s.* մէկ հոգինոց պզտի կառք, անձկակառք որ եւ Sullen, Morose.

**Sullen** սըլ՛ըն, *a.* տխուր, տխրաբարոյ։ —**ness**, *s.* —ութիւն։ —**ly** սըլ՛ընլի, *ad.* երեսը կախած։

**Sully** սըլ՛ի, *va.* արատաւորել, աղտոտել; 2. աղտոտիլ։ =*s.* աղտ; արատ

**Sulphate** սըլ՛ֆէյթ, *s.* ծծմբատ ։ —of copper. ժանգառ կապոյտ քարը —of iron. արջասպ զաւա պօյա։ —of zinc. զինկի ծծմբատ ։

**Sulphur** սըլ՛ֆըր, *s.* ծծումբ, երբնդեղ, ծօշ քիւքիւրթ։ Flowers of—. ծծմբածաղիկ։ -base. ծծմբահիմ, ծծմբատակ։ -salt. ծծմբաղ։ —**eous**, —**ous**. —**y** սըլֆիւ՛րիըս, —՛ֆըրըս, սըլ՛ֆըրի, *a.* ծծմբային։ —**et** սըլ՛ֆըրէթ, *s.* ծծմբաւոր ։ —**ic** սըլֆիւ՛րիք, *a.* ծծմբական ։ —acid. ծծմբաթթու զաճ եաղը։

**Sultan** սըլ՛թըն, *s.* **Սուլթան։** —**ess**, —**ana** սըլ՛թընէս, սըլթէյ՛նա, սուլթա՛նա, *s.* **Սուլթանուհի։**

**Sultry** սըլ՛թրի, *a.* տօթագին, հեղձուցիչ, խղդուկ։ -**iness**, *s* տօթ, տաք

**Sum** սըմ, *s.* գումար, բովանդակութիւն; 2. (ստկի) գումար, դրամագումար; 3. (թուաբ.) կանոն; խնդիր։ =*va.* (up) գումարել, ժողվել; 2. պարունակել, ամփոփել; 3. (փաստերնիրը) բուանիլ։ -total. համագումար։ —**mation** սըմմէյ՛շըն, *s.* համագումար; գումարելը։

**Sumac, Sumach** սու՛մաք, *a.* աղտոր սումագ։

**Summary** սըմ՛մըրի, *a.* համառօտ, կարճառօտ, համառօտ, համակիրճ; կարուկ։ =*s.* բովանդակութիւն, քաղուած, համառօտութիւն։ —**rily** սըմ՛մըրիլի, *ad.* համառօտաբար, ի համակիրճ, կարուկ կերպով; 2. ի մի բան։

**Summer** սըմ՛ըր, *s.* ամառ; 2. յատակի հեծան ։ որ եւ Lintel, girder. =*vn.* ամառանոց երթալ։ Indian—. աշնան տաք Ա. —duck

բադիկ որ եւ Wood-duck. –fallow. ամառուան հերկ ։ –house. ամառանոց։ –sault, –set. (լարախաղացի) օդաշրջան, կլմպոշտիկ, տամպալակ որ եւ Somerset.

Summit սըմ՛իթ, *s.* գլուխ, գագաթ; 2. ծայր, կատար, ծագ։

Summon սըմ՛ըն, *va.* կանչել, կոչում ընել, ազդարարել; 2. ատեան կոչել դատ. [ճէշմաճամէ։

Summons սըմ՛ընզ, *s.* կոչնագիր

Sumpter սըմ՛փթըր, *s.* գրաստ։

Sumptuary սըմ՛չուէրի, *a.* ծախքերու, ծախսական։

Sumptuous սըմ՛չուըս, *a.* մեծածախ, շքեղ, հոյակապ։ –ly, *ad.* –ness սըմ՛չուըսնէս, *s.* –ութիւն։

Sun սըն, *s.* արեւ, արեգակ։ =*va.* արեւը դնել, չորցնել։ –beam. ճառագայթ ։ –beaten. արեւահար, արեւակէզ։ –bonnet. լայնեզր գըլխարկ։ –burn. արեւը զարնել, այրել։ –dew. վարդախոտ։ –dial. արեգակնային՝ արեւային ժամացոյց, արեւացոյց։ –down, –set, –setting. (արեւա) մայր, արեւմուտ։ –fish. լուսնաձուկ։ –flower. արեւածաղիկ։ –proof. (արեւէն) գոյնը չնետող, չաղդուող, չճերմկող (լաթ)։ –light. արեւու լոյս, արեւ։ –stroke. արեւազարկ, արեւահարութիւն ևն.

Sunday սըն՛տէյ, *s.* կիրակի։ –school. կիրակնօրեայ դպրոց։

Sunder սըն՛տըր, *va.* բաժնել, զատել, կիսել ։ =*s.* բաժնելը։

Sundry սըն՛տրի, *s.* քանի մը, այլեւայլ, զանազան, տարբեր։ *pl.* -ries սըն՛տրիզ, այլեւայլք, զանազան ծախքեր, զանազաններ։

Sung, Sunk. *pp. of* Sing, Sink.

Sunken սընք՛ն, *a.* ընկղմած, թաղուած; 2. խորասոյզ; 3. կործանած։

Sunless սըն՛լէս, *a.* անարեւ, շուք, արեւ չտեսնող գուզայ։

Sunny սըն՛ի, *a.* արեւու; 2. արեւդէմ, արեւոտ (տեղ) կիւնայ; 3. արփիափայլ, արեգակնափայլ։

Sunrise, –rising սըն՛րայզ, սըն՛րայզին, *s.* արեւածագ, -ագալ; -ելք։

Sunset, –setting սըն՛սէթին, *s.* մուտք արեւու, իրիկուն; 2. արեւմուտք; մայրամուտ, իրիկնամուտ։

Sunshine սըն՛շայն, *s.* արեւ, լոյս։ –shiny -՛շայնի, *a.* արեւոտ, տաքուկ

Sup սըփ, *an.* ընթրել; շիթ շիթ՝ պատառ պատառ՝ պատիկ պատիկ խմել, շիթ շիթել։ =*s.* ումպ, պատառ։

Super-, սիուբըր-, *prefix.* [իրենչումներուն համար տես արմատը]։

–able, *a.* յաղթելի։

–abound սիուբըրէպաունտ՛, *vn.* խիստ շատ՝ առատ լինել, լեցուն ըլլալ։ –ance -էպաուն՛տընս, *s.* մեծ առատութիւն ։ –ant. *a.* յորդառատ։ –antly սիուբըրէպաուն՛տընթլի, *ad.* առատօրէն, լիուլի։

–add′, *va.* յաւելուլ, աւելցնել։

–an′nuate. ծերանալ, հալուորիլ։

Superb սիուբըրպ՛, *a.* հոյակապ, պերճաշուք, շքնաղ; 2. փառաւոր, շքեղ, պերճ, սեգ։ –ly, *ad.*

–cargo, *s.* բեռնատեսուչ ևն.

–cilious սիուբըրսիլ՛իըս, *a.* սեգ, հպարտ, գոռոզ։ –ly, *ad.* –ness, *s.*

–em′inent, *a.* գերազանց, -գոյն, նախապատիւ։ –nence, *s.* -ութիւն

–erogation, *s.* պարտքէն՝ կատարելիքէն աւելի ընելը, անդրապարտք։

–ex′cellent, *s.* հիանալի, գեր ի վերոյ։ –lence, *s.* -ութիւն։

–fetation. վերաղմնաւորութիւն

–ficial -ֆիշ՛ըլ, *a.* մակերեւութային, -թական, երեսի; 2. ծանծաղ, վեր ի վերոյ, երեսկունկ, երեսունկ։ –ly, *ad.* հարեւանցի, վարկպարագի։ –ness. *s.* հարեւանցիու-

թիւն; 2. ծանծաղութիւն, հունք։

-ficies -ֆիշ'իզ, s. մակերեւոյթ, դուրսի երես; 2. տարածութիւն; 3. յարամասունք (արտի, շէնքի)։

-fine', a. գերազնիւ, գերընտիր։

-fluous -'ֆլուըս, a. անօգուտ, ումպէտ, աւելորդ, անպէտ։ -ly, ad. -ness, -fluity սիւ-բըրֆլու'-իթի, s. -ութիւն; 2. մեծ ճոխութ.

-hu'man, a. գերմարդկային։

-impose'. վրան դնել։ [նիստ։

-incum'bent. վերակայ, վերա-

-induce', va. աւելցնել, դնել։

-induc'tion. մակադրութիւն։

-intend սիւ-բըրինթէնտ', va. վերահսկել, հսկել, վրան կենալ։

-intendent -թէնտ'ընթ, s. վերակացու, տեսուչ, հսկող; 2. ոստիկան։-ence,-cy -'ընսի, s. -ութ.

Superior սիւ-բի'րիըր, a. գերագոյն, գերադաս, վերին, բարձրագոյն, գերագոյն; 2. իբրեւ ցուցիչ գործածուած գիր՝ թիւ, կոչումի համար (-a, -1) տպ. =s. գլխաւոր, մեծ; 2. (վանքի) մեծաւոր, մեծաւորուհի, վանահայր, վանամայր, աւագուհի։-ity -րիօր'իթի, s. -ութ.

Superlative -'լըթիվ, a. գեր ի վեր; 2. գերադրական (ածական)։-ness, s. -ութ.-ly, ad. անդիի ծայր

Supernal,-lunar սիւ-բըր'նըլ, -լիու-ն'ըր, a. վերի, վերին; 2. երկնային, երկնաւոր։ [ղացող։

-natant -նէյ'թէնթ, a. վրան լո-

*-natural -նէչ'ըրըլ, a. գերբնական, կարգէ դուրս, տարօրինակ։

-ly -լի, ad. գերբնապէս։ [լութիւ։

-numerary նիու-'մըրէրի, s. աւե-

-position, s. մակադրութիւն։

-scribe, va. հասցէն գրել, ուղղել

-scription. հասցէ; մակագիր։

Supersede սիւ-բըրսիյտ', va. տեղը բռնել՝ անցնիլ, յաջորդել; 2. պաշտօնանկ ընել, դադրեցնել; 3. անօգուտ ընել, ջնջել։-as սիւ-բըրսի'տիէս, s. պատուիրագիր։

Superstitous -սթիշ'ըս, a. աւելորդապաշտ, -ական, սնապաշտ, -ական, նախապաշարեալ; 2. չափազանց զգուշաւոր, խղճամիտ, բամբարակ։ -ly, ad. -ness, *-stition սիւ-բըրսթիշ'ըն, s.-ութ.; նախապաշարում։

-struc'tion, s. վերնայարկ։

-struc'ture, s. (վրայի) շէնք։

-vene -վիյն'. վրայ գալ, հասնիլ։

-vise -ըրվայզ, va. հսկել, նայիլ։

-vis'or, s. վերակացու, հսկող։

-vision -վիժ'ըն, s. -ութիւն։

Supine սիւ-'բայն, s. բայանուն։ =a. կռնակի վրայ, պառկած; անհոգ։ -ly, ad. -ութեամբ։ -ness, s. կռնակի վրայ պառկուածք, յորսածութիւն; 2. անհոգութիւն։

Supper սըփ'ըր, s. ընթրիք, իրիկուան ճաշ։ The Lord's–. Տէրունական ընթրիք, հաղորդութիւն։ -time. ընթրիքի՝ երեկոյեան ճաշի ժամանակ։ -less, a. առանց ընթրիքի, անօթի։

Supplant սըփլէնթ', va. ոտքը սահեցնել, թաթել; 2. տեղը անցնիլ։

Supple սըփլ, a. ճկուն, կակուղ; հեզ, դիւրանսաց։-ness, s. -ութիւն

Supplement սըփ'լիմընթ, s. վրայէն գրուած բան; 2. յաւելուած (գիրքի); 3. յաւելագիր, յաւելուած, (թերթի)։ =va. աւելցնել, պակասը լեցնել, ամբողջացնել։ -al, -ary;

Suppletive,-tory -մընթ'ըլ,-թ'ըրի, սըփ'լիթիվ, a. յաւելուածական, լրացուցիչ, աւելի, աւելեալ.

Suppliant, -licant սըփ'լիընթ, -լիքընթ, a. աղաչաւոր, աղերսարկու։

Suplicate -'լիքէյթ, va. աղերսել, աղաչել, պաղատիլ, խնդրել։ -tion-քէյ'շըն, s. աղերս, խնդրուածք, մաղթանք, պաղատանք, աղերսանք։

-tory սըփ՛լիքէյթըրի, *a.* պաղատական, աղերսական, աղաչական:

**Supply** սըփլա՛յ, *va.* պէտքը հոգալ, պակասը լեցնել, մատակարարել, հայթայթել, հոգալ (պարէնը) ճարել, նպաստակել; դնել, կարգել, անուանել, (մէկուն տեղը) լեցնել: =*s.* պարենաւորում, մատակարարութիւն: =*pl.* -lies սըփլա՛յզ. համբար, պաշար, մթեր: —and demand. մատուցում և խնդրանք:

***Support** սըփփո՛րթ, *va* վեր բռնել, վերցնել, կրել; 2. հանդուրժել, համբերել, տանիլ, տոկալ, դիմանալ; 3. օգնել, պաշտպանել; 4. ապրեցնել, ծախքը հոգալ, պահել, նայիլ: =*s.* *վեր բռնելը; 2. նեցուկ, մոյթ; 3. պաշտպանութիւն, պաշտպան, ապաւէն, զօրավիգ, թեւ թիկունք, ցուպ: Self—ing. ինքնապահ: —able, *a.* տանելի, կրելի, հանդուրժելի; 2. ներելի; 3. ապրեցնելիք, պահուելիք: —er սըփփո՛րթըր, *s.* յենարան, հաստարան, (լապտերա)կալ; 2. նեցուկ, խեչակ; 3. պաշտպան, ձեռնտու; 4. վահանաբարձք են.

**Supposable** սըփփո՛զէպըլ, *a.* ենթադրելի, համարելի, կարծելի:

**Suppose** սըփփո՛զ, *va.* ենթադրել, դնել, սեպել, համարել, կարծել; 2. իբրեւ ուղիղ ընդունիլ, վերագրել, ըսել: =*vn.* ենթադրութեամբ դնել, երեւակայել: Suppose! դիցո՛ւք թէ, համարե՛ցէք թէ; եթէ կհաճի՛ք, շնորհ ըրէք:

**Supposition** սըփփըզի՛շըն, *s.* ենթադրութիւն, կարծիք: —al, *a.* ենթադրական:

**Supposititious** սըփփազիթի՛շըս, *a.* ենթադրեալ, կարծեցեալ; 2. մտացածին: -ly, *ad.* սուտէն: -ness, *s.* սուտ: [ծիական:

**Suppositive** սըփփա՛զիթիվ, *a.* կար-

**Suppress** սըփրէ՛ս(ս), *va.* կոխել, ճնշել; 2. նուաճել, սանձել, արգիլել; 3. ջնջել, խափանել: -ion սըփրէ՛շըն, *s.* արգիլում, զսպում; 2. նուաճում, ճնշում; 3. բարձում, խափանում, յապաւում, ջնջում: —ive սըփրէ՛սիվ, *a.* արգելիչ:

**Suppurate** սը՛փիուրէյթ, *vn.* թարախիլ: —tion -րէ՛յշըն, *s.* թարախում: —tive -րէթ՛իվ, *a.* թարախիչ:

**Supralapsarian** սիուփրալէփսէ՛յրիըն, *a.* նախաղանցական Ա.Թ.

**Supranaturalism,** *s.* գերբնութիւն, գերբնականութիւն:

**Supremacy** սիուփրէ՛մէյսի, *s.* գերագոյն իշխանութիւն, գլխաւորութիւն, գերակայութիւն, գերիվերութիւն:

**Supreme** սիուփրի՛յմ, *a.* գերագոյն, բարձրագոյն, վերին, ծայրագոյն: —ly, *ad.* յետին աստիճան, ամենա (բարձր):

**Sura** սը՛րէ, սու՛րա, *s.* գլուխ (կուրանի); 2. նուիրական ըմպելին ըմպող, անմահ (Հնդիկ): [վաք:

**Surbase** -՛պէյս, *s.* պսակ բէր-

**Surcharge** սըրչա՛րճ, *va.* ծանրաբեռնել, չարաչար բեռնաւորել, Overburden; 2. հարկաբեռնել; 3. շատ լեցնել; 4. չափազանց գին ուզել: =*s.* չափազանց բեռ, ծանրաբեռնութիւն; 2. վերահարկ, վերատուրք:

**Surcingle** սը՛րսինկլ, *s.* վերնաթանգ իւսր գօտեւ; 2. գօտի, կամար (պարեգօտի) են.

**Surcoat** -՛քօթ, *s.* մեկնոց, գրաստ

**Surd** սըրտ, *a.* անհամաչափ, արմատական (թիւ); 2. համր(գիր)

**Sure** շո՛ւր, *a.* [of] ստոյգ, հաւաստի, աներկբայ; 2. վստահ, ապահով, անկասկած: To be—. ճշմարիտը, ստուգիւ: To make—. ապահովցնել, վստահեցնել: —footed

անսայթաք։ -ly շուռ՛լի, *ad.* ճըշմարտիւ, անկասկած, ապահովապէս, հաստատապէս; 2. անվտանգ։ -ness, *s.* ստուգութիւն; 3. ապահովութիւն որ եւ Certainty.

Surety շուռ՛րթի, *s.* ապահովութիւն, վստահութիւն; 2. երաշխաւորութիւն; երաշխ, երաշխիք; հաստուցումտուգանքի, վնասի; երաշխաւոր *fkfhq*; 3. վկայ։ -ship, *s.* երաշխաւորութիւն *fkfաղkp*։

Surf սըրֆ, *s.* ալեգարձ, ալիքի ուժով ընկրկում՝ ցամաքի կամ ուրիշ արգելքի զարնուելէ ետքը, խորտակ, ալեբախ։ -boat. ալենաւակ։ -duck. ալեբադ։

Surface սըր՛ֆէյս, *s.* երես, մակերեւոյթ; մակերես(երկրի, ծովի)։

Surfeit սըր՛ֆիյթ, *s.* չափազանց յագուրդ, յափրացում; 2. չափազանց կերուխում։ =*va.* չափազանց յագեցնել, յափրացնել ախորժակ; 2. հիւանդացնել։ =*vn.* հիւանդանալու չափ ուտել խմել։

Surge սըրճ, *s.* մեծ ալիք, կոհակ։ =*vn.* (ալիքները) բարձրանալ, ուռիլ, ծփծփիլ։ =*va.* (առագաստի չուանը) թուլցնել, սահեցնել։

Surgeon սըր՛ճըն, *s.* վիրաբոյժ, վիրահատ։ -cy սըր՛ճընսի, *s.* վիրաբուժութիւն *ákrrwhjjq*։

Surgery սըր՛ճըրի, *s.* վիրաբուժութիւն; -արան։ -gical, *a.*-ական

Surgy սըրճ՛ի, *a.* ալեկոծ։ [բէչ։

Sur'loin, *s.* եզան թիկնամէջք,

Surly սըր՛լի, *a.* խոժոռ, դէգ։

Surlily սըր՛լիլի, *ad.* -կերպով։

Surliness սըր՛լինէս, *s.* -ութիւն։

Surmise սըրմայզ՛, *va.* կարծիք ընել; կասկած ունենալ, կասկածիլ; 2. կռահել, կարծել։ =*s.* կասկած, կարծիք, կռահելը։

Surmount սըրմաունթ՛, *va.* երեսը՝ վրան ելլել, գագաթը գտնուիլ; 2. անցնիլ, գլել, յաղթել, նուաճել; 3. գերազանցել։ -able, *a.* յաղթելի։ -ed սըրմաունթ՛էտ, *a.* վերադիր, վրան դրուած։

Surmullet սըրմըլ՛էթ, *s.* աքցայաձուկ պարպունեայ։

Surname սըր՛նէյմ, *s.* ընտանեկան անուն, մականուն։ =սըրնէյմ՛, *va.* մականուանել; 2. անուն կախել։

Surpass սըրփէս՛, -փաս՛(ս), *va.* աւելի բարձր ըլլալ, գերազանցել, անցնիլ, կարողութեամբ վեր ըլլալ։-able, *a.* գերազանցելի։-ing -փէս՛ին, *a.* գերազանց, վերնոց, վեր։

Surplice -փ՛լիս, *s.* եկեղեցական կտաւեայ շապիկ, քօթանակ։ -fee. (հանգիստական օրերու մէջ կղերականաց տրուած) խաչհամբոյր։

Surplus,-age սըր՛փլըս, -՛փլըսէճ, *s.*աւելորդ, մնացորդ; ոչ-էականք էր։

Surprisal -՛զըլ, *s.* յարձակում։

Surprise սըրփրայզ՛, *va.* [-ed *at*] յանկարծ՝ անակնկալ կերպով առնուլ; 2. յանկարծակիի բերել; 3. հիացնել, ապշեցնել։ =*s.* յանկարծակիի գալը՝ բերելը; 2. զարմացում, զարմանք; 3. անակնկալ ընծայ, յեղընծայ։

Surprising -զ՛ին, *a.* յանկարծական, նորաաքանչ, հիանալի։ -ly, *ad.*

Surrebut սըրրիպըթ՛, *vn.* (երկրորդ անգամ) դատախազը ամբաստանեալին պատասխանել։ -er սըրրիպըթ՛ըր, *s.* (դատախազի դէմ) պաշտպանողական մուրացիաս։

Surrejoin սըրրիճօյն՛, *vn.* (երկրորդ անգամ) դատախազը ամբաստանեալին պատասխանել։

Surrender սըրրէնտ՛ըր, *s.* անձնատրութիւն, յանձնում; 2. յանձնելը, տալը։ =*va.* յանձնել, տալ, թողուլ; 2. յանձնուիլ, անձնատուր ըլլալ (թշնամիին)։

Surreption, *See* Subreption.

**Surreptitious** սըրէփթիշ՛ըս, *a.* գողապատիր, խաբեպատիր; 2. գաղտագողի, նենգութեամբ; 3. անհրամանի: -ly, *ad.* [խանորդ:

**Surrogate** սըր՛րոկէյթ, *s.* փո-

**Surround** սըրրաունտ՛, *va.* շրջապատել, պատել; 2. չորս կողմն առնուլ, պաշարել: -ed սըրրաունտէտ, *a.* շրջապատեալ, բոլորեալ: -ing սըրրաունտ՛ինկ, *a.* շրջակայ, բոլորտիքը առնող: =*pl.* սըրրաունտինկզ: պարառութք, պարագայք, շրջակայք

**Surtout** սըրթու՛թ, *s.* Թիկնոց:

**Surveillance** սըրվէյլ՛էնս, *s.* հսկողութիւն: -lant, *s.* հսկող:

**Survey** սըրվէյ՛, *va.* նայիլ, դիտել, զննել, քննել; 2. չափել, գետնաչափել: =*s.* նայիլը, հայուածք; 2. քննութիւն, զննութիւն, դիտողութիւն; 3. (գետնա) չափութիւն, չափելը: -ing սըրվէյ՛ինկ, *s.* անդաչափութիւն; 2. քննութիւն:

**Surveyor** սըրվէյ՛ըր, *s.* տեսուչ, վերակացու, այցելու, քննիչ; 2. երկրաչափ, անդաչափ; 3. մաքսախոյզ araյլրáր: -ship, *s.* -ութիւն:

**Survival** սըրվայ՛վըլ, *s.* ուրիշէ ետք ապրիլը, վերջամնացութիւն: -of the fittest. յարմարագոյնին ապրիլը:

**Survive** սըրվայվ՛, *va.* (մէկուն մեռնելէն ետք) ողջ մնալ, ապրիլ:

**Survivor** -՛ըր, *s.* վերջամնաց:

**Susceptible** սըսէփթ՛իպլ, *a.* [of] ընդունակ, -ական; 2. դիւրազգած, դիւրագրգիռ: -ness, -bility, -ceptivity սըսէփթիվ՛իթի, *s.* -ութիւն

**Suscipient** սըսիփ՛իէնթ, *a.* ընդունող nrեւ Receiving, Admitting.

**Suspect** սըսփէքթ՛, *an.* [-ed *of, by*] չվստահիլ, կասկածի երթալ, կասկածիլ, կասկած ունենալ: -able, *a.* կասկածելի, անվստահ: -edness սըսփէք՛թէտնէս, *s.* -ութիւն:

**Suspend** սըսփէնտ՛, *va.* առկախել, կախել, կախ ձգել, առկախ Թողուլ; 2. (պաշտօնէ) դադրեցնել, արգիլել, կասեցնել; 3. [on, upon] (առժամապէս) յետաձգել: =*vn.* (վճարմունքը) դադրեցնել, ընդհատել; 2. սնանկանալ: -ers սըսփէնտ՛ըրզ, *pl.* ձգանակ, ձգափոկ, ասղը, փոկ (տափատի): -ed սըսփէնտ՛էտ, *a.* կասեցեալ, արգիլեալ

**Suspense** սըսփէնս՛, *s.* անստուգութիւն; 2. առժամեայ դադարում, կախում, արգելք:

**Suspension** -փէն՛շըն, *s.* առկախում, կախում; 2. առժամեայ դադարում, ընդհատում, ընդմիջում: -bridge. կախաղանաւոր՝ առկախ կամուրջ: -sory -փէնս՛ըրի, *a.* կախուած, առկախեալ, ի կախ; 2. կախելիք, կախելու: =*s.* փոկ, կախոց ասղը; 2. աղէկապ գաւըգ սյաղը

**Suspicion** սըսփիշ՛ըն, *s.* կասկած, կռահում, վարանք:

**Suspicious** -փիշ՛ըս, *a.* կասկածոտ; 2. կասկածելի: -ly, *ad.* -ness, *s.*

**Suspire** սըսփայր՛, *vn.* հառաչանք հանել, հառաչել, ահ քաշել; 2. խորունկէն շնչել՝ շունչ առնել: -ral սըսփայ՛րըլ, *s.* շունչ առնելու ծակ, շնչածակ; 2. գետնին տակէն ջրամբարի մէջ հոսող աղբիւր՝ ջուր, գետնաջուր: -ration սըսփիրէյ՛շըն, *s.* հառաչ, հառաչանք:

**Sustain** սըսթէյն՛, *va.* վեր վերցընել, բռնել, կանգուն պահել; 2. ույժ տալ, կազդուրել, ներքը բռնել; 3. հաստատ՝ վառ պահել, զօրացընել; 4. ենԹարկուիլ, կրել, քաշել; 5. տոկալ, դիմանալ; 6. շարունակել եւ. -able սըսթէյն՛էպլ, *a.* հաստատելի:

**Sustenance** սըս՛թընէնս, *s.* սընունդ, ապրուստ, ուտեստ:

**Sustentation** սըսթէնթէյ՛շըն, *s.*

Տառատառութիւն, նեցուկ; 2. կեանքը բռնող բան, կեանքի պահեստ; 3. սնունդ; 4. կազդուրում։

**Sutler** սըթ'լըր, *s.* (բանակի) նըպարավաճառ, գինեվաճառ։

**Suttee** սըթթի', *s.* ինքնակէզ (այրի՝ Հնդիկ); 2. կնակիզութիւն։

**Suttle** սըթ'լ, *s.* զուտ կշիռ կծ.

**Sutural** սիուչ'ուրըլ, *a.* կարուածքի։

**Suture** սիու'չուր, *s.* վէրքի կարան; (գանկի ոսկրներու) կարուածք

**Suzerain** սիու'զըրէյն, *s.* գերիշխան, գերագահ; 2. գերիշխանական, գերագահական։ –ty -զըրէյնթի, *s.* -ութիւն։

**Swab** սուօպ, *s.* նաւել, շուաննաւել բարբառ; 2. փռնաւել, քըլչաւել; 3. տախտակորբիչ, ջնջոց, ջնջան։ =*va.* սրբել, մաքրել; աւլել։

**Swaddle** սուօտ'լ, *va.* խանձարըրել, բալուլել, փաթթել (տղան)։ =*s.* խանձարուր գուլisag։ –ling-band, –ling-cloth. (մանկան) շոր, կտաւ, պինդ, որլաթ։

**Swag** սուէկ, *vn.* կախուիլ, կքիլ։ -ger սուէկ'ըր, *vn.* մեծաբանել, յոխորտալ, ջարդել։ -gering, *s.* մեծաբանելը, ջարդելը։ -gy սուէկ'կի, *a.* կախուած, լխկած։

**Swain** սուէյն, *s.* պատանի հովիւ; 2. սիրահար հովիւ, գեղջուկ։

**Swale** սուէյլ, *s.* հովիտ; 2. ճախինուտ՝ թաց երկիր։ =*vn.* (մոմը) հալիլ, հատնիլ, սպառիլ։

**Swallow** սուօլ'լօ, *s.* ծիծառ, ծիծեռնակ; 2. կոկորդ, հագագ; 3. կլլելը, ումպ։ =*va.* կուլ տալ, կլլել։

**Swam** սուէմ, *pp. of* **Swim.**

**Swamp** սուէմփ, *s.* ճախին, մարգճախին, մօրուտ։ =*va.* ստւզել, խըղդել, ընկլուզել; հեղեղել, ողողել; պարապ հանել, աւրել։ [ճախինուտ։

**Swampy** սուէմփ'ի, *a.* ճախին,

**Swan** սուէն, *s.* կարապ, պոր։

**Swap** սուօփ, *va.* փոխանակել։

**Sward** սուօրտ, *s.* մարմանդ, դալարի, դալարավայր որ եւ Turf. =*va.* դալարազարդել։

**Swarm** սուօրմ, *s.* մեղուապար, մեղուախումբ; 2. բազմութ., հոյլ, խումբ, երամ։ =*vn.* փեթակը երթալ՝ թռիլ; 2. խռնուիլ, ժողվուիլ; 3. շատնալ, առատանալ; 4. (ծառը) շուլլուիլ՝ ելլել։

**Swart, Swarth** սուօրթ, *a.* թուխ, թխագոյն։ –iness, *s.* -ly, *ad.*

**Swarthy**, *a.* սեւաթոյր, թուխ։

**Swash** սուօշ, *s.* մեծաբան գաւպա sայլը; 2. ժխոր, աղմուկ, հոսանք (ջրոյ); 3 ջրադարձ, առու։ =*vn.* շառաչել; աղմկել որ եւ Splash.

**Swastica, -ka** սուէս'թիքէ, *s.* բարեբաստիկ ուղուր որ և Good-luck; 2. մոգական բառ, յուռութքառ, հմայեակ; 3. հին ամաններու, գործերու եւնի վրայ յաճախ տեսնուող նշան մը Sanskrit.

**Swath** սուօթհ', *s.* կապ, երիզ, փաթոյթ; 2. խուրձ (որայի); 3. հնձուած մաս (արտի)։

**Swathe** սուէյթհ, *s.* մանկան խարձունձ, շոր։ =*va.* փաթթել, կապել։

**Sway** սուէյ, *va.* ճօճել, դարձընել, օրել, շարժել; 2. իշխել, հովուել, կառավարել; 3. մէկ կողմ ծռել հակեցնել, դարձնել; 4. վերցնել ն–. =*vn.* հակիլ, ծռիլ; 2. ազդեցութիւն ունենալ, տիրել։ =*s.* երերցնելը, ճօճում; 2. իշխանութիւն, գաւազան, ազդեցութիւն; 3. (կշռի) հակում։

**Sweal** սուիյլ, *vn.* հալիլ, վառել։

**Swear** սուէէր, *vn.* [Swore, Sware, Sworn] երդում ընել, երդնուլ, երդուընտալ; 2. վկայել էր; 3. յիշոց հանել, հայհոյել։ =*va.* երդնուլ, հաստատել, ուխտել; 2. երդում տալ էր. –er սուէ'րըր, *s.* հայհոյիչ։

-ing, s. երդնումը; 2. երդում, յիշոց

Sweat սուէթ, s. քրտինք, քիրտ; 2. ջանք, աշխատութիւն; 3. տամկութիւն, խոնաւութիւն ։ =va. քրտնիլ, դուրս տալ, թորել; 2. քրտնցնել ։ =vn. քրտնիլ; 2. նեղութիւն կրել, տառապիլ ։ -ing-sickness, s. քրտնատապ։

Sweaty սուէթ'ի, a. քրտինքի; 2. քրտինքխառն, քրտինքոտ, տամուկ; 3. քրտնագին։ -tiness -'ինէս, s. քրտնիլը։

Swedish սուէտ'իշ, a. Շուէտի, շուէտական։ =s. շուէտերէն։

Sweep սուիփ, va.[Swept; Swept] աւլել, աւլտել; 2. գետինը քսուիլ (քղանցք); 3. մաքրել, սրբել; քսաս ընել; 4. քշել, հալածել (ամպ), ցրուել, տարտղնել ։ =vn. քերել անցնիլ, քսուելով անցնիլ; 2. (սուրը) տատանիլ, ճօճիլ; 3. (ծովը) եղերքը լուալ, աւլել, մաքրել; 4. քշուիլ, տարուիլ; 5. շքով անցնել; 6. շօշոկել ։ =s. աւելածութիւն, աւլելը; 2. տատանում, ճօճում; 3. շրջանակ, անջրպետ; 4. ծխան մաքրելը, աւելածու, ծխան մաքրող; 5. թեւճակ ֆիւրէֆն.-stakes (ձիարշաւի) բոլոր պարգեւները շահող։ -ings սուիփ'ինկզ, pl. աւլուք, աւելած, աւելուկ սիւբրիւնթիւ.

Sweepy սուի'փի, a. վաղանցիկ։

Sweet սուիթ, a. քաղցր, անոյշ; 2. անուշակ, անուշիկ; 3. քաղցրալուր, ախորժելի; 4. գեղեցիկ, հաճելի; 5. անուշ, անլի (ջուր); 6. կակուղ, թարմ, փափուկ ։ =s. անո'ւշիկս, հոգի'ս; 2. pl. անուշեղէն։ -basil. ռահան փեսլիկեն։ -bread. (հորթի) վզամսան։ -brier. դաշտավարդ, փշատիկ, մասրենի որ եւ Eglantine. -corn. (խածախցու՝ բոհբոյկք) լազուտ ։ -fern. ձարխոտ, պիտեր։ -flag. խնկեղէգ ։ -heart. տարփածու, սիրուհի։ -marjoram. մարեմխոտ մերզանեկիւշ ։ -meat. շաքարամիրգ։ -oil. ձէթ ։ -peas. մահտանակ, ճոլպան ։ -potato. գետնատանձ, պոլդիկ։ -scented, -smelling. քաղցրաբոյր, անուշա-։ -william. պսպղակազգեաց ցեղէն բոյս, ծմակենի, պսպղակ, վաշտեւորի հիւսնիւ հուսուֆ ։ -wood. ամերիկեան թուփի մը անուշահոտ կեղեւը, կեղեւակ։

Sweeten սուիթ'ն, va. անուշցընել, անուշ խառնել; 2. ամոքել, մեղմել, կակղցնել; 3. պարարտացընել։ =vn. քաղցրանալ, անուշնալ։

Sweeting սուիթ'ինկ, s. անուշ խնձոր; 2. սիրական։

Sweetish սուիթ'իշ, a. անուշկեկ

Sweetly, ad. անուշութեամբ։

Sweetness, s. քաղցրութիւն։

Swell սուէլ, vn. [Swelled; -led, Swollen, Swoln] ուռիլ, ուռենալ, ցցուիլ, այտնուլ; 2. աւելնալ; 3. մեծնալ; 4 հպարտանալ, խժռուիլ։ =va. ուռեցնել, մեծցնել, աւելցնել։ =s. ուռիլը, այտում; 2. կոհակ, ալիք; 3. (գետնի) բարձունք, վէտ վէտ; 4. աճում, թրթռում էր; 5. թեթեւոյիկ։ -mob. բարեձեւ հագուած գողեր։ -ing սուէլ'ինկ, s. ուռ, այտուց։ [մրիլ։

Swelter սուէլ'թըր. տաքէն մարSwerve սըրվ, vn. [from] մոլորիլ, շեղիլ; 2. խոտորիլ, սահիլ։

Swift սուիֆթ, a. արագ, շուտ, երագ; 2. ճիչդ, ճշդապահ ։ =s. քարածիծառ։ -ness, s. -ութիւն։ -ly, ad. արագութեամբ, շուտ շուտ

Swig, Swill սուիկ, սուիլ, an. շատ շատ խմել, կլլել, տնկել, նետել; 2. խմցնել ։ =s. չափազանց խմուածք, մեծ ումպ; 2. ըմպելի։ -bowl, pot. հարբած, գինեմոլ։

Swim սուիմ, vn. [Swam, Swim]

լողալ; 2. (հոսանքէն) քշուիլ, տարուիլ, ծփծփիլ, սահիլ; 3. առատանալ, յորդիլ: =va. լողացնել; 2. լողալ անցնիլ: =s. լողալը, սահիլը; 2. (ձկան) լուղական փամփուշտ: -mer -մ'ըր, s. լողացող: -mingly -սուիմ'ինկլի, ad. մեղմով; 2. յաջողութեամբ:

Swindle սուին'տլ, va. գրթել, շորթել, պատցնել, գողնալ: =s. դրամաշորթութ., գրթանք: *-ler սուինտ'լըր, s. խաբեբայ, soյավiցըրըճը, դրամաշորթ:

Swine սուայն, s. խոզ, խոզեր, (մատակը՝ Sow, արուն՝ Boar, մալեալը՝ Hog կկոչուի): -herd. խոզարած: -pox. քար-ծաղիկ էծ.

Swing սուինկ, vn.[Swung; Swung] օրօրուիլ, ճօճիլ, տարուբերիլ, կախուիլ, տատանիլ; 2. դառնալ ն-. =va. օրօրել, ճօճել; 2. դարձնել: =s. օրօրուիլը, տատանում; 2. յակուրջի, ճօճք սալլըճած: -tree, Swingle-tree. (կառքի քեղիի) փոկակալ փայտ պարխա: -bridge. բացխփիկ կամուրջ:

Swinge սուինճ. քշտել, զարնել, ծեծել: -ing -ճինկ խոշոր, վիթխարի

Swingel.-gle: Swiple սուինկ'կլ, սուիփ'լ, va. կանեփ ծեծել, տոփանել: =s. տոփան. տափան:

Swinish սուայն'իշ, a. խոզուպէս; 2. անասնական, խոզու:

Swipes սուայփս, pl. թթուած գարեջուր:

Swirl սուըրլ s. պտոյտ, յորձանք

Swiss սուիս, a. Հելուետացի, զուիցերիացի; 2. Հելուետական:

Swish սուիշ, s. շըշըշուն, խըշրտուք (շրջազգեստի):

Switch սուիչ(տ), s. ճիպոտ, ճիւղ, ցպկի, չիբկի; 2. կեղծամի ագի; 3. աքծան մագաս էր. =va. ծեծել, թրջել; 2. աքծանով դարձընել էր. -man. աքծանավար մագանը (pl. Switchmen)

Swivel սուիվ'լ, s. շրջադարձ կեռ; 2. առանցաւոր թնդանօթ:

Swoon սուուն, s. մարիլը, մարմրուք: =vn. մարիլ, նուաղիլ:

Swoop սուուփ, vn. խոյանալ, վրան յարձակիլ, բռնել, յափշտակել: =s. խոյացում (բազէի):

Swop սուափ. փոխանակութիւն:

Sword սօրտ, s. սուր, թուր, սուսեր: -belt. սրափոկ, թրկապ: -blade. երախակալ: -fish. թրաձուկ: -knot. մեղեխածոպ: -player. ըմբիշ: -sman. վարպետ սրախաղ; զինուորական, զինուոր:

Sworded սօրտ'էտ, a. սրակիր:

Sybarite սիպ'ըրայտ, s. թոյլ հեշտասէր մարդ: -tic,-al.-սիրական

Sycamine սիք'էմայն, s. թթենի:

Sycamore սիք'ըմօր, s. ժանտաթզենի, մոլաթզենի, կատաղենի; 2. թլբի, սարայ չինար աղաճը՝ Button-wood, Plane tree (յԱմերիկա); 3. դղքի, թզկենի՝ Maple (յԱնգլիա):

Sycee սիսի', s. ձոյլ արծաթ:

Sycophant սիք'ըֆէնթ, a. քսու, մատնիչ; 2. պնակալէզ, շողոքորթ:

Sycosis սայքօ'սիս, s. թզախտ:

Syenite սայ'էնայտ, s. կրանիթ մը, հատաքար:

Syllabarium, -ria, -ry սիլ-լէպէյ'րիըմ, -րիէ, -պէյրի, s. հեգարան

Syllabic, -al սիլ'էպիք, a. վանկի:

Syllabicate,-bify սիլլէպ'իքէյթ, սիլլէպ'իֆայ, va. վանկ վանկ բաժնել: -cation -քէյ'շըն, s. հեգում; 2. վանկատում:

Syllable սիլ'էպլ. s. վանկ, հեգ:

Syllabub սիլ'-, s. կաթնագինի:

Syllabus սիլ'լէպըս, s. վերպագանկ, համառօտութիւն:

Syllep'sis, s. բակառութիւն:

Syllogism սիլ'ըճիզմ, s. հաւա-

քաբանութիւն, հետեւաբանութ.։ **-gistic, -al** սիլըճիս'թիքըլ, *a.* շարաբանական, հաւաքաբանական։ **-gize,** *va.* -ընել, հետեւցնել։

**Sylph** սիլֆ, *s.* օդային ոգի, օդապայ։ **-ic** սիլֆ'իք, *s.* պարիկ։ **-id** սիլ'ֆիտ, *s.* կանգնագեղ՝ շնորհալի կին, օդանոյշ։

**Sylva** սիլ'վը, *s.* [*pl.* -væ սիլ'վի] երկրի մը անտառագրութիւնը; 2. մանրաքաղ քերթուած։ **-vic** սիլ'վիք, *s.* շահրաթթու։

**Sylvan** սիլ'վըն, *a.* անտառային; 2. գեղջկային; 3. անտառուտ =*s.* անտառաբնակ, շահապետ անտառի, շահարիկ; 2. գեղացի։

**Symbol** սիմ'պըլ, *s.* խորհրդանիշ, խորհրդապատկեր, առակ օրինակի, խորհրդանշան; 2. պատկեր, օրինակ, տիպ; 3. նշանակ, նշան։ **-ic** սիմպա'լիք, *a.* խորհրդանշանական, խորհրդացոյց, խորհրդական, նշանակական; 2. հանգանակ (հաւատոյ, Նիկիոյ)։ **-ically,** *ad.* նշանացի։ **-ism** սիմ'պըլիզմ, *a.* հանգանակք Ա.; 2. խորհրդագիտութիւն

**Symbolize** սիմ'պըլայզ, *vn.* առնչութիւն ունենալ, առնչանալ, նմանիլ։ =*va.* խորհրդանիշել, խորհրդաւոր կերպով ներկայել, նմանցընել; 2. խորհրդապատկերել։

**Symmetrical** սիմեթ'րիքըլ, *a.* զուգաչափ, համադիր, համաչափ, յարմարադիր, գեղեցկաձեւ։ **-ly,** *ad.* չափակցութեամբ։

**Symmetry** սիմ'իթրի, *s.* համեմատութիւն, չափակցութիւն, համաչափութիւն, զուգաչափութիւն։ **-rize** -րայզ, *va.* չափակից՝ համաչափ ընել, յարմարցնել։

**Sympathetic, -al** սիմփըթհեթ'իք, *a.* համակրական, համակրելի, համակիր, համակրալից, համակրող; 2. գաղտնի, աներեւոյթ՝ ծածկագիր (մելան)։ **-ly,** *ad.* համակրանօք։

***Sympathy** սիմ'փըթհի, *s.* համակրութիւն, համակրանք։ **-thize** սիմ'փըթհայզ, *vn.* [with] համակրիլ։

**Symphony** սիմ'ֆընի, *s.* միաձայն երգ, երգակցութիւն; 2. համերգութիւն, համերգանք, ձայնակցութիւն; 3. համանուագ, համերգ։ **-phonious** սիմֆօ'նիըս, *a.* ներդաշնակ, համերգական։

**Symposiac** սիմփօ'զիէք, *s.* կոչունքաճառ, խնջոյքաճառ (փիլիսոփայից)։ **-sium** սիմփօ'զիըմ, *s.* [*pl.* -sia -փօ'զիը] դբօսանք, խնճոյք, հացկերոյթ ճիւմպիւշ։

**Symptom** սիմ'թըմ, *s.* ախտանշան, ախտանիշ, նշան։ **-atic** սիմթըմեթ'իք, *a.* ախտանշանական։

**Synæresis, Syneresis** սինե'րիսիս, *s.* երկու վանկը միացնելը, ազուլ (over=o'er օըր)։

**Synagogue** սին'էկակ, *s.* ժողովարան, ժամատուն (Հրէից)։

**Synalepha** սինէլի'ֆը, *s.* բառի մը վերջին ձայնաւորի կրճատում՝ երբ հետեւեալ բառն ալ ձայնաւորով կսկսի, միակցութիւն +.

**Synarthrosis** սինարթհրօ'սիս, *s.* յօդակցութիւն, կարամուրք։

**Syncarpus** սինքար'փըս, *s.* համապտուղ, սերմնափակերը միացած

**Synchronal, -nical** -քրան'իքըլ, *a.* համաժամանակ, ժամանակակից

**Synchronism** -'քրընիզմ, *s.* -ութիւն **-nize** սին'քրընայզ, *vn.* -ըլլալ։

**Syncopate** սին'քըփէյթ, *va.* կըցերդել; 2. կրճատել (գիր)։ **-tion, Syncope** սինքըփէյ'շըն, սին'քօփի, *s.* կրճատում (գրի, վանկի); 2. նուաղում, մարմրուք; 3. կցում, կցուած եր

**Syndic** սին'տիք, *s.* գործակալ, սինդիկոս, հոգաբարձու, նախատենակալ։ **-ate** սին'տիքէյթ, *s.* -ութ.; 2. սեղանաւորաց ընկերակցութեան՝

գործադիր ժողով; 3. (անանկի մը հետ հաշիւները կարգադրելու համար պաշտօնէութեան կողմէ ընտրուած) գործակալ։ [Նշան։

Syndrome սին'տրօմի, s. ախտա-

Synecdoche սինէք'տօքի, s. խելամտութիւն զր.–chical.-տական։

Synod սին'օտ, s. սիւնհոդոս, սինհոդ; 2. եկեղեցական ժողով։

Synodic,-al սինօտ'իքըլ, a. սիւնհոդական։ –ly, ad. սինոդով։

*Synonym,-ous սին'օնիմ, -նօն'իմըս, a. համանշան, փաղանուն, համանշանակ, նոյնանիշ, նոյնանշան, -ակ։ –ly, ad. -աբար։

Synopsis սինօբ'սիս, s. համացոյց պատկեր, համառօտութիւն։

Synoptic, -al. համատեսակ, համացոյց, խմբագիր (աւետարան, աղիւսակ)։ -tist սինօբ'տիստ, s. խմբագիր (աւետարանիչ՝ Մատթէոս, Մարկոս, Ղուկաս)։

Synovia սինօ'վիէ, s. հաւկիթի ճերմկուցին նման լպրծուն հիւթ մը, հօդային շճահիւթ։ –vial -'վիըլ, a. -ային։

Syntactic, -al սինթէք'թիք, a. համաձայնութեան, -նական։

Syntax սին'թէքս, s. համաձայնութիւն։

Synthesis սին'թհիսիս, s. բաղադրութիւն; 2. համադրութիւն տ. –thetic, -al -թհէթ'-, a. բաղադրական, համադրական, յօրինաւոր

Syphilis սիֆ'իլիս, s. գաղղիական ախտ, տափախտ, աթաշակ։ –litic, -al սիֆիլիթ'իք, a. աթաշակային; 2. աթաշակախտաւոր, աթաշակոտ։

Syphon սայ'ֆըն, s. սիփոն եւլն.

Syren սայ'րըն, s. յուշկապարիկ

Syriac սիր'իէք, a. ասորական; ասորւոց։ =s. հին արամերէնի Aramaic մէկ ճիւղը, ասորերէն։ –ian սիր'իըն, a. ասորի; ասորերէն։

Syringa սիրին'կա, s. շեփորուկ փուշեա որ եւ Mock orange; 2. եղրեւանի շէյլագ որ եւ Lilas.

Syringe սիր'ինճ, va. ներարկել։ =s. ներարկիչ, շրինկ։ –gotomy, =s. կեղանկատութիւն վէր.

Syrtis սըր'թիս, s. խրուտ, աւազակոյտ որ եւ Quicksand.

Syrup սիր'ըփ, s. դեղաջուր։

System սիս'թըմ, -'թէմ, s. դրութիւն, կանոն, սիստէմ; 2. յօրինուածք, կերպ; 3. ոճ, եղանակ; 4. դասաւորութիւն, կազմութիւն։ –atic, -al սիսթըմէթ'իքըլ, a. կարգաւ, կանոնաւոր։ –ize սիս'թըմայզ, va. կանոնաւորել, կարգի կանոնի վերածել։

Systole -'թօլի, s. սրտի կծկանք

Systyle սիս'թայլ, s. մօտասիւն, համասիւն (տաճար)։

Syzygy սիզ'իճի, s. համակացութիւն, լծակցութիւն, լծորդութ.։





T թի· 20րդ գիր անգլ· այբուբենի; To suit *or* fit to a T. վրան երթալ, յարմարիլ, վայլել։

**T-cloth** թի'քլօթհ· Չինու և Հնդկաց համար Անգլիա շինուած բամպակեայ կտաւ։

**Tabasheer** թէպըշիր', *s.* պամպուի հանգոյցներուն մէջ գտնուող տղիղ (concretion) մը, որ Հնդկաց մէջ իբրև դեղ կգործածուի, տապաշիր։

**Tabard** -'ըրտ, *s.* լօդիկ, ամղան։

**Tabby** թէպ'ի, *s.* ճաճանչաւոր խաւ (կերպաս); 2. տողախ խօրասան, խարճ; 3. (խատուտիկ) կատու։ =*a.* խատուտիկ, պիսակոտ, նախշուն։

**Tabernacle** թէպ'ըրնէքլ, *s.* խորան, բնակութիւն, տաղաւար, վրան; 2. վկայութեան խորան, տապանակ; 3. սրբարան, տաճար։ =*vn.* տաղաւարիլ, բնակիլ։ Feast of—. տօն տաղաւարահարաց։

**Tabes** թէյ'պիզ, *s.* հալումաշ։

**Tabid** թէպ'իտ, *a.* վտիտ, հալած մաշած։ **—ness**, *s.* հալումաշ։

**Tablature** թէպ'լէչըր, *s.* ձեղնանկար, որմանկար; պատկեր, նկար

**Table** թէյ'պլ, *s.* սեղան, տրապիզ, դնոց; 2. (քարէ) տախտակ, պնակիտ; 3. ցանկ, տախտակ; 4. պատկեր, տախտակ, աղիւսակ; 5. նկար, արձանագրութիւն; 6. ուտելիք, կերակուր; 7. սեղան, բազմականք։ =*va.* ցանկ շինել, ցուցակագրել; 2. արձանագրել, գրել; 3. կերցնել, սնուցանել; 4. սեղանին վրայ թողուլ, յաջորդ նիստին յետաձգել; 5. իրարու մէջ անցնել, ագուցել 6. The Lord's—. Սուրբ Հաղորդութիւն։ To lay on the—. (խնդիրը) կախ՝ յաջորդ նիստին ձգել։ —beer. թեթև գարեջուր։ —book. յուշատետր, տետր։ —cloth, —cover. սեղանի լաթ, փռոց, սփռոց։ —d'hôte թաբ'լտօթ, *s.* պանդոկասեղան, հիւրասեղան։ —land. սարահարթ, արօտավայր եայլայ։ -spoon. ապուրի մեծ դգալ։ —talk. սեղանի խօսակցութիւն, սեղանախօսակցութիւն։ —tipping, —turning. սեղանադարձութիւն։

**Tableau** թապլօ', *s.* պատկեր; կենդանի ցուցապատկեր [*pl.*-leaux-լօզ']

**Tablet** թէպ'լէթ, *e.* յուշատետր, յիշատետր, տետր, թղթակալ տետր 2. (քարէ) տախտակ, պնակիտ հ. ժ.; 3. աղիւսաձեւ դեղ որ եւ Lozenge, Troche. Baked clay—. թրծուած աղիւսի պնակիտ հ. ժ.

**Tabling**, *s.* ագուցակ (փայտի)։

**Taboo** թէպու'—, *va.* արգիլել։

**Tabor, -boret, -ine, Tabret** թէյ'պըր, թէյպ'ըրին, թէպ'րէթ, *s.* պզտի թմբուկ, թմբկիկ։

**Tabouret** թէպուրէթ', *s.* (անթեւ՝ անթիկուն) աթոռ, աթոռակ; 2. քարկահ քէրքէֆ։

**Tabular** թէպ'իուլըր, *a.* սեղանաձեւ, հարթ, համացոյց; 2. թերթ թերթ (քար)։

**Tabulate** -'իուլէյթ, *va.* հարթաշինել, տաշել; 2. ցուցակագրել։

**Tacamahac, -haca** թէքըմըհէյ'քը, *s.* պալսամի բարտի; -ահիւթ

**Tachometer** թէքամ'էթըր, *s.* արագագիր, արագաչափ։

**Tachygraphy** թէքիկ'րէֆի, *s.*

տրագագրութիւն; ողագրութիւն։

Tacit թէ՛սիթ, *a.* զօրութեամբ, լռելեայն։ -ly, *ad.* իմացուած։

*Taciturn թէ՛սիթըրն, *a.* լռակաց, լռասէր, սակաւախօս։ -ity թէսի-թըրն՛իթի, *s.* -ութիւն։

Tack թէք(թ), *s.* սեպիկ, գամ-բիցա; 2. ապարում ն-. =*va.* գա-մել; կպցնել, բռնեցնել իրիշթիրմեf, շուլլել; 3. դարձնել ն-.

Tackle թէքըլ, *s.* գործիք, սար-քուած թագրմ; 2. փաղանգ, վերամ-բարձ բաշալգան-. =*va.* (ձին) սա-պազինել, լծել; 2. բռնել։ -ling թէք'լին, *s.* գործիք սարուած kskվաթ, թագրմ ն-; 2. սապազէն։

Tact թէքթ, *s.* սրագատութիւն, նրբագատութիւն, քաջըմբռնութ., նրբամտութիւն, կենցաղագիտու-թիւն; 2. փափկանկատութիւն; 3. հնարք, վարպետութիւն։ -ical թէք'թիքըլ, *a.* վարպետի; 2. մար-տական։ -ician թէքթիշ'ըն, *s.* մարտակազմ, ճակատայարդար։ -ics թէք'թիքս, *s.* ճակատայարդա-րութիւն, մարտագիտութիւն, զօ-րակարգութիւն։

Tactile թէք'թիլ, *a.* շօշափելի, զննելի։ -lity -թիլ'իթի, *s.* -ութիւն։

Taction թէք'շըն, *s.* շօշափում։

Tadpole թէտ'-, *See* Polliwig.

Taffeta, -ty թէֆ'-, *s.* մնդուս։

Taffrail -'րէյլ, *s.* նաւու խելք։

Taffy թէֆ'ի, *s.* ռուփի շաքար; 2 Ուէյլզցի, Կալլէսցի։ (Անգլիա-ցիք կսիրեն այսպիսի մականուններ տալ կամ անուն կախել. զիրենք John Bull, զԱմերիկացիս Yankee, Uncle Sam եւ Cousin Jonathan, զԳաղղիացիս Jack Frog կամ Froggy, զԳերմանացիս Sauerkraut սաուըր'-քրօթ կամ German Sauasge, զԻռ-լանտացիս Paddy, Pad (St. Patrick Իռլանտացւոց պաշտպան սուրբէն) եւ զՎալլէսցիս Taffy (St. David էն)։

Tag թէկ. (երիզի) ծայրամետաղ։

Tag-rag թէկ'րէկ, *s.* խուժան։

Tail թէյլ, *s.* ագի, ձետ, տուտ; 2. քղանց, տուտն, եռեւ, կռնակ; 3. փոխանակորդութիւն (ժառան-գորդի)։ -piece. յաւելուած; (գլու-խի վերջ) զարդապատկեր դդ. -race. (ջաղացքի) առուակ։

Tailor թէյ'լըր, *s.* դերձակ pkr-զի։ =*vn.* կարել, ձեւել; 2. դեր-ձակութիւն ընել։ -ess թէյ'լըրէս, *s.* կարուհի, դերձակուհի։

Taint թէյնթ, *s.* գարշահոտու-թիւն, ապականութիւն; 2. բիծ, արատ; 3. վարակում։ =*vn.* ապա-կանիլ, հոտիլ; 2. աւրուիլ, աղօ-տանալ, նետել (գոյնը)։ =*va.* ապա-կանել, աւրել; 2. աղտոտել, վա-րակել, տգորել։

Take թէյք, *va.* [Took; Taken] առնել, առնուլ, ստանալ, ընդու-նիլ; 2. յափշտակել, կորզել, տի-րել; 3. հրապուրել, զմայլեցնել; 4. ընտրել, զատել; 5. ուզել, բռ-նանալ, գործածել; 6. համարիլ, կարծել, ենթադրել, սեպել; 7. ու-տել, կլլել, խօսիլ, մարսել; 8. համ-բերել, տակալ; 9. իմանալ, մեկնել, բացատրել։ =*vn.* բռնել, հաստա-տուիլ; 2. յարմարիլ, ըլլալ, երթալ։ =*s.* բռնուած ձուկեր, ձուկի որս, բռնուածք, առնուածք։ To-advan-tage of. օգտուիլ։ To-after. հետե-ւիլ; նմանցնել։ To-air. յայտնուիլ, դուրս ելլել։ To-along. հետը տա-նիլ։ To-away. վերցնել, հեռացնել, հանել, պակսեցնել, իջնալ։ To-care. զգուշանալ, զգոյշ ըլլալ; 2. *(of)* հոգ տանիլ, նայիլ։ To-down, իջեցնել, վերածել; 2. կլլել; քա-կել, փլցնել; 3. գրել, արձանա-գրել; 4. յարձակիլ։ To-effect. ազդել։ To-for. սխալիլ։ To-heed.

